# ԿԻՐԱԿՈՍ

# ՊԱՏՄԱԳԻՐ



Ի ՄՈՍԿՈՒԱ։

1858.

# Փառաւոր անուանք Ազգասէր Տեարց, որք ընդ բանին և ընդ արդեամբք խրախուսեցին զմեզ յայս գործ ազգօգուտ։

Ամենապատիւ Սրբազան Տէր Սարգիս Արքեպիսկոպոս Ջալալեանց, Առաջնորդ Վրաստանի և Իմերէթի Հայոց, 'ի Տփխիս։

Ամենապատիւ Սրբազան Տէր Թադէոս Արքեպիսկոպոս Բէկնազարեանց, Առաջնորդ Հնդկաստանի և Պարսկաստանի Հայոց, 'ի Նոր-Ջուղայ։

Արժանապատիւ Տէր Գաբրիէլ վարդապետ Այվազեանց, Առաջնորդ Բեսարաբիոյ և Նոր-Նախիջևանի Հայոց, 'ի Թէոդոսիա։

Արժանապատիւ Տէր Ստեփաննոս քահանայ Մանդինեանց, Խմբագիր Մեղուի Հայաստանի պատուականագոյն լրագրին, 'ի Տփխիս։

Արժանապատիւ Տէր Մովսէս քահանայ Սայեադնեանց, Նախանդամ Կոնսիստորիայի, 'ի Տփխիս։

Արժանապատիւ Տէր Աբրահամ քահանայ Տէր Թովմասեան, 'ի Մար-[illegible] կեղ։

Արժանապատիւ Տէր Մսեր Գրիգորեան Մսերեանց Զմիւռնացի, Գերընտիր Մագիստրոս Աստուածաբանութեան և Հայկաբանութեան Ուսուցչապետ, 'ի Մոսկուա։

Այվազովսկի՝ Տ. Յովհաննէս Կոստանդինեան, երևելի նկարիչ, 'ի Ս. Պ. Բուրգ։

Ալադաթեանց՝ Տ. Նիկողայոս Յովհաննիսեան, Ուսանող, 'ի Մոսկուա։

Անկախեանց՝ Տ. Իսահակ Սողոմոնեան, Ուսանող, 'ի Մոսկուա։

Արապատեանց՝ Տ. Յովսէփ Իսահակեան, աստիճանաւոր, 'ի Տփխիս։

Արղութեանց՝ Տ. Նիկողայոս Անդրէասեան, Իշխան, 'ի Տփխիս։

Աստուածատուրեանց՝ Տ. Մելիք-Սարգիս, 'ի Կնիշիկ գ։

Բ[illegible]յեանց՝ Տ. Մկրտիչ Ղազարոսեան, Ուսուցչապետ, 'ի Ս. Պ. Բուրգ։

Բուդաղեանց՝ Տ. Մովսէս Զաքարեան, աստիճանաւոր, 'ի Ս. Պ. Բուրգ։

Գուլամիրեանց՝ Տ. Ստեփաննոս Մնացականեան, վաճառական, յԵրևան։

Գուրգէնբէկեանց՝ Տ Յովհաննէս Յովսէփեան, Ուսանող, 'ի Մոսկուա։

Դելլանեանց՝ Տ. Յովհաննէս Դաւթեան, Առանձին Խորհրդական, Դրան Նորին Կայսերական Մեծութեան Սենեկապետ և Հոգաբարձու ընդհանուր Ուսումնարանաց Ս. Պ. Բուրգայ Շրջանակի, 'ի Ս. Պ. Բուրգ։

Դելլանեանց՝ Տ. Նիկողայոս Դաւթեան, Կարգադիր [illegible]ճեմարանի Արևելեան Լեզուաց Տեարց Լազարեանց, 'ի Մոսկուա։

Դիւլօրիէ՝ Տ. Էդուարդ, Ուսուցչապետ Արևելեան Լեզուաց, 'ի Փարիզ։

Դուբիչեանց՝ Տ. Դաւիթ Ստեփաննոսեան, վաճառական, 'ի Մոսկուա։

Եագուլեանց՝ Տ. Յարութիւն Մակարեան, Երէցփոխան երից եկեղեցեացն Հայոց, 'ի Մոսկուա։

Եարալեանց՝ Տ. Գէորգ Դաւթեան, վաճառական, 'ի Ս. Պ. Բուրգ։

Եղիազարեանց՝ Տ. Ստեփաննոս Գրիգորեան, աստիճանաւոր, յԵրևան։

Զօհրաբեանց՝ Տ. Մովսէս Զօհրաբեան, աստիճանաւոր, 'ի Բաքու։

Էնֆիաջեանց՝ Տ. Աւետիք Մկրտչեան, գրավաճառ, 'ի Տփխիս։

Էմամշեանց՝ Տ. Իսահակ Սողոմոնեան, Ուսանող, 'ի Մոսկուա։

Է[illegible]եանց՝ Տ. Յովսէփ Ա[illegible]րեան, վաճառական, 'ի Ս. Պ. Բուրգ։

Kirakos, Gandzakitsi

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Patmutiwn Hayots

# ՀԱՅՈՑ

ԱՐԱՐԵԱԼ

## ԿԻՐԱԿՈՍԻ ՎԱՐԴԱՊԵՏԻ

## ԳԱՆՁԱԿԵՑՒՈՅ

—

Ի ԼՈՅՍ ԸՆԾԱՅԵԱՑ

ՕՍԿԱՆ ՏԷՐ-ԳԷՈՐԳԵԱՆ ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆՑ

ԵՐԵՒԱՆԵՑԻ



Ի ՄՈՍԿՈՒԱ

Ի ՏՊԱՐԱՆԻ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԼԵԶՈՒԱՑ ՃԵՄԱՐԱՆԻ ՏԵԱՌՑ ԼԱԶԱՐԵԱՆՑ

1858.



ПЕЧАТАТЬ ПОЗВОЛЯЕТСЯ

съ тѣмъ, чтобы по отпечатаніи представлено было въ Ценсурный Комитетъ узаконенное число экземпляровъ. С.-Петербургъ, 19 Ноября, 1856 г.

*Ценсоръ И. Лажечниковъ.*

# ՆՈՐԻՆ ԲԱՐՁՐ ԲԱՐԵՏՈՀՄՈՒԹԵԱՆ

## ՏԵԱՌՆ ԿԱՐԳԱԴՐԻ

ՃԵՄԱՐԱՆԻ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԼԵԶՈՒԱՑ ՑԵԱՐՑ ԼԱԶԱՐԵԱՆՑ

ԿՕԼԼԷԺՍԿԻ ՍՈՎԷՏՆԻԿԻ

ԵՒ

ԶԱՆԱԶԱՆ ՆՇԱՆԱՑ ԱՍՊԵՏԻ

## Տ. ՆԻԿՈՂԱՅՈՍԻ ԴԱՒԹԵԱՆ

## ԴԵԼԵԱՆԵԱՆՑ

*ի նշան անկեղծ երախտագիտութեան*

*ջերմեռանդութեամբ և յարգանօք նուիրէ*

*՚ի լոյս ընծայողն:*

ЕГО ВЫСОКОРОДІЮ

ГОСПОДИНУ ДИРЕКТОРУ

ЛАЗАРЕВСКАГО ИНСТИТУТА ВОСТОЧНЫХЪ ЯЗЫКОВЪ

КОЛЛЕЖСКОМУ СОВѢТНИКУ

И

РАЗНЫХЪ ОРДЕНОВЪ КАВАЛЕРУ

НИКОЛАЮ ДАВЫДОВИЧУ

ДЕЛЯНОВУ,

въ знакъ искренней благодарности

съ благоговѣніемъ посвящаетъ

Издатель.

# ԾԱՆՈՒՑՈՒՄՆ

---

Կիրակոս վարդապետ Գանձակեցի՝ որ մի է յազգային Պատմագրաց մերոց՝ ծաղկելոց յերեքտասաներորդ դարու, էր աշակերտ Յովհաննու վարդապետի Տաւուշեցւոյ՝ Վանական մականուանելոյ, և աշակերտակից Մեծին Վարդանայ վարդապետի Բարձրբերդացւոյ։ Որոյ է Պատմագիրքս այս, յորում առաջի առնէ նա զպատմութիւն Ազգիս՝ սկսեալ 'ի սրբոյն Գրիգորէ Լուսաւորչէ և յարքայէն Տրդատայ մինչև ցաւուրս իւր, այն է՝ մինչև ցՀեթում Ա. թագաւոր մեր, կամ մինչև ցամ Տեառն 1260։ Թէև 'ի սկզբան գործոյս համառօտիւք անցանէ զպատմութեամբ անցիցն առաջնոց, սակայն զիւրոյ ժամանակին իրս՝ իբրև ականատես նոցին՝ լիով ճառէ, մանաւանդ 'ի խօսելն զհարուածոցն Թաթարաց։

Վախճան Պատմաբանիս եղև յամի Տեառն 1271 'ի վանս Գետկայ՝ ուր (որպէս ինքն գրէ յէջ 129) սնեալ և ուսեալ էր նա։

---

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

# ՀԵՂԻՆԱԿԻՆ

—

Կիրք որ 'ի բնութեան մարդկան՝ յայս հաստատեալ է խնամօք յարարչէն՝ քննասէր լինել իրաց ինչ անցելոց, և կամ 'ի հանդերձեալն լինելոց։

Իսկ այսմ ոչ է հնարք այլազգ հասու լինել և իմանալ, բայց թէ բազում աշխատութեամբ՝ և յերկար ջանիւ։

Խուզիլ և մաշիլ տաժանմամբ, և յոյժ վաստակօք, զի թերևս գտցէ ինչ պիտանացու, որ կարողն իցէ լնուլ զփափաքս ըղձից խնդրողին։

Բարունարար երկօք, և ոչ վարկպարազի անցանել ընդ պատմութիւնս ժամանակաց, ներքնոց և արտաքնոց։

Ընկնարկելով և ազդեցութեան հոգւոյն, որ կարողն է իմաստնացուցանել զտգէտս, և բանաւոր առնել զանբանս։

Կարող և ձեռնհաս զնա հաւատալ առանց երկմտութեան և թերութեան։

Որով և ամենայն ինչ ըստ կամաց նորա յօրինի և կազմի, երևոյթքն և աներևոյթքն։

Որպէս մտօք և անչարութեամբ մատուցանել զունկն վերին և ներքին աստուածայնոց բանից և գրոց և պատմութեանց. որք կարող են հասուցանել զխնդրողն խնդրելոյն։

Քանզի և այս օրէնք են աստուածայինք, ցուցանել հարանց՝ որդւոց, զի ծանիցի յազգ այլ. որպէս մարգարէն Դաւիթ հրամայէ. զի յայս խրատէր մեծն 'ի մարգարէս Մովսէս զորդիսն Իսրայէլի և ասէր. Խոկասցիս 'ի սոսա 'ի տուէ և 'ի գիշերի՝ 'ի նստել 'ի տան, 'ի գնալ 'ի ճանապարհ, 'ի ննջել և 'ի յառնել: Եւ այսոցիկ որք յօժանդակ են և ձեռն տան, յոլովք են յաստուածայնոց արանց, որք կենդանի արձան թողին զգիրսն յետ իւրեանց յամենայն ազգաց: Որպէս մեծն Եւսեբիոս զերկուս գիրսն եթող, զքրոնիկոնն, սկսեալ 'ի նախնոյն Ադամայ, զխժական անուանս նահապետացն՝ զոր գրեցին արտաքինքն, համեմատելով ընդ աստուածայնոց արանց պատմութիւնս. և բերեալ հասուցանէ մինչ 'ի գալուստն Քրիստոսի և այսր, զյոլովից ազգաց նահապետս և զթագաւորս, և զեկեղեցւոյ պատմութիւնն, սկսեալ 'ի ծագմանէ արեգականն արդարութեան՝ զժամանակս թագաւորաց, և զառաքելոցն սրբոց քարոզութիւնս, և թէ ո՛ 'ի սոցանէ զինչ գործեաց, և յո՛ր կողմ չոգաւ իւրաքանչիւր ոք, և կամ թէ ո՛րպէս վկայեցին. և զեպիսկոպոսաց սրբոց, և զերևելի արանց զգործ և զքաջութիւն. և բերեալ հասուցանէ մինչև յաւուրս Կոստանդիանոսի բարեպաշտի, և անդ դադարի: Եւ ապա մեծիմաստն Սոկրատէս կորովակի բանիւք, սկսեալ 'ի սրբոյն Սեղբեստրոսէ Հռոմայ հայրապետէն, և 'ի Կոստանդիանոսէ մեծէ, և ածէ մինչև յաւուրս Թէոդոսի փոքու, զարարս և զգործս իւրաքանչիւր թագաւորաց և զեպիսկոպոսաց, և զառաքինեաց և զվատթարաց, զժողովելոց բազմաց եղելոց՝ պիտանեաց և խոտանաց ընդարձակ և յաճախ պատմութեամբ աւարտէ:

Իսկ Հայոց ազգի պատմագիրք յոլովք ցուցին աշխատութիւն: Որպէս սքանչելին և կորովամիտն Ագաթանգեղոս, որ թարգմանի բարի հրեշտակ, որ եցոյց հրամանաւ մեծազօր և քաջ արքային Տրդատայ զհանգամանս իրաց եղելոց առ Հայս 'ի ձեռն սրբոյն Գրիգորի Պարթևի և խոստովանողի Քրիստոսի, զգործս նշանաց և արուեստից և սքանչելագործութեանց, և զպատճառս լուսաւորութեան Հայոց՝ աշխարհիս, գեղեցիկ և պայծառ պատմութեամբ ա-

ւարտէ։ Եւ զկնի նորա ամենահարուստն գիտութեամբ, և մեծն իմաստութեամբ քան զյոլովս սուրբ այրն ԱՅ Մովսէս Խորենացի, որ զՀայոց պատմութիւնն շարագրեաց բազմահանճար և յոգնադրուատ բանիւք. Համառօտ պատմութեամբ և ընդարձակ մօք 'ի նախնի մարդոյն սկսեալ՝ զյոլովից ազանց իրս և զգործս և զարարս, բերեալ մինչև յաւուրս Տրդատայ և սրբոյն Գրիգորի, և անտի մինչև ցկատարումն սրբոյն Սահակայ Հայոց հայրապետի, և զորքան անցեալ 'ի վերայ աշխարհիս Հայոց, անդանօր դադարեցուցանէ։ Եւ յետ նորա սուրբն Եղիշէ, որ պատմէ զքաջութիւն Վարդանայ, թոռին սրբոյն Սահակայ, և զընկերաց նորա, որք յուսոյն Քրիստոսի զանձինս 'ի մահ եդին և պսակեցան 'ի Քրիստոսէ, և զարիական մահ սրբոց Յովսեփեանցն, և զկամաւ տալն զանձինս 'ի կապանս տէրունի նախարարացն Հայոց վասն յուսոյն որ 'ի Քրիստոս, և զհամբերող նահատակութիւն սրբոցն Խորենայ և Աբրահամու, զոր սուգութեամբ ցուցանէ այրն սքանչելի։ Եւ ապա Ղազար Փարպեցի ճարտասան, սկսեալ յաւուրցն սրբոյն Սահակայ, և զնոյն ոճ պատմէ։ Եւ զկնի նորա Փաւստոս Բիւզանդ, որ զեղեալ իրս պատմէ Հայոց աշխարհիս ընդ Պարսիկս, և 'ի նոցանէ ընդ մերս։ Եւ Հերակլ 'ի Սեբիոսէ եպիսկոպոսէ ասացեալ։ Եւ պատմութիւն սքանչելի տան Կորեան։ Եւ Խոսրով։ Եւ Ղևոնդ երիցու պատմութիւն, որ զինչ գործեցին Մահմետ և աթոռակալք նորա ընդ աշխարհս ամենայն, և առաւել ևս ընդ ազգս Հայոց։ Եւ Թովմայ վարդապետն, պատմագիր տանն Արծրունեաց։ Եւ Շապուհ Բագրատունի։ Եւ տէր Յովհաննէս կաթուղիկոս Հայոց։ Եւ Մովսէս Կաղանկանտացի, պատմագիր Աղուանից։ Եւ Ուխտանէս եպիսկոպոս Ուռհայի, որ գրեաց զբաժանումն Վրաց 'ի Հայոց 'ի ձեռն Կիւրոնի։ Եւ Ստեփաննոս վարդապետն մականուն Ասողիկ։ Եւ Արիստակէս վարդապետ, կոչեցեալն Լաստիվերտցի։ Եւ Մատթէոս՝ վանաց երէց, Ուռհայեցի։ Եւ Սամուէլ քահանայն կաթուղիկէին Անւոյ։ Եւ ապա մեծիմաստ և հանճարեղ վարդապետն անուանեալն Վանական. որոց փոյթ եղև նոցա իւրաքանչիւր սրտոցս գրով թողուլ զյիշատակ բարի, զկնի

եկելոցս, յօգուտ լսողացն և 'ի վարժատրութիւն նոցուն սրբոցն անջինջ լինել յիշատակ մինչ յօրն Քրիստոսի։

Իսկ մերս ձեռնարկութիւն մի՛ ումեք յանդգնութիւն համարեսցի, այլ առաւել բարեաց նախանձու գործ. զի հարկանէն զմեզ միտք մեր, ոչ տալ լռութեան զայսպիսի աղէտ տարակուսանաց, զոր լուաք ականջօք մերովք, և տեսաք աչօք. զի 'ի գլուխ ելին ամենայն սրբոց մարգարէութիւնք՝ որք յառաջագոյն գուշակեցին վասն նեղութեանցս, որ հանդերձեալ էր լինել. և առ մեզ գործովք կատարեցաւ. զոր և ասաց փրկիչն մեր և Աստուած տէր Յիսուս Քրիստոս, թէ «յարիցէ ազգ յազգի վերայ, և թագաւորութիւն 'ի թագաւորութեան». և այն՝ ասէ՝ սկիզբն է երկանց յայտնութեան որդւոյն կորստեան, որ երկնչիմք՝ մի՞ գուցէ երևեսցի նա 'ի մերում աւուրս. զի գործք ամենայն որ գործին այժմ, զնոյնն նշանակեն։ Սէր՝ ցամաքեալ, և անգթութիւն տիրեալ. աստուածպաշտութիւն նուազեալ, և անհաւատութիւն բարձրացեալ. սեղանք և պատարագք լռեալ, և քահանայք անողորմ 'ի սուր անկեալ. կանայք և մանկունք գերեալք, և արք դառնամահք լեալք. զի զոր գուշակեաց այրն Աստուծոյ սուրբն Ներսէս վասն ազգին Նետողաց և աւերման աշխարհիս Հայոց, այժմ կատարեցաւ յազգէ՝ որ Թաթարն կոչի. զի զբազում ազգս և զազինս ջնջեաց սա, զոր յիւրում տեղւոջն պատմեսցուք՝ եթէ տէր կամեսցի։ Բայց իւրաքանչիւր ոք յառաջին աշխատասիրացն եգիտ տեղի ինչ բուռն հարկանելոյ, կամ թագաւոր երևելի և կամ նահապետութիւնք ազգաց յայտնի։ Իսկ մեր յայսմ յամենայնէ թափուր եղեալ. զի թագաւորութիւնն վաղ ուրեմն բարձեալ, Արշակունին և Բագրատունին, և իշխանքն ոչ ուրեք երևեալ Հայկազնի, բայց թէ ուրեք ուրեք ղօղեալք և թաքուցեալք յօտար աշխարհի, բայց միայն յայս մի եդեալ առաջի՝ զաւուրս շնորհ և զխորհրդոյս զօրութիւն, զի յայսմ աւուր յորում ձեռնարկեցաք 'ի սմա, տօն է գալստեան ամենասուրբ Հոգւոյն 'ի վերնատունն 'ի դասս առաքելոցն՝ հրեղէն լեզուօք հրաշազարդեալ զնոսա ընդ տիեզերս կոչել զամենեսեան ուռկանաւ աւետարանին 'ի

կեանս անմահականս։ Եւ մեք 'ի նոյն Հոգի վստահ եղեալ, արկաք զանձինս յաշխատութիւն, որ 'ի վեր է քան զկար մեր։ Վասն որոյ աղաչեմք զկնի եկեալսդ ոչ աղարտել զաշխատութիւնս մեր, որպէս անուսմունք. և խնչել քթօք, և յօնօք պռստել. այլ զիջանել եղբայրաբար, և ձեռ թողուլ միշտատև ապագայիցն. զի Քրիստոսի աշակերտացն ամենայն ինչ հաւանութեամբ է, որպէս ուսանիմք 'ի գրոց։ Այլ մեք բուռն հարցուք զիրէս՝ զոր սկսաք, և ցուցցուք նախ զանուանս աթոռակալացն սրբոյն Գրիգորի. 'ի նմանէ սկսեալ մինչև առ մեզ՝ սուղ ինչ համառօտիւք. զի լիցի սա մեզ արձան գերեզմանի, ոչ ըստ նմանութեան Արիստոդեմեան քարին, այլ կենդանի, զի յիշեսցի 'ի սմա անուն Կիրակոսի։



ՀԱՄԱՌՕՏ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԵՒ ՅՈՅՑՔ ԸՆԹԱՆՑ

# ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ

## ԵՒ ՈՐՔ ՅԵՏ ՆՈՐԱ ՅԱՋՈՐԴԵՑԻՆ ԶԱԹՈՌ ՆՈՐԱ

—

Ամենայն գովեստից արժանի, և յիշատակաւ բարեաւ հռչակեալ հայրն մեր հոգևոր. և ըստ աւետարանին ծնօղ սուրբն Գրիգորիոս՝ յետ լուսաւորելոյ նորա զՀայաստան աշխարհս աստուածգիտութեամբ և ամենայն ուղղափառ կարգօք և օրէնսդրութեամբ, և ձեռնադրելոյ եպիսկոպոսս աւելի քան զչորս հարիւր և երեսուն, գնալ եղև նմա և մեծի արքային Տրդատայ 'ի Հռոմ 'ի տեսութիւն նշխարաց սրբոց առաքելոցն Պետրոսի և Պօղոսի, և մեծ թագաւորին Կոստանդիանոսի, և սրբոյ հայրապետին Սեղբեստրոսի, դնել ուխտս և դաշինս 'ի մէջ իւրեանց։ Եւ ընկալեալ մեծաւ պատուով սուրբն Կոստանդիանոս և մեծ հայրապետն աշխարհամուտ դքան, մեծարանս արարեալ սրբոյն Գրիգորի, որպէս խոստովանողի և առաքելաշնորհ վկայի Քրիստոսի, տայ նմա պատիւ հայրապետութեան, որպէս աթոռակալին Պետրոսի. տան նմա և մասն ինչ 'ի նշխարաց առաքելոցն, և կահեակ ձեռն Անդրէի առաքելոյ, և այլ ընծայս բազում. և յԵրուսաղէմ զԳողգոթայ՝ զտեղի խաչելութեանն Քրիստոսի և զսուրբ Յակովբն, և տեղի մի պատարագի 'ի սնարս սուրբ յարութեանն։ Ասեն կախեաց կանթեղ մի սուրբն Գրիգոր՝ 'ի վերայ գերեզմանին Քրիստոսի, և խնդրեաց յԱստուծոյ աղօթիւք առանց զգալի լուսոյ լուցանիլ 'ի սուրբ պասեքի տօնին, որ լինի մինչև

ցայսօր նշանն։ Նոյնպէս և զմեծն Տրդատ մեծարեալ, որպէս վայել էր նորա քաջութեան՝ արեամբն Քրիստոսի, և հաւատովն որ 'ի նա, դաշինս կռեալ, անքակ ունել զսէրն 'ի մէջ երկուց ազգացս յետ նոցա։

Եհարց Կոստանդիանոս զսուրբն Գրիգոր. որքան ուրախութիւն է առաջի հրեշտակաց 'ի գիւտ այսքան մոլորեալ ոչխարաց։ Պատասխանի ետ՝ բազում յոյժ, բայց մի ոչխար համարին տղամայինքս առ վերնոց բազմութիւն։ Եւ կայսրն ասէ. և փրկեալքս մի՞ վերջացուք հանդիպանալ ընդ նոսա եկաւորիլդ ձեր։ Եւ հրամայեաց ամենայն քաղաքին խրախանալ զենմամբ խաշանց։ Եւ Հրեայքն և Հեթանոսքն որք մնացեալ էին յանհաւատութեան, լուսանային յօրհնութեան աղէն. զի սուրբն Գրիգոր և Սեղբեստրոս աղ օրհնեցին։ Եւ ասէ սուրբն Գրիգոր ցՀրեայսն՝ դուք զթլփատութիւնն անթլփատութիւն արարիք հակառակ օրինացն. և ասէ՝ անասունք որ մատչին պատարագ Աստուծոյ, կամ նուէր սրբոց, կամ յիշատակ ննջեցելոց, առանց օրհնութեան աղի, իբր զոհ հեթանոսաց է։

Եւ ապա եկեալ յաշխարհս մեր՝ մեծաւ ցնծութեամբ և հոգևոր ուրախութեամբ, մեծապէս զարդարէին զաշխարհըս մեր ամենայն քրիստոնէական կարգօք։ Եւ 'ի կենդանութեան իւրում ձեռնադրեաց զորդին իւր զսուրբն Արիստակէս՝ եպիսկոպոսապետ Հայոց, և Վրաց, և Աղուանից. և ինքն բուռն հարեալ զմիայնակեաց կարգաց. զի ամենայնիւ պատկեսցի առաքելականաւն և մարտիրոսականաւն և հայրապետականաւն և միայնաւորութեամբն, որ առաւել ընտանեցուցանէ զմարդն Աստուծոյ անզբաղապէս ընդ նմա խօսելով։ Եւ յորժամ եկն Ռրստակէս 'ի ժողովոյն Նիկիոյ, այնուհետև սուրբն Գրիգոր այլ ոչ ումեք երևեցաւ. կեցեալ ժամանակս յոլովս՝ հանգեաւ 'ի Քրիստոս, կալեալ զհայրապետութիւնն ամս երեսուն։ Եւ գտեալ զնա հովուաց վախճանեալ, կարկառ քարի կուտեցին 'ի վերայ նորա։

Եւ յետոյ ազդեցութեամբն Աստուծոյ եգիտ զնա Գառնիկ ոմն ճգնաւոր սուրբ, և տարեալ հանգուցին 'ի գեօղն Թորդան։ Եւ յաւուրս Զենոնի կայսեր տարան 'ի նշխա-

րաց նորա և 'ի սրբոց Հռիփսիմեանցն 'ի կոստանդնուպօլիս. և արարեալ տապան արծաթի՝ եդին 'ի նմա զնշխարս սրբոյն, գրելով զիւրաքանչիւր անուանս 'ի վերայ. եդին 'ի մարմարեայ տապանի, և կնքեցին մատանեաւ։ Եկաց ժամանակս յոլովս անյայտս ոչ գիտելով ո՞յր ուրուք է, բայց զայս միայն՝ թէ սրբոց է։ Իսկ յաւուրս Վասլի կայսեր, և Աշոտոյ Բագրատունւոյ Հայոց Թագաւորի, յայտնի եղև այսպէս. Պատանի մի ըմբռնեալ յոգւոյ չարէ, մինչդեռ յաղօթս էր 'ի նմին եկեղեցւոջ՝ ուր կային նշխարք սրբոցն, վերացուցեալ դիւին զպատանին՝ ընկէց 'ի վերայ տապանի սրբոցն. աղաղակէր և ասէր. Սուրբդ Գրիգորիոս՝ լուսաւորիչ Հայոց, մի՛ տանջեր զիս, և դու տիկին Հռիփսիմէ եկիր տանջել զիս, և դու Գայիանէ տանջեցես զիս. և զայս աղաղակէր 'ի բազում ժամանակս։ Եւ զայս լուեալ բազմութեանն՝ ազդ արարին Թագաւորին։ Եւ հրամայեաց բանալ զտապանն. և իբրև բացին, լոյս սաստիկ փայլատակէր 'ի նշխարաց սրբոցն։ Եւ հրամայեաց կայսրն զմարմարեայ տապանն պատել ոսկւով, և գրել զանուն սրբոցն 'ի վերայ. զի ամենայն որ գիտասցէ, թէ ո՞յր է տապանն։ Զայս ամենայն եկեալ ներքինի մի կայսեր, պատմեաց Թագաւորին Աշոտոյ. և նորա լուեալ՝ ետ փառս Աստուծոյ, և կարգեցին զօրն զայն տօն սրբոյն Գրիգորի, որ 'ի վեցերորդ շաբաթու աղուհացիցն շաբաթ աւուրն կատարի մինչև ցայժմ։

Իսկ սուրբն Արիստակէս բարիոք հովուէր զհօտն, որ հաւատացաւ նմա, և յանդիմանէր անաչառութեամբ՝ զոչ եկեալսն յուղղութիւն։ Վասն որոյ Արքեղայոս ոմն, որ էր վերակացու կարգեալ, Չորրորդն կոչեցեալ Հայոց, յանդիմանեալ 'ի նմանէ վասն չար գործոց իւրոց. պատահեալ նմա 'ի Ծոփաց գաւառին, սպան զնա, և ինքն երկուցեալ յարքայէն Տրդատայ, գնաց փախստական 'ի Տարսոն Կիլիկեցւոց, զեօթն ամ կալեալ զեպիսկոպոսութիւն՝ մարտիրոսական մահուամբ փոխեցաւ առ Քրիստոս։

Եւ կացեալ փոխանակ նորա յաթոռ հայրապետութեան Տրդատ արքայ զէրէց որդի սրբոյն Գրիգորի զմեծն Վրթանէս՝ զեղբայր սրբոյն Արիստակիսի. և ինքն սիրեաց ըղ վարս միայնակեցութեան, որպէս զսուրբն Գրիգոր. այնու-

հետև ընդ ժամանակս ժամանակս անյայտ լինէր 'ի զօրաց իւ-
րոց. քառասնօր եալ ժամանակս ձգեալ պահօք և աղօթիւք.
և երթեալ զօրացն նորա՝ աղաչէին զնա ունել զթագա-
ւորութիւնն։ Իսկ նա ոչ հաւանէր, ասելով՝ տիրանենգս
զնոսա, և առ աչս մարդկան ունել զաստուածապաշտու-
թիւնն. և նոքա երդմունս արարեալ, և մուրհակս կըն-
քեալ, սրբութեամբ ունել զքրիստոնէութիւնն և միամ-
տութեամբ ծառայել նմա. և նորա հաւանեալ կամաց նո-
ցա, դառնայ յաթոռն իւր, և ամենայն կարգաց առաքի-
նութեան ինքն լինէր օրինակ։ Իսկ նոքա տաղտկացեալք
'ի բարեպաշտութենէ նորա, խորհեցան նենգութեամբ սպա-
նանել զնա. և տարեալ զնա յորս՝ զզօսանաց աղագաւ,
և հարեալ նետիւ՝ խոցեն զնա, իբր անգիտութեամբ. և
տեսեալ թէ ոչ մեռանի յայնմանէ, տան նմա դեղ մա-
հու։ Եւ այսպէս լուծին զնա 'ի կենցաղոյս, զայն որ թշնա-
միք իւր ոչ կարացին սպանանել նմա, որ հսկայաբար քա-
ջութեամբ յաղթէր ամենայն պատերազմաց, որ անհնա-
րինն էր համարեալ ուժով, որ համբաւ քաջութեան նորա
ելեալ էր ընդ ամենայն տիեզերս, զնա եւ սպանին նեն-
գութեամբ, և յանձանց իւրեանց շիջուցին զբազմալոյս
ջահն։ Այսպէս հանգեաւ բարեպաշտ և աստուածատէրն
Տրդատիոս, կալեալ զթագաւորութիւն զամս յիսուն և վեց։

Իսկ մեծն Վրթանէս, երթեալ առ Կոստանդին կայսրն
թագաւորեցուցանել զԽոսրով՝ զորդի քաջի և առաքի-
նոյն Տրդատայ, զոր և արար իսկ. զօր բազում տուեալ
յօգնականութիւն նմա ընդդէմ կալ պատերազմաւ թա-
գաւորին Պարսից, Շապհոյ։ Բայց Սանատրուկ, որ կող-
մանցն Աղուանից վերակացու կարգեալ էր 'ի Տրդատայ,
իբրև լուաւ զմահ նորա, սպանանէ զսուրբն Գրիգորիս
զորդին Վրթանիսի, զեղբայր Յուսկանն. կապեալ զնա
զագւոյ յամեհի ձիոյ 'ի դաշտին Վատնեան, և ինքն եր-
թայ առ Շապուհ արքայ Պարսից, և ընդունի զձև թա-
գաւորութեան, հատուածէ զաշխարհն 'ի Խոսրովայ։ Եւ
Խոսրովու բաւական համարեալ զմնացեալ աշխարհն իւր,
ոչ ինչ փոյթ զպատերազմաց արարեալ, այլ խաղաղա-
կան կենօք կեցեալ, հնազանդեալ խրատու մեծին Վրթա-

նայ, մինչեւ զԱրտաշատ քաղաք 'ի Դուին, և տնկէ անտառս կաղնեաց տեղի զբօսանաց. և Թագաւորեալ ամս ինն՝ վախճանի բարեպաշտութեամբ: Եւ Թագաւորէ փոխանակ նորա Տիրան որդի նորա:

Իսկ սուրբն Վրթանէս բարւոք կարգաւորութեամբ վարեաց զժամանակս կենաց իւրոց. Թէպէտ բազում անգամ կամեցան սպանանել զնա Նախարարքն, այլ Աստուած ոչ ետ թոյլ այնպէս լինել, այլ՝ խաղաղական մահուամբ փոխեցաւ առ Քրիստոս յոյսն ամենեցուն: Եւ Թագաւորն Տիրան կացոյց փոխանորդ նորա զորդի նորա զսուրբն Յուսիկ, զեղբայր Գրիգորիսի Աղուանից կաթուղիկոսի. բայց Տիրան ոչ ըստ հրամանաց Աստուծոյ վարէր զԹագաւորութիւնն, այլ չար գործովք. զոր յանդիմանէր սուրբն Յուսիկ անաչառութեամբ: Իսկ Տիրան ատէ զնա, յետոյ և սպան զնա, այսպիսի պատճառաւ. եղև զի յետ մահուան Կոստանդնի կայսեր, որդւոյ Մեծի Կոստանդիանոսի, Թագաւորէ Հռոմայեցւոց ուրացօղն Յուլիանոս, և առաքէ տախտակ մի, յորոյ վերայ նկարեալ էր պատկերն սատանայի, և մերձ առ նմա Յուլիանոսին, դնել զայն յեկեղեցին Հայոց. և Տիրան առ՝ երկիւղին նորա առնէ զհրամայեալն: Իսկ սուրբն Յուսիկ դիմադարձ եղեալ, ոչ տայր թոյլ՝ մուծանել յեկեղեցին, այլ առեալ 'ի ձեռաց նորա ընկէց յերկիր. և կոխան արարեալ զնա ոտից իւրոց՝ մանրեաց զնա. և բարկացեալ Տիրան, հրամայեաց ջայլոտիւք հարկանել զնա մինչև մեռցի. որ կալաւ զաթոռ եպիսկոպոսութեան զամս վեց:

Իսկ Տիրան կոչէ զմեծ քորեպիսկոպոսն Դանիէլ, ազգաւ Ասորի, զոր կացուցեալ էր սուրբն Գրիգորի տեսուչ գաւառաց, այր սուրբ և սքանչելագործ. և նորա եկեալ յանդիմանէ զնա սաստիկ անիծիւք վասն սպանման սուրբ քահանայապետին Յուսկանն. և բարկացեալ Տիրան՝ հրամայեաց խեղդել զնա, կատարեցաւ սուրբ մարտիրոսական մահուամբ: Եւ յետ այնորիկ կացոյց Տիրան յաթոռ քահանայապետութեան զՓառներսեհ ոմն, ոչ յազգէ սրբոյն Գրիգորի, այլ 'ի Տարօնոյ, 'ի գեղջէ Աշտիշատոյ, որ կալաւ զաթոռն ամս հինգ:

Եւ Շապուհ արքայ Պարսից կոչէ զՏիրան առ ինքն խաբէութեամբ, և 'ի ճանապարհին կուրացուցանեն զաչս նորա ածղով, վրէժխնդրութիւն լեալ յԱստուծոյ անիրաւ մահուանցն, զոր արար նա ընդ Յուսիկ և ընդ Դանիէլ։ Եւ յետոյ խեղդեաց զնա որդի իւր Արշակ, որ թագաւորեաց ամս երեսուն. և առնու զաթոռ թագաւորութեանն նորա Արշակ հրամանաւ Շապհոյ։ Եւ եկին առ նա ամենայն նախարարքն իւր, և ամենայն եպիսկոպոսք աշխարհիս Հայոց. և խնդրէին 'ի նմանէ հայրապետ յարժանաւոր ցեղէ սրբոյն Գրիգորի, և գտին մանուկ մի գեղեցիկ հասակաւ, և բարուք տեսանելով տեսոն, որում անուն էր Ներսէս, որդի Աթանագինի, որդւոյ Յուսկանն. զի էին նորա երկու որդիք, անուն միոյն՝ Պապ, և միւսոյն՝ Աթանագինէս. և մինչդեռ կենդանի էր Յուսիկն, ոչ ձեռնադրեաց զոք 'ի նոցանէ 'ի գործ ինչ եկեղեցւոյ. քանզի չէին արժանիք. և յետ մահուան նորա, ձեռնադրեն զնա 'ի սարկաւագութիւն բռնութեամբ։ Իսկ նոքա թողեալ զգործ եկեղեցւոյ, ուտելոյ և ըմպելոյ պարապեալք. և փոխանակ սաղմոսից և երգոց հոգևորաց, գուսանօք և վարձակօք և բոզիւք շատանային. և յաւուր միում նստեալ յեկեղեցւոջն ուտել և ըմպել կանամբք և մանկտիւք, հուր անկաւ յերկնից և այրեաց զերկոսեանն, նորանշան մահուամբ խայտառակեալ. և զաւուրս բազումս 'ի ներքս եկեղեցւոջն մնացեալ ոչ ոք իշխէր մտանել և հանել արտաքս զդիս նոցա։ Բայց սքանչելին Ներսէս արժանի էր կոչմանն՝ յոր կոչէին զնա, զի էր նա այր արդար և սուրբ. և էր նա զինուորեալ արքային Արշակայ, որ զսուսերն պողովատիկ 'ի սպասու նորա բարձեալ ունէր, որ և զանձն անարժան համարէր այնպիսոյ պատուոյ։ Իսկ արքայն Արշակ, հրաման ետ ծերունի եպիսկոպոսին Փոստի ձեռնադրել զնա սարկաւագ, և ապա զօր բազում կազմեալ, առաքէ զնա 'ի Կեսարիա 'ի ձեռնադրել զնա հայրապետ. և եկեալ անտի, լուսաւորէ զաշխարհս Հայոց զանազան կարգաւ. շինէր վանորայս և աղքատանոցս, և ժողովէր զուրուկս և զհալածեալս. և կարգէր դարմանս և ռոճիկս նոցա։

Բայց Արշակ ըստ հրամանաց Աստուծոյ ոչ վարէր զԹագաւորութիւնն. զի սպան նա զեղբօրորդին իւր զԳնէլ, և առ զկին նորա զՓառանձեմ. անէծ զնա սուրբն Աստուծոյ Ներսէս. այլ և Թշնամիք եղեն նմա Շապուհ արքայ Պարսից, և Վաղէս կայսրն Յունաց, որ յետ Յոբիանոսի բարեպաշտի. և աղաչէ Արշակ զՆերսէս գնալ դեսպանութեան աղագաւ առ Վաղէս կայսր։ Եւ գնաց սուրբն Ներսէս խաղաղութիւն առնելով 'ի մէջ երկուց Թագաւորացն։ Բայց Վաղէս՝ քանզի խմորեալ էր յաղանդն Արիոսի և Մակեդոնի, հալածիչ էր ուղղափառաց։ Իբրև ետես զսուրբն Ներսէս՝ և լուաւ եԹէ սքանչելագործ այր է, ասէ ցնա՝ բժշկեա զորդի իմ. քանզի հիւանդ էր մերձ 'ի մահ. ասէ սուրբն՝ եԹէ 'ի բաց կացցես յանհանճար աղանդոյդ՝ ես բժշկեցից զնա. և յանձն առ 'ի բաց կալ. և աղօԹեալ սուրբն, յարեաւ մանուկն յախտէն, և Վաղէս դարձաւ 'ի նոյն հերձուածս. դարձեալ և իսկոյն մեռաւ մանուկն, և հրամայեաց աքսորել զսուրբն 'ի կղզի անբնակ՝ յորում ոչ գոյր բոյս գալարուոյ, բայց միայն աւազ. և յաղօԹել սրբոյն՝ բղխեաց աղբիւր բարեհամ, և ծովն ընկենոյր ձուկն, և փայտն առանց հրոյ ինքնին լուցանէր, և այնպէս կերակրեալ լինէին զեօԹն ամ։ Իսկ Արշակ իբրև ետես եԹէ աքսորեցաւ սուրբն Ներսէս, սկսաւ գործել մեծամեծ չարիս, շինեաց քաղաք մի և անդ ժողովեաց զամենայն չարագործս, և ասաց ոչ լինել իրաւունք որ ոք գործիցէ զչարիս, և անկանիցի անդ. և լցաւ քաղաքն անիրաւութեամբ, և անուանեաց Արշակաւան։

Իսկ Վաղէս կայսր չարամահ սատակեցաւ, զյաւիտենական գեհեննին աստէն բերելով զօրինակ հրկէզ եղեալ, և առնու զԹագն Թէոդոս մեծ հրամանաւ Գրատիանոսի, և ածեալ զսուրբն Ներսէս յաքսորանացն, առ իւր պահէր մեծաւ պատուով մինչև 'ի հաւաքումն ժողովոյն հարիւր և յիսնիցն որ 'ի Կոստանդնուպօլիս՝ վասն հոգեմարտին Մակեդոնի, յորում ժողովէր Գրիգոր աստուածաբան և Գրիգոր Նիւսացի՝ եղբայր սրբոյն Բարսղի, և այլ բազում սուրբ հարք. և ապա առաքէ զսուրբն Ներսէս յաԹոռ իւր, և տեսեալ զանիրաւ գործսն Ար-

շակայ՝ անէծ զԱրշակաւանն, և անդէն սատակեցան բնակիչք նորա չարամահ. և անբնակ եղև քաղաքն բազմամարդ։ Եւ զԱրշակ կոչեաց Շապուհ, և եդ զնա 'ի բանտի անել, և ինքն ձեռօք իւրովք սպան զնա, և թագաւորեաց ամս երեսուն։

Իսկ սուրբն Ներսէս աղաչեաց զմեծն Թէոդոս, և թագաւորեցոյց Հայոց զՊապ՝ որդի Արշակայ։ Իսկ Պապ քանզի զազրագործ էր՝ յանդիմանէր զնա սուրբն Ներսէս, ետ նմա դեղ մահու, և ելոյծ զարդարն 'ի կենցաղոյս։ Եւ սուրբն 'ի մեռանելն իւրում կոչեաց զհօտ իւր, և օրհնեաց զնոսա. և բազում ինչ մարգարէացաւ վասն ազգին Նետողաց, և աւերման աշխարհիս. և վասն Նեռին և Նեղութեանցն՝ որ 'ի նմանէ ընդ աշխարհս ամենայն. և ապա հանգեաւ սուրբն մարտիրոսական մահուամբ, արտօսր բազում. թողեալ հօտին իւրոյ. կալեալ զհայրապետութիւնն ամս երեսուն և չորս. և յաջորդէ զաթոռն Շահակ ոմն 'ի նոյն ազգէ Աղբիանոսի 'ի Հարքա 'ի Մանազկերտոյ ամս չորս։ Իսկ բարեպաշտն Թէոդոս իբրև ետես զչարիսն զոր գործեաց Պապ, կորոյս զնա ըստ իւրում անզգամութեանն. որ թագաւորեաց ամս եօթն։ Եւ զՎարազդատ ոմն յազգէ Արշակունեաց զայր զօրաւոր և ուժեղ։ Եւ յետ Շահակայ առնու զկաթուղիկոսութիւնն Զաւէն եղբայր նորա ամս չորս։

Իսկ Վարազդատ խորհեցաւ ապստամբիլ 'ի Թէոդոսէ, և ձեռն տալ 'ի Պարսիկս։ Վասն որոյ հալածեաց զնա Մանուէլ Մամիկոնեան, եղբայր Մուշեղայ քաջի սպարապետի Հայոց. զոր սպան Վարազդատ նենգութեամբ. և երթեալ յաշխարհն Յունաց, անդ վախճանեցաւ. կալեալ զթագաւորութիւնն ամս չորս։

Եւ յետ Զաւէնայ առնու զկաթուղիկոսութիւնն Ասպուրակէս, եղբայր նոցին, ամս եօթն։ Եւ կացուցանէ Մանուէլ յաթոռ թագաւորութեանն զերկոսին որդիսն Պապայ, զԱրշակ և զՎաղարշակ, զոր փեսայացոյց ինքեան, որ թագաւորեցին ամս չորս։

Եւ ապա թագաւորքն Յունաց և Պարսից զաշխարհս յերկուս բաժանեցին։ Բաժնին Յունաց տիրէր Արշակ հրամանաւ Արկադեայ և Ոնորեայ, որդւոց մեծին Թէոդոսի։

Իսկ արքայն Պարսից Շապուհ կացոյց բաժնին իւրոյ թագաւոր զԽոսրով ոմն 'ի նոյն ազգէ, և էր մարտ 'ի մէջ Արշակայ և Խոսրովու. քանզի իշխանքն՝ որ էին ընդ Արշակայ, առեալ զգանձս նորա, գնացին առ Խոսրով։

Իսկ Խոսրով, յետ մահուանն Աստուրակիսի, նստուցանէ զսուրբն Սահակ յաթոռ հայրապետութեանն զորդի մեծի Ներսիսի։ Եւ յաւուրս յայսոսիկ էր հայրապետ 'ի Կոստանդնուպօլիս զարմանալին և պայծառ ջահն եկեղեցւոյ սուրբն Յոհան Ոսկէբերանն, որ լուսաւորէր զընդհանուր եկեղեցիս Քրիստոսի վարդապետութեամբ բանին կենաց։ Սա՝ զառաջինն յոմանց արհամարհեալ լինէր վասն ոչ սեպհական խօսելոյ 'ի բարբառն Յունաց. զի 'ի հօրէ կողմանէ Ասորի էր։ Սա՝ յորմէ հետէ մկրտեցաւ, գինի ոչ արբ, և ոչ ծիծաղեցաւ, և ոչ երդուաւ, և ոչ երդմնեցոյց զոք և ոչ զոք նզովեաց. և յորժամ աքսորէին զնա, եհար զձեռն յեկեղեցին և ասաց՝ ողջ մնա՛, սուրբ եկեղեցի, բնակարան փառաց տեառն, և մի՛ մոռանար զաշխատութիւնս իմ. քանզի 'ի պարգևացն զոր առի յԱստուծոյ, յաւելի 'ի գանձս քոյ գիրք ութ հարիւր, և ճառք երկոտասան հազար։ Սա եկաց հայրապետ հինգ ամ, և երեք ամ յաքսորս, և հանգեաւ 'ի Կոմանայ յիսուն ամաց։

Եւ թագաւորեալ Խոսրով ամս հինգ, հանէ զնա արքայն Պարսից 'ի թագաւորութենէ, և թագաւորեցուցանէ զՎռամշապուհ։ Իսկ սուրբն Սահակ պայծառացոյց զեկեղեցին Քրիստոսի առաւել քան զամենեսեան զանազան կարգօք առաքինութեան, և կանոնական օրինադրութեամբ։ Եւ 'ի ժամանակս սորա ծագեաց լոյս մեծ գիտութեան յաշխարհիս Հայոց. քանզի երանելին Մեսրոպ եկեալ առ սուրբն Սահակ, եթէ հնար ինչ իցէ ստեղծանել նշանագիր հայերէն լեզուի. և եգիտ զնա առաւել ևս այնմ փափաքող. քանզի ցայն վայր ոչ ունէին գիր հայերէն, այլ Յոյն և Ասորի գրով և նշանագրով վարէին։ Եւ ծանուցանեն զխորհուրդն Վռամշապհոյ թագաւորի. և նա ասաց, թէ մինչ էի ես 'ի կողմանս Ասորոց, ասաց ինձ ոմն եպիսկոպոս՝ Դանիէլ անուն, թէ ունիմ ես նշանագիր հայերէն լեզուի, և ես անփոյթ արարի

առ ժամն. և առաքեն զնախարար ոմն, Վրախճայ անուն, առ Դանիէլն խնդրել 'ի նմանէ զնշանագիրն. և առաքէ 'ի ձեռն Հաբելի երիցու. իբրև տեսին՝ ուրախ եղեն, և սկսան 'ի Հայ լեզու փոխել զամենայն գիրս Աստուածաշունչս. բայց հայեցեալ տեսին զի ո՛չ է բաւական զամենայն սիղոբայսն ողջ ածել, և զշաղկապս և զբառս, սկսան դարձեալ 'ի հոգս մտանել վասն այնորիկ։ Իբրև թափեցան յամենայն մարդկային հնարից, ապաւինեցան յայն՝ որ ամենայն ինչ հնարաւոր է նմա, աղօթիւք խնդրեալ 'ի տեառնէ՝ յանձն առեալ զպահոց պնդութիւն և զաղօթս։ Իսկ այն՝ որ զկամս իրկիւղածաց իւրոց առնէ և աղօթից նոցա լսէ, ո՛չ անտես արար զբարի խնդրուածսն։ Երևեալ թաթ ձեռին հղօրին, գրելով 'ի վերայ վիմի, և ծանուցեալ զամենայն հանգամանսն, և յարուցեալ ստեղծ զգիրն։ Եւ ժողովեն մանկունս բազումս, և ուսուցանեն զբովանդակ աշխարհն, և բաժանեն զմանկունս մասունս և քաջուսմունս փափկաձայնս և երկարոգիս յերկուս, և կարգեն դպրոցս ասորերէն և յունարէն. և ուսեալ մանկունքն այնոքիկ զամենայն իմաստասիրութիւնս ներքինս և արտաքինս, եղեն թարգմանիչք ճշմարտութեամբ, և թարգմանեցին զամենայն գիրս հին և նոր կտակարանաց, սկսեալ յառակացն Սողոմոնի, բովանդակեցին զամենեսեան։ Սոքա ոչ միայն թարգմանիչք, այլ և վարդապետք և ուսուցիչք և մարգարէք պատմողք ապագայից։ Սոքա լցեալք Հոգւովն սրբով, խօսողք լեզուաց ազգաց, և թարգմանողք յազգաց ազգաց, զբանս խրթինս յայտ ածողք, և խորային խօսից պարզ մեկնիչք։ Սոքա սիւնք եկեղեցւոյ և ամրափակ պարիսպք որդւոց նորա, աշտանակք լուսատուք, և ջահք բորբոքեալք ընդհանուր ծաւալելով ընդ ոլորտս տիեզերաց։ Սոքա աստուածաբանք բանին կենաց, և արբուցիչք պասքելոց անձանց, զովացուցիչք տապոյ ջերմութեան բանսարկուին, և ջեռուցիչք ցրտացելոց 'ի հաւատս։ Սոքա երգեցող ծիծառունք, տատրակք քաղցրախօսք և ողջախոհք, սրբութեան սիրողք՝ և աղտեղութեան անարգիչք։ Սոքա մանկանց դաստիարակք, և երիտասարդաց բարի օրինակք, կուսանաց զարդք, ամուսնացելոց օրէնք, ծերոց սփոփիչք

և տկարաց մխիթարիչք, գլորելոց կանգնիչք և մեղուցելոց դարձուցիչք, հեղգացելոց խթանք յարուցիչք և ծրացելոց 'ի նոյն յօժարացուցիչք, ուսման սիրիչք և առեցողացն յանդիմանիչք։ Որոց վարդապետք և ուսուցիչք սուրբն Սահակ և Մեսրոպ, և գլխաւորք յաշակերտացն սուրբն Յովսէփ և Յոհան և Ղևոնդ և Սահակ և Մովսէս քերդողահայր և Մամբրէ վերծանող նորուն եղբայր, Եզնակ և Կորիւն, սուրբն Եղիշէ, Դաւիթ փիլիսոփայ, և Յովաննէս, տէր Աբրահամ, Արձան, Մուշէ, Խոսրով, Ղազար, և յետոյ Ստեփանոս Սիւնեաց եպիսկոպոս, և որ զգիրսն յարմարէր գեղեցիկ, Հռոմանոս Սամոսատցի, և այլք բազումք, յորոց ոմանք և յեպիսկոպոսութեան աստիճան հասին. և այլք առաջնորդք ժողովրդոց կարգեալք. և 'ի նոցանէ ոմանք 'ի վերայ թարգմանութեան և գիրս յինքեանց շարադրեցին. որպէս սքանչելին Մովսէս զՀայոց պատմութիւնն' 'ի խնդրոյ Սահակայ Բագրատունւոյ, և զպատմութիւն սրբուհւոյ Աստուածածնին և պատկերի նորա' 'ի խնդրոյ իշխանացն Արծրունեաց, և զպէտքն' 'ի խնդրոյ Թէոդորի ումեմն, և զներբողեան սրբոյ Հռիփսիմեանցն, և զՎարդավառին, և այլ ճառս և խօսս իմաստասիրականս։ Եւ Կորիւն զպատմութիւն սրբոյն Մեսրոպայ, և այլ ժամանակաց։ Եւ Եղիշէ զպատմութիւն սրբոց Վարդանանցն, և զգիրս կանոնացն, և այլ մեկնութիւնս գրոց սրբոց և զչարչարանաց փրկչին։ Եւ Ղազար զգիրս իւր։ Եւ Եզնակ խօսս յոլովս եթող' յօգուտ լսողաց։ Եւ Դաւիթ փիլիսոփայ զգիրս սահմանաց և զէակաց, և զմեկնութիւն Արիստոտէլի, և ներածութեանցն Պորփիւրի, և այլ հարցմունս և պատասխանիս, և զներբողեանն սրբոյ խաչին, և ծննդեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Նմանապէս և Մամբրէ վերծանող ասաց ներբողեանս 'ի յաւուրն արմաւենեաց 'ի գալուստն Քրիստոսի յԵրուսաղէմ յաւանակաւ։ Եւ յետոյ մեծն Ստեփանոս' Սիւնեաց եպիսկոպոս, բազում մեկնութիւնս գրոց սրբոց եթող, աւետարանացն համառօտ, և Յոբայ, և Դանիէլի, և Եզեկիէլի, և զպատասխանիս թղթոյն Գերմանոսի պատրիարքի Կոստանդնուպօլսի։ Արարին և երգս շարականաց քաղցր և

գեղեցիկ եղանակաւ և մեծ խորհրդով ծննդեանն Քրիստոսի և քառասնօրեայ գալստեանն 'ի տաճարն, մկրտութեանն և եկաւորութեանն 'ի Բեթանիա և յԵրուսաղէմ մեծի շաբաթուն չարչարանաց և յարութեանն, համբարձմանն և Հոգւոյ գալստեանն, խաչի և եկեղեցւոյ, և այլ տօնից տէրունականաց, և սրբոց ամենեցուն, ապաշխարութեան՝ և ամենայն ննջեցելոց, պէսպէս և զանազանս և անթիւս, որ մինչև ցայսօր պաշտի յեկեղեցիս Հայաստանեայց:

Իսկ սուրբ վարդապետն Մեսրոպ, իբրև ելից զերկիրս Հայոց ուսմամբ և թարգմանութեամբ, յանձն առնէ զամենայն կաթուղիկոսին Սահակայ, և ինքն գնացեալ յԱղուանս՝ առնէ և նոցա նշանագիրս. և վարդապետս թողեալ նոցա՝ գայ յաշխարհն Վրաց, առնէ և նոցա նշանագիրս ըստ տուելոյ նմա շնորհացն 'ի վերուստ. և այնպէս զուարճացուցեալ զաշխարհս ամենայն անպայման խընդութեամբ, թողեալ և նոցա վարդապետս յիւրոց աշակերտացն, դառնայ 'ի Հայս և գտանէ զմեծն Սահակ 'ի թարգմանութիւնս պարապեալ:

Իսկ թագաւորն Վռամշապուհ, կալեալ զթագաւորութիւնն ամս քսան՝ վախճանի բարւոք. և թագաւորէ դարձեալ Խոսրով եղբայր նորա ամ մի. և ապա Արտաշէս, որ և Արտաշիր, թագաւորէ յետ նորա:

Ընդ այն ժամանակս թագաւորեաց Յունաց բարեպաշտն Թէոդոս փոքր, որդի Արկադեայ: Եւ առաքէ սուրբն Սահակ զվարդապետն Մեսրոպ և զթոռն իւր Վարդան թղթով առ Թէոդոս կայսր, զի հրաման տացէ այնոցիկ՝ որ ընդ իշխանութեամբ նորա իցեն՝ ուսանել զգիրս հայերէնս, զի վերակացուք նոցա ոչ տային թոյլ ուսանել զգիրսն վասն նախանձու: Իսկ հեզն Թէոդոս մեղադրեաց զառաջինսն, եթէ ընդէր յԱսորւոց և ոչ 'ի Յունաց իմաստասիրաց, որ 'ի մերում քաղաքիս, խնդրէիք զգիրս. և պատմեաց Մեսրոպ, եթէ կատարումն արուեստին 'ի շնորհաց Հոգւոյն եղև: Յայնժամ գոհացեալ զԱստուծոյ բարեպաշտ թագաւորն, հրամայեաց զՄեսրոպ պատուել, իբրև զճշմարիտ և զիմաստուն վարդապետ: Նա և պատրիարքն Ատտիկոս և ամենայն ուխտ եկեղեցւոյն հանդերձ թագա-

ւորաւն գրեցին զՄեսրոպ ընդ առաջին վարդապետս եկեղեցւոյ՝ ընդ Աթանասի և ընդ Գրիգորեանսն, ընդ Բարսղի և ընդ Յովհաննու Ոսկեբերանի. և զՎարդան արար ստրատելատ բարեպաշտն Թէոդոս. գրեցին Թուղթ և առ մեծն Սահակ, տալով նմա ևս վեհագոյն, և հրաման ետ իշխանութեան իւրում ժողովել մանկունս մատակարարս յուսանել զգիրսն, և դարմանք՝ և ծախք յարքունուստ կարգեաց. ետ հրաման և յաշխարհին Հայոց շինել քաղաք 'ի Կարին քաղաքի, և անուանեաց զքաղաքն Թէոդուպոլիս, որ այժմ կոչի Կարնոյ քաղաք։ Եւ եկեալ Մեսրոպայ՝ ուսոյց ևս զկէս ազգին, որ ընդ իշխանութեամբ Թէոդոսի։

Իսկ թագաւորն Հայոց մանուկն Արտաշիր էր զազրագործ գիճասէր, որ ոչ միայն 'ի գիշերի, այլ և 'ի տուընջեան գործէր զգործն անարժան, և խրատու սրբոյն Սահակայ ոչ լսէր։ Վասն որոյ տաղտկացան ամենայն նախարարքն և եկին առ մեծն Սահակ, զի նովաւ հանդերձ ամբաստան լիցին Պարսից արքային՝ ընկենուլ զԱրտաշիր յաթոռոյն։ Իսկ սուրբն Սահակ ոչ առ յանձն ընկենուլ զգառն գայլոց։ Եւ նոքա երթեալ առ արքայն Պարսից Վռամ՝ ընկենուն զնա 'ի թագաւորութենէն. հանեն և զսուրբն Սահակ յաթոռոյն, զի ոչ հաւանեցաւ կամաց նոցա։ Եւ ապա բարձաւ թագաւորութիւնն Արշակունեաց յետ Արտաշրի՝ որ թագաւորեաց ամս վեց, և տևեաց թագաւորութիւնն Արշակունեաց 'ի Հայս ամս շէ։ Դադարեաց և քահանայապետութիւնն յարժանաւոր ցեղէ սրբոյն Գրիգորի, զի թէպէտ եկաց սուրբն Սահակ յետ այնորիկ ամս վեշտասան, և լուսաւոր վարդապետութեամբ պայծառացոյց զաշխարհս, սակայն անարժան վերակացուք և Պարսիկ մարզպանաւ, որպէս զՎեհմիհրշապուհ՝ փոխանակ Արտաշրի թագաւորին, և զոստխասէրն Սուրմակ՝ փոխանակ սրբոյն Սահակայ, որ եկաց ամ մի։ Եւ յետ Սուրմակայ Բրքիշօ Ասորի, վատթար քան զնա, ամս երիս։ Եւ յետ նորա Շամուէլ ևս անպիտան ամս հինգ։

Իսկ սուրբն Սահակ աղօթից և վարդապետութեան պարապեալ։ Եւ ապա եկեալ նախարարքն Հայոց, անկա-

Նէին առաջի սրբոյն Սահակայ, զմեղանս յանձն առեալ՝ թողութիւն խնդրէին 'ի նմանէ, և աղաչէին զնա՝ դառնալ ունել զաթոռ իւր, և ոչ հաւանէր նոցա. և իբրև կարի սաստկէին, յայնժամ պատմեաց նոցա զտեսիլն՝ զոր ետես, եթէ 'ի տեառնէ եղև այդ, դադարիլ քահանայապետութեան 'ի ցեղէ սրբոյն Գրիգորի, և թագաւորութեան 'ի տանէ Արշակունի. և թէ մերձ յերևումն նեռինն դարձեալ կանգնելոց է Աստուած զթագաւորութիւնն Արշակունեաց և զքահանայապետութիւնն յազգէ սրբոյն Գրիգորի, և ապա թոյլ ետուն նմա կեալ ըստ իւրոց կամաց: Եւ արքայն Պարսից զՎարդան մարզպան արարեալ Հայոց, տայ զաշխարհս 'ի ձեռս նորա: Եւ սուրբն Սահակ կալեալ զհայրապետութիւնն ամս յիսուն և մի, փոխի խաղաղական մահուամբ 'ի կարգս հրեշտակաց, տուեալ զաթոռն ցսուրբն Մեսրոպ, որ և նա 'ի նոյն ամի ելից զկենցաղս, յիշատակ բարի թողեալ ապագայիցս, յիսկզբան առաջին ամի Յազկերտի Պարսից արքայի, որդւոյ Վռամայ երկրորդի: Եւ առնու զաթոռն սուրբն Յովսէփ աշակերտ նոցա:

Իսկ Յազկերտ արքայ բռնադատէր զամենայն քրիստոնեայս ուրանալ զՔրիստոս, և դառնալ յօրէնս Մոգդեզանց. որում ոչ հաւանեալ զօրացն Հայոց՝ դառնան ընդդէմ հրամանին, սպանանեն զմոգսն և զմոգպետսն, որ եկեալ էին աւերել զեկեղեցիս, և բառնալ զհաւատս: Իսկ Յազկերտ իբրև լուաւ զայն ամենայն, առաքէ զօրս բազումս, պատերազմել ընդ զօրացն Հայոց, որոց գլխաւորք էին՝ սուրբն Վարդան և ընկերք իւր. և Պարսից աւերեալ զաշխարհս, խաղացուցանեն 'ի գերութիւն 'ի խրատու ուրացելոյն Վասակայ զմնացեալ նախարարսն և զսուրբն Յովսէփ և զՍահակ և զՂևոնդ և զընկերս նոցա, և տան 'ի կապանս արքունի. և յետ այնորիկ սպանեն զսուրբն Յովսէփ և զնորին ընկերս, և զնախարարսն արգելուն 'ի բանտ մինչև յաւուրս Պերոզի արքայի. և ապա արձակեալք 'ի կապանաց խնամօքն Աստուծոյ, խոստովանողական անուն ժառանգեալք, դառնան յաշխարհս Հայոց:

Իսկ յետ մահուան բարեպաշտին Թէոդոսի կայսեր առնու զթագաւորութիւնն Մարկիանոս, որ արար զժողովն

Քաղկեդոնի վեց հարիւր երեսուն և վեց եպիսկոպոսաց 'ի քակտումն ուղղափառ հաւատոյ, որ ելից զտիեզերս մինչև ցայսօր՝ հայհոյութիւն նոցա։

Յետ սորին Յովսէփայ առնու զկաթուղիկոսութիւնն տէր Գիւտ ամս հնգետասան, որ խնդրեաց 'ի Դաւթէ փիլիսոփայէ զԲարձրացուցէքն։ Եւ ապա Յոհան Մանդակունի ամս երկոտասան։ Սա բազում կարգաւորութիւնս եմոյծ յեկեղեցի. կարգեաց քարոզս աղուհացիցն և զաղօթս նոցա զերրորդ ժամուն և զվեցերորդին և զիններորդին, և զեկեղեցւոյ հիմնարկէքն, և ժամահարի, սկիհոյ և նաղգամայի և գիրք և կնունք և խաչ օրհնել և տապակ, զայս ամենայն կարգեալ, այլ և առաջի Պերոզի արքային համարձակութեամբ խոստովանեցաւ զՔրիստոս, և ոչ երկեաւ 'ի սպառնալեաց նորա, որ հրապուրէր 'ի բաց կալ 'ի Քրիստոսէ, և 'ի հաղորդութենէն Յունաց. և կատարեալ ամենայն առաքինութեամբ՝ փոխի առ Քրիստոս։

Իսկ յետ Մարկիանոսի թագաւորեաց Յունաց Լևոն մեծ, և Պերոզ Պարսից արքայ զՄանգնոս մարզպան արար Հայոց ամս քսան։ Յայսոսիկ աւուրս ժամանեաց Մովսէս քերթողահայրն։ Ի սոյն ժամանակի պայծառանայր յերկրի սքանչելի վարուք միայնաւորութեամբ սուրբ հայրն Թաթուլ՝ հանդերձ Վարոսիւ եղբարբ իւրով և Թումայիւ աշակերտիւ։ Եւ յետ Յոհաննու Մանդակունւոյ առնու զկաթուղիկոսութիւնն տէր Բաբգէն ամս հինգ, յաւուրս Զենոնի կայսեր։ Այս Զենոն նզովեաց զժողովն Քաղկեդոնի, երկոտասան գլուխ նզովից կարգեաց ընդդէմ նորա. ըզսմանէ ասեն թէ յաճախ ուտէր միս. և յաւուր միում յաճախ ուտելոյն քացախեալ յորովայնի նորա կերակուրն, յայնմանէ տաղտկացեալ, օրէնս եդ զերկու շաբաթս բարեկենդանին ոչ ուտել միս, այլ՝ պանիր, զոր Պանրուտան անուանեն մինչև ցայսօր։ Ասեն թէ Յուլիանոս եկեալ 'ի Կոստանդնուպօլիս, հրամայեաց յամենայն կերակուրս վաճառոյն խառնել յարենէ զոհիցն, և սուրբն Թէոդորոս իմացոյց քրիստոնէիցն. և նոքա ասացին, թէ մեզ չէ օրէն այս երկու շաբաթս միս ուտել, այլ պանիր, և զնոյն եդաւ Պանրուտէքն։ Եւ յաւուրս սորա եգիտ Գառնիկ երանելի

զնշխարս սրբոյն Գրիգորի 'ի յայրն Մանեայ, և հանգուցին 'ի Թորդան։

Եւ յետ Բաբգենայ առնու զկաթուղիկոսութիւնն տէր Սամուէլ ամս հինգ. յայսոսիկ աւուրս պայծառանայր սուրբն Սիմէոն Սիւնական յԱղէքսանդրիայ. և Տիմոթէոս երեց՝ ուղիղ հաւատով իմաստասիրէր, որ զամենարուեստ գիրսն գրեաց, հաւաքեալ զամենայն բանս աստուածայնոց արանց ընդդէմ ամենայն հերձուածողաց։ Բայց Պերոզ արքայ Պարսից կարի անմարդի բարս ունէր. վասն որոյ սպանաւ 'ի Հեփթաղաց, և թագաւորէ Վաղարշ եղբայր նորա։ Սա զՎահան Մամիկոնեան, զորդին Հմայեկայ, մարզպան կարգէ. այս Վահան պսակեաց զեկեղեցի զանազան իրօք. և զԱղանս արգելականս արար։ Ի սորա յաւուրս էր Ղազար Փարպեցի, ճարտասան և պատմագիր։ Եւ յետ Սամուէլի առնու զկաթուղիկոսութիւնն տէր Մուշէ ամս ութ։

Յետ Զենոնի կայսեր առնու զթագաւորութիւնն Անաստաս, որ և սա ընդ Զենոնի յուղղափառս գրեցաւ. զի կամեցաւ ժողով առնել ընդդէմ անօրէն ժողովոյն Քաղկեդոնի, հաստատել զուղղափառութիւն, և դեղակուր եղեալ մեռաւ։ Եւ թագաւորէ յետ նորա Յուստինոս, այր տգէտ և անաստուած, որ ելից զերկիր արեամբ ուղղափառաց. զի եդ յաշտանակի զՔաղկեդոնին, և կոտորեալ հալածեաց զասօղսն մի բնութիւն մարմնացելոյ Բանին։

Յետ Վաղարշու՝ Պարսից արքայի, առնու զթագն Կաւատ, և ապա Ջամասպ, և ապա Կաւատ։

Յետ Մուշէի առնու զկաթուղիկոսութիւնն տէր Սահակ ամս հինգ. և ապա տէր Քրիստափոր ամս հինգ. և յետ նորա տէր Ղեւոնդ ամս երկու։ Յաւուրս սորա արեգակն ամենեւին նուաղեցաւ, և սով սաստիկ եղև. և ապա տէր Ներսէս ամս ինն։ Յաւուրս սորա Եզրաս Անգեղացի, աշակերտ Մովսէսի եպիսկոպոսի Բագրեւանդայ բազմացոյց զդասս ճարտասանաց. դառնայ և Մամբրէ եղբայր Մովսէսի 'ի Հայս, զորմէ ասեն երրորդ գրել 'ի փիլիսոփայս։

Յետ Յուստինոսի առնու զթագն միւս Յուստինոս քուեր որդի նորա։ Սորա էր կին Թէոդորայ ուղղափառ, և աղաչէր վայր իւր հաստատել զուղղափառութիւն. և նա

թէպէտ և կամէր, ոչ իշխեաց յահէ երկաբնակացն, որք սպառնային նմա մահու։ Եւ առ սա եկեալ չարախորհ Հրեայ մի, ասաց՝ թէ պարտ է զՏեառնընդառաջն առնել ընդ ծննդեանն՝ զոր առնեն Յոյնք, և ոչ ըստ յայտնութեան՝ որ 'ի վեցն Յունվարի. զի մինչև ցայն վայր առաքելական դրութեամբն առնէին ամենայն քրիստոնեայք 'ի ժդ Փետրուարի։ Եւ կայսրն հաւանեալ անօրինին՝ այնպէս առնել, առաքէ յԵրուսաղէմ առնել այնպէս։ Իսկ Երուսաղէմացիքն ոչ առին յանձն փոխել զսուրբ հարցն աւանդութիւնս, որ մինչև ցայն օր պահեալ էր։ Եւ հրամայէ կայսրն զօրավարին բռնութեամբ առնել, և թէ ոք ընդդիմանայ՝ սպանանել. և ամենեքեան 'ի մահ դիմեցին յաղագս ճշմարտութեան։ Իսկ մարդասէրն Աստուած ոչ եթող զյուսացեալսն իւր ընդ վայր, այլ ահեղ սքանչելեօք զարհուրեցոյց զյանդգնեալսն. աջ աստուածային երևեցաւ 'ի սուրբ մատրանն, այլ և նշան ահեղ հրաշափայլ յերկինս՝ և արիւնատեսակ, և զարհուրեալ յայնմանէ՝ դադարեցին 'ի խնդրոյն։ Եւ 'ի գալ միւսոյ ամին՝ նոյն խռովութիւն յուզէր. զի հրաման ետ սաստիւ կորուսանել զընդդիմացօղսն. և նոքա առ հասարակ պնդեցան 'ի մահ, քան 'ի կեանս խղճիւ։ Եւ տեսեալ բարերարին Աստուծոյ զհաւատս մարդկան՝ այց արար հօտի իւրում, երևեալ սրբուհւոյ Աստուածածնին 'ի ծիրանի սեանն, ունելով 'ի գիրկս իւր զմանուկն Յիսուս, և ջուր բղխեալ 'ի սեանէ անտի, և որք օծանէին 'ի ջրոյ անտի, բժշկէին յիւրաքանչիւր ցաւոց. և այսպէս դադարեցին յունայն խնդրոյն։ Եւ 'ի ժամանակս Յուստինիանու խաւարեցաւ արեգակն ժը ամիս, գ ժամ լոյս տայր յօրն, և զայլն ո՛չ տիւ և ո՛չ գիշեր. և պտուղք տարւոյն այնորիկ ո՛չ հասան. և եղև ամենայն երկիր իբրև զբազմօրեայ հիւանդս։ Եւ եղև մարդամահ տարաժամ, որ բնաւ չէր լեալ, և նախ 'ի Կոստանդնուպօլիս սկսաւ, և մեռան յառաջին օրն հինգ հազար, և յերկրորդն տասն հազար, և յերրորդն հնգետասան հազար, և 'ի չորրորդն ութուտասան հազար, և թուեցին մինչև երեք հազար, որք մեռանէին 'ի յօրն. 'ի մէջ ձեռացն բուշտ ելանէր և առժամայն մեռանէր, մտանէր մարդ 'ի տուն և տեսանէր

զամենեսին մեռեալ. և նեխեցաւ քաղաքն, և ոչ կարէին թաղել զմեռեալս. և տարածեցաւ ընդ ամենայն երկիր. և բազում քաղաքք անմարդ մնացին. բայց միայն Հեմս ազրեցաւ. զի ապաւինեցան 'ի գլուխն Յովհաննու Մկրտչին, որ կայր անդ: Հաշտեցան ընդ միմեանս Յուստինիանոս և Խոսրով Պարսից արքայ. և ծաղկէր ուխտ ամենայն քրիստոնէութեան ընդ տիեզերս:

Իսկ Վահան Մամիկոնեան վախճանեալ բարւոք, յետ որոյ եկաց Վարդ եղբայր նորա ամս երիս, և յետ նորա Պարսիկք մարզպանք ամս երիս. և ապա Մեժեժ Գնունի ամս երեսուն և չորս:

Իսկ յետ Ներսիսի առնու զկաթուղիկոսութիւնն տէր Յովհաննէս ամս հնգետասան. յաւուրս սորա մարդամահ սաստիկ եղև, սկսեալ յարևմտից: Եւ յատաննին Հայոց սքանչելի եղև, զի հուր բորբոքեալ այրէր զապարանսն Համակարին Պարսկի, որ վերակացու էր աշխարհիս. իբրև ոչ կարէին շիջուցանել, ապաւինէին 'ի խաչն Քրիստոսի և աղաչէին զպաշտօնեայսն փութալ տանել զխաչն. իբրև մօտ եղև նշանն փրկական, առժամայն շիջաւ բոցն, և տեսեալ ամենեցուն՝ փառաւորէին զփրկիչն Քրիստոս, և գովէին զհաւատս քրիստոնէից, յոր հաւատաց երանելին Մախոժ, որ և վկայութեամբ կատարեցաւ 'ի Քրիստոս:

Իսկ յետ Յովանիսի առնու զկաթուղիկոսութիւնն տէր Մովսէս. յառաջին ամի սորա սուրբն Մանաճիհր, որ անուանեցաւ Գրիգոր, ազգաւ Ռաժիկ, մարտիրոսութեամբ կատարեցաւ. և յերրորդ ամի նորա լցեալ լինի 'ի ծննդենէն Քրիստոսի ամք շծէ. և բովանդակեցաւ կանոնք երկերիւրեկին՝ զոր կարգեաց իմաստասէրն Անդրէաս, եղբայր Մանգնոսի եպիսկոպոսի, հրամանաւ Կոստանդնի կայսեր վասն լուսնոցն զատկաց և այլ տօնից. զի իբրև լցաւ երկերիւր ամ, լուսինն զատկին 'ի Մարտի ԻԵ էր. և յիսկզբան Ապրիլի Բ. և զի ոչ 'ի սկիզբն կարացին գնալ, զի յետ ԻԵին գտանին էր Ապրիլի. և Ը լուսնունք 'ի մէջ կային, և այնր աղագաւ սկսան շփոթիլ տօնք ամենայն, և ամենայն արհեստք տոմարականք: Ապա հայրապետն Մովսէս ժողովեաց զիմաստունսն՝ որ էին 'ի ժամանակին, յորս էր և Աթանաս

'ի վանաց սուրբ Կարապետին, և կարգեցին Թուական Հայոց, որով ուղղեսցեն զզատիկ Տեառն այլովքն հանդերձ։ Բայց ոչ կարացեալ կեալ 'ի ճշմարտութեան անսխալ զամս ինն։ Իսկ 'ի տասներորդ Թուականին Իսաս անուն ոմն Աղէքսանդրացի, այր կորովի և իմաստուն, իբրև ետես զայնպիսի շփոթումն, որ յամենայն եկեղեցիս, ձայն արկեալ առ ինքն հաւաքեաց զամենայն իմաստունս որ յամենայն ազգաց, զԱդդէ՝ 'ի Գամրաց, զԳիգան՝ յԱսորւոց, զԵլոգս՝ 'ի Յունաց, զՓեննեհէս՝ 'ի Հրէաստանէ, զՅոհան՝ յԱրաբիոյ, և այլ արս երեսուն և վեց իւր նմանիս, և այլ բազմութեամբ. և յառաջ վարեալ զարուեստն Անդրէասի ՇԼԲ, այլ 'ի նոյն դարձաւ։ Ապա կարգեցին զանտարակուսելի օրինակն որ չէակն անուանի, բազմիմաստ և անսխալ, գլուխ եդեալ բոլորին զՃՆ Ապրիլի. զի իբրև աւարտի ՇԼԲ ամն, այլ 'ի նոյն դառնայ. և սկսան ուղղել ամենայն տօնք և արուեստք իրողութեան։ Բայց զԻրոն ոմն 'ի դրան Յուստիանոսի ոչ կոչեցին 'ի ժողովն. քամահանս վարկաւ անձին իւրում. իբրև տարաւ Իլոգս իմաստասէր զօրինակն առ Թագաւորն, սկսաւ Իրոն քննել մասունս էկի և չէկի որ ոչ երբեք լեալ էր. զի էակն և չէակն մասունք են՝ մին արեգական և միւսն լուսնի. այլ նա զհակառակն արար. զի փոխեաց զԱպրիլի ՃԵ 'ի ԺԴ, և զՃ 'ի Ե. այն վեշտասանն չբերէ ինչ սխալ, այլ այն ՃՆ եղեալ ՃԷ կիրակի ածէ մեզ. իսկ այն Ե նոցա շարաթ ըստ Իրոնի գործելեացն, և ընդ Հրեայսն առնեն զատիկն, և 'ի սուրբ ժողովոյն Նիկիայ նզովքն անկանին, որք օրինադրեցին ոչ առնել զատիկ ընդ խաչահանուսն։ Իսկ մեք 'ի միւս կիրակէն տամք և զերծանիմք 'ի նզովից. զի Հայք ոչ ընկալան զԹիւր օրինակն, որպէս և ոչ զժողովն Քաղկեդոնի, ընդ իշխանութեամբ Պարսից գոլով։ Զի յետ ութ ամի երևեցաւ եղծումն իրացն։

Իսկ յետ Մեժեժայ մարզպանի Հայոց Պարսիկք տիրեն ամս երեսուն և վեց։ Ընդ ժամանակս ընդ այն վախճանի եպիսկոպոսն Վրաց, և եկեալ առ տէր Մովսէս, զի տացէ նոցա եպիսկոպոս. և նա ձեռնադրեալ զոմն փակակալ իւրոյ եկեղեցւոյն Կիւրոն անուն, տայ նոցա հաւատա-

ցեալ 'ի նա՝ եթէ պահեսցէ զսէր և զմիաբանութիւն առ աթոռ սրբոյն Գրիգորի, զի մինչև ցայն վայր 'ի Հայոց առնուին զձեռնադրութիւնսն Վիրք: Այս Կիւրոն, յետ վախճանելոյն Մովսիսի, 'ի բաց քեցեցաւ 'ի դաւանութենէ ուղղափառ եկեղեցւոյն Քրիստոսի. և զՔաղկեդոնի դաւանութիւնն խոստովանեցաւ, զի 'ի մանկութենէ խմորեալ էր յաղանդն յաշխահին Յունաց լինելով նորա, և 'ի ծածուկ ունէր զչարութիւնն, որպէս հուր ընդ յարդիւ թագուցեալ. բայց ոչ իշխէր յայտնել 'ի կենդանութեանն Մովսիսի. զի զերեսուն ամ կալեալ զհայրապետութիւնն տէր Մովսէս՝ վախճանի, և տայ զտեղապահութիւնն աթոռոյն 'ի Վրթանէս քերթող: Իբրև ետես զթերութիւնն Կիւրոնի Մովսէս Ցուրտաւեցի եպիսկոպոսն, ազդ առնէ Վրթանիսի, զի թերևս կարասցէ ինչ օգնել մոլորեալ մտացն Կիւրոնի, առ որ բազում անգամ գրեաց աղաչանօք 'ի բաց կալ յանհանճար աղանդէն. իսկ նա ոչ միայն ոչ հաւանեցաւ գրելոցն, այլ և հալածեաց զՄովսէս եպիսկոպոս: Իբրև յաջորդեաց զաթոռ կաթուղիկոսութեանն Հայոց տէր Աբրահամ, յետ տէր Մովսիսի, նոյնպէս և նա գրեաց երկիցս և երիցս թուղթ, յիշեցուցանելով զթիւրութիւնն: Իսկ Կիւրիոն պատճառէր ոչ այլ ինչ խորհել, բայց զոր նոքայն խորհին. և ասէր զՄովսէս՝ զրպարտող նորին: Իսկ իբրև աստացաւ ժողով քննութեան լինել և տեսանել վասն այնր, յայտնապէս խոստովանեցաւ Կիւրիոն զդաւանութեանն Քաղկեդոնի. յայնժամ իբրև ետես Աբրահամ՝ եթէ ոչինչ օգտեցաւ, այլ աճեալ յանամօթութիւն եկն, յայնժամ գրեաց թուղթ շրջաբերական առ վիճակեալս իւր, զի մի ամենեւին հաղորդեսցին ընդ Վիրս՝ եկեղեցեաւ, կամ ուխտիւ, կամ ամուսնութեամբ, կամ այլ ինչ հոգևորական իրօք. բայց 'ի վաճառէ իմեքէ՝ որպէս 'ի հեթանոսաց. զի մի մարմնական ծանօթութեամբն 'ի հոգևոր վնասն ընկղմեսցին. և յայնմ հետէ բարձաւ ձեռնադրութիւնն Վրաց՝ որ 'ի Հայոց. զի սկսան նոքա զՅունօք թևակոխել: Զայս ամենայն ստուգութեամբ ուսուցանէ քեզ Ուխտանէս եպիսկոպոս, զի նա զամենայն չիով գրեաց զթուղթսն և զպատասխանիսն, և զքաջախօսութիւնն Պետրոսի եպիսկոպոսի,

որ պատգամաւոր էր տեառն Աբրահամու՝ առ Կիւրիոն, զոր Վիրք վասն համարձակութեան նորա՝ Գայլ կոչեցին զնա։

Յետ Յուստինիանոսի կայսեր՝ միւս Յուստինիանոս, այր չար և պիղծ, որ ըմբռնեալ եղան յուղղափառաց, և ինքն և պատրիարքն Յոհան այսահարեալք մոլեգնէին. և այնպէս սատակեցան։ Եւ ապա թագաւորեաց Տիբեր, և յետ նորա Մորիկ։ Զսա ասեն 'ի Հայոց, յՕշականն գեղջէ, և այլք թէ 'ի Տարօնոյ. աղքատութեան պատճառաւ երթեալ 'ի Կոստանդնուպօլիս, և անդ 'ի դիպուածէ իմեքէ բարեբախտիկ եղեալ՝ թագաւորեաց այսպիսի պատճառաւ։ Եղև մեռանիլ Տիբերի կայսեր, և մեծամեծքն ընդ միմեանս հակառակեալ, ոչ հնազանդելով միմեանց. և էր մարտ անհնարին 'ի մէջ նոցա; որպէս թէ ո՞ թագաւորեսցէ՝ թագաւորեսցէ։ Իսկ պատրիարքն 'ի մէջ անցեալ համոզեաց զնոսա արկանել վիճակս, և ում հասանիցէ՝ նմա տալ զթագաւորութիւնն, և այլոցն հնազանդել. և զայս (արարին) երդմամբ՝ և ամենեցուն մուրհակաւ. և էր վիճակն այսպիսի, ընդ լուսանալն բանալ զաւագ դուռն քաղաքին և զայր՝ որ պատահիցէ անդ, թէպէտ կարի յանարգաց իցէ, ածել 'ի պալատն արքունի, և իշխանացն նստել ամենեցուն, և յոյր գլուխ դիցէ զթագն, նմա տալ զթագաւորութիւնն։ Հաւանեցան ամենեքեան և դադարեցին 'ի խռովութենէ. և իբրև եհաս ժամն ժամադրեալ, բացեալ զդուռն քաղաքին, տեսեալ զՄորիկ առ դուրսն՝ բարձեալ ցօղուն ինչ առ 'ի վաճառել և լնուլ զպէտս իւր, և յափշտակեալ զօրացն՝ տարան 'ի բաղանիսն և լուացեալ զնա՝ զգեցուցին նմա հանդերձս ազնիւս, և տարան զնա յարքունիսն։ Եւ իբրև ասացին նմա վասն որոյ կոչեցաւն նա, պահանջեաց 'ի նոցանէ գիրս և երդմունս, զի մի սպանցեն զնա մնացեալքն 'ի թագէն։ Եւ նոքա երդուան նմա սաստիկ, զի անհոգ լիցի յայնմանէ. բազմեալ էին ամենեքեան սնոտի յուսով, և իւրաքանչիւր ոք անձին իւրում ասէր թէ լիցի։ Կայր աթոռն, և 'ի վերայ նորա թագն, և կօշիկքն՝ հուպ առ նմին։ Անց Մորիկ 'ի մէջ, և առեալ զթագն՝ սկսաւ շրջել ընդ բազմեալսն։ Իբրև եկն առ առաջինն՝ ուրախացաւ նա, բայց տրտմեցաւ երկրորդն՝ իբրև

ելթող զնա, դարձեալ կալաւ զնա տրտմութիւն, և զընկերն նորա, ուրախութիւն. և այսպէս ըստ կարգի, իբրև շրջեցաւ նա երկիցս և երիցս, տրտմեցոյց զնոսա և ուրախացոյց։ Անց նստաւ 'ի վերայ աթոռոյն, և եդ զթագն 'ի գլուխն իւր, և տեսեալ ամենեցուն սխրացան։ Բայց զի երդուեալ էին նմա, թէ յոյր գլուխ և դնիցես դու՝ մեք հնազանդիմք նմա, մատուցեալ պատրիարքն՝ ագոյց զկօշիկսն յոտս նորա. և երկիր եպագ նմա, նոյնպէս ամենեքեան երկրպագեցին և ասեն՝ կեցցէ արքայ Մօրիկ։ Նա արար ժողով քննութեան վասն դաւանութեան Քաղկեդոնի. կոչեաց զվարդապետս Հայոց. և չոգան Արթանէս և Գրիգոր և այլ վարդապետք, և ոչ ինչ օգտեցուցեալ զՅոյնս՝ դարձան նզովելով։ Առ սա ապաստանեալ նախարարացն Հայոց, փախուցեալք 'ի տէրութենէն Պարսից։ Իսկ սա անմարդի բարս ցուցեալ՝ ոչ ընդարձակեաց նոցա, այլ և զկարգեալ ռոճիկսն յառաջին թագաւորացն արգել 'ի նոցանէ։ Ասեն զնմանէ՝ թէ առաքեաց առ հայր իւր թողուլ զպանդխտութիւնն և գալ վայելել 'ի փառս նորա. և եթէ ոչ՝ խրատ առաքել նմա, որով կարասցէ վարել զթագաւորութիւնն. և երթեալ սպասաւորացն, գտին զնա՝ զի դարմանէր պարտէզ, և ասացին նմա զհրամանն արքունի. նա պատասխանի ետ և ասէ, թագաւորի հայր ես ոչ վայելեմ, և ինքն սկսաւ զմեծամեծ կաղամբսն՝ որ 'ի պարտիզի անդ, արմատախիլ առնել, կտրել զգլուխսն և ծածկել ընդ հողովն, և զմանունսն փայփայել և յօրինել. և արանցն տեսեալ զայն՝ համարեցան զնա բախած. և թողեալ 'ի բաց գնացին։ Իսկ զոր ինչ արար նա, նոքա ոչ գիտացին. և գնացեալ առ թագաւորն՝ պատմեցին զամենայն, և զյիմարութիւնն՝ զոր գործեաց 'ի պարտիզին։ Իսկ Մօրիկ իբրև լուաւ, ծիծաղեցաւ և ոչ ինչ յայտնեաց. և կոչեալ զմեծամեծսն՝ զոր կարծէր թէ մատան են թագաւորութեան նորա, եբարձ զամենեսեան՝ զի մի՛ դաւ ինչ լիցին թագաւորութեան նորա, և զփոքունսն 'ի տեղիս նոցա կարգեաց. և կոչեցեալ զարսն զայնոսիկ՝ զոր առաքեաց առ հայր իւր, ասէ ցնոսա. այս են խրատ հօր իմոյ՝ զոր արար 'ի պարտիզին, և դուք ոչ իմացայք։

կէսք ասեն զսա յԱրփոսու գեղջէ Կապպադովկացւոց, զոր յետոյ քաղաք շինեաց, և զօրավար Տիբերի։ Բայց Մորիկ վասն խստութեան բարուցն ազգաւ և որդւովք ողորմատես մահուամբ կորնչի յիւրոց զօրաց. քանզի յարեան 'ի վերայ նորա զօրք իւր, որոց առաջնորդ էր Փոկաս, որ թարգմանի հուր, և սպան զնա, և ինքն թագաւորեաց ընդ նորա։

Նա յետ Որմզդի Պարսից արքայի թագաւորէ Խոսրով ձեռնտուութեամբ Մորկայ։ Առանձին Սմբատ Բագրատունի բաղում մարտս յարդարէր առաւել քաջութեամբ առ թշնամիսն Խոսրովայ, վասն որոյ պատուեալ զՍմբատ՝ տայ նմա զմարզպանութիւնն Վրկան աշխարհի. և նա երթեալ գտանէ ազգս գերեալս 'ի Հայոց անդ՝ որ Սագաստանն կոչի, մոռացեալ զլեզու և զդպրութիւն, զոր նորոգեալ Սմբատայ, և զՀաբել անդ եպիսկոպոս տայ նոցա՝ ձեռնադրելով կաթուղիկոսին Հայոց, կացոյց վիճակ աթոռ սրբոյն Գրիգորի։

Ի տասներորդ ամի տէառն Աբրահամու, և յԾէ թուին Հայոց եկին 'ի Հայս Ասորիք, արք քաջաբանք, և կամէին սերմանել զաղանդն Նեստորի, և նզովեալ հալածեցին, բայց ոմանք ընկալան. և նոքա թարգմանեցին նոցա գիրս սուտս զԳօրտոսակ. զԿիրակոսակ, զՊօղոսի տեսիլն, զԱդամայ ապաշխարութիւնն, զԴիաթեկ, զՄանկութիւն տեառն, և զՍեբիոս, և զՃիռն օրհնութեան, և զանթաքչելի մատեանսն, և զաւետարանի մեկնութիւն զՄանեայ. և որ հաւատայ նոցա, նզովի յուղղափառաց։

Նա յետ տեառն Աբրահամու առնու զկաթուղիկոսութիւնն տէր Յոհան 'ի Կոգովտէ, 'ի գեղջէ Բագրանէ, ամս քսան և վեց. ոմանք 'ի պատմագրաց զերկոսեանն 'ի միում ամի ասեն վախճանեալ զԱբրահամ և զՅոհան, և կէսք ոչ։

Յետ Խոսրով Պարսից արքայ, իբրև լուաւ զմահն Մորկայ, վրէժխնդիր եղև, զի դաշնադիրք էին միմեանց, և զբաղում գաւառս Յունաց աւերեաց։ Առաքէ և զԽուռիան անուն զօրավար իւր 'ի Պաղեստինէ, որ երթեալ պաշարեաց զսուրբ քաղաքն Երուսաղէմ, և առ զնա. և կոտորեաց

զբնակիչս նորա. գերեաց և զխաչն Քրիստոսի, և տարաւ զնա 'ի Պարսիկս. գնաց բազում զօրօք 'ի վերայ թագաւորին Հերակլի, և 'ի նեղ արկ զթագաւորական քաղաքն Կոստանդնուպօլիս: Իսկ կայսրն Հերակլէս ձեռնտուութեամբ Խաքանայ՝ խազրաց թագաւորի՝ գնաց յաշխարհն Պարսից. սպան զԽոսրով, դարձոյց և զսուրբ խաչն, և առաքեաց յԵրուսաղէմ: Զայս Խաքան ծաղր արարին բնակիչք քաղաքին Տփխեաց. առեալ դդում մի՝ նկարեցին զպատկերն Խաքանայ 'ի վերայ նորա կոյր, որպէս թէ աչք նոցա նեղ են և փոքր, և եդեալ զդդումն 'ի վերայ պարսպին հանդէպ նորա՝ սկսան նետաձիգ լինել: Իսկ նորա տեսեալ զայն՝ բարկացաւ յոյժ, բայց զի ժամանակ ձմերայնին էր, ոչ ինչ կարաց հատուցանել: Բայց 'ի գալ գարնան եկեալ պաշարէ զնա, և առնու զքաղաքն. հրամայեաց կոտորել զարս և զկանայս և ըզմանկտի, և աւերեալ զքաղաքն, առեալ զինչս նոցա, գնաց 'ի քաղաքն իւր:

Իսկ յետ սպանման մարզպանացն Ճիհր Բուրզենայ, Ճիհր Վշնասպ Սուհենայ, Ճիհր Վզոն Միհրանայ, և այլ Ցանկաստանացն, Դաւիթ Սահառունի մարզպան լեալ ամս երեսուն: Յաւուր սորա 'ի կէ թուականին եղև շինուած կաթուղիկէին Մրենոյ:

Յետ տեառն Յոհաննիսի առնու զկաթուղիկոսութիւնն տէր Կոմիտաս ամս ութ: Սա շինեաց զսուրբ տիկնոջն Հռիփսիմեայ զվկայարանն պայծառ և հրաշալի. զի խրթին էր առաջին շինուածն, գտանէ 'ի նմին զնշխարս ոսկերաց սրբոյն, կնքեալ մատանեաւ սրբոյն Գրիգորի և սրբոյն Սահակայ, և ոչ իշխեաց բանալ. այլ իւրով մատանեաւն կնքեալ ամփոփէ անդէն. արարեալ երգս շարականաց սրբոցն հայերէն այբուբենօք, որոյ սկիզբն է՝ անձինք նուիրեալք:

Յետ Խոսրովու Պարսից արքայի առնու զթագաւորութիւնն Կաւատ: Սա արձակեաց 'ի գերութենէ զՎիրոյ կաթուղիկոսն Աղուանից, զոր 'ի բանտի եդեալ էր հայր նորա. և յետ Կաւատայ Արտաշիր. և ապա Խոռեամ հրամանաւ Հերակլի. և ապա Խոսրով. և յետ նորա Բորն, և Զարմանդուխտ. սոքա ամենեքեան սակաւակեացք. և ապա Ազկերտ:

Իսկ յետ սեաւն կոմիտասայ առնու զկաթուղիկոսութիւնն տէր Քրիստափոր ամս երկու. և ապա Եզր ամս տասն։ Իսկ Հերակլի կայսեր եկեալ 'ի Կարնոյ քաղաք, ժողով արարեալ, կոչէ և զԵզր կաթուղիկոս Հայոց։ Իսկ նա ոչ տարաւ ընդ իւր արս իմաստունս, մանաւանդ զՅոհան վարդապետ Մայրավանեցի, որ յոյժ տեղեակ էր աստուածային գրոց։ Երթեալ հաւանի աղանդոյն Քաղկեդոնի։ Եւ տայ նմա պարգևս կայսրն զերիր մասն Կողբայ և զաղն բովանդակ։ Եւ եկեալ (Եզրի) 'ի Հայս, փոխեաց զամենայն ուղղափառ կարգաւորութիւնս եկեղեցւոյ, և զընթերցուածն Յակոբայ և Կիւրղի, փոխանակ այնորիկ զԱրտեմոնեն եդեալ, զոր յանդիմանեաց սուրբ վարդապետն Յոհան, եթէ ընդէր ադիտաբար հաւանեալ եղեր, և լուծեր զբարուոք կարգաւորութիւնսն՝ որ 'ի սրբոյն Գրիգորէ մինչև ցայսօր պահեալ էր 'ի մէջ ազգիս Հայոց։ Իսկ նա՝ փոխանակ զղջանալոյ՝ հալածեաց զսուրբն անարգանօք, Մայրագոմեցի կոչելով։ Իսկ մի ոմն յաշակերտացն Յոհաննու, Սարգիս անուն, հերձուած յարոյց. և Եզր համբաւեաց՝ եթէ Յոհաննու է հերձուածն, և գիրս շարագրեաց. և ընդ այլ հերձուածողացն բանս եդեալ, զբանս աշակերտի նորա՝ Յոհաննու վերայ գրելով, զոր մի ոք իշխեսցէ բամբասել զսուրբն։ Եւ երթեալ Յոհաննու ընտրեաց իւր տեղի լռութեան 'ի կողմանս Գետաբակս բերդոյ, և անդ դադարեաց զաւուրս ինչ՝ հանապազ ընդ Աստուծոյ խօսելով։ Եցոյց Աստուած և մեծ սքանչելիս վկայ լինել սրբութեան նորա. զի էր նորա էշ մի՝ որ սպասաւորէր զպէտս նորա. պատահեաց նմա արջ մի և եկեր զնա։ Եւ իբրև ասացին Յոհաննու, երթեալ ասէ ցարջն. որովհետև սպաներ զսպասաւորն մեր, արդ՝ փոխանակ նորա դու սպասաւորեա՛ մեզ։ Եւ երթեալ արջուն սպասաւորէր ամենայն հնազանդութեամբ 'ի բեռնակալութիւնս և յամենայն ինչ ամս բազումս. և յետ ժամանակաց պատահեալ որսորդաց՝ սպանին զա՛րջն, կարծելով վայրենի զնա. և իբրև տեսին եղբարք վանիցն՝ ընկեցին զնա 'ի խորափիտ մի։ Մինչև ցայսօր բնակիչք վայրացն երթան և առնուն հող 'ի տեղւոջէն՝ յորում թաղեցաւ արջն. և լինի դեղ ամենայն ցաւոց անաս-

նոց աղօթիւքն Յոհաննու։ Նոյնպէս և գերեզման սրբոյն դեղ է ամենայն ցաւոց և վտանգելոց, որք հաւատով ապաւինին յաղօթս սրբոյն։

Յետ Դաւթի Սահառունւոյ լինի մարզպան Հայոց Թէոդորոս Ռշտունի ամս քսան և հինգ։ Եւ յետ Ներսեհի կայսեր թագաւորէ որդի նորա Կոստանդին։

Իսկ իբրև լցաւ 'ի ծննդենէն Քրիստոսի ամք ոիը, և Հայոց թուականին հէ, յայտնեցաւ մի սուտ մարգարէ հեթանոսաց, աղանդեալ 'ի Կերինթոսէ և յԱրիանոսաց. Մահմետ անուն, Իսմայէլի ազգաւ, յորդւոցն Հագարու։ Սա մինչդեռ վաճառականութեան աղագաւ երթայր յԵգիպտոս, հանդիպեցաւ միայնակեցի միոջ, որում անուն էր Սերգիս Բխիրայ՝ Արիանոս աղանդով, յանապատին Սինայ։ Սա ուսոյց Մահմետի զսուտ աստուածածանօթութիւն, գովեաց նմա զհին օրէնսն՝ զուսեալն 'ի Մովսիսէ, և ասաց. եթէ լուիցես բանից իմոց, լինիս առաջնորդ և օրէնսդիր 'ի վերայ ազգին քո։ Եւ գնացեալ Մահմետի զճանապարհս իւր՝ յանկարծակի եմուտ 'ի նա ոգի պիղծ, և անկեալ փրփրեցաւ։ Եւ ընկերաց նորա տեսեալ զայն՝ կացին առ նմա մինչև սակաւ մի ուշաբերեցաւ. և ապա յարուցին զնա. հարցեալ զպատճառս այնպիսի մոլեգնութեանն, ասէր 'ի հրեշտակէ սրբոյ լինել զայն, և յղել զնա պատգամաւոր յազգն իւր. և երթեալ 'ի քաղաք իւր՝ սկսաւ քարոզել, զոր ուսոյց նմա սուտ քրիստոնեայն։ Էին նմա հօրեղբարք գլխաւորք. նոքա հալածեցին զնա, սպառնացեալք մահու չափ, եթէ այլ այնպիսի բանս ինչ լսիցեն 'ի նմանէ. և նա երթեալ 'ի տուն իւր՝ նստէր տրտում։ Եւ մտեալ Ալի, որ էր նորա հօրեղբօր որդի և փեսայ, և հարցեալ զպատճառս տրտմութեան, և նա ասացեալ՝ թէ վասն զի զԱստուած քարոզեցի նոցա, սպառնացան մահու ինձ. և ասէ Ալի. եկ երթիցուք դարձեալ քարոզեսցուք. եթէ ընդդէմ դառնան մեզ, սպանցուք զնոսա սրով. զի այր զօրաւոր էր Ալի, և արք զօրաւորք՝ որ ընդ նմա։ Եւ իբրև սկսան քարոզել եղև խռովութիւն յոյժ և պատերազմ. և պարտեցաւ կողմն Մահմետի. և փախեալ գնացին 'ի փոքր Մադինամ, ուր էին ժողովեալ Հրեայք երկոտասան հազար,

զոր հալածեալ էր կոստանդնի կայսեր. և առեալ զնոսա Մահմետի, չոգաւ 'ի վերայ այնոցիկ՝ որ հալածեցինն զնա. և կոտորեաց զնոսա։ Իբրև տեսին Հրեայքն զյաջողուած գործոյն, կացուցին զնա իւրեանց առաջնորդ, յարեցան 'ի նոսա և այլ Մադիանացիք, և քաղըրթ առաջնորդ, և եղեն բանակ մեծ, չոգան 'ի վերայ Պաղեստինի, հարին զզօրսն Հոռոմոց, որք յափշտակէին զինչս վաճառականաց նոցա. և իբրև տեսին զյաղթութիւնն, չոգան 'ի վերայ տէրութեանն Պարսից, սպանին զԱզկերտ թագաւոր Պարսից, և դադարեաց թագաւորութիւնն Պարսից։ Զայսու ժամանակաւ խաւարեցաւ կէս արեգականն. Արեգ՝ աշնան ամիս, մինչև 'ի Քաղոց՝ ամարան ամիս։ Ապա արձակեցին զօրս ընդ երիս կողմանս՝ մի 'ի Հռոմ Ցաղ անուն և խրատատու Ցովէլ, որք կոտորեցին 'ի Հոռոմոց զեօթանասուն հազար։ Եւ 'ի Պարսից կողմն արձակեցին զՕթման ամիրայ, և զՄաւիէ զօրավար. նոքա հարին զՄիրդատ քսան հազարաւ, և զՄուշեղ սպարապետն Հայոց իւրով սպայիւն, և տիրեցին բոլոր աշխարհիս Հայոց, Պարսից և Ասորւոց, Եգիպտացւոց, Մարաց և Պարթևաց. սկսան շրջել զհաւատս նոցա, և նոքա ոչ հաւանեցան։ Իսկ Մադիանացիքն և հաւանեալքն նոցա խնդրեցին օրէնս 'ի Մահմետէ, և նա ետ նոցա օրէնս՝ յոյժ խայտառականօք. ասաց մարմնաւոր լինել զարքայութիւնն 'ի վերայ երկրի, կերակուր պորտոյ, և ամուսնութիւն յետ արքայութեանն. և կանանց կոյս մնացելոց հանապազ խառնակութիւն. ուսոյց և օրէնս հակառակ հնոյ և նորոյ օրինադրութեանց, իմանալ զանարժանս, և խօսող զանուղղայս խայտառակաց, մեծապէս ձաղանօք զուխտադրութիւնն Աստուծոյ՝ որ առ Աբրահամ, զի գրեալ է. Թլփատեսցի ձեր ամենայն արու ութօրեայ։ Իսկ սա օրինադրեաց. յորժամ կամեսցի՝ թլփատել, յորում հասակի և իցէ, ոչ միայն զարս, այլ և զկանայս անգամ. և փոխանակ լուսաւոր մկրտութեանն՝ զոր ասաց տէր մեր Յիսուս Քրիստոս, եթէ որք ոչ ծնցի 'ի ջրոյ և 'ի հոգւոյ, ոչ մտանիցէ յարքայութիւն Աստուծոյ. սա ասաց հանապազ գործել զչարիս և ջրով լոկով ողողանիլ և սրբիլ, և այլ բազում անարժանս և մոլեկան աւանդութիւնս և

ծիծաղելիս։ Սա եղև օրէնսդիր պատգամաբեր ամս հինգ, և կոտորեցին զԲզնունիս, զԱղիովիտ և զՏարօն։ Եւ Մահմետ արգել զսուրն, և բանիւ խրատու նորա հնազանդեցին զմեծ մասն տիեզերաց. և անմոռաց երդմամբ կնքեաց մուրհակ Հայոց աշխարհիս համարձակութեամբ ունել զքրիստոնէութիւն, և վաճառեաց նոցա զհաւատս նոցա՝ յամենայն տանէ առեալ չորս դրամ և երեք մոթ խորբալ՝ որ է ցորեան, և ձիոյ տոպրակ մի և պարան մի մազէ և ձեթնարար մի։ Իսկ 'ի քահանայից և յազատաց և 'ի հեծելոց ոչ հրամայեաց առնուլ զհարկն, և 'ի տիրելն աշխարհաց՝ կոչեցան Ամիրմումնիք։ Եւ Է ամին Մահմետի կալան զիշխանութիւնն իսմայէլի Աբուբաքր, Օթման և Ամր ամս երեսուն և ութ։

Յետ Եզրի առնու զկաթուղիկոսութիւնն տէր Ներսէս ամս քսան։ Սա շինեաց զվկայարան սրբոյն Սարգսի՝ որ 'ի Դուին. 'ի կոտորելն իսմայէլի զքաղաքն Դուին երկոտասան հազար՝ արեամբ կոտորելոցն ծածկեցաւ սուրբ սեղանն և աւազանն, և զայլսն գերեցին աւելի քան զերեսուն ու հինգ հազար։ Եւ զոսկերս սպանելոցն ամփոփեաց հայրապետն 'ի նոյն վկայարանն. շինեաց և զՎիրապն ընդ տեղիս սրբոյն Գրիգորի. շինեաց և զսուրբն Գրիգոր, զզարմացուցիչն տեսողաց, որ յետոյ աւերեցաւ 'ի Տաճկաց։ Առ սա եկեալ Ասորւոց ուղղափառաց՝ խնդրէին 'ի սմանէ եպիսկոպոս. և նա պահանջեաց 'ի նոցանէ գրով խոստովանութիւն հաւատոյ. և նոքա ետուն նմա զայս բան. «Հաւատամք 'ի Հայր և յՈրդի և 'ի սուրբ Հոգին. 'ի Հայր՝ որոյ հայրութիւնն անհասանելի է, 'ի յՈրդի՝ որոյ ծնելութիւնն անբաժանելի է, և 'ի սուրբ Հոգին՝ որ 'ի Հօրէ ելանէ, և ընդ Հօր և ընդ Որդւոյ երկրպագի և փառաւորի». զոր և կցորդ արարեալ մինչև ցայսօր, պաշտի յեկեղեցիս Հայոց յաւուր Ճրագալուցի յայտնութեան տեառն։ Եւ ապա ձեռնադրէ նոցա եպիսկոպոս զԱբդիշոյ։ Դէպ եղև սմա աշխարհաժողով բազմութեամբ 'ի տօնի Վարդավառին լինել 'ի Բագուան. և բազմացեալ էին երգք շարականաց յեկեղեցիս Հայոց, մինչև ոչ գիտել միոյ գաւառի երգեցող՝ զմիւսոյն. և ասացին շարական Վարդավառի հարցինն, և միւս դասն ոչ կարաց փոխել զնա, և փոխե-

ցին բազում շարականս, և ոչ զայն ևս գիտէին։ Ապա Հայրապետն Ներսէս հաւանութեամբ ամենայն ժողովոյն ընտրեցին զպիտանին և զօգտակարն. զի յամենայն յեկեղեցիս յամենայն աւուր մի պաշտօն լիցի ըստ աւուրն խորհրդոյ. և ընտրեցին արս իմաստունս, զի շրջեսցին ընդ ամենայն աշխարհս Հայոց, և զնոյն կարգաւորութիւնս հաստատեսցեն, որ է մինչև ցայսօր։

Յետ Թէոդորոսի եկաց մարզպան Հայոց Համազասպ ամս եօթն։ Եւ յետ Ներսիսի առ զկաթուղիկոսութիւնն տէր Անաստաս ամս վեց։ Սա կոչեաց առ ինքն զմեծ վարդապետն Անանիա՝ 'ի Շիրակ գաւառէ, այր բանիբուն և հանճարեղ, գիտող յոյժ ամենայն տումարական արուեստից, զի կարգեսցեն անշարժ տօմար Հայոց, որպէս այլոց ազգաց. զոր արարեալ մեծաւ ջանիւ՝ մինչ կամէին ժողովով հաստատել, վախճանի սուրբն Անաստաս, անփոյթ եղեալ իրն զկնի եկելոցն, այլ առաջին կարգաւն վարէին։ Ի հինգերորդ ամի Անաստասայ եղև շինուած կաթուղիկէին՝ որ յաւանն Արուճ, զոր շինեաց Գրիգոր Պատրիկն, յորում մկրտի Նահատակն Դաւիթ, ազգաւ Պարսիկ, որ յառաջն Սուրհան կոչէր, և վասն վկայութեանն Քրիստոսի կախեցաւ զփայտէ 'ի Դուին։

Յետ Համազասպայ եղև մարզպան Հայոց Գրիգոր Մամիկոնեան ամս տասն, զոր սպանին Խազիրք։ Եւ Ներսէս Շիրակացի իշխան եկաց ամս երեք։ Զկնի Անաստասայ եկաց կաթուղիկոս տէր Իսրայէլ ամս վեց. և ապա տէր Սահակ ամս քսան և վեց։ Սա հոգաւ դեսպանութեան աղագաւ առ Մահմետ զօրավարն Իսմայէլի. որ գայր 'ի կոտորել զազգս Հայոց վասն ապստամբութեանն 'ի Տաճկաց. և հասեալ 'ի Խառան՝ հիւանդացաւ և մեռաւ իսկ։ Եւ դեռ ևս չէր եկեալ Մահմետ 'ի Խառան՝ գրեաց գիր պաղատանաց, եթէ ես եկի ընդ առաջ քո՝ աղաչել զերեսս քո վասն ազգին իմոյ, և ոչ ժամանեցի տեսութեան քո, զի որ ամենեցուն շտեմարանն է՝ կոչեաց զիս։ Այլ երդումն տամ քեզ զուխտադրութիւնն Աստուծոյ առ Աբրահամ և առ Իսմայէլ հայրն ձեր, զի մի ինչ արասցես չար ազգիս իմոյ, և հարկեսցին ձեզ. եթէ լուիցես աղա-

չանաց իմոց, եկեսցեն օրհնութիւնք իմ 'ի վերայ քո, և եթէ ոչ լուիցես՝ անէծք ժամանեսցեն քեզ. և դարձուսցէ Աստուած զսիրտս զօրաց քոց ոչ տանել զկամս քո։ Եւ իբրև եկն Մահմետ 'ի Խառան, ասացին նմա զամենայն, և ետուն նմա զթուղթն. և իբրև ընթերցաւ, եհարց՝ եթէ ուր իցէ գերեզմանն. և ցուցին նմա զտեղին, զի առ ժամայն էր վախճանեալ, և չև ևս էր թաղեալ. և երթեալ վաղվաղակի ըստ տինին իւրեանց՝ ողջոյն ետ մեռելոյն իբրև կենդանւոյ։ Եւ ասեն՝ թէ մեռեալ մարմինն պատասխանի ետ, և ընկալաւ զողջոյնն իբրև զկենդանւոյ, և ասաց Մահմետ. 'ի քումմէ գրոյ ծանեայ զքեզ, այր Աստուծոյ. արարից և կատարեցից զամենայն հրամանս քո։ Եւ վաղվաղակի ելոյծ զթշնամութիւնն, և ոստիկանս առաքեաց Հայոց՝ հարկ եդեալ 'ի վերայ նոցա. և ինքն դարձաւ յաշխարհ իւր։ Եւ յետ Սահակայ առնու զկաթուղիկոսութիւնն տէր Եղիայ։

Իսկ յետ Հերակլի առնու զթագն որդի նորա Կոստընդին։ Ի սորա աւուրս եղև յարձակումն Իսմայէլի ընդ աշխարհս ամենայն. և յետ նորա որդին իւր համանուն հօրն։ Իսկ զիշխանութիւնն Իսմայէլի, յետ Աբուբաքրայ և Օթմանայ և Մարի, առնու Մաւիէ։ Իսկ զմարզպանութիւնն Հայոց յետ Ներսեհի առնու Աշոտ՝ որ սպանաւ 'ի Տաճկաց, ամս երիս։ Եւ յետ նորա Սմբատ Բագրատունի Բիւրատեան ամս քսան։ Սա պատերազմեցաւ ընդ զօրս այլազգեաց 'ի Վարդանակերտն աւանի, և յաղթեաց քաջութեամբ 'ի Բագրևանդ գաւառի։ Ի ժթ̃ ամի սորա Մահմետ զծովն Գեղամայ արձակեաց և առ զՍևան, և 'ի ժէ̃ ամի սորա Կասմ ամիրայ զիշխանսն Վասպուրականի կոտորեաց։

Եւ յետ Կոստանդնի կայսեր թագաւորեաց Յուստինիանոս. 'ի վերայ սորա յարեան նախարարք իւր, և հատին զքիթս նորա. և փախեաւ 'ի Խազիրս, և առեալ անտի իւր կին, և զօրս բազումս, և գայ դարձեալ թագաւորէ։ Եւ յետ նորա առնու զթագն Լևոն, և յետ նորա Ափսիմերոս, և յետ նորա Յուստիանոս, և յետ նորա Փիլիկոս Վարդան, և յետ նորա Թէոդորոս, և յետ նորա Լևոն։

Եւ զիշխանութիւնն Իսմայէլի յետ Մաւեայ առնու

Իզիտ, և յետ նորա Մրվան, և ապա Աբդլմելէք. սա այրեաց զիշխանսն Հայոց 'ի Նախճաւանի յեկեղեցւոջն. և ապա որդի նորա Վլիթ, և ապա Սուլիման. սա զԴարբանդ էառ, և հրամայեաց քակել զպարիսպն. և մինչդեռ քակէին, գտին քար մի՝ յորում գրեալ էր. ես Մանկւոն կայսր շինեցի զքաղաքի աշտարակս յիմոց գանձուց. 'ի վերջին աւուրս քակեսցի սա յորդւոցն Իսմայէլի և յիւրեանց գանձուց շինեսցի. և իբրև տեսին զքարն՝ դադարեցին, և շինելոյ սկիզբն արարին։

Զկնի Սուլիմանայ առնու զիշխանութիւնն Ոմառ։ Սա գրեաց առ Լևոն կայսր տեղեկանալ վասն քրիստոնէական ուսմանցս, և կայսրն գրէ պատասխանի լի իմաստութեամբ, կարի ճաղելով զօրէնս նոցա։ Եւ իբրև ընթերցաւ Ոմառ, ամաչեաց յոյժ, և սկսաւ զգարշելիսն 'ի դուրս հանել յօրինացն իւրեանց, թէպէտ ոչ համարձակեցաւ զամենայն եղծանել, սակայն բազում ինչ ուղղացոյց յանկարգիցն, և այնուհետև բարեմտութեամբ կայր առ ամենայն քրիստոնեայսն, ևս առաւել առ ազգս Հայոց. և հրամայեաց գերելոցն դարձ առնել յաշխարհն Հայոց, յորում ժամանակի արձակեցաւ և Վահան Գողթան տէրն, որ վկայեաց յաւուր շահի Հէշմայ, քանզի յետ Ոմառայ առ զիշխանութիւնն Իզիտ, և ապա Շամ, և ապա Վլիթ, և զկնի նորա Մրվան։

Իսկ յետ տեառն Եղիայի առնու զկաթուղիկոսութիւնն տէր Յոհաննէս Օձնեցի։ Սա էր այր իմաստասէր և սուրբ, և վայելուչ հասակաւ մարմնով, և հոգւով ևս առաւել գեղեցիկ։ Զսա կոչեաց Հէշմ 'ի դուռն իւր, և վասն վայելչութեան երեսաց նորա մեծապէս պատուեաց զնա. քանզի խարտեալ ոսկի, և արկեալ զմորուօք իւրովք եմուտ առ նա։ Եւ տեսեալ Հէշմայ զարմացաւ ընդ գեղեցկութիւնն, և ասէ ցնա հեզութեամբ. վասն Քրիստոսին ձերոյ ասեն, եթէ կարի յոյժ հեզ էր և խոնարհ, և զաղքատութիւնն առաւել սիրէր. զայս յայտ առնեն և կարգք քրիստոնէից, զի որ նոցա առաջնորդքն են՝ զաղքատութիւն և զգծծութիւն առաւել մեծարեն քան զփարթամութիւն և զճոխութիւն. իսկ դու ընդէր այդպէս զարդարեալ ես։ Ասէ

ցնա սուրբն. դու քան զծառայն քո առաւել ինչ ոչ ունիս, բայց միայն զթագդ և զհանդերձդ թագաւորական, և վասն այդորիկ երկնչիմ 'ի քէն և պատուեմ զքեզ: Առաջին հարքն մեր նշանագործք էին և սքանչելի վարուք. վասն այնորիկ երկնչէին 'ի նոցանէ ընդ ձեռամբ անկեալքն, և կատարէին զհրամանս նոցա դողութեամբ: Իսկ մեք այնպիսիք ոչ եմք, վասն այնորիկ զարդարիմք մեք 'ի հանդերձս և 'ի ձև, զի մի՛ արհամարհեսցի հրամանք մեր. և մերկացուցեալ զկուրծս իւր՝ եցոյց նմա զմազեղէնն, զոր զգեցեալ էր 'ի ներքոյ հանդերձին երևելոյ, և ասէ. այս է իմ հանդերձ. և զարմացաւ արքայ, և գովեաց զհաւատս քրիստոնէից, և ասէ ցսուրբն. խնդրեա՛ զինչ և կամիս, և արարից քեզ. ասէ հայրապետն. երիս իրս խնդրեմ 'ի քէն, որ քեզ դիւրին է տալ: Առաջինն այս. 'ի քրիստոնէից զոք մի՛ բռնադատեսցես թողուլ զհաւատս իւր, այլ յիւրաքանչիւր կամս թողցես. և երկրորդ՝ զազատութիւն եկեղեցւոյ ընդ հարկաւ մի՛ դնիցես, և 'ի սարկաւագաց և 'ի քահանայից մի՛ ինչ առնուցուս. և երրորդ՝ ուր և իցեն քրիստոնեայք 'ի տէրութեան քում, համարձակութեամբ պաշտեսցեն զպաշտօնս իւրեանց. զայս գրով տուր մեզ. և ամենայն ազգ իմ ծառայեսցեն քեզ: Եւ վաղվաղակի հրամայեաց գիր գրել ըստ խնդրոյ նորա, և կնքեաց մատանեաւ իւրով, և ետ նմա պատիւս բազումս, և գումարեաց զօրս բազումս ընդ նմա, և առաքեաց մեծաւ պատուով յաշխարհս Հայոց: Եւ նորա եկեալ հալածեաց զամենայն Յոյնս՝ որք էին յաշխարհին Հայոց, եթէ վերակացուք, եթէ զինուորք. և նոցա փախուցեալք այնքան շտապով, մինչև զգանձս ևս անգամ ոչ ժամանել տանել ընդ իւրեանս. այլ աստէն յաշխարհիս թաղեալք, և զհանգամանս տեղւոյն գրով ընդ իւրեանս տարեալ: Եւ սրբոյ հայրապետին զաշխարհս ընդ իշխանութեամբ Իսմայէլի նուաճեալ, ինքն ժողով առնէ 'ի Մանազկերտ. կոչէ և զԱթանաս պատրիարք Ասորւոց. և նա առաքէ վեց եպիսկոպոս, և նզովէ զՅուլիանիտսն և զապականացու ասողս 'ի Քրիստոս, և զԲարշապուհ և զԳաբրիէլ բանսարկուս Հայոց և Ասորոց, և կանոնական օրինադրութեամբ պայծառացոյց

զԵկեղեցի, 'ի բաց ընկեցեալ զդաւանութիւնն Քաղկեդոնի, որ յաւուրցն Հերակլի կայսեր և Եզրի գաթողիկոսի ունէր անկարգութիւն ղաշխարհս Հայոց։ Կարգեալ զընթերցուածն սրբոյն Յակոբայ և Կիւրղի, և զամենայն տօնսն՝ որպէս կարգեալ էր սրբոյն Գրիգորի՝ տօնեցին 'ի ԺԵ Դեկտեմբերի ամսոյ Դաւթի մարգարէին և Յակոբայ առաքելոյն, զոր յայլ ազգս ծննդեան Տեառն տօնէին, և երգեաց շարականս հարցին. Մեղաք յամենայնի և զպատուիր". որ մինչև ցայսօր պաշտի յեկեղեցիս Հայոց, սկսեալ 'ի ճձե թուականէն մինչև 'ի ռշ թուականս, որ այժմ յաւուրս մեր է։ Եւ այսպէս կարգաւորեալ զաշխարհս ամենայն առաքինութեամբ, և ինքն վարդապետութեան և աղօթից պարապեալ՝ շինէ և եկեղեցի մեծ 'ի գեւղն իւր Օձուն, որ հուպ է առ քաղաքն Լօռէ, և իւր ընտրեալ տեղի բնակութեան սակաւ մի 'ի բացեայ 'ի գիւղէն՝ անդ դադարէր։ Եւ եղև օր մի՝ զի յաղօթս էր սուրբն, երկու վիշապք ահագինք յարձակեցան 'ի տեղին, ուր կայանքն առաքինւոյն, և տեսեալ պաշտօնէին նորա՝ զարհուրեցաւ, աղաղակեաց առ սուրբն օգնել։ Եւ սուրբն կնքեաց ընդդէմ նոցա, և առժամայն քարացան, և են մինչև ցայսօր. և ջուր բղխեաց 'ի պորտոյ վիշապին և բժշկութիւն է ամենայն օձահարի, որք հաւատով ապաւինին յաղօթս սրբոյն։ Եւ կալեալ զհայրապետութիւնն ամս մետասան, հանգեաւ 'ի Քրիստոս պարկեշտ վարուք։

Եւ յետ նորա առնու զկաթուղիկոսութիւնն տէր Դաւիթ ամս երեքտասան։ Սա էր յԱրամունեաց 'ի Կոտայս գաւառէ. սա փոխեաց զաթոռն 'ի Դվնայ յԱրամօնս՝ շինեալ եկեղեցի և տուն բնակութեան հայրապետական, զի նեղացաւ նա յօտարագործ ազգէն Մահմետի։ Եւ յետ նորա եկաց կաթուղիկոս տէր Տրդատ ամս քսան և երեք։ Սա էր յՕթմսոյ գեղջէ, այր պարկեշտ և սուրբ, և փայլեալ ամենայն առաքինութեամբք, և յաւուրս սորա դադարեցան հէնքն խուժայէլի։ Եւ յետ նորա եղև կաթուղիկոս միւս տէր Տրդատ ամս երեք։ Եւ ապա տէր Սիոն ամս ութ։ Սա առտամբն Սիւնի կոչիցեալ լերին զցամաքեալ աղբիւրն հրաշամամբ աղօթից դարձեալ բղխեցոյց։

Իսկ յետ Լևոնի կայսեր թագաւորէ որդի նորա կոստանդին. սա կոչեցաւ կաւալինոս այսինքն Թրքամօղով. զի զօրն Տաճկաց բանակեալ էին առ ափն Ալիս գետոյն, հրամայեաց թրիք ժողովել և արկանել 'ի գետն. և նոցա տեսեալ՝ ահաբեկ եղեն, կարծեցեալք անթիւ լինել զօրացն, և փախեան 'ի նմանէ։ Պատմի 'ի միում աւուր զկնի միմեանց հինգ առիւծ սպանանել սորա։ Սա զկարնոյ քաղաք էառ, և յետ երկու ամի շինեաց զնա Իզիտ ամիրայ։

Յետ Մրվանայ առնու զիշխանութիւնն Իսմայէլի Ապտլայ, և յետ նորա միւս Ապտլայ, այր ժանդ և արծաթասէր, զոր կոչէին զնա ազգ Ապտլ-Դանգի, այսինքն է՝ ծառայ դանգի. զի ըստ լեզուին Հագարացւոց՝ այսպէս կոչի. զի զդանգ առաւել սիրէր քան զԱստուած։ Սա շինեաց զԲաղտադ. սա բազում չարիս անցոյց ընդ աշխարհս Հայոց հարկապահանջութեամբ և յափշտակութեամբ, և այնքան նեղեաց, մինչև զմեռելոցն 'ի կենդանեացն պահանջել զհարկս, և հատաւ գիւտ արծաթոյ յաշխարհէս Հայոց, և կոտորումն եղև Քղինու, Մրենոյ, Թալնայ, ուր սպանան ոգիք եօթն հարիւր. և գերեցան հազար և երկու հարիւր։ Եւ Մուշեղ Մամիկոնեան և Սամուէլ այլովք ազատօքն Հայոց կոտորեցան յաւուր զատկացն յիսմայէլացւոց։

Յայսմ ժամանակի 'ի Թուականի Հայոց ՃԿԶ էր Ստեփաննոս դրան երէց, որ բանիբուն ճանաչէր, եհաս 'ի կատարումն ամենայն իմաստասիրական և գրամարտիկոս արուեստից՝ հանդերձ առաքինութեամբ հոգևորական։ Էին և վարդապետք աշխարհիս Հայոց ընտրեալք և լուսաւորք՝ տէր Եփրեմ և Անաստաս, Խաչիկ և Դաւիթ Հոռոմայրեցի, և մեծն Ստեփանոս Սիւնեցի աշակերտ Մովսիսի [illegible]որ 'ի վերագոյնն յիշատակեցաք, որ թարգմանիչ եղև 'ի Յունականէն 'ի Հայ լեզու, և 'ի վերայ թարգմանութեանն արար և երգս հոգևորս քաղցր եղանակաւ, շարականս և կցուրդս և այլ երգս. արար և մեկնութիւն համառօտ աւետարանացն, և քերականին, և Յոբայ, և Տէր եթէ շրթանցն գիշերոյ։ Ասի վասն սրբոյն Ստեփանոսի, թէ 'ի մանկութեանն վարժ և կիրթ էր գրովք սրբովք։ Հանդիպի նմա հակաճառ ասպետն Սմբատ՝ երկաբնակ այր. և թողեալ զնա

յանհաւանութեան՝ գնաց 'ի Հռոմ. և գտեալ անդ միայնակեաց մի ուղղափառ՝ դադարեաց առ նմա, և ուսանէր 'ի նմանէ։ Եւ լուեալ Ամբատայ, գրէ առ Թագաւորն Հռոմոց, թէ Ստեփաննոս հերձուածող՝ որ հայհոյէ զաստուածութիւնդ ձեր, այդր դադարեալ է առ այս անուն միայնակեցի։ Եւ յոյժ ցասուցեալ Թագաւորն՝ խնդրէ զնա. և խրատ ետ նմա միայնակեացն ասել զինքենէ, թէ մուրացիկ եմ Թափառական։ Եւ լուեալ զայն կայսերն՝ շիջաւ ցասումն բարկութեան նորա։ Եւ գտեալ համարձակութիւն Ստեփաննոսի՝ աղաչեաց զկայսրն բանալ նմա զարկեղս գրոց սրբոց. և գտեալ մատեան մի ոսկետուփ սակս հաւատոյ՝ մատոյց առաջի կայսեր՝ և ընթերցեալ զայն՝ յղէ զնա 'ի Հռոմ քաղաք. բերեալ անտի երիս գիրս՝ համաբարբառս այնմ գրոց՝ յաղագս ճշմարիտ հաւատոյ, զի զաշխարհն յայն կրօնս դարձուսցեն։ Իսկ նորա զգրեանն 'ի Հռոմայ առեալ՝ անփոյթ զհրաման ինքնակալին արարեալ, գայ 'ի Դուին քաղաք՝ զիւր աշխարհն նովօք լուսաւորել։ Եւ ձեռնադրէ զնա տէր Դաւիթ՝ եպիսկոպոս Սիւնեաց, 'ի խնդրոյ Քուրթոյի և Բաբգենի իշխանաց Սիւնեաց. և զմի ամ կալեալ զաթոռն, սպանեալ եղև 'ի պոռնիկ կանանց 'ի Մողն գաւառի. զորոյ զմարմինն առեալ բերին յարկազան սենեակն, և անտի 'ի Թանատաց վանս փոխեցին 'ի հանգիստ։ Եւ բերեալ զգրեանն երանելւոյն Ստեփանոսի 'ի Հռոմայ՝ յեպիսկոպոսութիւնն Սիւնեաց, յերրորդ դասու եպիսկոպոսացն Հայոց կարգեցաւ։ Իսկ միայնակեաց ոմն, Նոյ անուն, տեսանէր 'ի տեսլեանն, զի Ստեփաննոս զգոգն արեամբ լի առաջի Փրկչին ունէր և ասէր. տես Տէր զայս, զի քոյ են դատաստանք արդար. և ազդեալ միայնակեացն 'ի գաւառն զգալ բարկութեանն, և բողոքէ կալ յաղօթս։ Եւ ահա խաւար 'ի վերուստ անտեսանելի կալաւ զՄողանն սահմանն, և զաւուրս քառասուն շարժեցաւ վայրն, և խորասոյզ եղեալ ընկղմեցան կենդանւոյն ոգիք իբրև տասն հազար։ Վասն այնորիկ Վայոց Ձոր անուանեցաւ մինչև ցայսօր ժամանակի։ Եւ բազում բժշկութիւնք լինին 'ի նշխարաց նորա, որք հաւատով ապաւինին 'ի բարեխօսութիւն սրբոյն, ախտացելոց 'ի պէսպէս

ցաւս և 'ի հիւանդութիւնս. զի Աստուած զփառաւորիչս
իւր փառաւորէ աստ և 'ի հանդերձեալն։

Եւ ապա տէր Եսայի, յԵղապատրուշ գեղջէ, կոչե
շնորհօքն Աստուծոյ 'ի պէտս ժողովրդեան իւրոյ 'ի քա-
հանայութեան և յեպիսկոպոսութեան կարգէ 'ի հայրա-
պետութիւն արժանապէս ամս երեքտասան։ Եւ յետ վախ-
ճանի նորա Իպնդաւկլ կողոպտէ զեկեղեցին, և բազում
կաշառօք յաջորդէ տէր Ստեփանոս ամ մի. սա էր 'ի Դվնայ։
Եւ յետ նորա Յովաբ ամ մի. սա Յուստիանէն 'ի Կու-
րապաղատէն։ Եւ զկնի նորա տէր Սողոմոն ամ մի. սա էր
'ի Մաքենոցաց վանիցն ծերացեալ յոյժ։ Եւ յետ նորա
տէր Գէորգ ամս երիս, որ Խօյլ Որբուկն կոչէր. սա էր
յԱրագածոտանէ։ Եւ յետ նորա տէր Յովսէփ ամս մետա-
սան. սա էր յԱրագածոտանէ 'ի բնակչաց սրբոյն Գրիգորի։

Իսկ յետ Կոստանդնի կայսեր առնու զԹագն Լեոն, և
յետ նորա Կոստանդին, և Եռինէ մայր իւր։ Ի սոցա աւուրս
կանգնումն եղև պատկերացն 'ի Հռոմ, և եղև սոցա տե-
սանել տապան մի մեծ մարմարեայ, և զարմացան և հրա-
մայեցին բանալ զտապանն, և գտին գրեալ 'ի նմա, Թէ
զի՞նչ օգուտ է ծածկել զիս, զի յաւուրս Կոստանդեայ
և Եռինեայ մօր նորա տեսանելոց է արեգակն զիս. և յետ
տասն ամի 'ի միասին Թագաւորելոյ՝ ընկէց զմայրն իւր Կոս-
տանդին՝ և ինքն Թագաւորեաց ամս հինգ. և ապա ըմբռնեալ
մօրն զորդին՝ փորեաց զաչս նորա, և ինքն Թագաւորեաց
ամս հինգ։ Եւ յետ նորա Թագաւորեաց Նիկիփոռ։ Յա-
ւուրս սորա երկու եղբարք Սահակ և Յովսէփ Խամայէլա-
ցիք՝ կատարեցան վկայութեամբ 'ի Քրիստոս 'ի Կարնոյ քա-
ղաք յԱրաց 'ի ծէ։ Եւ յետ նորա Թագաւորեաց Միքա-
յէլն։ Յաւուրս սորա սով սաստիկ ընդհանուր. յաւուր
միում 'ի քաղաքին Կարնոյ գտան մեռեալք երեք հազար։
Եւ յետ նորա Լևոն։ Սա զպատկերսն ընկէց, և շինեաց
զԲիւզու և զԱրկադուպօլիս։

Իսկ յետ այրելոյ զիշխանսն Հայոց 'ի Նախճաւանի, յետ
յիսուն ամի Հայոց մարզպան եղև Աշոտ Բագրատունի ամս
հօթն և տասն. և յետ նորա Սմբատ ամս քսան և երկու։
Եւ յետ նորա Աշոտ Մսակերն ամս քսան. և ապա Սմբատ՝

որդի Աշոտոյ, որ Արքայական կոչէր, ամս երեսուն և հինգ։ Սա շինէ զսուրբ քաւարանն մեծապայծառ զարդու յԵրազգաւորս, որ արդ՝ Շիրակաւանն կոչի։

Իսկ զիշխանութիւնն Իսմայէլի յետ Արդլայի առնու Մահադի, և ապա Մուսէ, և յետ նորա Ահարոն, և յետ նորա Մահամատ, և ապա Մահմուն, և ապա Ապուսահակ Մահմետ, և յետ նորա Ահարոն։

Իսկ յետ Յովսէփայ եղև կաթուղիկոս տէր Դաւիթ ամս քսան և հինգ։ Սա էր 'ի Մաղազայ՝ 'ի գեղջէ Կակաղայ։ Եւ յետ նորա տէր Յովհաննէս ամս քսան երկու։ Սա էր 'ի գաւառէ Կոտայից՝ 'ի գեղջէ Ովայից։ Յութերորդի ամի սորա չարախօսք ոմանք 'ի նմին տանէ բանս հայհոյութեան խօսէին զսրբոյն, որք չարամահ սատակեցան նանրաբե-զուքն, որպէս այնոքիկ՝ որք առ Նարկեսոսիւն էին, Երուսաղէմի եպիսկոպոսիւ։ Եւ յետ նորա Զաքարիայ։ Սա էր 'ի Կոտայս գաւառէ՝ 'ի գեղջէն Ձագայ. 'ի միում աւուր ամենայնին արժանաւորեալ՝ սարկաւագութեան և քահանայութեան և կաթուղիկոսութեան, այր սուրբ և առաքինի ամս քսան երկու։ Ի սորա աւուրս եկաց գլուխ Իսմայէլի այր ոմն անօրէն և Աստուածատեաց, Ջամբր անուն նորա. սա յոյժ մախայր ընդ անունն Քրիստոսի, և զբազումս հրապուրէր յուրացութիւն, և զևս բազումս՝ որք ոչ հաւանէին նմա, սպանանէր դառն տանջանօք։ Բազում չարիս գործեաց նա ընդ աշխարհս, որ ընդ իշխանութեամբ նորա էին, ևս առաւել ընդ աշխարհս Հայոց սպանմամբ և գերութեամբ. քանզի առաքեաց ոստիկան մի Ապուսէթ անուն, որոյ եկեալ կալաւ զիշխանն Տարօնոյ զԲագարատ և զայլս բազումս. զոր իմացեալ բնակիչք լերինն Խոյթայ՝ որ Սասունք անուանէին, եկեալ սպանին զԱպուսէթն. զոր լուեալ Ջամբրի բարկացաւ յոյժ, և առաքեաց զօրագլուխ մի՝ Բուղայ անուն, Թուրք ազգաւ, այր խորամանկ և անօրէն. որ եկեալ աւերեաց զաշխարհս Հայոց զո՛ր խաբէութեամբ և զո՛ր պատերազմաւ, և խաղացոյց 'ի գերութիւն 'ի Սամառայ, որ և զՍմբատ ասպարապետն Հայոց խաբէութեամբ տարաւ առ Ջամբր. և նա եդ զնա 'ի բանտի, զի ուրացցի զՔրիստոս. որ ոչ հաւանեալ անօրինին, այլ համարձակա-

պէս զՔրիստոս խոստովանեցաւ և պահեցաւ 'ի նմին բանտի, մինչև անդէն մեռաւ, և զխոստովանողական անունն ժառանգեաց. և այլ բազումք վկայեցին վասն Քրիստոսի, և մեռան յանօրինէն։ Եւ զսարկաւագ ոմն Ասորի, անուն Նանան, վասն համբաւոյ վարդապետութեանն նորա ըմբռնեալ ածին առաջի Ջամբրի. և համարձակութեամբ խոստովանեցաւ զՔրիստոս. և տանջեալ զնա՝ արգել 'ի բանտ յոլով ժամանակս. յետոյ արձակեցաւ խնամօքն Աստուծոյ, որ և գրեաց զմեկնութիւն աւետարանին Յովհաննու լուսաւոր բանիւք։ Նոյնպէս և յիշխանացն Հայոց Ստեփաննոս անուն, որ Կոնն կոչէր, նահատակութեամբ կատարեցաւ 'ի Քրիստոս, և բազումք ուրացան զճշմարիտն Աստուած վասն երկիւղի մահուն. և այլ յոլովակի չարիս անցոյց ընդ յաշխարհս, զորս գտցես 'ի գիրս Թովմայի և Շապուհոյ և այլոց պատմագրացն։ Ի թուին Հայոց ծղը, և Ասորւոց ռհգ, շինեաց Ջամբր զՊաղտատ 'ի վերայ Տիգրիս գետոյ չորս աւուր ճանապարհաւ հեռի 'ի Բաբիլոնէ. և ծնաւ կին մի, երեսուն տարի ապրեցաւ, ոչինչ կերաւ։

Իսկ զկնի մահուան խոստովանողին Սմբատայ առնու զիշխանութիւնն Աշոտ որդի նորա։ Սա ամենայն նախնեաց վեհագոյն գտաւ, զի զկնի սպարապետութեան իշխանաց իշխան եղև։ Եւ ապա թագաւորեաց յերկոցունց թագաւորացն յիսմայելականէն և Յունականէն։ Քանզի յետ Ջամբրի առնու զթագն Մահմետ. և ապա Ահմատ. ապա Աբդիլա. և ապա Մահմետ։ Սա իշխանացոյց զԱշոտ, և ապա թագ եդ նմա։

Իսկ յետ Լեւոնի կայսեր առնու զթագն Միքայէլն. և յետ նորա Թէոփիլոս. և զկնի նորա Միքայէլն. և յետ նորա Վասիլն։ Զսա ասեն 'ի Տարօնոյ, 'ի գեղջէ Թիլայ։ Սա շինեաց զսուրբ Զօրավարն. սա դարձեալ թագ ետ Աշոտոյ 'ի վերայ Իսմայէլականին։ Առ Աշոտ գրեաց Թուղթ պատրիարքն Կոստանդնուպօլսի Փոտ, և առաքեաց մասն 'ի խաչէն տէրունական, որոյ պատասխանի գրեաց հրամանաւ Աշոտոյ վարդապետն Իսահակ գեղեցիկ և իմաստասիրական։ Արդ 'ի բառնալոյ թագաւորութեանցն Արշակունեաց մինչև ցթագաւորութիւնն Բագրատունեաց լինին ամք չորս հարիւր երեսուն և չորս։

Յետ Թուականին Հայոց թագաւորեաց Աշոտ, այր երկիւղած յԱստուծոյ և բարեպաշտօն, և զարդարիչ եկեղեցւոյ, և սիրող պաշտօնէից Աստուծոյ, որ զարդարեաց զեկեղեցիս Հայոց մեծաւ զարդուք և պայծառութեամբ, երեսուն երկու ամ իշխանաց իշխան կացեալ, և հինգ ամ թագաւորեալ Հայոց, և փոխեցաւ 'ի Քրիստոս բարիոք մահուամբ և ճշմարիտ դաւանութեամբ։ Եւ յետ նորա թագաւորեաց որդի իւր Սմբատ՝ ամս քսան չորս։ Սա վկայութեամբ կատարեցաւ 'ի Քրիստոս 'ի Դուին, կախեալ զփայտէ 'ի Յուսփայ՝ որդւոյն Ապուսաճեայ։

Իսկ յետ Զաքարիայի առնու զկաթուղիկոսութիւնն տէր Գէորգ՝ 'ի քաղաքագեղջէն Գառնոյ. սա գերեցաւ յԻսմայէլացւոցն. և իշխանքն Աղուանից գնեցին և արձակեցին։ Եւ յետ նորա եկաց կաթուղիկոս տէր Մաշտոց՝ ամ մի։ Սա էր այր սուրբ և առաքինի, և լցեալ հանճարով և իմաստութեամբ, բնակէր 'ի կղզւոջն Սեւան մեծաւ ճգնութեամբ, զամս քառասուն հաց ոչ եկեր, և ջուր ոչ արբ, միահանդերձ և բոկոտն։ Սա կարգեաց զգիրսն՝ որ ըստ անուան իւրոյ կոչի Մաշտոց, ժողովեալ զամենայն կարգեալ աղօթսն և զընթերցուածսն 'ի միասին յարմարեալ յաւելուածով յիւրմէ, որ ունի յինքեան զամենայն կարգս քրիստոնէութեան, և հասեալ 'ի ծերութիւն պարարտութեան, հանգեաւ 'ի Քրիստոս փառաւորապէս. և եդաւ մարմին նորա 'ի գերեզմանի 'ի Գառնի. և շինեցին 'ի վերայ նորա եկեղեցի վայելուչ։ Եւ յետ նորա յաջորդէ զաթոռն տէր Յովանէս աշակերտ նորին և ազգային ամս քսան ութ։ Սա էր այր իմաստուն և բանաւոր՝ 'ի քաղաքագեղջէն Գառնոյ, ուստի սուրբ հայրապետն Գէորգ էր։ Սա գրեաց պատմութիւնս գեղեցկայարմարս, և զոր ինչ գործեցին անօրէն ազգն Հագարացւոց ընդ աշխարհս ամենայն մեծամեծ չարիս։

Արդ յայսմ վայրի կամ է ինձ սակաւ մի երկրորդել վասն պառակտման չար ազգին Իսմայէլի. զի հրամայէ Փրկիչն մեր և Աստուած տէր Յիսուս Քրիստոս, եթէ ամենայն թագաւորութիւն բաժանեալ յանձն՝ աւերի, որպէս և սոցայս. զի 'ի բազումս բաժանեալ տէրութիւնն. զի Սոփարն տիրէր աշխարհին Խորասանու, և Աւալեկն

Ապուլթորոյ 'ի Բասրացւոց քաղաքին, և Յիսէ Շէխայ որդի 'ի Պաղեստինէ, և որդին Ապլտփոյ՝ 'ի Դիլմաց աշխարհին. և այլք ոմանք 'ի տեղիս տեղիս խռովութիւնս յարուցեալ՝ ջանային բռնութեամբ տիրել իրերաց։ Վասն որոյ և դժուարագիւտ եղև անուանք անբարշտացն, բայց յորոց և է ոստիկանք չարք և անմարդի արձակեալք լինէին յաշխարհս մեր, որպէս գազանաբարոյ Բուղայ և անօրինագոյնն Ափշին, որդի յառաջագոյն եկելոյն չարագործին Ապսաճիթայ, և կամ Եւս չարագունին Յուսփայ, եղբօր Ափշնոյ, որ սպան զՍմբատ թագաւորն 'ի Դուին, և թագաւորեցոյց զԳագիկ ոմն 'ի տանէն Արծրունեաց, զորդի Դերենկանն, այր բարի և Աստուածասէր, որդի քեռ թագաւորին Սմբատայ Բագրատունւոյ։ Սա շինեաց զկղզին Աղթամար, որ 'ի ծովուն Բզնունեաց, քաղաք թագաւորական, և եկեղեցի հրաշազան և պայծառ յօրինուածով։

Այսոքիկ ամենեքեան չար վերակացուք, որ գային յաշխարհս մեր աւերել և եղծանել, մինչև բարձաւ թագաւորութիւն Ամիրմումնեացն, և փոխանորդեցին Սկիւթացիքն, ոչ Ելլենախորհքն, այլ՝ բարբարոսականքն. քանզի զբազում ազգս հարեալ հնազանդեցուցին, և ինքեանք իշխեցին. ընդ որս և զիշխանութիւնն Տաճկաց հնազանդեցուցին. բայց զի զանուանս նոցա ոչ ուրուք գտաք գրեալ. վասն այնորիկ և ոչ մեք կարացաք գրոշմել. թուի թէ՝ և ոչ 'ի դպրութիւն կենաց, այլ յարձանս անբարըշտաց. վասն այնորիկ լքեալ՝ թողցուք զնոսա իբրև զարանց յուսացելոց 'ի զօրութիւնս իւրեանց, որք խլեցան յարկացն Աստուծոյ։

Ի սկսանել թագաւորութեանն Թուրքաց՝ արք յիսուն, Հայ ազգաւ, նեղեալք 'ի նոցունց, ելին յանապատ սպառազինեալք, և եկին 'ի Մարաշ. գտին այր մի քաջ, Փիլարտոս անուն, Հայ, եդին զնա գլխաւոր, և մտեալ 'ի Կիլիկիա, առին զբովանդակ աշխարհն, յորս էին և Ռուբինեանք սերեալք թագաւորազունքն, զի մինչև ցՄելիք շահ Սուլտանն գրեալ էր զպատճառս տիրելոյն նոցա մեծիմաստ վարդապետին՝ որ Սարկաւագն կոչէր, և երկրորդեալ

էր Սամուէլ քահանայ։ Այլ և զհօր նորա զարիւնանախանձին Ալփասլանայ և զնորին հօր և հաւուց, որ Տուղրուպէկ և Մահմուտ և Սարչուկ անուանք են նոցա։ Այլ մեք դարձցուք անդրէն 'ի կարգ ոճոյն, ուստի ելաք. հանցուք արտաքս զմինն և ասասցուք խրախուսութեամբ. Նոքա 'ի ձեռանէ քումմէ մերժեցան. մեք ժողովուրդք և խաշն արօտի քո։

Քանզի յետ մահուանն Սմբատայ Բագրատունւոյ թագաւորէ Հայոց Աշոտ որդի նորա հրամանաւ Ռոմանոսի կայսեր, յետ եօթն ամի սպանման հօրն, ամս ութ։ Իսկ յետ Վասլի կայսեր թագաւորեաց Լևոն, և ապա Ալէքսն։ Եւ զկնի նորա Ռոմանոս. սա հալածեաց զամենայն կրօնաւորս և զքահանայս Հայոց, որք էին յաշխարհէն Հոռոմոց, զի ոչ հաւանեցան դաւանութեանն Քաղկեդոնի. և եկեալ յաշխարհս Հայոց յաւուրս Աբասայ՝ որդւոյ Սմբատայ, հաստատեցին վանորայս զԿամրջաձոր և զԿապոյտ Քարն 'ի գաւառին Արշարունեաց, և զհռչականունն Հոռոմոսին կոչեցեալ վանք, և զԴպրէվանք 'ի Շիրակ գաւառին. շինեցին և եկեղեցի մի յանուն ամենասուրբ Աստուածածնին 'ի վանքն՝ որ կոչի Սանահին, 'ի սահմանս Լօռէ քաղաքին, և զի կոչէին զերիցունսն՝ Հոռոմոց երէց, անուանեցին զմի վանքն՝ որ 'ի Շիրակ՝ Հոռոմոց վանք. որ ցա՛րդ ևս Հոռոմեցի վանք։ Եւ յետ Ռոմանոսի թագաւորէ Կոստանդին՝ որդի Լևոնի, և ապա Ռոմանոս, և զկնի նորա Նիկիփոր. և զկնի նորա Կիռժան։

Իսկ յետ Յովանիսի առնու զկաթուղիկոսութիւնն տէր Ստեփաննոս ամ՝ մի. և ապա տէր Թէոդորոս ամս մետասան. և ապա տէր Եղիսէ ամս եօթն. և ապա տէր Անանիա Մոկացին ամս քսան երկու։ Յաւուրս սորա էր եպիսկոպոս մի 'ի կողմանցն Սիւնեաց, Յակոբ անուն, որ սկսաւ նորաձևութիւնս առնել խօսից և կարգաց. և այլ միւս եպիսկոպոս, Խոսրով անուն, որ ասէր՝ ոչ է պարտ Կիւրակէ ասել զօրն Տէրունի. այլ Կիւռիակէ, զի Հոռոմերէն է, ասէ. նմանապէս և հասակաց թողուլ ասէր զգէսս տղայոց, և ոչ հատանել մինչև երկայնասցի և պատ առցէ, զի վասն այնորիկ ասէ, կոչի պատանի. և ապա կտրել հրամայէր, վասն

այնորիկ ասէ, կոչէ կորիճ։ Եւ ասէր ո՛չ է պարտ եպիսկոպոսի ընծայաբեր լինել եպիսկոպոսի, և կաթուղիկոսի. զի աւելի օրհնութիւն ո՛չ ունի ասէ. բայց միայն զանուանակոչութիւնն. և այլ այսպիսի անիմաստ բանիւք լցոյց զաշխարհս, և խռովութիւն յարոյց ամենայն ուրեք վասն նորաձևութեան. առ որ գրէ թուղթս խրատականս տէր Անանիա 'ի բաց կալ յանհանճար և ընդունայն բանիցն։ Իսկ նա փոխանակ զղջանալոյ առաւել ևս անամօթացաւ, զանձն իմաստուն կարծեցեալ, և զնոսա տգէտս. առ որ Հարկաւորի դարձեալ գրել երկիցս և երիցս. գրեն և այլ իմաստուն վարդապետք, և յիշեցուցանեն նմա 'ի գրոց զհանգամանս կարգաց։ Իսկ նա 'ի նոյն միտս ամբարըշտութեան կացեալ, քամահէ զամենեքումբք. և ինքն Յակոբ ապստամբեալ 'ի կաթուղիկոսէն՝ ամրանայր 'ի բերդն Սիւնեաց. զոր ընդ բանիւք արարեալ կաթուղիկոսին՝ գրէ առ տիկինն Սիւնեաց տալ զնա 'ի ձեռս, զի խրատեսցէ զնա, զի թերևս գայցէ 'ի զղջումն. և նոքա ոչ ետուն զնա 'ի ձեռս նորա. և զնոսա ևս արար ընդ բանիւ կապանաց. և 'ի նոյն միտս եկաց մինչև մեռաւ։ Եւ ապա գնաց տէր Անանիա յաշխարհն Սիւնեաց հնազանդել զապըստամբսն։ Եւ իբրև լուան աշխարհն Սիւնեաց և իշխանքն զգալուստ հայրապետին, ելին ընդ առաջ նորա, զմեղանս յանձն առեալ. և ետուն նմա ձեռագիր երդմամբ՝ այլ ո՛չ ևս ապստամբել յաթոռոյ սրբոյն Գրիգորի ազգէ մինչև յազգ. և ապա ձեռնադրեաց յազգէ նոցա զմի ոմն արք եպիսկոպոս։ Յառաջ եպիսկոպոսի աթոռ էր Սիւնեացն, զայն պատիւ արարեալ իշխանացն Սիւնեաց, հրամայեաց խաչ տանել առաջի արքեպիսկոպոսին Սիւնեաց, ո՛ւր և երթիցէ։

Յետ մահուան տեառն Անանիայի եկաց յաթոռ նորա տէր Վահան 'ի Բաղաց՝ ամ մի. սա դաշնադիր եղև ընդ Վիրս միաբան դաւանութեամբ. վասն որոյ ժողովեալ յամուրն Անի 'ի թագաւորութեանն Աշոտոյ, որդւոյ Աբասայ, բազում եպիսկոպոսաց և խաչակրօն վանականաց, որք ծանուցեալ հաւաստեաւ զհերձուած կորստական մտաց նորա. զի ետ բերել պատկերս վասն նորագման աղանդոյն

'Քաղկեդոնի. և որոշեալ՝ զնա՝ հալածական արարին. և
միաբանեալ նստուցին յաթոռ Լուսաւորչին զՍտեփաննոս
հարազատ արեան որդւոյ առն Աստուծոյ Մաշտոցի, որ
'ի Սևան կղզւոյն. և էր սա հետևեալ վարուց Նորա. որ
եկաց յաթոռ հայրապետութեան ամս երկու։ Բայց քան-
զի Վահանիկն կենդանի էր 'ի Վասպուրական, հաւանե-
ցոյց զոմանս 'ի պարզամտացն՝ սուտ զնմանէ կարծել զհամ-
բաւ հերձուածոյ. և վասն այնորիկ զմիջոց աշխարհիս Հա-
յոց լցին նզովիւք. Իսկ 'ի հրամանէ Աստուծոյ 'ի միում
ամի մեռան երկոքեանն. և սա մի անմեղապարտացն լեալ։
Ապա հրամանաւ Թագաւորին Աշոտոյ, որ Ողորմածն կո-
չիւր, ժողովեալ ընտրելոց արանց և եպիսկոպոսաց սըր-
բոց, կացուցանեն յաթոռն հայրապետական զերանելի այրն
Աստուծոյ զտէր Խաչիկ, զհարազատ տեառն Անանիայի մե-
ծի հայրապետին, որ բանիւ վարդապետութեան սանձեաց
զերբանս հերձուածողաց, սրբասէր և Քրիստոսասէր գոլով,
որ կալաւ զաթոռն ամս ինն և տասն. և զկնի Նորա տէր
Սարգիս ամս քսան և չորս։

Իսկ զկնի Աշոտոյ Թագաւորէ որդի Նորա Սմբատ, որ
և Շահնշահ կոչիւր. սա ընդ Թագաւորելն իւրում, լիր
արկեալ պարսպին Անւոյ բարձրաբերձ բրգամբք և լայ-
նատարած անդեօք յԱխուրեան գետոյն՝ մինչև ց'Ծաղկոցա-
ձորն կոչեցեալ, հիմնարկեաց զկաթուղիկէն պայծառ 'ի
նմին քաղաքի և ոչ կարաց աւարտել. զի եհաս նմա
վախճան մահու, Թագաւորեալ ամս երեքտասան։ Յաւուրս
սորա սկիզբն եղև շինուածոյ հռչակաւոր ուխտին, որ Մար-
մաշէնն կոչի, 'ի Քրիստոսասէր իշխանէն Վահրամայ։ Եւ
յետ նորա Թագաւորէ Գագիկ եղբայր նորա ամս քսան
և ինն։ Սա շինեաց զսուրբ Գրիգորն գերահռչակ 'ի մե-
րայ Ծաղկոցաձորոյն, զաղափար առեալ զկլայական սուրբ
Գրիգորն, զոր շինեաց հայրապետն Ներսէս. և կատարե-
լաւ 'ի հազար ամի մարմնանալոյ Տեառն մերոյ Յիսուսի
Քրիստոսի, և 'ի ՆԾԹ Թուականին Հայոց։ Եւ կին նորա
կատրանիդէ Թագուհի աւարտեաց զկաթուղիկէն սուրբ, զոր
ոչ կարաց կատարել Սմբատ Թագաւորն։ Շինեաց և Սմբատ
Մագիստրոսն զփափականեւ վանքն, որ Բագնայր կոչիւր։

կայսեր, բաղբաղեալ զձեռն տալ առ Հագարացին, որք և Իշխանացն անգամ՝ զՀայրապետն, և նորա զնոսա. զոր յոչ կամաւս առեալ ամենեին 'ի բնակութենէ իւրեանց. Իսկ մնացեալքն իբրև զանտէրունչս անգուշեալ՝ կեցս ընկենուին, տիրեալ Յունաց ամս քսան և մի. Յետ որոյ Հուր Հարաւային բքոյն շարժեալ, եբեր զգազանն մարդախանձ, որ Հրդեհեալ՝ բնաջինջ արար զազգս մեր, եւ առաւել զքաղաքն Անի. զի պաշարեաց զնա զաւուրս քսան եօթն, և ապա առեալ կոտորեաց զբնակիչս քաղաքին, ոչ ումեք ողորմելով արեանարբու գազանն, որ Ալփասլանն կոչէր:

Նոյն մերն դադարեաց Թագաւորական գաւազանն, զի Թէպէտ գոյր ուրուք տէրութիւն, որպէս Կիւրիկէին՝ որ 'ի Լօռէ քաղաք, և որ շուրջ զնովաւ, զի և սա յազգէ Բագրատունեաց էր. և միւս եւս Գագիկ Թագաւոր Վանանդայ և Կարուց, որ գնաց առ Յոյնս, սակայն գլխաւորն դադարեաց յաւուրս Գագկայ. և այլքն անձնատուր եղեն ընդ ձեռամբ վիշապին, և կէսք փախուցեալ գնացին առ կայսրն Յունաց. և նոքա տիրեցին ընդհանուր աշխարհիս. Իսկ Յոյնք գնացելոցն էառն երկիրս և քաղաքս կալուածոյ զկողմանս Կեսարու և Սեբաստիոյ, զոր ետ Գագկայն երկոցունց Թագաւորացն.

Իսկ զկաթուղիկոսն Պետրոս մեծապատիւ պատուով պատուեաց կայսրն, և ետ նմա աթոռ ոսկի. և իբրև յարեաւ յաթոռոյն, և կամէր արտաքս ելանել, եպիսկոպոս մի, նորա անունն Եղիաէ, առ զաթոռն ոսկի՝ յորոյ վերայ նստաւ կաթուղիկոսն: Իսկ սպասաւորքն արքունի ոչ տային նմա թոյլ առնուլ. և եհարց կայսրն զեպիսկոպոսն, եթէ ընդէր զայդ առնես. և ասէ եպիսկոպոսն. օրէն է մեր՝ յաթոռըն՝ յոր նստի կաթուղիկոսն, ոչ այլ ումեք նստել. բայց ի նմանէ. և զարմացաւ կայսրն ընդ պատիւն, զոր ետ եպիսկոպոսն կաթուղիկոսին, և հրամայեաց սպասաւորացն թոյլ տալ, զի առցէ եպիսկոպոսն. և ասէ ցեպիսկոպոսն. եօթն հազար դահեկանի է այդ, առ՛ր պահեա՛ զայդ 'ի պատիւ կաթուղիկոսին քո: Եղև երբեմն ժամանակ, զի յաւուրս յայնոսիկ Տեառն ժողովեալ էին ամենայն քրիստոնեայքն, և այլ ամենայն ամբոխ բազում 'ի Տրա-

պիղոն քաղաք յօրհնել զՋուրն, որպէս սովոր են քրիստոնեայք. և ըստ նախանձուն զոր ունէին Յոյնք ընդ Հայս, կացուցին զհայրապետն Պետրոս իւրովք ժողովրդովքն 'ի վերոյ, և ինքեանք 'ի ներքոյ կողմանէ գետոյն. այսպիսի մտօք, զի թերակատար համարէին զօրհնութիւնն Հայոց, զի ինքեանք 'ի ներքոյ կալով, զօրհնեալն 'ի Հայոց՝ վերըստին օրհնեսցեն. սովորեցուցեալ էին և աղաւնի մի սպիտակ, որ գայր խառնէր ընդ Ջուրսն և վերանայր, որով խաբէին զանընտելսն, եթէ Հոգին սուրբ էջ 'ի նմանութիւն աղաւնւոյ. և յաղօթել հայրապետին Պետրոսի՝ դարձաւ Ջուր գետոյն 'ի վեր, և լոյս սաստիկ ծագեաց, որ նուաղեցուցանէր զճառագայթս արեգականն. և իբրև եկն աղաւնին նոցա խառնել ընդ Ջուրն, որպէս սովորն էր, յանկարծակի խոյացեալ արծիւ մի, էառ զաղաւնին և գնաց. և զամօթի մեծի հարան Յոյնք. և ակամայ գովէին զհաւատս Հայոց։ Եւ հրամայեաց կայսրն հայրապետին դնել զաթոռ իւր 'ի Սեբաստիա, և անտի հովուել զհօտ իւր. և անդ եկաց հայրապետն մինչև ցվախճան իւր. և եդեալ անդէն 'ի Սեբաստիա, կացեալ կաթուղիկոս ամս երեսուն ինն. և յետ նորա տէր Խաչիկ սակաւ ժամանակս։

Նոյն աշխարհս Հայոց ժողովեալ 'ի մի վայր, կացուցանեն յաթոռն հայրապետական զտէր Վահրամ, զոր անուանեցին Գրիգորէս, զորդի Գրիգորի Մագիստրոսի, 'ի քաղաքէն Բջնոյ, զթոռն Վասակայ մարտիրոսի, զայր իմաստուն և առաքինի։ Սա խնդրեաց 'ի հօրէ իւրմէ մեկնել զարուեստն քերականի, զի էր նա իմաստասէր. և մեկնեաց զնա արուեստաւոր բանիւ։ Այս սքանչելի հայրապետս թարգմանեաց բազում ճառս վկայից Աստուծոյ, և ճառս ներբողականս 'ի Յունաց և յԱսորւոց։ Եդ սա 'ի մտի իւրում յետ ժամանակաց երթալ 'ի Հռոմ քաղաք յերկրպագութիւն սրբոց առաքելոցն Պետրոսի և Պօղոսի, խորհրդակից իւր առեալ զվարդապետ ոմն, Գէորգ անուն, և կոչեալ զհօտ իւր զեպիսկոպոսս և զերիցունս, և զիշխանս, ասաց նոցա զմտածումն իւր։ Իսկ նոցա յարտասուս հարեալ լային դառնապէս, և աղաչէին զնա՝ մի թողուլ զնոսա որբս և անհովիւս։ Իսկ նա ասէ ցնոսա. ուխտ

է իմ եղեալ, և անհնար է ինձ տալ, տեսէք ձեզ այր մի, և ձեռնադրեցէք զնա փոխանակ իմ. և էր պատգամաւոր Գէորգն այն վարդապետ, զոր վերագոյնն յիշեցաք։ Իբրև ոչ հաւանէին ժողովուրդքն, այլ 'ի նոյն աղաչանսն պնդեալ կային, և ոչ զոք գտանէին փոխանորդ նորա։ Յայնժամ ասէ ցնոսա Գէորգ. ընդէր այդչափ աղաչէք զնա, զի նա ուխտ եդեալ է երթալ. և ես տեղեակ եմ խորհրդոյ նորա, զի ոչ փոխի յայնմ. ես ասացի, թող ձեռնադրեսցէ զիս փոխանակ իւր. և իբրև լուաւ կաթուղիկոսն՝ զարմացաւ, զայրացեալ և լի եղև ցասմամբ. զի երդուեալ էր Գէորգայ՝ ընդ նմա երթալ. սակս այն յակամայ կամաց ձեռնադրէ զնա, և ինքն ճանապարհորդ լինէր, և նստաւ Գէորգ յաթոռ նորա։ Եւ երթեալ սրբոյ հայրապետին 'ի Հռոմ, մեծապէս պատուեցին զնա ազգն Փռանգաց. և կատարեալ զուխտ իւր, ել 'ի նաւ, գալ 'ի Կոստանդնուպօլիս թագաւորութեան աղագաւ. և յարուցեալ բռնութիւն հողմոյ 'ի ծովուն, և տարեալ զնաւն ընդ այլ ճանապարհ, հանէ զնա յԵգիպտոս։ Իսկ որք ընդ նմա էին սպասաւորքն նորա, երկեան զի սովորութիւն էր բնակչաց աշխարհին զալեկոծեալ նաւն կողոպտել և սպանանել։ Եւ կացեալ սրբոյ հայրապետին Գրիգորիսի յաղօթս, եղև անձրև սաստիկ յԵգիպտոս, որ երբէք չէր լեալ։ Իբրև տեսին զայս բնակիչք աշխարհին՝ զարհուրեցան, բայց Հագարացին՝ որ թագաւորէր նոցա, այր իմաստուն էր, կոչեաց զզօրսն իւր, և ասէ ցնոսա. դուք ինքնին գիտէք, զի յաշխարհիս Եգիպտացւոց անձրև չէ եկեալ յիսկզբանէ մինչև ցայժմ, բայց միայն կարկուտ յաւուրսն Մովսիսի. և անձրև՝ մի, յորժամ Յիսուսն է եկեալ. սոյնպէս և այս նշան է գալստեան սքանչելագործ մարդոյ. տեսէք խնդրեցէք զնա, թէ ո՞ ոք է. և շրջեալ զօրացն ընդ աշխարհն գտին զԳրիգորիս իւրովք պաշտօնէիւքն, զի կային յաղօթս առ եզր ծովուն. և ածին զնոսա առ Սուլտանն. եհարց զնոսա, եթէ վասն ձե՞ր եկն անձրևս այս. և նոքա ասեն. այո՛. և ասէ ցնոսա վասն ինչ պատճառանաց, խնդրեցէք զայս. և նոքա ասեն՝ եթէ երկեաք վասն սովորութեան աշխարհիս 'ի սպանմանէ, զի նաւաբեկ եղաք

[illegible]

'ի ծովու. և զամենայն իրսն ասացին ստուգութեամբ։ Յայնժամ՝ զարմացաւ և գովեաց զհաւատս նոցա և ասէ ցհայրապետն. Նիստ դու յԱղէքսանդրիա քաղաքի յաթոռն Մարկոսի, և ամենայն քրիստոնեայ՝ որ է ընդ իշխանութեամբ իմով, քեզ լիցին հնազանդ. և ետ նմա զարդս բազումս, և սիրեաց զնա իբրև զհայր. և յայնմ օրէ եղև աթոռն Աղէքսանդրիոյ հնազանդ աթոռոյ սրբոյն Գրիգորի. և անդ եկաց և վախճանեցաւ նրն 'ի փառս Աստուծոյ գովութեամբ։

Իբրև ետես Կիւրիկէ արքայ յազգէն Բագրատունեաց, որդի Դաւթի, որդւոյ Դերենկանն, որ հիմնարկեաց զՀոռչակաւոր ուխտն զՀաղբատ և զՍանահինն, եթէ եթող տէր Գրիգորիս զաթոռն իւր և գնաց 'ի Հռոմ, կոչեաց առ ինքն զտէր Յովսէփ կաթուղիկոսն Աղուանից. և ետ ձեռնադրել զտէր Բարսեղ կաթուղիկոս Հայոց. և զՍարգիս ամե̃ Դրան երէց Կիւրիկէի ձեռնադրեն եպիսկոպոս Հաղբատայ. և յայնմ հետէ եղև աթոռ եպիսկոպոսի. և յետ Սարգսի՝ եղև եպիսկոպոս Գէորգ։ Եւ յետ նորա Բարսեղն։ Սա էր այր գեղեցիկ տեսլեամբ, զսա տեսեալ թագուհին Վրաց Թամարն, մեծապէս պատուեաց զնա վասն վայելչութեան գեղոյ նորա. զի և եղբարք նորա գործակալք էին տանն արքունի։ Եւ յետ Բարսղի եղև եպիսկոպոս սուրբն Գրիգորիս։ Սա ազգական էր իշխանացն Զաքարէի և Իւանէի. սա որ յաւուրս մեր եղև։ Եւ յետ նորա Յոհաննէս, ա՛յր հեզ և առաքինի, ազգական իշխանացն Խաչենոյ։ Սա քակեաց զգաւիթն փոքրագոյն, որ 'ի դուռն կաթուղիկէին Հաղբատայ. և շինեաց մեծ և գեղեցիկ շինուած, որ զարմացուցանէ զտեսօղսն հիացմամբ։ Եւ յետ նորա միւս Յոհաննէս, քուերորդի իշխանացն Զաքարէի և Իւանէի, և եղբօրորդի առաջնոյ Յոհաննիսին։ Սա շինեաց բերդ մի գեղեցիկ ամրագոյն պարսպօք մէջ ընդ Հաղբատ՝ և ընդ Սանահինն։ Վասն որոյ գժտութիւն ընդ երկու մեծամեծ վանքերն եղև, որպէս թէ 'ի հողոյ Սանահնին իցէ. և վրէժխնդիր եղև իշխանն Շահանշահ՝ որդին Զաքարէի՝ Սանահնին. զի հայրն նորա անդ թաղեալ էր, և իւրեանց սեպհական համարէին. զի Հաղբատ 'ի Վրաց թագաւորացն հաշուի էր. յայնմ ժամանակի իբրև մեռաւ եպիսկոպոսն

Յոհանէս, քակեցին զպարիսպ բերդին հրամանաւ Թաթարին։ Եւ յետ մահուան եպիսկոպոսին Յոհաննիսի, եկաց 'ի տեղի նորա Յովանէս՝ որդի Աղուորթանայ 'ի Մածնաբերդոյ, յազգէ Բագրատունեաց, ամս երկու, որ չեւ էր ձեռնադրեալ եպիսկոպոս վասն շփոթման ժամանակին, որ յետոյ ձեռնադրեցաւ 'ի կաթուղիկոսէն Աղուանից 'ի Ներսիսէ կողմանցն Մածնաբերդոյ։ Եւ յետ նորա Համազասպ 'ի քաղաքէն Անւոյ։ Սա շինեաց եկեղեցի հրաշալի, և տեղի ուր զզանկակն կախեն, և ժամատուն մի մեծ և սքանչելի։ Այլ դարձցուք անդրէն 'ի կարգ բանին ուստի ելաք։ Քանզի 'ի բազումս բաժանեցաւ կաթուղիկոսութիւնն Հայոց՝ տէր Գրիգորէս, որ և Վահրամ. յԵգիպտոս. և Գէորգ 'ի կողմանս Արեւմտից. և միւս ոմն 'ի Վասպուրական 'ի կղզւոջն Աղթամար, և տէր Բարսեղ յաշխարհիս Հայոց. այսպիսի 'ի յոլովս բաժանեալ էր։ Բայց Գագիկ Թագաւորն կարուց գնաց տեսանել զկայսրն Յունաց. քանզի ընդ իշխանութեամբ նորա էր. և 'ի դառնալն եկն 'ի Կեսարիա, լուաւ նա՝ եթէ Մարկոս ոմն մետրապօլիտ Կեսարու ունի շուն մի, և վասն ատելութեանն՝ որ առ ազգս Հայոց ունին Հոռոմք, զանուն շանն՝ Արմէն կոչեցեալ է. և այսպէս ձայնէ զնա. զի պհա՛յք ամենայն ազգ Արմէնք կոչեն վասն քաջութեանն Արամայ հայկազնոյ. գնաց Թագաւորն Գագիկ իջեւանս առնել առ մետրապօլտին. և նա ուրախութեամբ ընկալաւ զնա. և իբրև ընդ գինիս մտին, ասէ Թագաւորն. լուեալ է իմ՝ եթէ ունիս շուն ազնիւ, ցո՛յց ինձ զի տեսից զնա. ասէ Նետրապօլիտն. աւասիկ է առ դուրս հանդէպ մեր. և ասէ Թագաւորն. ձայնեա՛ զի գայցէ այսր. և նա ձայնէր նմա զայլ շան անուն, և ոչ զիւրն. իսկ շունն ոչ ընդոստնոյր՝ և ոչ գայր 'ի ներքս։ Ասէ Թագաւորն. զիւր անունն ձայնեա՛ նմա. և իբրև ձայնեաց արմէն արմէն, վաղվաղակի 'ի վեր յարեաւ և եկն։ Ասէ Թագաւորն. ընդէ՞ր ես կոչել դմա զայդ անուն։ Ասէ Նետրապօլիտն. զի մանուկ է։ Եւ հրաման ետ Թագաւորն ծառայից իւրոց և ասէ՝ բերէք քուրձ մի մեծ, և արկէք անդ զշունն. և հազիւ կարացին արկանել. և ասէ Թագաւորն՝ արկէք և զեպիսկոպոսդ, թող տեսից, եթէ մանուկ է շունդ, որպէս

տանց դա։ Իսկ նա լուռ և աղաչէր։ Եւ ասէ Թագաւորն․ արդ խեթանաւ խեթեցէք զշունդ․ զի կերիցէ զդա․ և նոքա խեթէին զշունն․ և նա առ կսկծի ցաւոյն ժանիւքն և մագլօքն պատառ պատառ եհերձ զնա, մինչև սատակեցաւ․ և ասէ՝ արդ գիտացիր եթէ մանուկ է արքենն․ և ինքն կազապանեաց զեպիսկոպոսարանն, և ոչ այլ ևս ետես զկայսրն։

Իսկ մեռ Գագիկն Թագաւորեալ, յաւուր միում եղեալ էր յորս՝ և էր արբեալ․ և 'ի նոյն ժամու եկն յերիվարէն հանգչել ընդ հովանեաւ ծառոյն, և ոչ այլ ոք գոյր ընդ նմա, բայց միայն մանուկ մի փոքրիկ, զի այլ զօրքն՝ ամենայն ցրուեալ էին զհետ որսոյ․ և պատահեալ նմա պարանց․ Յունաց, ծանեան զնա, և բարձեալ տարան զնա 'ի բերդ մի․ և իբրև սթափեցաւ 'ի գինւոյ անտի, եբաց զաչս իւր և ասէ՝ ո՞ւր եմ ես․ և ասեն Հոռոմքն՝ ո՞ւր է Նետրապօլիտն մեր Մարկոս․ և ընկեցին զնա ընդ պարիսպ բերդին և մեռաւ։ Իսկ զմանուկն՝ որ էր ընդ նմա, փնեաց․ ամն վաճառական Հայ, և արար իւր փեսայ․ և եղև յետ աւուրց․ իբրև զարգացաւ մանուկն․ և եղև այր․ գնացեալ 'ի սահմանս Կիւլիկոյ տրամբ միով որսալ կաքաւս, և էր անդ բերդ մի, զոր Բարձրբերդ կոչեն, և էր անդ եպիսկոպոս մի Հոռոմ, և եղև ծանօթութիւն առն և եպիսկոպոսին, և եղեն միմեանց սիրելիք․ և բազում աւուրս ուտէին և ըմպէին 'ի միասին․ և այրն ոչ հանէր 'ի մտաց իւրոց զխրատն, զոր գործեցին Հոռոմք ընդ Թագաւորն Գագիկ, ընդ ազգականն նորա․ և եղև օր մի զի ամենայն պաշտօնեայք եպիսկոպոսին ելեալ էին արտաքս 'ի բերդէն 'ի պէտս ինչ գործոյ իւրեանց․ և էր միայն եպիսկոպոսն, և պատանի մի ընդ նմա․ եկն այրն որսորդ հուպ առ բերդն որսալ կաքաւս, և տեսեալ զեպիսկոպոսն 'ի պարսպին, ձայնեաց առ նա գալ, և 'ի միասին ճաշակել։ Իսկ եպիսկոպոսն զայրն հրաւիրէր գալ 'ի բերդ անդր, և նա ոչ հաւանէր․ ապա էջ առ նա եպիսկոպոսն առանց պաշտօնէի։ Իբրև ետես, եթէ միայն գայ եպիսկոպոսն, ծանեաւ եթէ ոչ ոք կայ 'ի բերդին, ասէ ցայրն՝ որ ընդ նմա էր․ այս օր 'ի դէպ է մեզ առնուլ զվրէժ արեան սպանման Թագաւորին մերոյ, զոր գործեցին Հոռոմք․ տես զուցէ առա-

քէցէ զքեզ եպիսկոպոսն, ջանասէր իբր ամենայն գնա, և խնամ խնամացուցեալ 'ի ձեռն նշանին իւրչ, զի և ես ապաւինից զեպիսկոպոսն։ Եւ իբրև եկն եպիսկոպոսն, մտին 'ի ճաշել։ և իբրև պակասեաց գինին, առէ եպիսկոպոսն ցսպասաւորն. երթ 'ի ջերմ անօթ, և բեր մեզ գինի. զի ուրախացուք 'ի միասին. և իբրև գնաց այրն, եւ զհրաման եպիսկոպոսին սպասաւորն նորա. և իբրև նա խոնարհեցաւ 'ի կարաս անօթ զի հանցէ գինի, նա կալեալ զոտից նորա, դարձուցեալ 'ի վերայ գլխոյն' խեղդեաց զնա 'ի գինի անօթ. և ելեալ 'ի պարիսպն' նշանակեաց սեաւն իւրում, եթէ առի զբ բերդս. և նա առաջին 'ի ներքոյ խեղդեաց զեպիսկոպոսն, և ինքն մտեալ 'ի բերդ անօթ, բռնագաւ և առ. անկասակաւ ամենայն զկալուած իւր, զոր բռնութեամբ, և զոր պատուրանօք, մինչև տիրեաց նա և որդիք իւր, և թոռունք աշխարհին Դիլէկեցւոց, քաղաքաց և գաւառաց։ Սա է նախանին թագաւորին Լևոնի, որ ընդարձակեաց զսահմանս իւր. քաջութեամբ, զոր յիշում տեղւոջն առաջուք։

Իսկ զկնի Վասլի կայսեր, թագաւորեաց Կոստանդին. և յետ նորա Ռոմանոս ծեր. և զկնի նորա Միխայէլ. և սորա Կիւռղի. և յետ նորա Մոնոմախոսն։ Առ սորաւ առեն զերթեկ Գաղկայ 'ի Յոյնս. և յետ նորա Կիռ Թոդորոն. և սորա Ցուկիծն. և յետ նորա Դիւժէնն։ Յառաջին ամի սորա մեռաւ Գագիկ Շահնշահ թագաւորն Վանանդայ. և յութերորդ ամի իշխանութեան նորա ել Դիւժէնն բազում զօրօք 'ի Պարս 'ի պատերազմ, և եկն 'ի Մանազկերտ և առ զնա, զոր լուեալ բռնաւորին Ալփասլանայ' եկն ընդ առաջ. և եղև սաստիկ պատերազմ, և պարտեցաւ Դիւժէնն, և ըմբռնեցաւ 'ի նմանէ, և հարկ եդեալ 'ի վերայ նորա' եթող։ Իսկ ազգն նորա ոչ հնազանդեցան նմա, այլ թագաւորեցուցին զՄիխայէլ որդի Ցուկիծին. դարձեալ պատերազմեալ Միխայէլն եհար զԴիւժէնն. և զօրացն քուրձ ագուցեալ նմա, ածին առ թագաւորն Միխայէլ. և 'ի ճանապարհին զաչս նորա փորեցին հրամանաւ կայսեր. և 'ի կակծոյն մեռաւ 'ի չի թուականին։

Իսկ 'ի սմին ամի դատաստանք երկայնամտին և արդարադատին Աստուծոյ յուզեցան 'ի վերայ Խորասանու և ամե-

դերձ Ցածկատանաւ, և բազում կրեցին նեղութիւն յորդւոցն բելիարայ, Ալէքս կոչեցելոյ, որ էր թագաւոր 'ի Կոստանդնուպօլիս, գաղտնի և յայտնի նենգութեամբ. քանզի հրամայեաց անօրէնն խառնել 'ի կերակուրն դեղ մահու, և այնպէս տալ նոցա, նոյնպէս և յըմպելին. ուտէին և մեռանէին. և 'ի ծովն ևս ննգեաց զնոսա, որ վտանգանային 'ի նա, իբրև հաւատակից իւրեանց. և բարբարոսացն՝ խորամանկութեամբ օգնէր, որում հաւանեցէ Տէր՝ քանզի և չէր իսկ քրիստոնեայ՝ որպէս և ոչ մայր նորա. զի բազումք մեռան 'ի Ֆրանգացն, և մնացեալքն ունայն դարձան յԱնտաք՝ և առին զնա, և զԵրուսաղէմ, երկու տղունք՝ Մայմունն և Ցանղրիլն, և եօթն կոմսունք. և թագաւորեաց յԵրուսաղէմ Կոնտոփրի, և ապա Պաղտոյնն ամս եօթն և տասն, և Ամարի ամս տասն և ինն. և եղև այս 'ի ՇԽԸ թուին Հայոց։ Մեռաւ Սկիւթացի բռնաւորն Խզըլն 'ի յառման քաղաքին Դըլնայ 'ի զօրացն Պարսից. և ապա 'ի բազումս բաժանի տէրութիւն նոցա, ոմն բռնացեալ 'ի Խորասան, և ոմն յԱսորեստանի, և այլ ոմն 'ի կողմն Կապադովկացւոց և Հայոց. և ոմն յԵգիպտոս. և այլք յայլ տեղիս, որոց անուանքն անծանօթ մեզ։

Ի ՇԿԵ թուականին վախճանեցաւ տէր Բարսեղ, կալեալ զհայրապետութիւնն ամս երեսուն երեք. և յաջորդէ զաթոռն տէր Գրիգորիս, եղբայրն Ներսէսի, մեծաշուք պատուով. սոքա էին յազգէ սրբոյն Գրիգորի։ Վասն որոյ և ընդ նստելն իւր յաթոռ սուրբ Լուսաւորչին սքանչելի հայրապետն սուրբն Գրիգորիս, պայծառացոյց զսուրբ եկեղեցի զանազան կարգօք և օրինադրութեամբ կանոնականօք, ամենայնիւ ջանայր ըստ օրինակի իւրոց նախնեացն վարել, սրբոյն Գրիգորի և զաւակի նորա նմանել։ Սա փոխեաց զաթոռն հայրապետական 'ի բերդն՝ որ կոչի Հռոմկլայ. քանզի իբրև առին Յոյնք առ իւրեանս զԳագիկ թագաւորն և զտէր Պետրոս, այնուհետև ոչ եղև յարևելս աթոռն հայրապետական, այլ ընդ իշխանութեամբ Յունաց. երբեմն 'ի Սեբաստիա, երբեմն 'ի Ծովքն կոչեցեալ վայր. իսկ սա փոխեաց 'ի Կլայն Հռոմէական։ Եւ եղև պատճառ փոխելոյն այս. նեղացաւ 'ի Սկիւթականացն

և 'ի Տաճկաց, այսք անգամ յածելով. ապա եւս զանբերդն ամուր՝ բարձեալ զորբութիւնսն իւր, և զսպասս եկեղեցւոյ, տարեալ եդ անդ 'ի պահեստի առ բարեմիտ կին իշխան մի, ազգաւ Փռանգ. և եղև ընդ յաւուրսն ընդ այնոսիկ վախճանել իշխանին, որ էր տէր բերդին, և մնաց կինն նորա այրի. զոր աղաչեալ սրբազան հայրապետին զկինն բարեպաշտօն տալ զբերդն ցհայրապետն, զի լիցի նա աթոռ կաթուղիկոսութեան Հայոց. և կինն եւս յօժարութեամբ, և յուղարկեալ սրբոյ հայրապետին զկինն յաշխարհն Կիւլիկեցւոց առ մեծ իշխանաց իշխանն Հայոց Թորոս, և նա ետ նմա գեւղս և ագարակս և այլ կալուածս, և ուրախ արար զկինն յոյժ, և ապա առաքեաց զնա յաշխարհ իւր:

Այս Թորոս իշխան և եղբայր իւր Ստեփանէ որդիք էին իշխանին Լևոնի, որդւոյ Կոստանդեայ, որդւոյ Ռուբինեայ, Թոռունք յառաջագոյն ասացելոյ առնն, որ յազգականութենէ և 'ի զաւակացն Գագկայ Արծրունեաց. որք ընդարձակեցին զսահմանս իւրեանց քաջութեամբ, տիրելով բազում գաւառաց և քաղաքաց յաշխարհին Կիւլիկեցւոց և Սուրացւոց և այլոց բազմաց. առին զանուանի քաղաքս աշխարհին զՏարսոն և զՄիս և զԱտանա և զՍելևկիա, և որ շուրջ զնոքօք գաւառք և քաղաքք. զոր լուեալ կայսրն Յունաց. որ Ալէքս կոչիւր, առաքէ բազում զօրս 'ի վերայ իշխանացն Հայոց՝ Ստեփաննեայ և Թորոսին զԱնդրոնիկոս. և ըմբռնեաց զՍտեփանէ խաբէութեամբ՝ ետ սպանանել: Իսկ Թորոսի առեալ զեղբօրորդիս իւր զՌուբէն և զԼևոն, եդ զնոսա 'ի բերդ մի ամուր, և ապա էառ Թորոս զքէն վրիժուց արեան եղբօր իւրոյ 'ի Հոռոմոց անտի, որ բնակեալ էին յաշխարհին, զի զբռնացեալսն կոտորէր. և զայլսն փախստական առնէր յաշխարհէն և ինքն տիրէր ամենայն գաւառացն մեծաւ զօրութեամբ:

Իսկ. յայս Թուականի չ՟է, յորում վախճանեցաւ Բարսեղ կաթուղիկոսն, փոխեցաւ առ Քրիստոս՝ մեծ և հռչակաւորն վարդապետն Գէորգ, զոր ըստ քաղցրութեան բարուց իւրոց Մեղրիկ կոչէին: Սա կարգաւորեաց զհռչակաւոր ուխտն՝ որ Դրազարկ կոչի, անդադար լինել 'ի պաշտօնն

զցայգ և ցերեկ, և հանապազ պահօք կատարել, և առանձին՝ ումեք ինչ ոչ 'լինել, բայց 'ի հասարակաց տանէն։ Ի սոյն ամի և արին Հռոմայեցւոց Թանդրի, իշխող քաղաքին Անտիոքայ, վախճանէր. դեղակուր լեալ 'ի պատրիարքէն իւրեանց. և առնու զկաթուղիկոսութիւնն Հայոց յետ տէր Բարսղի Գրիգորիոս ամս յիսուն երեք։ Իսկ սքանչելի հայրապետն Գրիգորիս ձեռն 'ի գործ արկեալ շինեաց եկեղեցի հրաշազան գմբեթայարկ 'ի նոյն բերդի. և սկսաւ թարգմանութիւն առնել յաստուածային գրոց, և բազում գիրս ետ թարգմանել 'ի Հայ լեզու, զո՛րն ինքեամբ և զո՛րն 'ի ձեռս այլոց։

Յաւուրս սորա էին վարդապետք անուանիք և իմաստունք՝ Ներսէս սքանչելի, հարազատ Նորուն կաթուղիկոսի, և միւս Ներսէս եպիսկոպոս Լամբրոնեցի, եղբայր Հեթմոյ, որ թարգմանեաց զմեկնութիւն տեսլեանն Յովհաննու, և զպատմութիւնն Գրիգորի Պապոյն Հռոմայ, և զօրինագրութիւն Բենեդիկտոսի. արար և մեկնութիւն յինքենէ սաղմոսացն Դաւթի, և առակացն Սողոմոնի, և սուրբ պատարագամատուցին, և աղօթիցն Յովհաննու աւետարանչին, որոյ սկիզբն է այս. Ի՛ր ընդ եղբարսն երա՛". շինեաց և եկեղեցի հրաշազան 'ի վանքն՝ որ կոչի Սկեւռայ, հուպ 'ի բերդն անառիկ Լամբրոն, և կարգեաց զպաշտօն վանիցն ըստ օրինակի այլոց ազգաց սարկաւագաւ և դպրաւ և անծածուկ գլխով, զոր յոլովք դարովքն 'ի Հայոց։ Եւ միւս ևս եպիսկոպոս, անուն Իգնատիոս, որում հրամայեաց կաթուղիկոսն մեկնութիւն առնել Ղուկասու աւետարանին. և նա ոչ առ յանձն, մինչև տեսանէր 'ի տեսլեան տուն մի լուսաւոր և զարդարեալ ամենայն վայելչութեամբ, և զամենայն վարդապետս եկեղեցւոյ անդ խրախացեալս, կամեցաւ և ինքն մտանել 'ի ներքս՝ և արգելուին զնա և ասէին, եթէ վասն զի ո՛չ աշխատեցար 'ի մեկնել զաւետարանն, ո՛չ մտցես այսր. և զարթուցեալ սկսաւ 'ի մեկնել զաւետարանն Ղուկայ խորհրդական և մտաւոր բանիւ։ Եւ այլ ոմն վարդապետ, Սարգիս անուն, 'ի վանքն՝ որ կոչի Ասորերէն Քարաշթաւ, արար մեկնութիւն եօթանեցունց թղթոցն կաթուղիկեայց նախերգանօք և յորդա-

բակօք ընդարձակ և առատ ճառիւք։ Եւ միւս ևս եպիսկոպոս, Յովսէփ անուն, այր երևելի 'ի կողմանս Անտիոքու։ Իսկ յԱրևելս արք անուանիք և գիտնականք լուսաւորիչք եկեղեցւոյ՝ Անանիա վարդապետ 'ի Սանահինն, յաւուրս Գիոսկորոսի, այր մտաւոր և հանճարեղ, գիտող տոմարական արհեստի, և աստուածային գրոց մեկնող։ Սորա ասեն հաւաքեալ 'ի մեկնութիւն առաքելոյ զբանսն Եփրեմի և Յոհաննու Ոսկեբերանին և Կիւրղի և այլ սրբոց, արարեալ համառօտ վասն դիւրահասութեան ընթերցողաց, արար և խորհրդական և մտաւոր տեսութիւն և համեմատութիւն աւետարանացն առ օրինակս. գրեաց և լուսաւոր իմացուածս վասն խորհրդական սրբասացութեանս, որ յեկեղեցիս ուղղափառաց խաչեցարիւ ասեն, և զներբողեանն Հողակաթին։ Սոյնպէս և մեծիմաստն գիտութեամբ քան զյոլովս և հանճարեղն յամենայնի՝ մտահարուստն Յոհանէս, Սարկաւագն կոչեցեալ, 'ի Հաղբատ. սա բազում ինչ աշխատասիրեաց 'ի գիրս, յիշատակ բարի թողեալ. սա զբազմաց փափաքելին. և ոչ ձեռնհաս, զհաստատ և զանշարժ տոմարն կարգեաց Հայոց փոխանակ շարժականին և անհաստատնոյն. արար և միաբանութիւն ամենայն ազգաց տոմարի ընդ Հայոց։ Վասն զի յոյժ իմաստուն էր այրն և աստուածային շնորհօք զարդարեալ. սորա բանքն ամենայն իմաստասիրական ոճով, որպէս զԳրիգորի Աստուածաբանին, և ոչ գեղջուկ. սա գրեաց ճառս ներբողականս 'ի մեծազօր արքայն Տրդատ, և 'ի սուրբ հայրապետն Ներսէս, և 'ի սքանչելին Սահակ և Մեսրոպ. արար և շարական Ղևոնդեանցն քաղցր եղանակաւ և յարմար բանիւ, որոյ սկիզբն է այս. Պայծառացան այսօր սուրբ եկեղ". գրեաց և նոցա ճառս ներբողականս. գրեաց սա և գիրս աղօթից. գրեաց և օրինակ ստոյգ գրոց. կարի յոյժ սիրէր զսա Թագաւորն Վրաց Դաւիթ, հայրն Դեմետրեայ, պապն Դաւթի և Գէորգեայ այնքան, զի մինչ լսէր զգալուստ նորա, յոտն առնէր ընդ առաջ նորա, և խոնարհեցուցեալ զգլուխն՝ խնդրէր 'ի նմանէ օրհնութիւն. և նա եդեալ զձեռն 'ի վերայ նորա, և ասէր զսաղմոսս զայս. Գտի զԴաւիթ ծառայ իմ". Ձեռն իմ ընկա". Մի մեղիցէ նմա թշ". և 'ի

պատճառս սորա սիրէր Թագաւորն զազգս Հայոց։ Գէպ եղև սմա յաւուր միում վասն անառակ գնացից որոշել զոմն 'ի խորհրդական պատարագէն. Զոմզոմայ անուն, և նա փոխանակ զղջանալոյ և ապաշխարելոյ խորհէր սպանանել զսքանչելին. և պատահեալ նմա, մինչդեռ գայր յայրէ անտի, որ 'ի ներքոյ կայ վանիցն, հայելով 'ի վերայ գետոյն, ըմբռնեալ անամօթն, ընկէց յերկիր, և հարաւ 'ի վերայ նորա. իսկ սուրբն զի իմաստուն էր, ասէ ցնա՝ որդեակ Ստեփաննոս՝ մի՛ սպանաներ զիս. և ասէ ցնա յանդուգն՝ մինչև ցայժմ Զոմզոմայ էի, իսկ այժմ փոխանակ միոյ նուի բազում յաւելուս Ստեփաննոս։ Քանզի Զոմզոմայն մականուն էր նորա. դու ընդէ՞ր սպաներ զիս, զի հաներ յեկեղեցւոյ։ Ասէ ցնա իմաստասէրն. և դարձեալ մուծից զքեզ յեկեղեցի. և եթող զնա. և նորա եկեալ 'ի վանսն՝ ասէ ցեղբարսն. զոր ինչ ասէին զեզբօրէս զայսմանէ, կարծեմ թէ սուտ է, աւասիկ մուծանեմ զսա յեկեղեցի. և հրամայեաց եկեղեցպանին առնել զնա աւագ երէց, և բազում քրթմնջիւն էր վասն այնորիկ, որպէս թէ անարժան էր և նա կաշառս էառ և եմոյծ զնա յեկեղեցին. և իբրև եհաս ժամ սուրբ պատարագին, ել թը-շուառականն 'ի բեմբն, զի մատուցէ պատարագ. եկն վարդապետն 'ի գաւիթ անդր 'ի մէջ ատենին՝ հանդէպ սրբոյ սեղանոյն, եբաց զգլուխ իւր, և սկսաւ աղօթել. և վաղվաղակի ոգի չար եմուտ յայրն աներկիւղ, և ընկէց զնա 'ի բեմէ անտի 'ի յատակս տաճարին, և սկսաւ լլկել զնա յոյժ, և հանեն զնա 'ի տաճարէ անտի, որպէս զՅուդայն, և երկիւղ մեծ անկաւ 'ի վերայ տեսողացն։ Եւ այսպիսի բարւոք քաղաքավարութեամբ կեցեալ յաշխարհի՝ փոխեցաւ 'ի Քրիստոս աշխատասէրն 'ի Հաղբատ. և թաղեցին զնա յարևելից կուսէ եկեղեցւոյն մեծի առ դուրս փոքրագոյն եկեղեցւոյն, զոր յետոյ քակեաց եպիսկոպոսն Համազասպ և շինեաց հրաշալի շինուած, ուր զզանգական կախէին, յարմարեալ 'ի նմին և եկեղեցիս։ Եւ եղև վախճան սրբոյն 'ի չհժ թուականին. և զկնի ամի միոյ վախճանեցաւ սուրբ լուսաւորիչն Գաւիթ վարդապետն, Ալաւկայ որդի, որ գրեաց զկանոնական օրինադրութիւնս գե-

ղեցկայարմարս և պիտանացուս 'ի խնդրոյ քահանայի մերոյ, որում անուն էր Արքայութիւն, 'ի քաղաքէն Գանձակայ։ Եւ միւս ևս սքանչելի վարդապետ, զոր Թոքակերի որդի կոչէին, Գրիգոր անուն. սորա երեքեանս էին յաշխարհէն Գանձակայ, ուստի և ես։ Դէպ եղև զի յաւուր միում նստէին երեքեան արքս սքանչելիք, եկն անդ ոմն չենական այր մի և ասէ ցնոսա՝ երանի՜ որ գիտէ ո՞ իմաստնագոյն իցէ. զայս իբրև ծաղրական ասաց. պատասխանի ետ Թոքակերի որդին և ասէ. ես ասեմ քեզ. մինչդեռ էաք 'ի մերում աշխարհին, ես կտրող էի և կարող. իսկ սարկաւագս՝ կարել միայն գիտէր. իսկ այժմ սա կարէ և կարէ, և բազում նկարս յաւելու 'ի վերայ. զայս առակաբար վասն իմաստութեան նորա ասաց. զի այնպէս փոյթ էր այրն յուսումն, զի պատահեաց յաւուր միում գնալ նմա յայրն, ուր գրեանն էին, և այլք ընդ նմա. իբրև ելին՝ որ ընդ նմայն էին, և փակեցին զդուռն, նա թաքոյց զանձն 'ի ներքս, այսպէս գիտելով նոցա եթէ նա ել նա։ Իբրև անցին աւուրք բազումք 'ի վերայ, դարձեալ գնացին յայրն 'ի պէտս ինչ, տեսին զնա և սքանչացան. հարցանէին զնա՝ թէ ո՞րպէս ապրեցար առանց կերակրոյ և ըմպելոյ. և նա եցոյց նոցա զգրեանն, զոր ընթերցեալ էր. և այս է, ասէ, իմ կերակուր և ըմպելի, զոր կերայ և արբի զաւուրս զայսոսիկ։

Ի ՇՁԸ թուականին եղև շարժ սաստիկ և կործանեցաւ քաղաքն Գանձակ, և տապալեցան շինուածք՝ որ 'ի նմա, 'ի վերայ բնակչաց իւրոց. և եկն թագաւորն Վրաց Դեմետրէ՝ հայրն Դաւթի և Գէորգեայ, և տարաւ զդրունս քաղաքին յաշխարհն իւր. փլաւ և լեառն Ալհարակ 'ի շարժմանէն և արգել զձորակն՝ որ անցանէր ընդ մէջ նորա. և եղև ծովակ, որ է մինչև ցայսօր. լինին 'ի նմա ձկունք ազնիւք։

Իսկ սքանչելի հայրապետն Գրիգորիս օր ըստ օրէ յաւելոյր 'ի բարեգործութիւն և 'ի պայծառութիւն եկեղեցւոյ. և էր սիրեցեալ նա յամենայն ազգաց. եղև նմա գնալ 'ի սուրբ քաղաքն Երուսաղէմ, զի երկրպագեսցէ նա սուրբ տեղեացն տնօրինականաց։ Իբրև եհաս նա 'ի քաղաքն Անտիոք՝ ել ամենայն քաղաքն ընդ առաջ նորա ջահիւք

և լապտերօք, և մեծաւ պատուով տարեալ զնա Նստուցին յաթոռն Պետրոսի առաքելոյն. և իբրև եհաս նա յԵրուսաղէմ, ազգն Փռանգաց՝ որ իշխողք էին քաղաքին, և պատրիարքն նոցա առաւել սէր հաստատեցին ընդ ազգիս մերում վասն նորա, զի էր նա բարի տեսլեամբ, և գիտութեամբ Սուրբ Գրոց զարդարեալ. զհին դաշինսն Տրդատայ և սրբոյն Գրիգորի և Կոստանդիանոսի կայսեր և Սեղբեստրոսի հայրապետին վերստին հաստատեցին և նորոգեցին առ սոքաւ. և այսպէս բարիոք խոստովանութեամբ կեցեալ՝ փոխեցաւ առ Քրիստոս լի աւուրբք և կատարեալ առաքինութեամբ. և փոխանորդէ զաթոռն եղբայր նորին Ներսէս զեօթն ամ։

Այս Ներսէս առաւելեալ էր իմաստութեամբ քան զյոլովս 'ի ժամանակի անդ ո՛չ միայն քան զվարդապետս Հայոց, այլ և քան զՅունաց և զԱսորւոց. այնքան՝ զի համբաւ իմաստութեան նորա տարածեցաւ ընդ ամենայն ազգս, մինչ զի իմաստասէր ոմն Կոստանդնուպօլսեցի, անուն Թէորա, լուեալ զհամբաւ նորա, բարձեալ զգրեանս իւր 'ի վերայ գրաստուց, եկն փորձել զնա, և լսել զիմաստութիւն նորա. և եկեալ՝ զաւուրս բազումս խօսեցաւ ընդ նմա, և եգիտ զնա փորձ ամենայնիւ, այլ և հոգւով սրբով առլցեալ. և իբրև գնաց նա 'ի քաղաքն Կոստանդնուպօլիս, հարցանէին զնա և ասէին՝ թէ ո՛րպէս էր համբաւն, նոյնպէս՝ եթէ ո՛չ. և նա ասէ՝ որպէս լուաք, սոյնպէս և տեսաք. զի Նոր ոմն Գրիգորիոս Աստուածաբան յարուցեալ է. և զարմացուցանէր զամենեսեան վասն նորա։ Եւ զի էր նա այր բանաւոր, բազում ինչ կարգեաց յեկեղեցի քաղցր եղանակաւ խոսրովեան ոճով շարականս և մեղեդիս և տաղս ոտանաւորս, քանզի նորա է յարութեան օրհնութիւն երրորդ կողմն, և Աստուածածնին փոխման երկուց աւուրցն, և Պետրոսի և Պօղոսի օրհնութիւն և մանկունքն, և համբարձին, որոյ սկիզբն է այս. Ցնծա՛ այսօր եկեղեցի". և որդւոցն որոտման օրհնութիւն՝ Որ էն յէութեան որդի՛. և շարական մի Անտոնի, և երկու Թէոդոսի, և մի քառասնիցն, և մի առաքելոցն, և աւագ շաբաթին երից աւուրց օրհնութիւն, երկուշաբաթին, երեքշաբաթին, չորեքշաբաթին,

և երկու շարական յարութեան ճաշու, և Նինուէացւոցն, և Հրեշտակապետացն, և սրբոց Վարդանանցն, և այլ բազում շարականս։ Արար նա գքարոզ սրբոյ պատարագին քաղցր եղանակաւ, և տուեաս շարականաց նմին խորհրդաբար, և երկու գանձ ըստ գրոց անուան իւրոյ՝ մի Վարդաւառին և մի փոխման Աստուածածնին, որպէս Նարեկացին Գրիգոր զՀոգւոյն գալստեանն և զեկեղեցւոյ և ըզ սուրբ խաչին. այն որ գրեաց զգիրս աղօթից յոգնազան բառիւք և իմաստասիրական ոճով, և զներբողեանն սրբոյն Յակոբայ Մծբնացւոյ, և զառաքելոցն։ Սոյնպէս և սա կարգեաց զՀամառօտն աւետարանին լուսաւոր և առատ միօք, մինչև յայն տեղի որ ասաց Տէրն թէ մի համարիք եթէ եկի լու". և անդ ոչ գիտեմ, եթէ վասն ինչ պատճառի խափան եղև. գրեաց նա և ճառս Հրեշտակապետացն ըստ ոճոյն Դիոնեսեայ Արիսպագացւոյն. Թարգմանեաց և բազում ճառս վկայից Աստուծոյ, և այսպիսի բարիօք կարգաւորութեամբ փոխեցաւ առ Քրիստոս յոյսն ամենայնի ցանկալի և երանելի մահուամբ. զի այնպէս էին կամք սըրբոյն, զի հնար իցէ ոչ ոք խօսեսցի 'ի խօսս աշխարհականս, բայց 'ի գրոց, ոչ 'ի գինարբուս և ոչ յայլ ուրախութիւնս։ Վասն այնորիկ արար նա երգս և ուսոյց այնոցիկ, որ պահէին զբերդն. զի փոխանակ վայրապար ձայնիցն, զայն ասասցեն, որոյ սկիզբն է սաղմոսն Դաւթի. Յիշեցի 'ի գիշերի զա". և այսպէս խորհրդաբար ըստ կարգի, Զարթիք փառք իմ, որ այժմ ասի յեկեղեցի 'ի ժամ գիշերային պաշտաման։ Կոչեցաւ երբեմն 'ի մեծէն Ալէքսէ, որ էր փեսայ ինքնակալ թագաւորին Հոռոմոց Մանիլին և եկեալ էր 'ի Մամուեստիա քաղաք Կիլիկեցւոց, և հարցեալ զնա բանս խորինս և դժուարիմացս 'ի գրոց, յամենայնի կատարեալս եգիտ զնա, և մեծարեաց յոյժ. դարձեալ գրեաց առ նա՝ գրով տալ նմա զխոստովանութիւն հաւատոյ Հայոց, և զխորհուրդ տօնից, և զառաջաւոր պահոցն, և զխորհուրդ մի բնութեանն, զոր ասեմք մեք 'ի Քրիստոս Յիսուս յետ միաւորութեանն, և զայլ կարգաց եկեղեցւոյ, որ ոչ է միաբան այլոց ազգաց։ Իսկ նա համառօտ և յայտնի բանիւք ետ նմա զխնդրելին, զոր ասէ եկեղեցի Հայաստանեայց ուղղափառութեամբ այսպէս.

Գիրք համառօտ խոստովանութեան Հայաստանեայց եկե-ղեցւոյ, գրեալ 'ի Ներսէսէ եպիսկոպոսէ՝ յեղբօրէ կաթողիկոսին Հայոց Գրիգորիսէ, 'ի խնդրոյ գերա-պատուի փեսայի ինքնակալ Թագաւորին Հոռոմոց մե-ծի պրոտօստրատօրին Ալէքսիոսի, յորժամ էր յԱրևելս, և էր 'ի Մամուեստիա մայրաքաղաքին Կիլիկեցւոց. ան-դանօր հանդիպելով նմին՝ կոչմամբ նորին 'ի Թոռականին ուխտս։

*Բանիւք դուզնաքեայ իմն խօսելով 'ի լսելիս խոհե-մագունիդ, և աստուածասիրի անձին, յաղագս մերոյ հա-ւատոյ և կարգաց եկեղեցւոյ, հարցման որ 'ի ձէնջ, պա-տասխանի. և քանզի խօսեցեալն իմաստք շրթամբք, ոչ է բնաւորեալ յշտեմարանս յիշողականին մեր մնայ ան-ծախապէս, զմոռացութիւն ունելով հակառակ. Վասն որոյ խնդրէք գրով արձանացուցանել զնոյն, յաղագս անաղօտ մնալոյ առ ձեզ յիշատակ բանիցն որ 'ի մէնջ, զոր և աս-ցուք տիրաբար սիրողեդ զիմաստութիւն ըստ տխմար գի-տութեան մերոյ և տկարութեան, և ժամուս փութոյ՝ հա-մառօտ և յայտնի բանիւ։ Յակայն զբովանդակն պարագրե-լով զհաւատոյ մերոյ ճշմարտութիւն, և զեկեղեցւոյ կար-գաւորութիւն, 'ի հարցն սրբոց աւանդից ընկալեալ՝ որ է այսպէս. Խոստովանիմք զամենասուրբ զԵրրորդութիւնն, զՀայր, և զՈրդի, և զսուրբ Հոգին, յերիս անձնաւորու-թիւնս բաժանեալ, և 'ի մի բնութիւն, և աստուածութիւն ժողովեալ։ Հայր անծին և անսկիզբն յառաջ քան զյա-ւիտեանս։ Որդի ծնեալ 'ի բնութենէ Հօր, անախտ և անմարմին, նախ քան զժամանակս։ Հոգին սուրբ՝ բղխումն 'ի Հօրէ, ոչ ըստ Որդւոյ ծննդեամբ, այլ յառաջ եկեալ աղբիւ-րաբար. ինքեան միայնոյ քննելի օրինակն, և յարարածոց անգիտելի, և ոչ էր երբեմն Հայր՝ յորժամ ոչ էր ընդ նմին Որդի և Հոգի։ Այլ որպէս Հայր՝ միշտ Հայր. և ոչ յետոյ ստացեալ զանուն Հայրութեան։ Նոյնպէս և Որ-դի՝ միշտ Որդի, ընդ Հօր իւրում մշտընջենաւոր։ Այսպէս*

և Հոգին սուրբ՝ միշտ Հոգի Աստուծոյ. անմեկնելի ՚ի Հօրէ և յՈրդւոյ մի էութիւն, մի իշխանութիւն, մի կամք, և մի արարչագործ զօրութիւն, յերիս անձնաւորութիւնս խմանի։ Ո՛չ մեծութիւն և ո՛չ փոքրութիւն, ո՛չ բարձրութիւն և ո՛չ խոնարհութիւն, ո՛չ առաւելութիւն և ո՛չ նուազութիւն. այլ մի կարգ, մի պաշտօն, մի երկրպագութիւն հանապազ սուրբ Երրորդութեանն դաւանի, որով գոյացան յոչէից եղեալքս ամենայն, երկինք երկնաւորօքն, և երկիրս երկրաւորօքս, երևելի և աներևոյթ արարածք. յառաջինն եղեալ արարչութեան։ Իսկ՝ յերկրորդումն՝ մի յԵրրորդութենէն բանն Հօր Որդին միածին, կամաւ Հօր և Հոգւոյն, աւետաւօք հրեշտակապետին Գաբրիէլի, էջ յարովայն կուսին Մարիամու, ո՛չ նուազելով ՚ի ծոցոյ Հօր, ըստ աստուածային անպարագրելի բնութեանն, և ձգեալ յինքն յարենէ ամենամաքուր կուսին, որ ՚ի զանգուածոյն Ադամայ, միացոյց ընդ Աստուածութեանն իւրում; անքննին և անճառելի խառնմամբ, և եղև յերկուց կատարեալ բնութեանց, յԱստուածայնոյն և մարդկայնոյն, մի անձնաւորութիւն կատարեալ, անպայլելի և անբաժանելի բնութեամբ, ո՛չ փոփոխելով մարդկային թանձր և յօդական բնութիւնս յանօդ և ՚ի պարզական բնութիւնն Աստուծոյ, զիւրն կորուսանելով. և ո՛չ պարզ և անմարմնական բնութիւնն Աստուծոյ խառնելովն ընդ բնութեան մարմնոյ, վրիպեաց յիւրն յաւէտ պարզութենէ. թէպէտ և ասի յաղագս անքակ միութեանն, անմարմնոյն մարմնանալ, և բանին թանձրանալ։ Այլ և խառնի ընդ մարմնոյ անմարմին բանն, և միացուցանէ ընդ ինքեան զմարդկային բնութիւնս, Աստուածացուցանելով զնախառնմամբն, և միաւորութեամբն, ո՛չ փոփոխումն կամ այլայլութիւն ունելով ՚ի միաւորութեանն, ըստ որում և ո՛չ Հոգի, և մարմին. մարդկային. թէպէտ և գերագոյն քան զօրինակն իմանի ճշմարտութեանն որպէս ընդ արարիչ և ընդ արարած, գոյ համեմատութիւն, այլ միաւորեալ զմերս ընդ իւրումն՝ անհասանելի յեղանակաւ, և մնաց անփոփոխ առօղն և առեալն։ Ո՛չ ըմբռնողապէս, որպէս օդ՝ և ջուր յամանի, զի յարտաքս ելանելն դատարկանայ, այլ բնա-

ւորպէս միացեալ 'ի վեր քան զբան, անբաժանելի և անշփոթ միութեամբ, և առնլով զբնութիւնն Ադամայ, ո՛չ զոր յանմեղութեանն և 'ի դրախտին, այլ զոր յետ մեղանացն և ապականութեանն, զի և կոյսն Մարիամ, յորմէ մարմին առ Քրիստոս, 'ի մեղանչականին Ադամայ բնութենէն էր։ Սակայն միաւորելով ընդ բնութեանն Աստուծոյ, մեղանչականն եղև անմեղ, և ապականացուն արտաքոյ անգոսնելի ապականութեան կրից. ո՞պ և հրահալելի նիւթք, յորժամ ընդ հրոյ միանան, ժանկ ապականութեան եթէ իցէ 'ի նոսա, ծախի։ Իսկ բնութիւնն մաքրելով յապականութենէն, անծախելի մնայ. զի որոյ սկիզբն անապական՝ զի առանց սերման, յանապական կուսէ էր ծնունդն, և կատարումն անապական, զի մարմին նորա 'ի գերեզմանի ո՛չ ետես զապականութիւն, հա՛րկ է, զի և միջոց ժամանակին, որ ընդ ծնունդն և ընդ մահն՝ լինել անապական։ Ո՛չ 'ի հարկաւոր և 'ի կամաւոր կրից ասեմք գոլ անապական, Փ. 'ի քաղցոյ և 'ի ծարաւոյ, 'ի ննջելոյ և 'ի վաստակելոյ, 'ի տրտմելոյ և յարտասուելոյ, որք ճշմարիտ՝ և ո՛չ առ աչօք տա՛ն մեզ իմանալ զմարդեղութիւնն նորա, այլ յակամայ և յանգոսնելի կրից՝ խոստովանիմ ունել զանապականութիւն. զի էր ինչ 'ի նմա նման մերումս, և էր որ 'ի վեր քան զմերս ըստ գրեցելումն, թէ մարդ է և 'ի վեր քան զմարդ, և թէ մարդ է՝ և ո՞ ծանիցէ զնա։ Արդ՝ ըստ մերում հասանելոյ այսպէս եղեալ միաւորութեան յեղանակ, յարգանդի կուսին բնակելով ինն ամսեայ ժամանակաւ, հինգ յաւելեալ աւուրբք, ըստ անդրանկածնութեանն, և այն որ կարո՛ղն էր 'ի միում վայրկենի լինել կատարեալ, որ ըստ օրէ աճմամբ զարգանայր, որպէս զի խափանեսցի այսոքիւք առ աչօք կարծեցն զմարդեղութիւնն։ Ծնանի որպէս մարդ Աստուած մարդացեալ, զկուսութիւն ծնօղին անապական պահելով, զի և զծնունդն օրհնեսցէ յանիծիցն, և զկուսութիւն նախ պատուեսցէ։ Թլփատեցաւ ութօրեայ՝ զի զուխտն որ ընդ հարսն՝ կատարեսցէ, և մեզ ուսուսցէ զթլփատութիւնն սրտի հոգեւորապէս։ Ե՛կն 'ի տաճարն քառասնօրեայ ըստ օրինացն յընծայումն, զի զմարդկային բնութիւնս ընծայեսցէ ինքեամբ

Հօր 'ի բարձունս։ Փախեաւ յԵգիպտոս, զի զմայրաքաղաք կռապաշտութեանն դարձուսցէ յաստուածպաշտութիւն, և զմեզ խրատեսցէ յօժարութեամբ փախչել ընդ նմա հալածանօք։ Շրջեցաւ յաշխարհի՝ ամս երեսուն, աղքատութեամբ և խոնարհութեամբ, ծածկելով զաստուածութիւնն, զի զմեզ ճոխացուցեալ բարձրացուսցէ, յորժամ նորին ճանապարհի լինիմք հետևողք։ Եկն 'ի Յորդանան, 'ի լրումն երեսնից ամաց, յայտնելով զփառս Աստուածութեան իւրոյ՝ վկայութեամբ Հօր, թէ դա է Որդի իմ սիրելի, և Հոգւոյն աղաւնակերպ իջմամբ։ Մկրտեցաւ 'ի Յովաննէ, զի զջուրսն սրբեսցէ, և զհնութիւն մեղացն ընկղմեսցէ 'ի նմա, և զհոգևորականն տացէ մեզ մկրտութիւն, ըստ վկայութեանն Յոհաննու, թէ նա մկրտեսցէ զձեզ 'ի Հոգին սուրբ և 'ի հուր։ Պահեաց քառասուն օր երկրորդն Ադամ՝ վասն առաջնոյն Ադամայ զի ոչ պահեաց. և յաղթեաց երիւք փորձութեամրքն, յաղթողին մարդկան։ Եւ յետ այնորիկ ապա զծածուկ Աստուածութեան իւրոյ զօրութիւնն՝ յայտնի արար աշխարհի, զդևս հալածելով, զհիւանդս բժշկելով, զկոյրս լուսաւորելով, զկաղս գնացուցանելով, զմեռեալս յարուցանելով, 'ի վերայ ծովու՝ որպէս 'ի վերայ ցամաքի գնալով, 'ի սակաւ հացից զբազումս կերակրելով, զբնութիւն արարածոց որպէս կամէր փոփոխելով. զջուրսն 'ի գինի, և զկաւն 'ի լոյս դարձուցանելով։ Եւ նախ քան զյարութիւնն զլոյս Աստուածութեանն իւրոյ՝ զծածկեալն իբրև վարագուրաւ ընդ մարմնոյն, յայտնեաց աշակերտաց իւրոց 'ի Թաբօրական լերինն, ուր զինքն ծանուցեալ կենդանեաց և մեռելոց, իշխանաբար կոչմամբ Մովսէսի և Եղիայի։ Գայ այնուհետև կամաւորաբար 'ի չարչարանս, զի զգիրս օրինաց և մարգարէիցն կատարեսցէ։ Նստի 'ի վերայ իշոյ և յաւանակի յօրինակ եկեղեցւոյ հրէից և հեթանոսաց։ Կատարէ զզատիկն ըստ օրինացն, զի զհինն 'ի նորս, և զստուերն 'ի լոյս ճշմարտութեան փոխեսցէ։ Լուանայ զոտս աշակերտացն, զի զնախահօրն ոտից, որ 'ի ծառն գիտութեան ընթացից, մաքրեսցէ զյանցանս։ Տայ զմարմինն իւր կերակուր կենաց, և զարիւն իւր 'ի քաւութիւն մեղաց. զի որք

առաջին պտղոյն ճաշակմամբ մահացաք, զայսուիկ ճաշակելով կենդանացուք։ Աղօթէ իմով բնութեամբ առ Հայր վասն իմ, զի յառաջինն դարձուցէ 'ի փառս. և զի տացէ օրինակ աղօթել և մեզ, 'ի փորձութեան մերում։ Տրտմեցաւ և արտասուեաց, ուրախութեան պատճառն երկնաւորաց և երկրաւորաց. զի բարձցէ զամենայն արտօսր յամենայն երեսաց ըստ Եսայեայ։ Երկեաւ զի զերկիւղն լուծցէ զմահու։ Քրտնեցաւ՝ զի զքիրտն երեսացն Ադամայ ջնջեսցէ. ապտակեցաւ՝ զի հարցէ ուժգին զԹշնամին։ Մերկացաւ, զի զամօթոյ ծածկոյթ նախահօրն դիմաց՝ պատառեսցէ։ Էարբ զլեղին, զի զդառն մեղացն զճաշակս քաղցրացուսցէ։ Թևեռեցաւ 'ի խաչին, զի զմեզ արձակեսցէ 'ի կապանաց, և շնորհեսցէ փայտ կենաց փոխանակ փայտին մահու։ Մեռաւ մարդկային մահացու բնութեամբս իշխանաբար, և մնաց կենդանի Աստուածային անմահական բնութեամբն։ Ո՛չ ոմն մեռեալ, և ոմն կենդանի ըստ բաժանողացն, այլ մի և նոյն անձնաւորութիւնն, և մի Քրիստոսն չարչարիւր և մեռանէր մահկանացու մարմնովն որ 'ի մէնջ, և կենդանի էր անմահ և կենդանարար Աստուածութեամբն որ 'ի Հօրէ, որպէս և սուրբն Աթանաս ասէ. Թէ մահկանացու մարմինն, ո՛չ մնասեաց զանմահ Աստուածութիւնն. քանզի անախտ էր այլ մնաց մանաւանդ և ինքն անախտ. անմահին զօրութեամբն. և յետ սակաւուց ասէ. Թէ մահ մարմնոյն եղև համագոյակցին մահկանացուայս։ Վասն որոյ և մեք խոստովանիմք Աստուած և մարդ զՔրիստոս. ո՛չ բաժանելոյ աղագաւ զայս ասեմք. մի՛ լիցի. զի նա ինքն է չարչարեալ և ո՛չ չարչարեալ՝ Աստուածային բնութեամբն, անփոփոխելի և անչարչարելի։ Իսկ՝ մարմնովն չարչարեալ և զմահ ճաշակեալ։ Յաղագս որոյ մոլորին, որք ասենն թէ այլ ոմն է որ չարչարեցաւ, և այլ ոմն որ ո՛չ չարչարեցաւ։ Բայց ո՛չ այլ ո՛ք է քան զԲանն, որ չարչարեցաւ և զմահ ընկալաւ մարմնովն. զի նոյն ինքն անչարչարելին և անմարմին բանն լինել մարմին չարչարելի յանձն էառ. զի չարչարանօքն իւրովք փրկեսցէ զմարդիկ. քանզի զոր ինչ մարդկեղէնն չարչարիւր մարմին բանին, զայն՝ ընդ նմին գոլով բանն, յինքն վերաբերէր, և լինէր յայժ

Հրաշափառագոյն իր. զի ինքն էր որ չարչարիւր, և ինքն էր որ ոչ չարչարիւր: Չարչարիւր չարչարելեաւն, զի իւր ինքեան չարչարիւր մարմին, և 'ի նմին 'ի չարչարելումն էր ինքն առանց չարչարանաց. անբաժանելի 'ի չարչարեցելոյ մարմնոյն, զի Աստուած գոլով բանն' անչարչարելի էր բնութեամբ. սակայն ընդ չարչարելի մարմնոյն անբաժանելի մնացեալ [1] անմարմինն, և մարմինն ունելով յինքեան զանչարչարելի զբանն, ջնջիչ տկարութեան իւրոյ: Ջայսոսիկ Աթանասիոս: Ընդ նմին և մեք անբաժանելի դաւանիմք յետ մեռանելոյն' զԱստուածութիւնն 'ի մարմնոյն և 'ի մարդկեղէն հոգւոյն. և յորժամ 'ի խաչին էր և 'ի գերեզմանի մարմնովն, Աստուածութեամբն էր ընդ աջմէ Հօր, և փառօք նորա լի էին երկինք և երկիր: Էր և Հայր ընդ նմա յերկրի, որպէս և ասաց. Հայր իմ ընդ իս է, և ոչ եթող զիս միայն. զի ուր Հայր է՝ անդ է և Որդի, և Հոգի. և ուր Որդի, անդ է և Հայր և Հոգին. և ուր Հոգին սուրբ, անդ և Հայր և Որդի: Արդ' իջեալ 'ի գերեզման մեռեալ մարմնովն, և կենդանի Աստուածութեամբն արար աւարումն դժոխոց. և յարուցեալ յերրորդ [2] աւուր, յարոյց ընդ ինքեան 'ի մեռելութենէ մեղաց' զհոգիս մարդկան հաւատացելոց. և ետ յոյս' և մարմնոյ յարութեան ըստ նմանութեան իւրում, 'ի յերկրորդ գալստեանն, և յետ քառասուն աւուրց' վերացաւ յերկինս առ Հայր նովին մարմնովն յանդիման առաքելոցն, և նստաւ ընդ աջմէ մեծութեանն Հօր 'ի բարձունս, ըստ առաքելոյն. գալոց է մերով մարմնովս' որով համբարձաւ' 'ի դատել զկենդանիս և զմեռեալս' արդարութեամբ, և հատուցանել իւրաքանչիւր զգործս: Արդ' որ յաղագս սրբոյ Երրորդութեան և տնօրէնութեան Քրիստոսի, այս է մեր ճշմարիտ խոստովանութիւն հաւատոյ, զոր համառօտ բանիւք եդաք առաջի: Իսկ որ ինչ միանգամ վասն կարգաց եկեղեցւոյ և տօնից, և այլոց ևս հարցմանց, զոր ոմանք 'ի ձերոց' այլ ընդ այլոյ կարծեալ գրով ծանուցին ձեզ զմէնջ, գրեսցուք և զայս ևս անսուտ բանիւք, զորս ունիմքն,

---

1. Ի տպ. ժտացեալ: 2. Ի տպ. յերէք:

և յորոց հրաժարիմք։ Գրեալ էր առաջին. թէ Յունվարի 'ի հինգ տօնեն վաղիւն աւետեաց, և երկուՆն ծննդեան, և միւս վաղիւն՝ որ է վեց Յունվարի, մկրտութեան Քրիստոսի. և յայտնանէ է ինչ ուղիղ, և է որ արտաքոյ ճշմարտութեան. և է այսպէս։ Ի միում աւուր տօնել մեզ տօն ծննդեան Քրիստոսի, և մկրտութեանն 'ի վեց Յունվարի որպէս ընկալաք յառաջին հարցն աւանդից. յայսմ ուղիղ էին գրեալքս։ Իսկ այն եթէ 'ի հինգն ամսոյն վաղիւն աւետեաց տօնեմք, լի՛ է ամենայն ստութեամբ. քանզի աւետեաց տօն ըստ մերումս 'ի վեց [1] Ապրիլի է։ Իսկ ծննդեանն 'ի վեց Յունվարի, երկոտասան աւուրբք յետոյ՝ քան զոր դուքն տօնէք։ Զի՞նչ հարկ էր ապա զերիսն 'ի միասին տօնել անխորհրդաբար. քանզի ծննդեանն և մկրտութեանն 'ի միասին տօնելոյ՝ բազումս ունիմք վկայութիւն։

Նախ զի յառաջագոյն ամենայն եկեղեցիք սկսեալք յառաքելոցն՝ այնպէս տօնէին. և յետոյ բաժանեցին ոմանք վասն Բեդղէհէմի և Յորդանանու, քանզի ո՛չ կարէին 'ի միում աւուր զերկոսեան ուխտսն կատարել, հեռի գոլով 'ի միմեանց. և փո՛քր փո՛քր աճմամբ՝ ընկալան և այլ եկեղեցիք զնոյն։ Իսկ Հայաստանեայք, որպէս ուսան [2] 'ի սրբոյն Գրիգորէ, անփոփոխ կացին 'ի նմին։

Դարձեալ զի աւետարանիչն Ղուկաս վկայէ այսոցիկ ճշմարիտ լինել. քանզի պատմէ 'ի տօնի քաւութեանն, որ էր 'ի Թշրինի 'ի տասն, և 'ի Սեպտեմբերի քսան երկու [3], մտանել քահանայապետին Զաքարիայ 'ի տաճարն, և արկանել խունկ, և տեսանել զտեսիլ հրեշտակապետին, և լսել զաւետիս յղութեան ամլոյն, և կրել պապանձումն լեզուին, յո՛չ հաւատալն. և ապա ասէ թէ իբրև լցան աւուրք պաշտաման նորա, գնաց 'ի տուն իւր, և տուն նորա ո՛չ յԵրուսաղէմ էր՝ այլ 'ի լեառնակողմն հրէաստանի, ուր զողջոյնն ետ Մարիամ Եղիսաբէթի. և աւուրք պաշտաման նորա էին՝ հինգ օր քաւութեան տօնի, և եօթն օր տաղաւարահարացն, որ լինի երկոտասան օր։ Արդ զերկուս տօնս զայսոսիկ կոչէ աւետարանիչն աւուրք պաշ-

1. Ի տպ. 'ի Ն։ 2. Ի տպ. ընկալան։ 3. Ի տպ. եւ։

տաման քահանայութեանն Զաքարիայ, զորս 'ի միասին տօնէին ըստ օրինացն։ Որ իբրև կատարեցան՝ գնաց 'ի տուն իւր, և 'ի Թշրին քսան երկու [1], և 'ի Հոկտեմբերի հինգ [2], եղև յղութիւն Եղիսաբէթի։ Արդ՝ որք 'ի քսան հինգ Մարտի կատարեն զտօն աւետեաց կուսին, զյղութիւնն Եղիսաբէթի յառաջնումն աւուր պապանձմանն Զաքարիայի, որ է 'ի Թշրինի տասն, ասեն, որոց ոչ վկայէ աւետարանիչն Ղուկաս։ Իսկ՝ որք 'ի վեց [3] Ապրիլի տօնեն, յետ երկոտասան աւուրց պաշտաման նորա, ասեն զյղութիւնն Եղիսաբեթի ըստ վերագրելոցդ, որ է 'ի Թշրինի քսան երկու [4], որում և վկայէ աւետարանիչն։

Իէ՛ և երրորդ վկայութիւն այսոցիկ ըստ նորուն աւետարանչի պատմութեանն. այն զի ասէ՝ Յիսուս էր ամաց երեսնից, սկսեալ 'ի ծննդենէ անտի, մինչև ցմկրտութիւնն. և հարկ լինի ըստ իմաստուն և ուղիղ մտաց 'ի նոյն թիւ ամաց, յորում և ծնունդն՝ 'ի վեց Յունվարի հանդիպիլ և մկրտութեանն աւուր. յետ երեսուն ամաց, թէև պատկեր աւուրցն ոչ նմանապէս։ Էր և այլ իրս բազումս ասել վասն որին, այլ՝ սակաւս շատ է իմաստնոյդ. բայց թէ այսպէս և թէ այնպէս, 'ի փառս Աստուծոյ կատարին։ Զերգս որբոյ Աստուածածնին գրեալ էր 'ի թղթի աստ, թէ ոչ ասեմք յեկեղեցիս մեր. և այս ամբաստանութիւն՝ ամենևին անման է 'ի ճշմարտութենէ, զի այնքան պատուի 'ի մէնջ արժանաւորն պատուոյ յերկնաւորաց և յերկրաւորաց մայրըն Աստուծոյ Մարիամ, մինչ զի զբանս նորա՝ ոչ 'ի լոկ աւուրսն ընդ երից մանկանցն, և ընդ մարգարէին Դաւթայ երգեմք բանից, այլ 'ի կիրակէս միայն, և 'ի տօնս տէրունականս, որպէս և որք 'ի ձերոց տեղեակ են եկեղեցական կարգաց մերոց, հաստ առնեն զձեզ։ Դարձեալ 'ի թղթի աստ գրեալ էր և այս ինչ վասն մեր, եթէ մի բնութիւն գաւանեն բանին և մարմնոյն, յորմէ Ապօղինար ասեն 'ի մէնջ ամբաստանի. և այս յոքունց բանից կարօտանայր պատասխանւոյ։ Բայց վասն ժամուս փութոյ՝ սակաւուք բաւականասցուք։ Ասեմք մի բնութիւն 'ի Քրիստոս, ոչ

---

1. Ի տպ. ԺԲ։ 2. Ի տպ. Ժ։ 3. Ի տպ. Է։ 4. Ի տպ. ԺԲ։

չփոթմամբ ըստ Եւտիքեայ, և ոչ նուազութեամբ ըստ Ապողինարի. այլ ըստ Կիւրղի Աղեքսանդրացւոյ, զոր 'ի գիրս պարապմանց ասէ՝ ընդդէմ Նեստորի. եթէ մի է բնութիւն բանին մարմնացելոյ, որպէս և Հարքն ասացին, և Հարս կոչէ զԱթանասիոս՝ և որ յառաջ քան զնա, և մեք յաւանդութենէ սրբոցն ասեմք զայս, և ոչ ըստ չարափառացն կարծեաց, շփոթումն, կամ՝ յեղեղումն, կամ այլայլութիւն արկանելով 'ի մարմնաւորութիւնն [1] Քրիստոսի, մի ասելով բնութիւն, այլ փոխանակ միանձնաւորութեանն, զոր դուք ասէք 'ի Քրիստոս, որ է ուղիղ և խոստովանեալ 'ի մէնջ. է և մերս մի բնութիւն ասել, զոյգ և նման, և ոչ Հերձուածողական կարծեաց աղագաւ. և յայտ յայնմանէ է, զի յորժամ բանիւ խօսիմք վասն Նորին իրի, ոչ 'ի մին միայն դադարեմք, այլ և զերկուցն յատկութիւն ցուցանեմք. որպէս և վասն չարչարանաց և մահուն՝ վերասացեալքն յայտնեն, 'ի սրբոյն Աթանասէ, այն զի ասէ թէ. Աստուած գոլով բանն, անչարչարելի էր բնութեամբ. սակայն ընդ չարչարելի մարմնոյն, անբաժանելի միացեալ անմարմինն., և որ այսպիսիք են բազումք: Քանզի մի բնութիւն ոչ վասն այլոյ իրիք ասի 'ի մէնջ, այլ յաղագս անբաժանելի և անճառ միութեան բանին և մարմնոյն: Նա և յերկու՝ բնութիւն ասելոյն՝ յորժամ ոչ վասն բաժանման լինին ասացեալքն, ըստ Նեստորի, այլ վասն զանշփոթութիւնն ցուցանելոյ, ընդդէմ չարափառացն Եւտիքեայ և Ապողինարի, ոչ փախչիմք. այլ զոր օրինակ՝ Հոգի և մարմին մարդոյ այլ և այլ բնութիւնք են. վասն զի ոմն երկնային է և ոմն երկրային, ոմն երևելի և ոմն աներևոյթ, ոմն ժամանակեայ և ոմն անմահ. սակայն յետ միաւորութեանն մի բնութիւն ասի մարդն, և ոչ երկու, և ոչ մի՝ բնութիւն ասելովն շփոթումն իմանի 'ի մարդն, կամ Հոգի միայն կարծել զնա, կամ մարմին միայն. այսպէս և Քրիստոս թէպէտ և մի ասի բնութիւն. ոչ շփոթման աղագաւ են ասացեալքն. այլ վասն անճառելի միաւորութեան երկուց բնութեանցն ընդ միմեանս, զի թէ

---

1. Ի տպ. 'ի մարմնաւորութիւնն:

այսպէս ո՛չ էր՝ հարկ լինէր ապա ո՛չ միայն երկու բնութիւն, այլ և երիս բնութիւնս իմանալ Քրիստոսի. երկուս զմարդկայինս՝ հոգի և մարմին, և մի զԱստուածայինն։ Բայց յետ միաւորութեանն բարձան երկուութիւնք բաժանմանցն ըստ սրբոց վարդապետացն ասելոյ։ Արդ թէ մի բնութիւն վասն անքակտելի և անբաժանելի միաւորութեանն ասի, և ո՛չ վասն շփոթման, և երկու բնութիւն վասն անշփոթ և անայլայլելին լինելոյ, և ո՛չ վասն բաժանման. երկաքանչիւրքն 'ի սահմանի են ուղղափառութեան։

Դարձեալ գրեալ էր 'ի գիրս, թէ 'ի բուսաբեր ձիթոյ, զոր Ղուշմա անուանեն, լինել մեռոնի մերոյ, և ո՛չ 'ի ծառոց ձիթենեաց. և այս յիրաւի. և պատճառն ո՛չ այլ ինչ, այլ զի 'ի Հայաստանեայց աշխարհն ո՛չ են ձիթենիք վասն ցրտութեան օդոյն, հարկ եղև՝ զայն ինչ ձէթ՝ որ դիւրագիւտ է յաշխարհն, 'ի նիւթ մեռոնի առնուլ. և ո՛չ ինչ վնաս հոգևոր տեսին յայսմիկ. զի թէ նիւթոյն էր զօրութիւն, զա՛յն նիւթ միայն արժան էր խնդրել, յորում Աստուածային ինչ ազդումն գոյր 'ի նմա։ Ապա թէ քահանայական օրհնութիւնն և աղօթքն միացուցանեն ընդ նիւթ ձիթոյն զԱստուածային շնորհն, ոչ ինչ լինի առաւելութիւն կամ պակասութիւն, եթէ 'ի պտղոյ ծառոց իցէ ձէթն, և եթէ 'ի բուսոց, որպէս և արեանն Քրիստոսի նիւթ գինին. յորոց և իցէ գունոց՝ ընդունելի է, եթէ սևաւ՝ եթէ կարմիր՝ և եթէ սպիտակ. քանզի պատարագն սրբէ զնա, և լինի արիւն Քրիստոսի։

Ի՛ր 'ի գիրս ասացեալ և վասն սրբոց պատկերաց, եթէ ո՛չ ընդունին Հայք ամենևին, որ յայտնի է ճշմարտութիւն, յայտնի ցուցանեմք, 'ի հակառակութենէ անտի, որ 'ի մէջ երկուց ազգացս է. բազում չարիս սերմանեաց սատանայ, որպէս առ ոմանս 'ի տգէտ ժողովրդոց մերոց. զպատկերաց սրբոց զանընդունելութիւն, որ և 'ի մէնջ դարովին այնպիսիքն. Նաև Նշո՛վս ևս 'ի վերայ դնեմք, որ յանդգնին հայհոյել. քանզի և մեք՝ որ զառաջնորդականն ունիմք զաստիճան, ընդունիմք և երկրպագեմք պատկերի տնօրէնութեան փրկչին մերոյ. այլ և զամենայն սրբոց պատկերս ըստ իւրաքանչիւր կարգի պատուեմք, զորս և յե-

կեղեցիս մեր նկարագրեմք, և 'ի պատարագամատուցի հանդերձս. և պատուհասեալ ըմբերանեմք զո՛չ ընդունողսն 'ի մերոց, զոգէտոն և զախմարուն:

Գրեալ էր և զայս ինչ. թէ զամենայն խաչս բեւեռեն, և այս ո՛չ յիրաւի. քանզի զորս 'ի միատարր նիւթոց են, որպէս զոսկեղէնս և զարծաթեղէնս, և զայլս որք ո՛չ են երկու, 'ի վերայ միմեանց եդեալք՝ ո՛չ բեւեռեմք: Իսկ զփայտեղէնսն զի յերկուց են, հարկ է երկաթեղէն բեւեռօք պնդել. զի մի 'ի հողմոց՝ կամ յայլ ինչ պատճառէ, բաժանեալք 'ի միմեանց՝ անկցին, որպէս և նո՛յն իսկ առաջին խաչն, յորում և Քրիստոս բեւեռեցաւ, իմանի յերկուց 'ի վերայ միմեանց բեւեռեալ գոլ. զի բաւական լիցի բառնալ զմարմինն, և ո՛չ քակտիլ: Արդ՝ եթէ այլ խորհուրդ ինչ է բեւեռն, պարտ էր զամենայն խաչս որ յամենայն նիւթոց՝ բեւեռել. և ո՛չ զփայտեայս միայն, ուր երկիւղ է քակտելոյ և անկանելոյ: Դարձեալ թէ 'ի քարեղէն խաչս կամ յերկաթեղէն, տեսցէ ոք բեւեռս, որ ո՛չ 'ի յերկուց լինի մասանց, այլ 'ի միոյ, ծանիցէ զի այն արարուածք տգիտաց են և հակառակասիրաց և ո՛չ 'ի մէնջ հրամայեալ:

Դարձեալ՝ վասն երից սրբասացութեանցն գրեալ էր. զի խաչեցար ասեմք. և թէ մեք զսրբասացութիւնս զայս 'ի դէմս Երրորդութեանն երգէաք որպէս դուք՝ չար և խորթ մոլորութիւն էր ասել թէ խաչեցար: Այլ զի առ մի անձնաւորութիւն որդւոյ բարբառիմք զայսոսիկ. վասն այնորիկ զմեծագոյն զերախտիսն, որ 'ի նմանէ առ մեզ եղեալ, դնեմք առաջի նորա. թէ Աստուած հզօր և անմահ, որ մարմնով խաչեցար վասն մեր, ողորմեա՛ մեզ. առ ընթեր նմին և զմայր բանին Աստուծոյ բարեխօս և միջնորդ ունիմք առ միածինն իւր. ասելով թէ մատո՛ զաղաչանս մեր Որդւոյ քո և Աստուծոյ մերոյ: Վասն որոյ թէ 'ի դէմս Երրորդութեանն ոք ասիցէ որպէս դուք, և թէ 'ի դէմս Որդւոյ միայնոյ որպէս մեք, երկոքեանն հաճոյք են Աստուծոյ. յորժամ առանց հակառակութեան լինին ասացեալքն. այլ թէ և յայսմ վայրի 'ի դէմս Որդւոյ ասեմք զսրբասացութիւնսն, բայց 'ի սուրբ պատարագն՝ առ երիս անձնաւորութիւնսն զսերովբէիցն երգեմք զերգս:

Այս և այս ամբաստանութիւն գրեալ էր զմէնջ. եթէ 'ի սուրբ քառասնորդսն, զկիթս անասնոց և զձու ճաշակեն 'ի շաբաթ և 'ի կիրակէ։ Արդ՝ ցուցցուք ձեզ և զայսորիկ ճշմարտութիւն. յառաջ ժամանակաւ յաշխարհն արևելից սովորութիւն ունէին իշխանքն Հայոց, յամենայն աւուրս քառասնորդացն ուտել ձուկն և ձէթ և ըմպել գինի, ըստ ձերոց ազգացդ և ըստ Փռանգաց։ Իսկ առաջնորդք ժամանակին քարոզէին 'ի բաց կալ յայնպիսի կերակրոց, յաւուրս պահոց, ասելով թէ ձուկն առաւել է քան զկթեղէն կերակուրս. զի ձուկն կատարեալ կենդանի է, և կիթն ոչ կենդանի, այլ 'ի կերակրոց կենդանեաց մնացուած։ Վասն որոյ եթէ կամիցիք սրբութեամբ պահել, ըստ կամացն Աստուծոյ, 'ի բաց կացէք որպէս 'ի կթոյ, նոյնպէս և 'ի ձկանէ. ապա թէ զայդ ոչ կամիցիք առնել, պահեցէք զհինգ աւուրս շաբաթուն սրբութեամբ յամենայն կերակրոց և յըմպելեաց, և 'ի շաբաթու և 'ի կիրակէի բաց 'ի մսոյ, զայլ ինչ կերէք, յաղագս անժուժկալութեան ձեր, զձուկն և զկիթս. զի մի որք զձուկն միայն ուտելով, և զկիթս ոչ, կարծիցէ պահել. իբրև պահոց կերակուր համարելով զձուկն. զի այս որովայնամոլից՝ և ոչ պահողաց է սահման։ Որ և ոչ յերկարեաց 'ի Հայաստանեայս, այլ յետ փոքր ժամանակի, բարձաւ վաղվաղակի 'ի միջոյ. և այժմ 'ի մերում ժամանակիս, բաց յիշխանաց և 'ի զինուորաց, յորոց ոմանք 'ի նոցանէ ինքնակամ կամօք, և ոչ կանոնական հրամանաւ, կամ 'ի մէնջ թոյլ տուեալ, մերձենան յաւուրս պահոց 'ի ձուկն՝ 'ի ձէթ և 'ի գինի. այլ եկեղեցականն դասք ամենեքին, և բազումք 'ի ժողովրդոց, ոչ միայն 'ի կթեղէն կերակրոց՝ և 'ի ձկանց 'ի բաց կան, որ ամենևին անյիշելի է յաւուրս քառասնորդացն, այլ և յամենայն պարարտ կերակրոց և յըմպելեաց գինւոյ. և թէ ոք անժուժկալութեամբ սխալէ, և զղջացեալ խոստովան լինի, ծանրագոյն բեռն ապաշխարութեան 'ի վերայ դնեմք։

Էր գրեալ 'ի գիրս վասն մեր և այս ինչ. եթէ գինեաւ միայն առանց Ջրոյ խառնման մատուցանեն զպատարագն. և յաղագս այսորիկ, բազում էին մեզ բանք ասել.

'ի վկայութենէ գրոց, զոր վասն համառօտելոյ զբանս, աւե-
լորդ համարեցաք դնել զամենայնն՝ բայց 'ի սակաւուց։
Առաջինն զի 'ի Լուսաւորչէն մերմէ՝ 'ի սրբոյն Գրիգորէ
ունիմք զայս աւանդութիւն, որպէս ընկալաւ նա 'ի նախ-
նեաց սրբոց հարցն որ յառաջ քան զնա։ Դարձեալ զի
և Քրիստոս որ մատոյց զինքն խորհրդեամբ պատարագ 'ի
վերնատունն, գինի միայն գրեալ է. զի առ 'ի ձեռս և
ասաց. այս է իմ արիւն. և անուն ջրոյ ոչ բնաւ յի-
շատակի, որպէս և ասաց իսկ, յետ խորհրդոյս կատար-
ման. թէ յայսմ հետէ՝ ոչ ևս արբից 'ի բերոյ որթոյ,
և որթն՝ գինի և ոչ ջուր ծնանի, որպէս ասէ Յոհան
Ոսկեբերանն յաւետարանին մեկնութեանն։ Իսկ՝ եթէ վասն
ջրոյն և արեան որ ե՛լ 'ի կողիցն՝ ասէք արկանել ջուր
'ի բաժակն, զայս դարձեալ նոյն ինքն Յոհան Ոսկեբե-
րանն 'ի սոյն բանի աւետարանին մեկնութեանն, որ ըստ
Յոհաննու, զջուրն 'ի խորհուրդ մկրտութեան մերոյ ասէ,
և զարիւնն 'ի սուրբ պատարագին։ Նա և այլ բազումք
'ի վարդապետաց եկեղեցւոյ զսոյն ասեն. և մեք նոցին
բանից և աւանդութեանցն գոլով հետևողք. վասն այնո-
րիկ ոչ արկանեմք ջուր, այլ անապակ գինեաւ՝ զանա-
պական արեանն Քրիստոսի կատարեմք զխորհուրդ. բայց
եթէ այնպէս՝ և եթէ այս, միայն մաքուր հոգւով պա՛րտ
է սպասաւորել Աստուածային խորհրդոյն. և ամենայնն 'ի
հաճոյս Աստուծոյ կատարեսցին։ Իսկ անմաքուրն և պիղծն,
թէ անապակ բաժակաւ առնէ, և թէ ջուր արկանելով,
բարկացուցանէ զընդունող պատարագին զԱստուած, փո-
խանակ հաշտեցուցանելոյ։

Դարձեալ էր 'ի գիրս և ծիծաղական իրս. թէ զխաչս
իւրեանց, յամենայն ամի նորոգ մկրտեն և օրհնեն. և այս
ոչ 'ի գիտնոց եղեալ է յազգս մեր, և ոչ 'ի տգիտաց.
զի մի անգամ է օրհնութիւն խաչին, և ոչ բազում ան-
գամ, որպէս գրեալս էիք. և օրհնութիւն խաչի ոչ 'ի
մէնջ եղեալ է, այլ՝ յառաջին հարցն ձերոց, զոր նախ-
նիքն մեր թարգմանեալ ետուն մեզ, որպէս այժմ գտա-
նեմք յարևելս Յունարէն գրով 'ի հին գիրս. ոչ առա-
ւել՝ և ոչ նուազ քան զմերս, զի գրեալ է լուանալ զնո-

բազ. խաչն նախ ջրով, և ապա գինւով 'ի խորհուրդ երկուց վկայացն, որ 'ի կողիցն Քրիստոսի ելին. և առեալ տաղման ըստ խորհրդոյն, և ընթեռնուլ բանս մարգարէականս և առաքելականս, և աւետարանս խորհրդականս, և յետ այնորիկ աղօթս քահանայականս, խնդրել յԱստուծոյ տալ այնմ խաչի՝ զշնորհս և զզօրութիւն առաջնոյ խաչին, յորոյ վերայ ինքն բևեռեցաւ, որպէս զի զդևս հալածեսցէ, և զախտս 'ի մարդկանէ սրբեսցէ, և զցաւումն՝ որ վասն մեղաց մերոց իջանեն 'ի վերուստ, դադարեցուսցէ, և թէ բնակեալ 'ի սմա միշտ՝ որպէս յառաջին խաչն քո, և արա զսա լինել քեզ տաճար, և աթոռ, և զէն զօրութեան, զի երկրպագութիւն մեր առաջի սորա, ոչ նիւթեղէն արարածոյ, այլ քեզ միայնոյ աներևութիդ Աստուծոյ մատուսցի, և որ այլ ևս այսպիսի պաղատանաց բանք. և ապա առեալ զօրհնեալ խաչն զայն, կանգնեմք յարևելս, և երկրպագեմք նմա, միանգամ միայն օրհնելով, և ոչ բազում անգամ, որպէս և գրեալ էր.

Ասացց մեզ գրեալքս և զայս ինչ. թէ լուաք յոմանց 'ի նոցանէ ասել. թէ Քրիստոս՝ մարմին համագոյակից մեզ, թանձր, մահկանացու, չարչարելի, երկրային ապականացու, և եղանելի, ոչ էառ 'ի կուսէն, այլ անապական, անօսր անչարչարելի, և անեղանելի, և թէ երևեցաւ մարդ որպէս համեցաւ, եկեր՝ էարբ իբրև առ Աբրահամու, և այսոցիկ բանից պատասխանի ունին կատարելապէս. առաջին դրեալքդ առ 'ի մէնջ՝ բանք, բայց սասցուք փոքր ինչ և առ այժմ պարզեալ: Ասեմք զՔրիստոս՝ Աստուած և մարդ, ըստ Աստուածութեանն համագոյակից Հօր՝ և ըստ մարդկութեան համագոյակից մեզ. և նոյն ինքն մի Աստուածութիւնն և անբաժանելին, ըստ Աստուածային բնութեանն երկնային՝ զարդ՝ անչարչարելի և անմահ: իսկ՝ ըստ մարդկային բնութեանն, երկրաւոր՝ թանձր՝ չարչարելի, և մահկանացու, բայց ոչ ոմն, և ոմն ըստ Նեստորի կարծեացն, որ տաճար ասաց բանին՝ զմարմինն, քանզի յետ միաւորութեանն բարձան երկուութիւնքն, որպէս և բարձրագոյնքն, և Աստուածայինքն, երբեմն Աստուածութեանն, և է երբեմն զի մարմնոյն ասին 'ի գիրս՝ համագոյակցին մերոյ: Ըստ որում

և զանօրինական անուանեան ցեառն մերոյ՝ յատուկ Աստուածութեանն դնէ առաքեալն, ասելովն Յիսուս Քրիստոս. երէկ և այսօր, նոյն և յաւիտեան. երէկ՝ զմշտնջենաւոր Աստուածութիւնն որ ընդ Հօր էր ասէ, և այսօր զմարդեղութիւնն. և նոյն և յաւիտեանս զանվախճանութիւնն [1]. զի թէ բաժանումն գոյր առաքեալ 'ի մարդկութիւնն և յԱստուածութիւնն՝ պարտ էր ասել. թէ բանն Աստուած երէկ, և Յիսուս Քրիստոսն այսօր. բայց ո՛չ երբեք ցուցին բաժանման եղանակ, յետ միաւորութեանն. ո՛չ առաքեալ, և ո՛չ վարդապետք եկեղեցւոյ, որպէս և Յովհաննէս աւետարանիչն՝ զմարմինն շօշափելով, զբանն ասաց շօշափել. ձեռք մեր ասէ շօշափեցին 'ի վերայ բանին կենաց: Դարձեալ և զմարմնոյն յատուկսն, է զի Աստուածութեանն տան, որպէս Աստուած խաչեալ. և արիւն Աստուծոյ և չարչարանս և մահ, ըստ Աստուածաբանին Գրիգորի և այլոց սրբոցն, և այսոքիկ զի՞նչ այլ, եթէ ո՛չ զանճառ միութիւնն և զանբաժանելին մի գոլ նշանակեն, վասն որոյ և մեք խոստովանիմք զմարմինն՝ համագոյակից մեզ, զի 'ի զանգուածոյն էր Ադամայ, և թանձր, և ո՛չ առ աչս երևեալ ձև միայն մարմնոյ, որպէս Աբրահամու երևեցաւ. և այս ո՛չ միայն յառաջ քան զյարութիւնն, այլ՝ յետ յարութեանն. որպէս և ինքն իսկ ասաց. շօշափեցէք զիս և տեսէք. զի ես նոյն եմ, զի ոգի՝ մարմին և ոսկերս ո՛չ ունի, որպէս զիս տեսանէք՝ զի ունիմ: Թէպէտ և ըստ Աստուածային զօրութեանն, յորժամ կամէր՝ թեթևացուցանէր զմարմինն, որպէս գնալովն 'ի վերայ ծովուն, և ելանելովն 'ի կնքեալ գերեզմանէն, և դրօքն փակելովք մտանելովն առ աշակերտսն. զի ո՛չ թէ ինքն բնութեան օրինացն ծառայէր, որպէս մեք. այլ օրէնք բնութեան նմա ծառայէին, որպէս արարչի. ըստ որում և 'ի կուսական ծննդենէն, և յայլոց գերագունից սքանչելեացն, է իմանալ. եթէ ո՛չ էր թանձր մարմին, 'ի խաչին զո՞վ բևեռեցին. և կամ ո՞րպէս զմեռեալ 'ի գերեզմանի եդին. և Թովմաս զո՞վ յետ յարութեանն շօշափէր,

1. Ի տպ. զանփոփոխման նախատարածութիւնն:

և եթէ ո՛չ էր չարչարելի, զի՞նչ չարչարեցաւ, և եթէ չէր մահկանացու մարմնով[1], զիա՞րդ խոնարհեցուցեալ զգլուխն, աւանդէր զհոգին. սակայն կամաւ կրէր զամենայն, և իշխանութեամբ, և ո՛չ ակամայ և ակարութեամբ՝ ըստ իւր ինքեան ասելոյ. իշխանութիւն ունիմ դնել զանձն իմ, և իշխանութիւն ունիմ առնուլ զսա։ Իսկ ապականացու ասել զմարմինն, թէ յաղագս կամաւոր կրից ո՛ք ասիցէ. քաղցին և ծարաւոյն, և արտասուելոյն, և արեան հոսելոյ[2] 'ի վերայ խաչին՝ որով կենդանացաք, խոստովանիմք և մեք զայս։ Ապա թէ վասն ակամայ և անգոսնելի կրից, ապականացու ո՛ք ասիցէ զնա, այսինքն կերակրոց և ըմպելեաց ախտաբար հոսմանց, ա՛յսմ ո՛չ հաղորդիմք. քանզի ապականութիւն մեղաց է ծնունդ. և որ մեղս ո՛չ արար, ո՛չ տիրեաց նմա և ապականութիւն։ Դարձեալ զի վկայի 'ի գիրս, թէ զկիրս ո՛չ ակամայ, այլ կամաւոր կրեաց. և այս կիրք ապականութեան ո՛չ կամաւոր, այլ ակամայ՝ և բռնութեամբ ներգործի 'ի բնութիւնս. և որ զայս ասէ, յայտ առնէ, թէ ո՛չ կիրքն նմա, այլ ինքն կրիցն ծառայէր. և թէ այսպիսում ապականելի կրից հնազանդէր ակամայ, յայտ է, թէ և մեղաց, որ հայրն է ապականութեան, ներքոյ անկեալ էր, զոր մի՛ լիցի իմանալ, կամ ասել ուղիղ հաւատացելոց։ Իսկ՝ եթէ առ 'ի հաստատութիւն մարդկութեանն ո՛ք ասիցէ զայս լինել, բաւական են յայտնի կիրքն, և անանգոսնելիքն որ գրեալն են, հաւատարիմ առնել. թէ ճշմարիտ մարդ եղև, և անգրելոցն ո՛չ կարօտանայ, և վատթարագունից, այն որ ճշմարիտ Աստուած խոստովանի զնա։

Գրեալ էր վերստին զմէնջ, թէ վասն այնորիկ մի բնութիւն ասեն Քրիստոսի, որպէս թէ ամենևին ընկղմեցաւ մարդկութիւնն, յԱստուածութիւնն անդր ըստ օրինակի, զի կաթիլ մի քացախոյ, կամ մեղեր, 'ի ծով անկեալ աներևութանայ. և այսմ ևս՝ առաջինդ որ 'ի մէնջ բանք՝ ունին զպատասխանի, այն զոր գրեցաք՝ թէ 'ի միաւորութեանն՝ մարդկային թանձր և յօդական բնութիւնս ո՛չ փո-

---

1. Ի տպ. չէ։ 2. Ի տպ. հեղլոյն։

խնցաւ յանկօղ, և պարզական բնութիւնն Աստուծոյ՝ և զիւրն կորոյս թանձրութիւն, և ոչ պարզ և անմարմնական բնութիւնն Աստուծոյ խառնելովն ընդ բնութեան մարմնոյ, փոխեցաւ, կամ այլայլեցաւ յիւրն յաւէտ պարզութենէ. քանզի քացախ կամ մեղր՝ այլայլին և ապականին անկեալք 'ի ծով, որպէս ջուր և գինի. ոչ այսպէս է միաւորութեան եղանակ Աստուածութեանն և մարդկութեանն. զի այսօրինակ մարմինք գոլով, միրաւի ապականին, խառնելովն 'ի միմեանս: Իսկ՝ մարմին և անմարմին, խառնին և միանան անճառապար, և ոչ շփոթին 'ի միմեանց, կամ այլայլին, որպէս և մարդկային հոգի և մարմին, և թէ արարած բնութիւնս այսքան, քանի՜ ևս է իմանալ առաւել հրաշափառագոյն զարարչական բնութեանն միաւորութիւն ընդ արարածոյս:

Նստացուք և փոքր ինչ և վասն առաջաւորացն՝ 'ի միոջ անուանել պահոց, զոր հայհոյէք ագիտաբար, Սարգսի սրբոյն ասելով, կախարդի էր և սկունդ ունողի: Ի կապստամբելոցն 'ի հաւատոյս մերոյ, առասպելաբանելով զանազան իրս՝ վասն Նորին, և պատմելով ստայօդ բանիւ առաջի ձեր: Բայց առ մեզ յիշատակ այսպիսում Սարգսի անգոյ է, առաւել քան զեղջերուաքաղն ասացեալ. զի նա թէև գոյութիւն ոչ ունի, անուան պատահեցաւ: Իսկ Սարգիսս այս՝ ոչ գոյութիւն ունի յազգս մեր, և ոչ անուն. զոր եթէ է ոք ուրեք, թէպէտ և մեզ անյայտ է, նզովէ զնա կաթուղիկէ եկեղեցի. և զէշ Նորա և զսկունդ և զգիտողս Նորա, և զընդունողս, զի զանուն Նորա չէ ոք լուեալ յազգս մեր. բայց 'ի Հռոմոց՝ որ ասեն զրպարտելով զմեզ: Այլ՝ մեք վկայութեամբն Աստուծոյ, յայտնապէս գրեսցուք զճշմարտութիւնն վասն սորին իրաց, զի մի՛ ոք ագիտութեամբ հայհոյեսցէ, և մեղս գործեսցէ հոգւոյ [1] իւրոյ: Արդ՝ առաջաւորք ասի սա, վասն զի առաջին պահք է Հայաստանեայց. և պատճառն է այս ինչ: Սուրբն Գրիգոր Լուսաւորիչն մեր, յորժամ ել 'ի վիրապէն, և ժողովեցան առաջի Նորա թագաւորն Հայոց՝

1. Ի տպ. անձին:

Տրդատիոս՝ պատուհասեալ յԱստուծոյ, 'ի կերպարանս վարազի եղեալ, և իշխանքն ամենայն և զօրքն՝ դիւահարեալք. եդ ամենեցուն առհասարակ պահս հնգօրեայ անսուաղութեամբ. զի մի ինչ ճաշակեսցեն որպէս Նինուէացիքն, որով եղև բժշկութիւն նոցա՝ 'ի ձեռն նորա. և զայս պահս որ վասն այնր պատճառի յառաջագոյն եղաւ 'ի սրբոյն Գրիգորէ, նոյն ինքն Լուսաւորիչն աւանդեաց յեկեղեցիս Հայոց, զնոյն պահել վերստին, յամենայն ամի շրջագայութեան, որպէս զի մի մոռասցին երախտիքն Աստուծոյ, եղեալ առ նոսա. և պատշաճ համարեցան խառնել զպահս զայս, որով Հայք ընկալան զփրկութիւն, ընդ պահոցն Նինուէացւոց՝ որով նոքա ազատեցան 'ի սպառնալեաց մահուանէն. զոր և պահեն մինչև ցայժմ՝ ազգ Ասորւոց և Եգիպտացւոց: Իսկ՝ զի ասի առ, և յանուն սրբոյն Սարգսի, մի վասն համանունութեանն գայթակղեսցի ոք. քանզի այս Սարգիս՝ որոյ տօնս է, իշխան էր բարեպաշտօն 'ի Կապպադովկիայ, յաւուրս մեծին Կոստանդիանոսի և որդւոց նորա: Իսկ յորժամ թագաւորեաց ամբարիշտն Յուլիանոս՝ հալածեալ 'ի նմանէ գնաց 'ի Պարսս՝ առ Շապուհ արքայ: Եւ անդ զբաղումս 'ի զօրացն Պարսից դարձուցեալ 'ի քրիստոնէութիւն, ընկալաւ զվճիռ մարտիրոսութեան հանդերձ որդւովն իւրով, 'ի նոյն իսկ արքայէն Պարսից Շապհոյ. և քանզի օր վախճանին պատահեցաւ լինել յերեսունն Յունվարի ամսոյ, վասն այնորիկ հաստատեցին տօնել զյիշատակ նորա՝ յաւուր շաբաթու, որ յետ պահոց առաջաւորացն: Որպէս և զսրբոյն Թէոդորոսի՝ զկնի առաջին շաբաթու պահոց քառասնորդացն, տօնեն ամենայն եկեղեցիք: Եւ Աստուծով ասացեալ՝ այս է պատճառ պահելոյ մեր զայս պահս՝ անուանեալ առաջաւորք: Արդ՝ ըստ խնդրոյ աստուածասիրութեան խոնարհագունիդ անձին, ո՛վ պատուական գլուխ, և 'ի մանկական հասակի ունող զիմաստութիւն ծերոց, որպէս զՍողոմոն և զԴանիէլ, եդաք առաջի պատուականութեան ձերոյ՝ համառօտ բանիւ, զեկեղեցւոյ Հայաստանեայց զճշմարիտ դաւանութիւն. և եթէ վասն մարդկան հաճոյից, կամ երկիւղի և պատկառանաց աղագաւ, ծածկեցաք 'ի մերոց դաւանութեանց, և ոչ գրե-

ցաք։ Կամ թէ աւելի ինչ գրեցաք զոր ոչ ունիմք, որպէս զի ընդունելի լինել առ 'ի ձէնջ, ընդ անհաւատիցն և հերձուածողացն ընկալցուք զդատաստան առաջի ատենին Քրիստոսի. քանզի հաւատ ծածկեալ, կամ կեղծաւորեալ, ոչ է հեռի յանհաւատութենէ. և որ ոք յետ զայսոսիկ լսելոյ 'ի մէնջ գայթագղեսցի դարձեալ 'ի մեզ՝ ոչ հաւատալով ասացելոցս, ինքն տացէ պատասխանի Քրիստոսի, յաւուր դատաստանին Նորա, իբրև զպառակտող անդամոց Նորին։ Իսկ այն՝ որ զոր միանգամ լսէ և հաւատայ, և ոչ դատի, որպէս ասաց քննօղն սրտից, ընդ ճշմարիտ հաւատացելոց ընկալցի վարձս բարեաց 'ի Քրիստոսէ Աստուծոյ մերմէ, որում փառք և զօրութիւն յաւիտեանս ամէն։

---

Զայս իբրև ընթերցան, գովեցին զհաւատս Հայոց ամենայն իմաստունքն Յունաց։ Եւ զի յամենայնի հանճարեղ էր Ներսէս, արար և առակս խորհրդաբար 'ի գրոց, զի փոխանակ առասպելեաց՝ զայն ասասցեն 'ի գինարբուս և 'ի հարսանիս. և էր ինքն հեզ ամենայնիւ և պարկեշտ, արժանաւոր այրն Աստուծոյ։

Եւ յետ Նորա յաջորդէ զաթոռն Գրիգոր ամս քսան. սա շինեաց զգեղապաճոյճ եկեղեցին 'ի Կլայն և զարդարեաց զնա մեծապէս. և ապա Գրիգորիս մի ամ, Տղայն կոչեցեալ, քուերորդի Նոցունց. և էր Նա հասակաւն գեղեցիկ և բարիոք տեսանելով. քանզի մախողք բազում էին Նորա, արկին բարուրս 'ի վերայ Նորա եպիսկոպոսք Նախանձոտք և մատնեցին զնա ստութեամբ Լևոնի Թագաւորին. և Նա հրամայեաց արգելուլ զնա 'ի բերդ մի, մինչ քննութիւն լիցի ճշմարտութեամբ վասն Նորա, և ինքն գրեաց թուղթ յԱրևելս յաշխարհն Հայոց առ վարդապետս և եպիսկոպոսս, եթէ զինչ կամք իցեն վասն այնր, և մինչև պատասխան ընկալեալ, վախճանեցաւ կաթուղիկոսն այսպիսի մահուամբ. յաւուր միում տեսին զնա անկեալ ընդ պարիսպ բերդին, ունելով կտաւ մի զմիջաւ իւրով, այնպէս մեռեալ։ Եւ զայս ոմանք ասէին, եթէ մա-

խաղքն նորա ընկեցին եպիսկոպոսքն, որ ակն ունէին ժառանգել զաթոռն, յորոց մի ասէին զՅովհաննէս, որ յետ նորա կալաւ զաթոռն, և զԱնանիա, որ եղև հակառակաթոռ 'ի Սեւաստ յիշխանութեան Սուլտանին Հոռոմոց, և այլք յեպիսկոպոսաց անտի, արք վեց։ Եւ կէսք ասէին թէ 'ի գիշերի կամեցաւ փախչել 'ի բերդէ անտի, հնարեցաւ իջանել ընդ պարիսպն կտաւովն, և կտրեալ կտաւոյն, անկաւ և մեռաւ. զճշմարիտն մեք ոչ գիտեմք. այս արդարադատին Աստուծոյ է գիտելի, որոյ ծածուկքն մարդկան յայտնի են նմա։ Եւ ապա տէր Գրիգոր Ապիրատն ամս եօթն։ Եւ յնուհետև սկսան մախողքն Գրիգորիսի զմիմեամբք ելանել. թէ ո՞ նստիցի յաթոռն հայրապետական. և Յոհաննէսն՝ զի ընտանի էր թագաւորին Լևոնի, բռնացաւ և կալաւ. իբրև ետես զայն միւս եպիսկոպոս Անանիա, չոգաւ նա առ Սուլտանն Հոռոմոց, և ետ նմա կաշառս՝ և նստաւ կաթուղիկոս 'ի Սեւաստ. զի ասէր զինքն յազգէ կաթուղիկոսին Պետրոսի, որ կայ թաղեալ անդէն. և այսպէս բաժանեցաւ աթոռ սրբոյն Գրիգորի երիս, մի բունն՝ զոր էառ Յոհաննէս, որ 'ի Հռոմկլայն, և միւսն 'ի Սեւաստ՝ զոր ապստամբեցաւ Անանիայ, և միւս ևս 'ի կղզւոջն՝ որ կոչի Աղթամար, Դաւիթ անուն։

Իսկ յետ Ալէքսի կայսեր թագաւորէ Կալօժանն. և յետ նորա Մանուէլն։ Արդ՝ 'ի չծը թուականի Հայոց, ազգն Հռոմայեցւոց զօրաժողով լեալ բիւրք բիւրուց, դիմեցին յայս կոյս Ովկիանոսի ընդ նոյնն ընդ Թիրակ ըստ առաջին անցիցն, զոր նշանակեցաք 'ի չխղ թուականին, և մոռացան զանհնարին նեղութիւնսն, զոր եցոյց որդին բելիարայ Ալէքսն, ոչ իմացան զխարդախ խաբէութեան նորա, համարելով զնա հաւատակից և պաշտօնեայ Քրիստոսի։ Վասն այնորիկ և սոքա աստանօր, զի չյիշեցին զանցս աղետիցն, ինքեանք առաւել խաբեալք և պատրեալք 'ի նորին թոռնէն, որոյ անունն ըստ նեռինն դերաքրիստոս կոչի, սոյնպէս և սորայս՝ տարօրոշ և հեռի ամենայնիւ 'ի գործս և 'ի կրօնս Էմմանուէլի, Մանիլ անուն, որ դժրեաց զՀռոմայեցիսն մահհարար կերակրօք և ըմպելեօք։ Բայց յաւուրս հաւուն նորա Ալէքսի Կոմս ոմն եկն յԵրուսաղէմ

յԱնտիոք. և իբրև եհաս 'ի տաճար՝ սրբոյն Պետրոսի առաքելոյ, և հաղորդ եղև պաշտամանն, երևեցաւ նմա սուրբ առաքեալն Պետրոս և ասէ՝ 'ի պատուհան եկեղեցւոյդ թաղեալ կայ գեղարդն, որով խոցեցին զՓրկիչն մեր, առեալ տարցես յաշխարհն քո։ Եւ նորա առեալ խնդութեամբ, եկն 'ի Կոստանդնուպօլիս. և լուեալ Աղեքսի կայսեր, մեծարանս արար նմա յոյժ, և ետ նմա գանձս բազումս. և խնդրեաց 'ի նմանէ զգեղարդն, և եթող առ նմա կոմսն, և գնաց զճանապարհս իւր։

Իսկ ոլը թուականին յարեաւ բռնակալ ոմն՝ Քուրդ ազգաւ, Սալահատին անուն, 'ի Մասեաց ամնէ, ծառայ լեալ Նուրատինին Մերտինայ և Հալպայ։ Սա զօր կազմեալ բազում յոյժ, չոգաւ 'ի վերայ քաղաքին Երուսաղէմի։ Եւ ել թագաւորն Երուսաղէմի, փռանգ ազգաւ, ընդդէմ նորա զօրու ծանու, և նենգ գործեցին նմա զօրքն իւր ծածկեղերեայ. զի տէրն Տրապօլեայ, բարեկամ՝ լեալ ընդ թշնամեաւն, մատնէ զթագաւորն 'ի ձեռս նոցա այսպիսի եղանակաւ. էր տօթ յոյժ ժամանակն, և տեղին յանջրդի. և խորհրդակից լեալ Կոմսին ընդ թագաւորին առնուլ խորեանց կայանս զապառաժն յանջրդի։ Իսկ թշնամիքն կալան զեզրն Յորդանանու։ Իբրև խմբեցաւ պատերազմն 'ի միջօրէին, երիվարք զօրուն քրիստոնէից, քանզի պապքեալ էին 'ի ծարաւոյ, իբրև տեսին զջուրն, քարշեալ զհեծեալսն՝ ընկեցին 'ի մէջ թշնամեացն, և նոցա սուր 'ի գործ արկեալ, յանխնայ կոտորեցին։ Իսկ թագաւորն Երուսաղէմի այր քաջ էր, զբազումս կոտորեաց 'ի թշնամեացն անձամբն իւրով. և ետես զի անհնար է նմա զերծանիլ, զի սպանաւ երիվար նորա, կամաւ ետ զինքն 'ի ձեռս նոցա. և նոքա երդումն պահանջեալ 'ի նմանէ, զի մի՛ այլ հանցէ նոցա սուր՝ թողին զնա. և գնաց յաշխարհն Հռոմայեցւոց, և ինքեանք չոգան 'ի վերայ Երուսաղէմի, և առին զնա, և որ շուրջ զնովաւ քաղաքք. և կոտորեցին զամենեսեան. և խաւարեցաւ արեգակն զյոլով ժամս։ Եւ տիրեցին Սալահատեանք Պաղեստինի և Եգիպտոսի և Միջագետաց, և մեծ մասին Հայոց աշխարհիս, ինքեանք և թոռունք իւրեանց, որ կոչին Եալեանք. յորոց էին Մելիքք

քեմլ, և Մելիք Աշրաֆին, և այլ սուլտանք՝ որ տիրեցին բազում աշխարհաց։

Իսկ Կիւրիկէ Բագրատունի, որ 'ի Լոռէ քաղաքի, զամենայն ժամանակս իւր կացեալ ընդդէմ Արաց, 'ի հաստատութեան պահէր զհայրենիս իւր. և յետ մահուան նորա որդիք իւր՝ դաւեալք 'ի Արաց, ելեալք 'ի տանէ հայրենեաց, գնացին 'ի Պարսիկս, Դաւիթ և Աբաս անուն, առնուն 'ի նոցանէ 'ի ժառանգութիւն զՑաւուշ և զՄածնաբերդ և զայլ տեղիս։ Ապա յետ աւուրց՝ առնուն դարձեալ Պարսիկք 'ի նոցանէ զՑաւուշ. և նոքա բնակին 'ի Մածնաբերդ, և Դաւիթ և Աբաս՝ մահուամբ փոխին յաշխարհէս։ Եւ յաջորդէ զտեղի հօր իւրոյ Դաւթի որդի նորա Կիւրիկէ, այր բարեբարոյ և կատարեալ 'ի գործս առաքինութեան, քան զհայրս իւր. և բարւոք փոխեալ յաշխարհէս, թողու ժառանգակալ զորդի իւր զմանուկն Աբաս երկոտասանամեայ։ Սա առնու իւր կին զդուստր Սարգսի բարեպաշտ իշխանի, որդւոյ Զաքարիայ, որդւոյ Վահրամայ, զքոյր մեծամեծ իշխանացն Զաքարէ և Իւանէ, Խնանայ անուն. սոցա գործք յոլով են, յիւրում տեղւոջն նշանակեսցուք. և կացեալ Աբաս ամս երկու ընդ ամուսնոյն իւրոյ, վախճանի ամաց ըննից և տասանց. սորա զաւակ ոչ գոյր 'ի կնոջէն իւրմէ։ Իբրև ետես քոյր նորա, Բիւրիննայ անուն, եթէ բնաջինջ եղաք յազգէ՝ անհնարին ազով վարանէր։ Ապա ասացին նմա, եթէ է կին մի, որ ունի մանուկ մի ստնդիայ յեղբօրէն քումմէ, ապա զարթացեալ կնոջն, առնու զմանուկն և սնուցանէ, և անուանեաց զանուն նորա Աղսարթան, որ եղև ժառանգակալ Մածնաբերդոյ. այր աստուածապաշտ և քահանայասէր։ Սա որ եհաս յաւուրս մեր, սորա 'ի ծերութեանն ցաւեցին ոտք. ընդ սա խաբէութեամբ վարեցաւ Դաւիթ իշխան Նոր բերդին, զի էր և նա յազգէ Բագրատունեաց, հայրն Վասակայ իշխանի, որ շինեաց զեկեղեցին հրաշազան 'ի վանքն՝ որ Անապատն կոչի, հուպ 'ի Նոր բերդն առաջնորդութեամբ և ձեռնադրութեամբ արք եպիսկոպոսին Յովհաննիսի Ցուեցոյ քաղաքին Շամքորոյ, և Գարդմանայ, և Երգեվանիցն, և Ցէրունականին, և Ցաւշոյ, և այլ կող-

մանց իշխանութեան Վահրամայ իշխանի։ Եւ եղև աւարտումն եկեղեցւոյն. որ օծաւ և կնքեցաւ յանուն սրբոյ Աստուածածնին 'ի ՆՀԸ թուականին Հայոց։ Այր սուրբ և առաքինի և բարեգործ էր եպիսկոպոսն Յովհաննէս, որ յոլով քառասունս անսուաղ պահէր։ Իսկ Դաւիթ իշխան Նոր բերդին խաբեաց զմանուկն Աղսարթան և փեսայացուց զնա 'ի դուստր իւր. և ինքն տիրեաց Մածնաբերդոյ, և ապա եհան զդուստր իւր 'ի նմանէ։ Իսկ Աղսարթանայ իւր արարեալ զբնակիչս իւր բերդին, յանկարծակի յեղակարծ ժամու ըմբռնեալ զԴաւիթ հանդերձ ամենայն ընտանեօքն հանին արտաքս 'ի բերդէն. և ետուն զբերդն յԱղսարթան։ Եւ նա յետ ժամանակաց կենդանութեամբ իւրով ետ զիշխանութիւնն իւր յորդին իւր Կիւրիկէ, և ինքն կրօնաւորացաւ 'ի վանքն, որ կոչի Գետակիցք։ Եւ Կիւրիկէին եղեն որդիք. անուանք նոցա՝ միոյն Բահլաւան, և միւսոյն Թաղիադին, և երրորդին Աղսարթան։

## Վասն Թագաւորութեանն Լևոնի, որ 'ի կողմանս յԱրևմտից։

Որ ինչ մինչև ցայս վայր էր պատմութիւնս՝ երկօք աշխատութեան հաւաքեալ 'ի նախագրելոց։ Իսկ որ առաջի կայս մեզ ասպարէզ պատմութեանս՝ է որ ականջալուր, և է որ ականատես. քանզի իբրև մեծ իշխանն Թէոդորոս մեռաւ, որդին Լևոնի, որդւոյ Կոստանդիայ՝ որդւոյ Թագաւորազինն Ռուբինեայ յաշխարհին Կիլիկեցւոց, էառ զիշխանութիւնն եղբօր որդի նորին, Ռուբէն անուն, որդի Ստեփանեայ, զոր սպան Անդրոնիկոս նենգիւ զօրավարն Հոռոմոց. և յետ սակաւ ժամանակաց, վախճանեցաւ և նա, և էառ զիշխանութիւնն Լևոն, այր քաջ և պատերազմող։ Սա ընդ տիրելն իսկ և իսկ ընդարձակեաց զսահմանս տէրութեանն իւրոյ, զի ետ նա պատերազմ ընդ շուրջանակի յազգսն և յաղթեաց քաջութեամբ ըստ անուանն, առիւծաբար, զի Լևոնն՝ առիւծ կոչի։ Իբրև տեսին զյաջողութիւն նորա բռնակալքն Թուրքաց և Տաճկաց, որ

Սուլտանք անուանին, ժողովեցաւ 'ի վերայ Նորա Սուլտանն, որ իշխէր Հալպայ և Դամասկոսի, անթիւ զօրու և զինու։ Եւ լուեալ Լևոնի իշխանաց իշխանի զդիմումն 'ի վերայ իւր այլազգւոյն, աճապարեալ հաւաքեաց զզօրս իւր և յանկարծակի եհաս 'ի վերայ Նոցա, որպէս զարծուիս սլացմամբ՝ յերամս հաւուց, և եհար զնոսա 'ի հարուածս մեծամեծս. և Սուլտանն փախստական լեալ, մազապուրծ զերծաւ 'ի Նմանէ. այն որ խրոխտանօք գայր 'ի վերայ Նորա, ծառայեցուցանէր զՆա։ Եւ զայն գործ քաջութեան Նորա տեսեալ շրջակայ ազգացն Տաճկաց, դողային 'ի Նմանէ, և հարկէին Նմա. և այսպէս բռնացաւ 'ի վերայ ամենեցուն։ Եւ իբրև ետես յաջողեցաւ Նմա տէրութիւնն առաւել քան զնախնիս իւր, խորհեցաւ այնուհետև ընդ իշխանսն իւր և ընդ մեծամեծս՝ թագաւորել։ Եւ առաքեաց 'ի տիեզերահռչակ քաղաքն Հռոմայեցւոց առ ինքնակալ կայսրն և առ Պապն, զի տացեն Նմա հրաման և թագ թագաւորական, զի ո՛չ կամեցաւ Նա, թէ այլ ումեք ազգի երևեսցի Նա հնազանդ վասն թագի, բայց թէ ազգին Փռանգաց. միանգամայն և պարծանս իւր վարկաւ զսուրբ առաքեալսն զՊետրոս և զՊօղոս, որ կան 'ի Հռոմայեցւոց քաղաքին, որպէս թէ 'ի Նոցունց առեալ զօրհնութեան պսակն։ Եւ առաքեն Նմա կայսրն և Պապն Հռոմայեցւոց թագ ազնիւ՝ զառաջին թագաւորացն, և Արծուէս մի պատուաւոր՝ այսինքն արքեպիսկոպոս, դնել զթագն 'ի գլուխ Նորա, երիս իրս պահանջել 'ի Նմանէ. տօնել զտօն Տեառն՝ և ամենայն սրբոց, յորում աւուր հանդիպի, և միշտ յեկեղեցւոջն կատարել զաղօթսն տուընջեան և գիշերւոյ, զոր 'ի վաղուց հետէ ո՛չ առնէին Հայք 'ի հինահարութեանցն Իսմայէլի, բայց միայն 'ի ժամ սուրբ պատարագին. և ո՛չ լուծանել զճրագալոյցսն ծննդեան և յարութեանն, բայց միայն ձկամբք և ձիթով. և յորժամ առնիցէք զայդ ոչ ինչ փոյթ մի՛ առնիցէք զտրոց և զընծայից կայսերն և Պապին վասն թագին. ապա թէ ո՛չ առնիցէք՝ հրաման ունիմ, ասէ, անչափ գանձս առնուլ 'ի ձէնջ ոսկւոյ և արծաթոյ և ականց պատուականաց։ Իսկ Լևոնի կոչեալ զկաթուղիկոսն և զեպիսկոպոսունսն հար-

ցանէր. թէ զինչ պատասխանի տացէ պատգամին Հռոմայեցւոց, և Նոքա ոչ հաւանեցան առնուլ զխնդիրն. և ասէ ցնոսա Լևոն՝ դուք մի ինչ հոգայք վասն այդորիկ, ես հաճեցից զմիտս նոցա առ անգամ մի կեղծաւորութեամբ: Եւ պատասխանի արարեալ Լևոնի, ասէ ցեպիսկոպոսն Հռոմայեցի. զոր ինչ հրամայէ ինքնակալ կայսրն և մեծ Պապն անյապաղ առնեմք զամենայն: Եւ Նորա երդումն պահանջեալ 'ի Նոցանէ երկոտասան եպիսկոպոսաց, և հաւանեցոյց Լևոն զեպիսկոպոսունսն յանձն առնուլ զերդումն: Եւ արարին եպիսկոպոսքն զբան երդմանն, յորոց մի էր Ներսէս եպիսկոպոս Տարսոնի Լամբրոնեցի, զոր վերագոյն յիշեցաք. և Յովսէփ կողմանցն Անտիոքու առաջնորդ վանացն, որ կոչի Յեսուանց. և Յոհաննէս՝ որ եղև կաթուղիկոս, և Անանիա՝ որ եղև հակառակաթոռ 'ի Սևաստ, և այլք ընդ նոսա: Ապա եղև ժողով բազմութեան յոյժ զօրապետաց և զօրաց ազգաց ազգաց պատրիարգն Յունաց՝ որ Նստէր 'ի Տարսոնի, և կաթուղիկոսն Ասորւոց՝ որ Նստէր 'ի վանս սրբոյն Պարսումայի և 'ի սահմանս Մելտենւոյ, և կաթուղիկոսն Հայոց ամենայն եպիսկոպոսօք, և թագաւորեցուցին զԼևոն, և եդեն ընծայաբերք Նորոգ թագաւորին կացելոյ շրջակայ ազգքն:

Եւ լուեալ կայսերն Յունաց, եթէ ետուն Ֆռանգք թագ Լևոնի, առաքեաց և Նա ընծայս և թագ գեղեցիկ, ոսկեով և ականբք պատուականօք ընդելուզեալ, և ասէ՝ զթագն Հռոմայեցւոց մի դիցես 'ի գլուխ քո, այլ զմերդ՝ զի առ մեզ հուպ ես քան զՀռոմ: Իսկ թագաւորն Լևոն, այր իմաստուն էր, ոչ խոտեաց և ոչ զմի ոք յերկոցունց թագաւորացն զՀռոմայն կամ զԿոստանդնուպօլսեայն, այլ ըստ կամաց Նորա արար պատասխանի, և սիրով ընկալաւ զեկեալսն. եւ տուրս մեծամեծս բերողաց թագին, և եղև պսակեալ յերկոցունցն. և էր Նա բնութեամբ բարի, ողորմած, աղքատասէր, սիրող եկեղեցեաց և պաշտօնէից Աստուծոյ. կարգէր վանորայս ընդ ամենայն կողմանս տէրութեան իւրոյ և բազմացուցանէր զպիտոյս Նոցա, զի մի իւիք կարօտիցէն ըստ մարմնոյ բաւականին. այլ զի միայն պաշտաման և աղօթից պարապեսցին, յորոց մի է 'ի վանո-

ույժն, Անկերն կոչեցեալ վանք, զոր կարգեաց նա հրա-չականուն, որ մինչև ցարդ եւ մարին նովին կարգադրութեամբ, զոր նայն կարգեաց, զամենայն աւուրս շաբաթուն պահոք կատարել, և միայն լուծանել զշաբաթ և զկիւրակի ձկամբք կամ՝ կթեղինօք։

Իւր այսպէս բարեկարգութեամբ հաստատէր զիւր թագաւորութիւնն բարեպաշտն Լեոն, և էր նա ամենայն իրօք բարերադդյն, բաց միայն միով մասամբ. զի էր նա իգասէր, և եթող նա զկինն իւր զառաջինն՝ զոր ունէր յիշխանութեանն, և էառ զդուստր արքային Կիպրոսի, Ֆռանգ ազգաւ, զի լիցի նմա թիկունք և օգնական։

Մինչ եղև զի չոգաւ նա 'ի Կիպրոս կղզի 'ի տեսութիւն աներաց իւրոց։ Եւ լուեալ զայն թշնամեաց նորա, որք 'ի ցամաքի, ոչ ինչ կարէին ազդել նմա, պատրաստեցին նաւս բազումս, զի 'ի ծովու ննգեսցեն զնա։ Եւ լուեալ զայն արքային Լեոնի, դարձաւ անդրէն յետս 'ի Կիպրոս, զի էր 'ի ճանապարհի 'ի վերայ ծովուն. և առ իւր նաւս պատերազմականս, և եկեալ 'ի դարանն, որ գործեալ էր նմա նաւաց բազմաց. և զի այր իմաստուն էր, ծանեաւ թէ, յորում նաւուցն իցէ գլխաւորն, եհար զնա արագաթև նաւովն և ջրասոյզ արար զամենեսեան, և մնացեալ նաւքն փախեան, և անկաւ ահ նորա 'ի վերայ ամենեցուն հեռաւորաց և մերձաւորաց։

Եղև երբեմն, զի Սուլտանն՝ որ տիրէր կողմանցն Հալպայ, զօրաժողով եղև 'ի վերայ նորա յաւուրս պահոցն, և յղեաց առ Լեոն արքայ պատգամս այսպէս. եթէ ոչ հնազանդեալ հարկեսցիս ինձ ծառայութեամբ, բազմութեամբ զօրաց իմոց 'ի սուր սուսերի մաշեցից զամենայն բնակիչս երկրի քո, մայր առ մանկանն, և զտօնդ ձեր՝ յորում ուրախանայք քրիստոնեայքդ պատուելով զդա, որպէս թէ յարութիւն Քրիստոսին ձերոյ իցէ, դարձուցից զդա 'ի սուգ ձեր, և արարից զի զպատրաստեալ կերակուրդ ձեր վասն տօնիդ, ուտիցէք դայդ 'ի վերայ ձիոյ։ Եւ իբրև առաքեաց զայս՝ յինքն առեալ զբազմութիւն զօրաց իւրոց, բանակեցաւ առ սահմանօք նոցա, մնայր գալստեան պատգամին։ Իբրև գիտաց արքայն Լեոն զգալ պատ-

զամին և զզօրաժողով լինել այլազգեացն, հրամայեաց զդեսպանսն յայլ կողմ շրջեցուցանել աշխարհին պատճառանօք, որպէս թէ արքայ անդ իցէ. և ինքն աճապարեալ ժողովեալ զզօրս իւր, և ընդ այլ կողմ ել 'ի վերայ նոցա. և յեղակարծ ժամու անկաւ 'ի վերայ նոցա, և եհար զնոսա հարուածս մեծամեծս, և մազապուրծ փախեաւ Սուլտանն։ Եւ Լևոնի արքայի առեալ զաւար բանակին այլազգեացն, հանդերձ վրանօք նոցա, և զգերիսն ամենայն, եկն բանակեցաւ յաշխարհին իւրում առ ափն գետոյն, և հրամայեաց զօրաց իւրոց կանգնել զխորանս այլազգեացն, և զիւրաքանչիւր դրօշս կանգնել 'ի դուռն խորանի իւրոյ. և ապա հրամայեաց կոչել զդեսպանսն. և իբրև եկին՝ տեսին զվրանս և զխորանս զօրացն իւրեանց և զնշանակ դրօշից իւրաքանչիւր գնդից, և զարմացան հիացմամբ մեծաւ, զի ոչ գիտէին զեղեալսն։ Ապա իբրև իմացան, դիմեցին յոտս թագաւորին, և զապրուստ անձանց խնդրէին։ Իսկ արքայ մարդասիրեալ առ նոսա, շնորհեաց նոցա կեանս, և առաքեաց զնոսա առ տէրն իւրեանց, զնոյն հարկ զոր պահանջէր Սուլտանն յարքայէն, զնոյն և ևս յաւելեալ եդ 'ի վերայ նորա. և ծառայեցոյց զայլազգիսն. և եղև թագաւորելն նորա ոխը թուականին Հայոց։

## Վասն իշխանացն որ յՕրբէլը Հայաստանեայց Զաքարէին և Իւանէի եղբօր նորին։

Յաւուրս ժամանակաց թագաւորութեանն Լևոնի Հայոց արքայի էին յՕրբելս երկու եղբարք, որդիք Սարգսի բարեպաշտ իշխանի, որդւոյ Վահրամայ, որդւոյ Զաքարիայ, որ հատուածեալ 'ի Քրթաց 'ի Բաբիրական խելէն, անուն առաջնոյն Զաքարէ, և երկրորդին Իւանէ, արք քաջք և ճոխք իշխանութեամբ, պատուեալք 'ի թագուհւոյն Վրաց, որ Թամարն կոչէր, դուստր Գէորգեայ քաջի, որդւոյ Դեմետրէի։ Եւ Զաքարէ էր զօրավար Վրաց և Հայոց՝ որ ընդ ձեռամբ թագաւորին Վրաց։ Իսկ Իւանէ՝ Աթաբակութեան պատուով. սոքա բազում մարտս քաջութեան

ցուցին. քանզի զբազում աշխարհս Հայոց՝ զոր ունէին Պարսիկք և Տաճիկք, առին 'ի նոցանէ յինքեանս, զգաւառն՝ որ շուրջ զծովովն Գեղարքունոյ, զԱրտաշէր, և զԱյրարատ, և զԴուին, և զԱնբերդ, և զԱնի քաղաք, և զԿարս, և զՎայոց ձոր, և զաշխարհն Սիւնեաց, և որ շուրջ զնովաւ են բերդք, և գաւառք. հարկատուք արարին և զՍուլտանն Կարնոյ քաղաքին. աւերեցին և զբազում գաւառս Պարսից, և զԱտրպատական. ընդարձակեցին զսահմանս իւրեանց յամենայն կողմանց։ Այսպէս և միւս իշխանն, Զաքարէ անուն, և եղբայր իւր Սարգիս, հայրն Շալուէի և Իւանէի, ազգականք մեծ իշխանացն, ձեռնտուութեամբ նոցին, առին և նոքա բազում գաւառս 'ի Պարսից, և զբերդս ամուրս զԴարդման, զՔարհերձ, և զԵրգեվանք, զՏաւուշ, զԿածարեթ, և զՏէրունականն, զԳագ, և զՇամքոր քաղաք 'ի նեղ էարկ, զոր յետոյ էառ որդի նորա Վահրամ, հայր Սաղպուղին, պապն Վահրամայ, և Զաքարէի և Իւանէի։

Իսկ այսպէս յաջողեցաւ նոցա 'ի վերուստ յաղթութիւն նոցա, զի համբաւ քաջութեան նոցա ել ընդ բազում գաւառս, և բազում ազգք հարկէին նոցա, որ սիրոյ աղագաւ, և որ յերկիւղի, շինեցան բազում վանորայք, որ 'ի վաղուց ժամանակէ անտի աւերեալ էին 'ի հենից Իսմայելի, վերստին նորոգեցան եկեղեցիք, և պայծառացան դաշտք պաշտօնէից, շինեցան և նոր վանորայք և եկեղեցիք, որ 'ի հնոցն չև էին լեալ վանք, ընդ որս և հռչակաւոր վանքն՝ որ Գետիկն կոչի, 'ի գաւառին Կայենոյ, զոր շինեաց սուրբ վարդապետն Մխիթար, զոր Գոշն կոչէին, շինեալ հրաշազան եկեղեցի գմբեթայարկ երկնանման, և կնքեալ զեկեղեցին, և օծեալ յանուն սուրբ Աստուածածնին, տաճար փառաց Տեառն՝ բնակարան բանաւոր հօտին Քրիստոսի։

Իսկ իբրև այսպէս յաջողեցաւ նոցա իշխանութիւնն, զի հարին զՍուլտանն, որ շահի Արմէն կոչիւր։ Ապա կամեցան առնուլ և զհոյակապ քաղաքն Բզնունեաց՝ զԽլաթն, և զօր գումարեալ պաշարեցին զնա, և մերձ էին յառնուլ։ Ապա ելեալ իշխանն Իւանէ, եղբայր զօրավարին,

զբօսանաց ինչ աղագաւ 'ի զննին պարսպին և յանկարծաւ շրջիլն՝ գթեաց ոտք երիվարին 'ի խորխորատն՝ որ թաքուցեալ էր, և ընկէց զնա յերկիր. և տեսեալ արանց քաղաքին, յարեան 'ի վերայ նորա, և ձերբակալ արարեալ, տարան զնա 'ի քաղաքն. և եղև 'ի քաղաքին մեծ ուրախութիւն. և իսկոյն ազդեցուցին Սուլտանին զըմբռնումն նորա. ընդ որ կարի յոյժ ուրախացեալ, հրամայեաց առ ինքն ածել: Եւ լուեալ զօրավար Զաքարիայի, յղեաց առ քաղաքացիս բանս սպառնալեաց և ասէ. եթէ հանէք զեղբայրդ իմ 'ի քաղաքէդ յայդմանէ, և կամ կորուսանէք, զհող երկրիդ՝ 'ի կողմանս Վրաց տամ տանել, և անմարդ արարից զձեզ: Եւ երկուցեալ նոցա՝ ոչ ետուն տանել առ Սուլտանն, որք էին 'ի կողմանս Դամասկոսի և յեգիպտոսի. որոց անուանքն էին Կուզ և Մելիք Քամիլ և Աշրափ, յազգէ Սալահատինին, որ առ զԵրուսաղէմ: Ապա արարեալ սէր ընդ միմեանս, խնդրեցին զդուստր Իւանէի 'ի կնութիւն. եղև որպէս խնդրեցին. առին պատանդս և արձակեցին զԻւանէ: Եւ նորա երթեալ 'ի տուն իւր, առաքեաց զդուստր իւր, որ եղև կին Կզզին, և յետ նորա Աշրաֆին: Բազում օգուտ եղև գալ կնոջն 'ի տուն Սուլտանացն, զի դիւրեցին քրիստոնէիցն, որ ընդ իշխանութեամբ իւրեանց էին, և առաւել երկրին Տարօնոյ. զի վանորայքն՝ որ անդ էին, ընդ հարկիւ էին, թեթևացուցին զսակ հարկին, և կիսոց զամենն իսկ թողին. և հրամայեցին այնոցիկ, որ ընդ իշխանութեամբ իւրեանց են, ոչ զրկել կամ նեղել զճանապարհորդս, որք աղօթից աղագաւ երթային յԵրուսաղէմ, և առաւել ընդարձակեցին ազգին Վրաց. զի Իւանէ խոտորեցաւ յաղանդն Քաղկեդոնի, յոր կործանեալ էին Վիրք. զի սիրեաց նա զփառս մարդկան առաւել քան զփառսն Աստուծոյ, հրապուրեալ նա 'ի թագուհւոյն՝ որ Թամարն կոչէր; 'ի դստերէն Գէորգեայ: Իսկ Զաքարէ յուղղափառութեանն եկաց, զոր դաւանեն Հայք. վասն այսորիկ առաւել մեծարէին զՎիրս. զի անհարկ էին նոքա յամենայն քաղաքս նոցա և յԵրուսաղէմ ևս. և էր անուն կնոջն Թամթայ: Եւ այսպէս եղև սէր և միաբանութիւն ընդ թագաւորութիւնն Վրաց և ընդ իշխանութիւն Սուլտանաց:

## Վասն ժողովոյն զոր արար Զաքարիայ վասն խնդրոյ Լևոն Արքայ:

Յետ այսորիկ իբրև խաղաղացուցին զաշխարհս իշխանութեան իւրեանց յամենայն հենից, և բազմացան վանորայք, և պայծառացան պաշտամունք եկեղեցւոյ, այլ ինչ էած զմտաւ իշխանն Զաքարէ. զի տեսանէր զզօրս Վրաց, որ ընդ Թագաւորին իւրում, զիւրաքանչիւր ոք 'ի նոցանէ ունէր ընդ իւր քահանայս, և յամենայն տեղիս մատուցանէին պատարագ. և ինքն ոչ ունէր եկեղեցի 'ի ճանապարհի, զի չէր սովորութիւն Հայոց 'ի բազում ժամանակաց հետէ, յորմէ բարձան իշխանքն Հայոց մեծամեծք 'ի Պարսից և յիսմայելացւոց բռնութենէն: Եւ նախատէին Վիրք զՀայք. ոչ ունել եկեղեցի 'ի ճանապարհի, և անհաղորդ մնալ նոցա, և ոչ տօնել զտօնս վկայից Աստուծոյ յիւրաքանչիւր աւուր կատարման. վասն այսորիկ կարի յոյժ ցաւ էր նմա: Ապա հարցանէր զմեծ վարդապետն Մխիթար, որ Գոշն կոչէին, զշինող վանիցն Գետկայ, որ էր հայր խոստովանութեան նմա, և ասէր թէ ոչ երբէք եղեալ է թագաւորացն մերոց, կամ իշխանացն 'ի պէտս ճանապարհաց եկեղեցի, տեղի պաշտաման և պատարագի. հարցանէր և զայլ վարդապետաց, և նոքա ասացին նմա զայն, որ առ մեծազօր արքային Տրդատաւ վրանն և սեղանն, զոր շրջեցուցանէին յարքունական բանակին, և որ առ սրբովք Վարդանամբք, որք զմկրտութիւնն և զհաղորդութիւնն կատարէին 'ի մէջ բանակին, և զայն զոր գրեցին սուրբ վկայքն Հիպերիքոս և Փիլոթէոս առ Յակոբոս երէց. եթէ առեալ ընդ քեզ զսպաս պատարագին և զեղջիւր իւղոյդ, եկեսցես առ մեզ. և այլ բազումք, որ նման են սոցին: Ապա ասէ ցնոսա մեծ զօրավարն. տուք և ինձ հրաման. զի և ես շրջեցուցից զկնի իմ քահանայս և վրան պատարագի: Ասէ ցնա մեծ վարդապետն. մեք ոչ կարեմք առնել զայդ առանց հրամանի կաթուղիկոսին Հայոց, և թագաւորին Լևոնի: Ապա գրէ թուղթ՝ և առաքէ

դեսպանս առ կաթուղիկոսն Հայոց, Յոհաննէս անուն, որ ընդ այն ժամանակս ապստամբ էր 'ի Թագաւորէն Լեւոնէ 'ի Հռոմկլայն վասն իրիք պատճառանաց։ Նմանապէս գրէ և առ Լեւոն Թագաւորն, և ծանուցանէ նմա զխնդիրն։ Եւ նա նստուցեալ էր զտէր Դաւիթ կաթուղիկոս փոխանակ Յոհաննիսի, որ առաջնորդն էր յաշխարհէն Կիլիկեցւոց 'ի վանքն, որ կոչի Արքակաղին։ Ապա ժողովեալ արքային Լեւոնի զվարդապետս և զեպիսկոպոսս իւրոյ իշխանութեանն, հարցանէր վասն խնդրոյն Զաքարէի։ Եւ նոքա յանձն առին, զի մի՛ ելցէ նա արտաքոյ ուղղափառ հաւատոյն, որպէս զեղբայր իւր. գրեն թուղթ յԱրեւելս այսպէս. Մեծ վարդապետս և շահնշահ արեւելեան կողմանցն Զաքարիայ, 'ի խնդիր եղեալ եղծեալ և աղաւաղեալ կարգաց քրիստոնէից, որ 'ի տրկութենէ այլասեռից՝ ժողով արարեալ վարդապետաց և եպիսկոպոսաց, և հարց, և երիցանց, որ քննեալ գտին զխնդիրս նորա համաձայն Աստուածային գրոց։ Ապա առաքեաց առ Քրիստոսապսակ արքայն Հայոց Լեւոն, որ 'ի կողմանս Արեւմտից, յաշխարհին Կիլիկեցւոց։ Եւ նորա ժողով արարեալ 'ի մայրաքաղաքն Սիս զկաթուղիկոսն Դաւիթ հանդերձ վարդապետօք և եպիսկոպոսօք և ճգնաւոր միանձամբք, գտին ըզխնդիրս նորա համաձայն առաքելական կանոնաց, և ոչ արտաքոյ։ Վասն որոյ գլուխս կանոնաց դրոշմեալ առաքեցին թղթով ութ, որ են այսոքիկ. Առաջին մատուցանել զպատարագն սուրբ դպրաւ և սարկաւագաւ, որպէս օրէնն է։ Երկրորդ տօնել զտօն աւետեաց սրբոյ Աստուածածնին 'ի վեց Ապրիլ ամսոյ, յորում աւուր և հանդիպի. և զտօն փոխման նորին տասն և հինգն Օգոստոսի ամսոյ, յորում աւուր և հանդիպի. և զտօն սրբոյ խաչին տասն և չորս Սեպտեմբերի ամսոյ, յորում աւուր և հանդիպի։ Նոյնպէս և զայլ տօնս վկայից, յորում աւուր և հանդիպի ըստ իւրաքանչիւր յիշատակի։ Երրորդ պահել զճրագալոյց սուրբ յայտնութեանն և զյարութեանն մինչև ցերեկոյն պահօք, և ոչ այլ իւիք լուծանել, բայց միայն ձկամբք և ձիթով։ Չորրորդ ընդունել զնկարագրութիւն պատկերի Փրկչին, և ամենայն սրբոց. և մի՛ խառնել զնաս իբրև

զպատուէրս հեթանոսաց։ Հնգերորդ պատարագ մատուցա-
նել և կենդանեաց։ Վեցերորդ կրօնաւորաց՝ միս ոչ ու-
տել։ Եօթներորդ ձեռնադրել դպիր, և ապա յետ բա-
զում աւուրց սարկաւագ, և 'ի կատարել հասակի ապա
քահանայ։ Ութերորդ միաբան կալ 'ի վանսն, և առան-
ձին իրս ոչ ստանալ։ Զայսոսիկ, և որ նման սոցին գրե-
ցին ժողովն յԱրեւմտից, և առաքեցին յԱրեւելս առ Զա-
քարիայ։ Իսկ կաթուղիկոսն Յովհաննէս՝ որ 'ի Կլայն Հռո-
մայեցւոց, վասն ընդ միտ մտանելոյ իշխանացն Արեւելից,
առաքեաց վրան մի գմբեթայարկ եկեղեցաձև, և կազմօղս
և յօրինօղս նմին, և սեղան մարմարեայ, և այլ սպաս պա-
տարագաց, և եպիսկոպոս մի, Մինաս անուն, և սարկաւագ
և դպիրս, և քահանայս գեղեցկաձայնս, ասացօղս պատա-
րագին. որք եկեալ յանդիման եղեն Ամիր սպասալարին
'ի քաղաքն Լօռէ, և առաջի կացուցին նմա զհրամանս կա-
թուղիկոսին և զթուղթս նորին և զընծայսն։ Նմանապէս
և յարքայէն Լեւոնէ, և 'ի կաթուղիկոսէն Դաւթէ եկին
գեսպանք և հրամանաբերք։ Ընդ որ յոյժ ուրախացեալ
Զաքարիայ, ժողով հրամայեաց առնել 'ի Լօռէ քաղաք
զեպիսկոպոսն Հաղբատայ՝ զԳրիգորէս, զիւրեանց ազգա-
կան, և զեպիսկոպոսն Անւոյ, և զեպիսկոպոսն Բջնոյ, և
զՏփղիսայ, և զԿարուց, և զայլս որք դիպեցան։ Նոյնպէս և
զվարդապետս և զառաջնորդս վանօրէից հանդերձ քահա-
նայիւք և այլ աշխարհական ամբոխիւ, կամէր կանգնել
զվրանն և պատարագ մատուցանել։

Այլ էին 'ի ժամանակին յայնմիկ վարդապետք երևե-
լիք, որ Գօշն կոչիւր, շինօղ վանացն Գետկայ, այր իմաս-
տուն և հեզ, և վարդապետն ուսմամբ հռչակեալ Իգնա-
տիոսն, և Վարդան, և Դաւիթ Քոբայրեցին 'ի Հաղբա-
տայ, Յօհաննէս հայր Սանահնին, որ զկնի մահուան Գրի-
գորոյ, զոր Տուտայ որդին կոչէին, սնուցող նոցուն իշ-
խանացն. Գրիգոր՝ զոր Մոնոնիկն կոչէին, 'ի Կեչառուաց,
Տաւրքիկն 'ի Թեղինեաց, որ բարւոք կարգաւորեաց զվանքն,
զամենայն ինչ հասարակաց լինել, և առանձին ինչ ոչ
ստանալ։ Եղիայ 'ի Հաւուց Թառոյ, այն՝ որ գեղեցիկ կար-
գաւորեաց զպաշտօն վանից իւրոց, որպէս թէ ամենեցուն

ընդ մի բերան հնչել. եթէ բարձր և թէ ցած. և ոչ հարստահարել ընկեր զընկեր. Գրիգոր Դպնացին. Սարգիս միակեացն 'ի Սևանայ. այսոքիկ որք երևելիք և այլք բազումք. Գրիգորէս եպիսկոպոս Հաղբատայ, Վրթանէս Բջնոյ և Դպնայ, Սարգիս աթոռակալ Անւոյ, Յոհաննէս Կարուց, և այլք յոլովք աստի և անտի, հանդերձ երևելի քահանայիւք վանաց և քաղաքաց և գիւղից։

Իսկ իբրև գիտացին և լուան զհրամանս կաթուղիկոսին և Գրիգորին, ոմանք հաւանեցան, և կէսք ոչ. և այսպէս անմիաբանք լեալ, քակտեցան 'ի միմեանց. ոմանք գիշերի գաղտագողի գնացին միմեանց մեղադրելով։ Իսկ իշխանն Զաքարէ առաքեաց 'ի վանորայսն որ ընդ իւրեանց իշխանութեամբ, և տայր բռնութեամբ առնել զոտն փոխման Աստուածածնին, և վերացման սուրբ խաչին, ոչ 'ի կիրակէի՝ որպէս սովորն էին, այլ զպատկերն զինչ որ և էր. բազում անմիաբանութիւնք և կռիւք էին յեկեղեցիս, և լինէր փոխանակ ուրախութեան՝ տրտմութիւն. և փոխանակ սիրոյ՝ որ ընդ միմեանս, ատելութիւն. մինչև 'ի սուր ևս մտաբերել միմեանց։ Ապա առաքեաց Զաքարիայ զեպիսկոպոսն Մինաս, որ նկեալ էր 'ի կաթուղիկոսէն 'ի Հաղբատ իւր պաշտօնէիւքն. զի և անդ զնոյն արասցեն. և մինչ գայր նա հուպ 'ի վանքն, առաքեաց Գրիգորէս եպիսկոպոս Հաղբատայ արս՝ որք սաստիկ հարին զնա բրօք, և զպաշտօնեայս նորա սաստիկ. և վէրս 'ի վերայ եդեալ թողին կիսամահ, և զջորիսն՝ որք էին ընդ նմա բեռնակիրք, գահավէժ արարեալ՝ սատակեցին, և բարձեալ զեպիսկոպոսն մահճօք տարան առ Զաքարէ։ Եւ նորա տեսեալ բարկացաւ յոյժ 'ի վերայ Գրիգորիսի, և հրամայեաց ըմբռնել զնա՝ մահու չափ սպառնացեալ 'ի վերայ նորա։ Եւ նա փախստական գնացեալ յաշխարհն Կարնոյ 'ի վանքն Գետիկ առ մեծ վարդապետն Մխիթար, ապաւինելով 'ի նմա, զի գիտէր թէ մեծ համարձակութիւն ունի նա առ Զաքարէ, և ճողոպրեցաւ այն անգամ 'ի ձեռաց նորա. և յետոյ ըմբռնեալ զնա 'ի Կեչառոս, և եդ զնա 'ի բանտի, և զՅոհաննէս կացոյց փոխանակ նորա եպիսկոպոս Հաղբատայ. այն՝ որ յառաջ եթող զաթոռն,

և գնաց 'ի խաչէն։ Եւ այր առաքինի էր Յովհաննէս, և բազում գործս արժանի յիշատակի գործեաց նա 'ի Հաղբատ, ընդ որս և զհռչակաւոր գաւիթն եկեղեցւոյն շինեաց, որ հիացուցանէ զտեսողս. և այսպէս շփոթութիւն ունէր զեկեղեցիս Արևելից. քանզի 'ի բազում ժամանակաց հետէ չէին սովոր առնել, զոր խնդրէր նա. ոչ զտօնս իւրաքանչիւր աւուր, զի մի՛ պատճառաւ տօնին լուծցին պահքն, և զպատարագն սուրբ ոչ մատուցանէին սարկաւագաւ. այլ միմեանց քահանայքն սպասաւորէին, կարծեմ թէ զայս սովորութիւն էին կալեալ 'ի բռնութենէն Տաճկաց, որ ոչ տային համարձակ պաշտել զպաշտօնս իւրեանց քրիստոնէից. այլ և ոչ զդրունս եկեղեցեաց իշխէին թողուլ 'ի բաց 'ի ժամ սուրբ խորհրդոյն, զի մի՛ ոճրիս ինչս գործեսցեն այլազգիքն. և ոչ զայլսն զոր նա ախորժէր։

Դարձեալ ժողով հրամայէր առնել 'ի մայրաքաղաքն յԱնի, որ 'ի Շիրակ գաւառի, և ժողովեցան վերոյգրեալ եպիսկոպոսքն և վարդապետքն և ևս յոլովք։ Գրեաց Զաքարիայ առ վարդապետն Միխիթար, զի և նա գայցէ 'ի ժողովն։ Իսկ նա պատճառեաց զհիւանդութիւնն և զանկարութիւնն, և գրեաց պատասխանի այսպէս. եթէ զոր ինչ առնեն դոքա և կամին, համաձայն եմ և ես այնմ, և աղաչեմ զքեզ՝ մի՛ ինչ աւելի աշխատ առներ զիս, զի չեմ կարող։ Իսկ Զաքարէ կոչեաց զժողովն, և խնդրէր 'ի նոցանէ ձեռագիր՝ զի արասցեն՝ զոր խնդրէր նա. և նոքա ասեն. անհնար է մեզ՝ առանց մեծ վարդապետին առնել զայդ. զի այսպէս կոչէին զնա սակս պատուոյ. և նա ցուցեալ զթուղթն, ասէ՝ տեսանիկ նա. այս ձեռագիր նորա է և նա սա, և զթուղթն ոչ ետ ցնոսա, եթէ զինչ գրեալ էր նամակս։ Իսկ ժողովն խնդրեաց 'ի նմանէ ներումն. մինչ ինքեանք առաքեսցեն առ նա, գալ նմա 'ի ժողովն. և առաքեցին առ վարդապետն Միխիթար, և աղաչէին զնա գալ 'ի ժողովն. զի միաբան պատասխանի արասցեն զօրավարին. և գրեցին թէ զանկարութիւն մարմնոյ մի՛ ինչ պատճառեր, եթէ 'ի ճանապարհի հասանէ քեզ վախճան ընդ առաջին սուրբ վարդապետացն եկեղեցւոյ կարգեսցուք զյիշատակս քո։ Եւ իբրև ընթերցաւ զթուղթ ժողովոյն, վաղ-

վաղակի յարեաւ և գնաց զկնի կոչնականացն. և էր ա-
ւուրքն ձմեռնային. և տօն ծննդեան և յայտնութեան Յի-
սուսի Քրիստոսի մերձեալ: Իբրև գիտաց զօրավարն, եթէ
գայ նա, առաքեաց իշխան մի 'ի քաղաքին դուրս. զի յոր-
ժամ գայցէ՝ մի՛ թողացուսցեն զնա երթալ 'ի ժողովն,
այլ առ ինքն տարցեն: Եւ նախ քան զգալն նորա, կէսք
հաւանեալ էին առնել զխնդիրն, այնոքիկ, որ եպիսկոպոս
էին յիշխանութեանն. զի մի անկցին յաթոռոյն. և կէսք
ոչ: Իբրև եկն վարդապետն, առեալ իշխանն զերասանակս
երիվարի նորա, տարաւ զնա առ զօրավարն: Իբրև գիտա-
ցին ժողովն, եթէ ոչ թողին զնա առ ինքեանս, առաքե-
ցին զվարդապետն Ներսէս՝ այր առաքինի և ողջախոհ, որ
յետոյ առաջնորդ եկաց Կեչառուաց զկնի մահուան վար-
դապետին Գրիգորի, որ Մոնոնիկն կոչիւր, զի երթեալ ա-
սասցէ նմա. Նախ 'ի ժողովն գալ, զի խորհեսցին 'ի միա-
սին, թէ զի՞նչ պարտ իցէ առնել, զի հանդերձեալ էր զօ-
րավարն աքսորել զնոսա: Եւ նա երթեալ հանդիպի նմա
յայնմ տեղւոջ, զի մօտ էր նմա մտանել յապարանս զօ-
րավարին. և արտաքուստ ձայնեաց առ նա և ասաց զպատ-
գամս ժողովոյն: Իսկ իշխանն ստիպելով տարեալ եմոյծ
զնա 'ի ներքս. և զօրավարն եկեալ ընդ առաջ նորա, ող-
ջոյն ետ նմա և ասէ, որովհետև եկիր դու, ինձ ոչ ինչ
փոյթ է զնոցանէ: Եւ լուեալ զբանս զայս ժողովն, նա-
խանձաբեկ եղեն. և յաչաղելով ասէին՝ զայս ամենայն
զոր գործէ զօրավարս ընդ մեզ, խրատու նորա գործէ. մեք
իբրև զանասուն համարեալ եմք յաչս նորա. և այլ բա-
զում բանիւք բամբասէին զնա: Իսկ նա իբրև իմացաւ ըզ-
կիրսն, որ եղեալ էին առ ժողովն, մեղադիր եղև առ զօ-
րավարն. թէ իշխանաբար ոչ էր պարտ առնել զայդպիսի
իրդ. և առաքեաց առ ժողովն և ասէ. դուք հոգայք վասն
ազգիս, զի մի՛ այդպիսի սովորութեամբ խառնեսցին ընդ
Վիրս, և ես հոգամ վասն զօրավարիդ, զի մի՛ լիցի սա
Վրացի, իբրև զեղբայր իւր, որում սպասեն Վիրք: Արդ՝
թէ այսպէս է, ապա զի՞ մեղադրէք ինձ, զի հրաման ու-
նի 'ի կաթուղիկոսէն և 'ի թագաւորէն Լևոնէ առնել զայս.
և մեք թէ կամիմք և թէ ոչ, սա ոչ դադարէ յառնելոյ

զայդ։ Արդ դարձջիք յիւրաքանչիւր բնակութիւնս և մեք աղաչեսցուք զսա ո՛չ հանել զձեզ յեկեղեցեաց ձերոց և 'ի տեղեաց. և մեք զպաշտօնն՝ զոր մինչև ցայսօր պաշտեալ եմք, զնոյն պաշտեսցուք։ Իսկ Ամիր սպասալարն Զաքարէ հրաման ետ գաղտնի առանց գիտելոյ վարդապետին մերժել զնոսա յօտարութիւն, ·զոր իմացեալ վարդապետին՝ զբազումս 'ի նոցանէ թափեաց դառնալ 'ի տեղիս իւրեանց. և զայլսն յետ սակաւ ինչ աւուրց Իւանէ եղբայր զօրավարին հրաման ետ դառնալ 'ի տեղիս իւրեանց։ Իսկ Զաքարիայ զամենայն ժամանակս կենաց իւրոց ո՛րչափ եկաց՝ նոյնպէս վարեցաւ, որպէս կամէր, բայց եկեղեցիքն ամենայն առաջին պաշտամամբքն վարեցան։ Զբովանդակ իրս զբան և զգործ այսմ ժողովոյս գրեաց մեծիմաստ և առատամիտ վարդապետն Վանական յիւրում՝ պատմութեանն, զի ականատես էր նա իրացն եղելոց, և ականջալուր, յաշակերտի կարգի գոլով յայնժամ՝ առ մեծ վարդապետին։ Այս և այլ յոլով իրք գտանին 'ի գիրս նորա, որք կամին մտադիւրութեամբ ուսանել։

## Վասն կաթողիկոսին Աղուանից գալոյ առ Մեծ իշխանն։

Ի բազում վշտաց և 'ի նեղութեանց, զոր կրեաց առ հասարակ ամենայն աշխարհ, յազգացն հարաւայնոց, յորդւոցն Իսմայէլի, և՛ս առաւել աշխարհս Հայոց և Աղուանից, զի բնաջինջ եղաք 'ի թագաւորաց և յիշխանաց. կաթուղիկոսքն Աղուանից այսր անդր յածելով, վասն ոչ ունելոյ հաստատուն տեղի աթոռոյ։ Դէպ եղև նոցա գալ 'ի քարայր մի 'ի սահմանս բերդին՝ որ կոչի Չարեք, և անդ դադարիլ, և անդուստ հովուել զհօտ իւր, մի ոմն 'ի նոցունց կաթուղիկոսացն, Բեժգէն անուն, եթող զկարգ իւր, և ա՛ռ կին, և ստացաւ որդիս, և մերժեն զնա յաթոռոյն; և ձեռնադրեն փոխանակ նորա զտէր Ստեփաննոս։

Նորա էր քոր եպիսկոպոս մի՝ Սարկաւագ անուն. դէպ եղև նմա երթալ 'ի քաղաքն Գանձակ, ժողովել զմուտն

ընդ մտանելն յերկայնս և 'ի քրիստոնէից ոք անդ։ Զնա տեսեալ Ամիրայի քաղաքին՝ որում անուն էր կուրճի Բատարատին, եհարց զնա՝ թէ ո՞յր ես. և իբրև ասաց՝ թէ կաթուղիկոսին. ասէ ցնա՝ լուեալ է իմ, թէ քրիստոնեայք մեծապէս խնդութիւն առնեն, յորժամ օրհնեն զջուրն. արդ՝ աւասիկ տուն ձեր մերձեալ է, կոչեա զկաթուղիկոսն ձեր իւրովք պաշտօնէիւք, որպէս սովորութիւն է ձեր, և օրհնեցէք ջուր 'ի քաղաքիս, զի և մեք բերկրեսցուք ընդ ձեզ։ Իսկ քոր եպիսկոպոսն երթեալ պատմեաց կաթուղիկոսին զհրամանս Ամիրային. և Նորա ուրախացեալ յոյժ, զի ոչ երբէք իշխէր կաթուղիկոս կամ երեւելի ոք յայտնապէս մտանել 'ի քաղաքն, կամ շրջել անդր, զի Պարսիկք ունէին զքաղաքն՝ արք ծարաւիք արեան քրիստոնէից. քանզի բազում վնաս կրեալ էին 'ի բնակչացն Խաչենւոյ, որք աւազակաբար կրելով զբազումս սպանանէին 'ի Պարսիցն, և կողոպտէին զքրիստոնեայսն՝ որք ընդ ձեռամբ նոցա. նմանապէս և թագաւորն Վրաց և զօրք նորա, և վասն այսր պատճառի թշնամիք էին ամենայն քրիստոնէից։ Իսկ կաթուղիկոսն ժողովեալ զեպիսկոպոսս և ըզ վարդապետս իւրոյ վիճակին՝ գնաց նոքօք 'ի կոչ Ամիրային։ Եւ տեսեալ յոյժ ուրախացաւ Ամիրայն, և հրամայեաց մեծաւ ճոխութեամբ և հանդիսիւ երթալ խաչվառօք և ժամահարօք և մեծաձայն պաշտամամբք օրհնել ըզ ջուրն, և ինքն հեծեալ յերիվարն՝ զօրօք բազմօք գնաց 'ի տեղ՝ զբօսանաց աղագաւ, դղրդեցաւ և քաղաքն ամենայն բնակչօքն հեթանոսօք, գնացին և նոքա 'ի տեղ։ Եւ իբրև արկին զեւղն սուրբ 'ի ջուրն, ասեն Պարսիկք. »Աւասիկ զամենեսեան քրիստոնեայ արար Ամիրայս, զի զինչ աւելի առնեն քրիստոնեայքն, բայց թէ մկրտեն և օծանեն, և մեք ամենեքեան ըմպեմք 'ի ջրոյս յայսմանէ, և լուանամք 'ի սմանէ, ամենեքեան մեք անհաւատք եմք յայսմ հետէ և գենակորոյս. արդ՝ եկայք հնարեսցուք ինչ«։ Յայնժամ ամբոխ յոյժ արարեալ՝ կալան զկաթուղիկոսն և եդին 'ի բանտի, և դրդեցան զկնի Ամիրային, և արկին զնա 'ի բերդն, և ինքեանք գրեցին առ Աթապակն՝ որ նստէր յԱսպահան, եթէ »այս Ամիրայս զմեզ զամենեսին

եհան 'ի հաւատոց մերոց. զի զխուղն խոզի արկանել եւ 'ի ջուրս մեր՝ գլխաւորին քրիստոնէից. արդ՝ 'ի բանտի կան երկոքեանն. զինչ կամք քո հրամայեսցեն՝ այն եղիցի»: Եւ հրաման ետ՝ զԱմիրայն լուծանել յիշխանութենէն և առ ինքն ածել: Իսկ 'ի կաթուղիկոսէն բազում գանձս առեալ ոսկւոյ և արծաթոյ՝ թողցեն գնալ, ուր և կամեսցի: Եւ նա զերծեալ 'ի վտանգէն՝ չոգաւ 'ի կողմանս Խաչենւոյ, և այլ ոչ իշխէր մնանել 'ի սահմանս Գանձակայ: Իսկ վանորայքն՝ որ 'ի կողմանս քաղաքին, և երիցունք գաւառացն, իբրև տեսին՝ թէ ոչ իշխէ գալ տէր Ստեփաննոս յայն կողմն, և ոչ նոքա իշխէին երթալ առ նա, առեալ զԲեժգենն զայն կարգընկէց, տան 'ի նա զձև և զկարգ քահանայութեան. զոր լուեալ տէր Ստեփաննոս, ընդ բանիւ կապանաց արկ զնոսա և զնա. և ինքն այսր անդր կացեալ մինչև մեռաւ 'ի Հերգ գաւառի:

Իբրև տեսին վարդապետք և եպիսկոպոսք կողմանցն Աղուանից, եթէ բարձաւ թագաւորութիւնն 'ի նոցանէ, և ոչ կայ յազգէն յայնմանէ եպիսկոպոս կամ քահանայ, բայց միայն մանուկ մի սարկաւագ, առեալ զնա տարան 'ի Բջնի առ եպիսկոպոսն Վրթանէս, և տան ձեռնադրել զնա քահանայ, և առեալ բերեն զնա 'ի քաղաքն Գանձակ առ իշխող քաղաքին, որում անունն էր Ամիր Օմար, և աղաչէին զնա՝ զի հրաման տացէ ձեռնադրել զնա կաթուղիկոս: Եւ նա ասէ՝ կարի մանուկ է տիօք. դուք՝ որ կատարեալքդ էք հասակաւ՝ ընդէ՞ր ոչ լինիք կաթուղիկոս: Եւ նոքա ասեն՝ վասն զի սա է յազգէ կաթուղիկոսացն, և սմա անկ է աթոռն: Եւ հրաման տայ ձեռնադրել զնա. և էին անդ եպիսկոպոսք սակաւ, որ ձեռնադրեցին զնա: Եւ իբրև ձեռնադրեցաւ՝ հեծոյց զնա Ամիրայն յազնիւ երիվար, և արկ 'ի վերայ ազնիւ կտաւ 'ի պատիւ նմա, և փողահարս առաջի և զկնի. և հրամայեաց շրջեցուցանել զնա ընդ փողոցս քաղաքին:

Եւ այսպէս կալաւ զաթոռն Աղուանից տէր Յովհաննէս զամս բազումս: Սա հաստատեաց զաթոռ իւր 'ի սահմանս Չարեքին 'ի քարի անդ՝ զոր ասացաք վերագոյն: Սա նեղեալ յայլազգեաց՝ դիմեաց գալ յաշխարհս Հայոց առ

մեծամեծ իշխանաւն առ Զաքարէ և Իւանէ եղբարց նորա։ Եւ նոքա մեծաւ պատուով ընկալան զնա. և բնակեցոյց զնա Իւանէ 'ի գաւառն Միափոր 'ի վանքն՝ որ կոչի Խաւ-շի։ Սա սկսաւ շինել անդ եկեղեցի մեծ և հրաշալի. և մինչև աւարտեալ էր՝ խափանումն եղև, զի եկն Սուլտանն Խորասանայ՝ Ջալալադինն կոչեցեալ, և եհար զԹագաւորութիւնն Վրաց, և խափանեցաւ մի զկնի միոյ գալ զօրաց այլազգեաց, և աւերել զաշխարհս Հայոց՝ Աղուանից և Վրաց։

## Վասն վարդապետացն երևելեաց՝ որք էին 'ի կողմանս Վասպուրականի։

Ընդ այնոսիկ աւուրս ժամանակաց էին վարդապետք առաքինիք և լուսաւորք, որք փայլէին յաշխարհի իբրև զլուսաւորս։ Ստեփաննոս՝ որդի Յուսկանն, այր սքանչելագործ և սուրբ, որ և գերեզման նորա յետ մահուան բժիշկ էր ամենայն ախտացելոց. և Գէորգն Գառնեցի, այր իմաստուն և գիտնաւոր. և միւս ևս այլ՝ Տիրացու անուն նորա, որ և զաստիճան եպիսկոպոսութեան ընկալաւ. և Աստուածատուր՝ զոր Աղբերկայ որդի կոչէին, յԱրճէշ քաղաքէ։ Զսմանէ բազում ինչ առաքինութիւն պատմէին՝ որք տեսողք լեալ էին։ Էր սա որդի մեծատան, յոյժ ողորմած և աղքատասէր. իբրև ասացին նմա՝ թէ մեռա- մայր քո ըստ մարմնոյ, գոհացաւ զԱստուծոյ. և գնացեալ 'ի թաղումն նորա, առեալ ոսկի և արծաթ՝ արկանէր 'ի ձեռս մոր իւրոյ, և կոչէր զաղքատս՝ առնուլ 'ի ձեռաց մորն, որպէս թէ ինքն իսկ իւրովք ձեռօքն իցէ տուեալ։ Եւ իբրև հայրն վախճանեցաւ, առեալ զինչսն՝ բաշխեաց կարօտելոց։ Եւ կուղպակք էին նորա բազումք. զայն ետ 'ի վաճառ, և յամենայն ամի առեալ զգինսն՝ գնէր նոքօք մորթս ոչխարաց և կտաւս, և ձեռօք իւրովք կարէր հանդերձս, և տայր աղքատաց։ Եւ տեսեալ զբարեգործութիւն նորա բազումք 'ի Տաճկաց՝ գային առ նա, և մկրտեալ 'ի նմանէ՝ լինէին քրիստոնեայք։ Եւ տեսեալ անհաւատիցն, եթէ նա է պատճառք այնմ ամենայնի՝ կամէին սպանա-

նել զնա, և յայտնի ոչ իշխէին վասն բազմութեան ժողովրդոցն։ Խորհեցան դնել նմա գաղտնի որոգայթ, և կալեալ զմի 'ի ծառայից իւրեանց՝ խեղդեցին, և բերեալ ընկեցին առ դուրս վանիցն, և վաղվաղակի ընդ առաւօտն եկեալ աղաղակեցին զվանքն՝ զի սպանցեն զամենեսեան, որպէս թէ նոքա գործեցին զայն։ Եւ լուեալ քրիստոնէիցն՝ ժողովեցան անթիւ բազմութիւնք մեռանիլ ամենեցուն, և տալ զնա 'ի ձեռս։ Իսկ սուրբ այրն Աստուծոյ տեսեալ զգաղտնի որոգայթն թշնամւոյն՝ թէ 'ի պատճառս նորա կբաղուսն կամին սպանանել, զի Պարսիկք առնէին զիշխանութիւն քաղաքին, ասէ ցնոսա. «Ներեցէք ինձ զմի գիշեր, և 'ի վաղիւն, որպէս կամք է ձեր՝ այնպէս արարէք, առէք 'ի մեզ զմեռեալդ»։ Եւ հրամայեաց գիշերապաշտօն առնել և խնդրել յԱստուծոյ զի զերծցին 'ի դժպատեհութենէն. և ինքն առանձնացուցեալ զինքն՝ մեծաւ հառաչանօք խնդրէր յԱստուծոյ զայցելութիւն. և 'ի վաղիւն բացեալ զդրունս վանիցն՝ կոչեաց զամենեսեան 'ի ներս զհաւատացեալս և զանհաւատս, և ինքն առեալ զնշանն Տէրունականն՝ ասէ բարձր ձայնիւ 'ի լուր ամենեցուն. «Քեզ ասեմ, այր դու, արի կաց յանուն Յիսուսի Քրիստոսի, որ հաստատեաց զարարածս յոչընչէ, և ասա՛ առաջի ամենեցուն՝ թէ ո՛վ սպան զքեզ»։ Եւ նա յարեաւ վաղվաղակի, և նայեցաւ յամբոխն, ետես զսպանողն իւր, և ասէ. «այրն այն սպան զիս»։ Յայնժամ ասէ ցնա սուրբն Աստուծոյ. «դարձեալ դիր զգլուխդ և ննջեա՛ մինչև 'ի հասարակաց յարութիւնն», և իսկոյն մեռաւ։ Եւ այսպէս զերծեալք 'ի մահուանէ, փառաւորեցան անուամբ Քրիստոսի Աստուծոյն մերոյ։

## Վասն նահատակին Զաքարէի Զօրավարի։

Յետ բազում քաջութեանց և յաղթութեանց՝ զոր արարին մեծամեծ իշխանքն Զաքարէ և Իւանէ, չոգաւ զօրօք բազմօք 'ի քաղաքն Մարանդ, և առին զնա և աւերեցին զգաւառն՝ որ շուրջ զնովաւ. և ապա գնացին յԱր-

տաւփիլ քաղաք, նմանապէս առին զնա, և աւերեցին ըզգաւառաւն՝ որ շուրջ զնոքօք. և բազումք 'ի նոցանէ հանդերձ աղօթկոչօքն իւրեանց՝ զոր Մուրչի անուանեն, ապաստանեալք էին յաղօթարանն իւրեանց. Հրամայեաց Զաքարիայ բերել խոտ և ցողուն, և արկեալ զնովաւ ձէթ և նաւթ, և բորբոքեալ հրով, այնպէս այրեաց զնոսա, և ասէ. »Իշխանքն և աշխարհականքն՝ փոխանակ իշխանացն Հայոց, զոր այրեցին 'ի Նախջաւանի Տաճիկք, և կուսայքն՝ փոխանակ Հայոցն քահանայից Բագուանայ՝ զոր մորթեցին, և զարիւնն արկին զպարսպով եկեղեցւոյն, որ մինչև ցայսօր սևացեալ երևի տեղին«: Եւ ինքն դարձաւ յաշխարհն իւր, և 'ի ճանապարհին հիւանդացաւ. զի ելին վէրք անբժշկելիք յանդամս նորա, զի յողջանալ միոյն՝ բուսանէր միւս ևս. և այսպէս վտանգեալ զնա, յետ սակաւ աւուրց վախճանեցաւ, և եղև սուգ ամենայն քրիստոնէից: Եւ տարեալ թաղեցին զնա 'ի Սանահինն 'ի մեծ եկեղեցւոջն առաջի դրաց խորանին յահեակ կողմանէ: Եւ սուգ մեծ զգեցաւ թագաւորն Վրաց Գիօրգի, մականուն Շալայ՝ որդի Սօսլանայ և Թամարին, թոռն Գիօրգեայ մեծի թագաւորին. և եղբայրն իւր Իւանէ ամենայն զօրօքն Վրաց: Եւ մնաց որդի մի Զաքարէի՝ մանուկ տիօք, Շահնշահ անուն նորա, զոր սնոյց Իւանէ ընդ որդւոյ իւրում Սարգսի, զոր Աւագն կոչէին, մինչև յարբունս հասակի. և ապա տիրեաց հայրենի իշխանութեանն:

## Վասն Լևոնի արքային և վախճանի նորին:

Իսկ բարեպաշտ և յաղթազգեաց արքայն Հայոց Լևոն 'ի վերայ բազում քաջութեանցն՝ զոր արար, հնազանդեցոյց զշրջակայ ազգսն, եկն և ապստամբ կաթուղիկոսն Հայոց Յովհաննէս, որ 'ի Կլայն Հռոմայական, և հաշտեցան ընդ միմեանս, իբրև վախճանեալ էր տէր Դաւիթ, որ Արքակաղնին:

Ապա հիւանդացաւ և արքայն Լևոն, որ և մեռաւ: Եւ կոչեալ առ ինքն զկաթուղիկոսն Յովհաննէս, և զամենայն

զօրագլուխս զօրաց իւրեանց, և զի որդի ոչ ունէր, բայց միայն դուստր մի, զոր յանձնեաց 'ի կաթողիկոսն և միշխանսն ամենայն թագաւորեցուցանել զնա փոխանակ իւր, և փայլ նմա հնազանդ, և ամուսնացուցանել զնա զուգակցաւորս առն, և նա զնա 'ի ձեռս կաթողիկոսին և երկու մեծամեծ իշխանացն՝ Կոստանդեայ ազգականին իւրոյ, և Ադաբանանեայ՝ որ էր Հոռոմ պաշտօնութեամբ, և ինքն հանգեաւ խաղաղական մահուամբ 'ի ոհէ թուականին Հայոց; կալեալ զթագաւորութիւնն ամս քսան և չորս յաղթութեամբ և բարի անուամբ։ Եւ յոյժ նգանցին զգեղեցկան քաղին ամենայն աշխարհն իւր և ամենայն զօրքն առ հասարակ, զի յոյժ սիրելի էր ամենեցուն. քրիստոնէականէր առքայն։ Եւ յետ օրինաւոր օգոյն կազմեցին զմարմինն առ 'ի թաղել; և եղև հակառակութիւն. զի կէսքն ասէին թաղել զնա յարքայական քաղաքին 'ի Սիս, և այլքն 'ի վանքն՝ որ կոչի Ակներ, զի յոյժ սիրէր զնա վասն բարւոք կարգաւորութեան նոցա և հաճոյական տեղւոյն։ Իսկ նմանիք ոչ համարեցան պատշաճ, զի եղծ էր տեղին այն, և թշնամիք բազում էին նորա յայլազգեացն. դուցէ առեն եկեալ հանիցեն և այրեսցեն զդա հրով, վասն բազում քինոյն՝ զոր ունէին ընդ դմա։ Այսպէս միաբանեալ ամենեցուն; առնեալ զմարմին նորա թաղեցին 'ի Սիս քաղաքի, և զսիրտն և զփորոտին տարան 'ի վանքն՝ որ կոչի Ակներ։ Այսպէս հանգեաւ 'ի բարեպաշտութեան քաջն և յաղթողն ամենայնի Լեւոն արքայ։

Իսկ կաթողիկոսն և իշխանքն բերին զորդի Անտիոքայ՝ զոր Փրինծն կոչէին, և ետուն զդուստրն Լեւոնի արքային 'ի կնութիւն նորա, և թագաւորեցուցին զնա, և էր անուն պատանւոյն Փիլիպպոս, և անուն թագուհւոյն Զապէլ. Իսկ նա իբրև եկաց յարքայութեանն զամս չորս, խաբեաց զնա հայրն իւր, և առ 'ի նմանէ զթագն Լեւոնի արքայի, և զպատուական արքունական, զոր յերևելի յաւուր կանգնէին. և այլ գանձս ոսկւոյ և արծաթոյ։ Իբրև տեսին իշխանքն՝ եթէ ոչ է միաբան այրն յարքայութեան նոց, խորհեցան զնա՝ արտաքին յարգելս, մինչև բերցէ զթագն և զգանձն՝ զոր տարաւ. Իսկ հայրն նորա ոչ ետ

և ոչ զմի, այլ և ոչ օգնել ինչ կարաց որդւոյ իւրում. և թողին զնա անդ, մինչև 'ի նմին մեռաւ։

Այս իշխանն մեծ Կոստանդին հաւանեցոյց զկաթուղիկոսն, և զայլս ոմանս 'ի մեծամեծացն՝ թագաւորեցուցանել զորդի իւր զՀեթում, մանուկ տիօք առոյգ մարմնով, և գեղեցիկ տեսանելով։ Իսկ թագուհին ոչ հաւանէր լինել կին մանկանն, չոգաւ ապաստանեցաւ 'ի Սելևկիա առ Փռանգսն՝ որ անդ. զի մայր նորա Փռանգ էր ազգաւ 'ի Կիպրոս կղզւոյ։ Եւ առեալ Կոստանդնի զզօրս ամենայն՝ պաշարեաց զքաղաքն, մինչև յոչ կամաց ետուն զթագուհին 'ի ձեռս նորա. և տարեալ ամուսնացոյց զնա որդւոյ իւրում. և եղեն 'ի նմանէ որդիք։ Եւ յոյժ բարեպաշտ էր կինն այն և ողջախոհ, սիրող ամենայն երկիւղածաց Աստուծոյ և աղքատասէր, պահօք և աղօթիւք հանապազ ճգնէր։

Իսկ մեծ իշխանն Կոստանդին իբրև առ զիշխանութիւնն թագաւորութեանն որդւոյ իւրում Հեթմոյ, զամենայն հոգս արքայութեան յանձն առեալ՝ իմաստաբար կարգաւորէր. զկէսսն հնազանդէր սիրով, և զոչ հնազանդեալսն բռնանայր 'ի միջոյ՝ զոմանս փախստական առնելով, և զայլս մահուամբ։ Արար սէր և միաբանութիւն ընդ Սուլտանն Հոռոմոց՝ որում անուն էր Ալադին, որ ունէր զբազում աշխարհ ընդ ձեռամբ իւրով։ Այսպէս առնէր ընդ շրջակայ ազգսն, և յամենայն կողմանց խաղաղացոյց զաշխարհսն։ Կարգեաց և զանդրանիկ որդին զՍմբատ՝ զօրավար. և զմիւսն՝ իշխան թագաւորութեանն. և զամենայն վանորայս երկրին անհոգս առնէր յամենայն կողմանց, զի ինքն տայր զամենայն պիտոյս նոցա, զի նոքա աղօթից և պաշտաման պարապեսցին։ Լցաւ և երկիրն ամենայն բազմութեամբ մարդկան անարուեստից և արուեստաւորաց, որք ժողովեցան յամենայն կողմանց փախուցեալք յաւերմանէ Թաթարին. որ եկեալ յԱրևելից հիւսիսոյ տապալեցին զաշխարհս ամենայն։

Յետ այսորիկ մեռաւ և կաթուղիկոսն Յոհաննէս՝ կալեալ զամս ութ և տասն։ Եւ նստուցանէ մեծ իշխանն հանդերձ թագաւորաւն զտէր Կոստանդին յաթոռ սրբոյն

Գրիգորի, այր առաքինի և հեզ, սուրբ վարուք կեցեալ, և անձին խրատ բարուոք առաջնորդեալ, որպէս յարդարեաց զկարգ եկեղեցւոյ ուղղափառութեամբ։ Զսա պատուէին ամենայն ազգք՝ ոչ միայն քրիստոնեայք, այլ և ազգն Տաճկաց։ Դէպ եղև երից Սուլտանացն գալ 'ի սահմանս Հռոմկլայն կոչեցեալ քաղաքի, ուր էր աթոռ կաթուղիկոսութեանն 'ի վերայ Եփրատ գետոյն. գնաց կաթուղիկոսն 'ի տես Սուլտանացն, իբրև գիտացին զգալուստ Նորա՝ ինքեանք իսկ ընթացան ընդ առաջ Նորա. և բերեալ զնա 'ի բանակն մեծաւ պատուով՝ կանգնեցին Նմա խորան ազնիւ 'ի մէջ խորանաց իւրեանց. 'ի մի կողմանէ խորան Մելիք Քելիմին, որ իշխէր կողմանցն Եգիպտոսի, և 'ի միւս կողմանէն՝ խորան Մելիք Աշրաֆին, որ իշխէր մեծ մասին Հայոց աշխարհիս և Միջագետաց. նմանապէս և խորան եղբօր որդւոյ Նոցա, որ իշխէր կողմանցն Դամասկոսի։ Եւ այսպէս մեծապատիւ արարեալ զնա գյոլով աւուրս՝ արձակեցին զնա մեծաւ պարգևօք, գեղօք և դաստակերտօք. զի Աստուած զփառաւորիչս իւր փառաւորէ աստ և 'ի հանդերձեալն։ Եւ եղև սկիզբն թագաւորութեանն Հեթմոյ՝ 'ի ոհդ թուականին Հայոց. և Քրիստոսի փառք յաւիտեանս ամէն։

## Համառօտ հետազօտեալ պատմութեանց կողմանցն Աղուանից, ընդ ներքոյ գլխաւորութեան։

Սկիզբն առաջնոյ պատմութեանն եդաք զսուրբ Լուսաւորիչն Հայոց, զառաքեալ և զմարտիրոս, և զաթոռակալ երից սուրբ առաքելոցն՝ Թադէոսի և Բարդուղիմէոսի և Յուդայի Յակոբեան, զսուրբն Գրիգորիոս, և աղօթիւք Նորա հասաք մինչև ցայս վայր։ Իսկ երկրորդ հատուածիս դիցուք գլուխ զլուսաւորիչս կողմանցն Աղուանից, որպէս զազգայնոց և զհաւատակցաց մերոց։ Մանաւանդ զի և առաջնորդ Նոցա հայալեզուք հայերէնախօսք յոլովք էին, թագաւորքն՝ հնազանդք թագաւորացն Հայոց՝ ընդ ձեռամբ Նոցա լեալք, և եպիսկոպոսքն՝ ձեռնադրեալք 'ի սրբոյն Գրիգորէ և յաթոռակալաց Նորա, և ազգն՝ ուղղափառու-

Նուն Շաւթայ՝ զՇաւթառ, զՇամքառ, զՇաքի, զՇրուան, զՇամախի, զՇապորան: Տէր Զաքարիայ ամս հնգետասան: Սա աղօթիւք իւրովք ապրեցոյց զմեծ քաղաքն Պարտաւ 'ի գերութենէ: Տէր Յովհան՝ ամս քսան հինգ. տէր Ուխտանէս՝ ամս երկոտասան: Սա անէծ զնախարարս Աղուանից վասն ազգաշաղախ խառնութեան, և սատակեցան ամենեքեան: Տէր Եղիազար՝ ամս վեց. տէր Ներսէս ամս՝ եօթն և տասն: Սա մինչ եպիսկոպոս էր Գարդմանայ՝ հաւանեցոյց զկին ոմն, Սպրամ անուն, կին իշխանին Աղուանից՝ զի զամենայն ինչ ըստ կամաց նորա գործեսցէ. և էր կինն խմորեալ յաղանդն Քաղկեդոնի, և աղաչեալ կնոջն զեպիսկոպոսունս, ետ ձեռնադրել զՆերսէս Բակուր 'ի կաթողիկոսութիւն Աղուանից: Իբրև անցին ժամանակք ինչ, երևեցոյց զաղանդն՝ զոր յղացեալ ունէր. իբրև յանդիմանեցաւ յեպիսկոպոսացն և յերիցանցն, հալածական արար զբազումս. և ժողովեալ առաջնորդացն Աղուանից՝ նզովեցին զնա, և գրեցին առ կաթողիկոսն Հայոց Եղիայ օգնել նոցա: Եւ գրեաց Եղիայ առ գլխաւորն Տաճկաց Աբդըլմէլիք, թէ առաջնորդն Աղուանից, և կին մի, կամին ապստամբեցուցանել 'ի քէն զաշխարհն, զի զՅունաց թեակոխեն: Եւ հրամայէ Եղիայի գնալ յաշխարհն Աղուանից և ընկենուլ զնա յաթոռոյն, զնա և զկինն 'ի միասին կապել զոտս նոցա և արկանել զուղտով որպէս զբեռն, և տանել 'ի դուռն արքունի, զի նշաւակ լիցի ամենայն զօրուն: Եւ գնացեալ Եղիայի և ներքինւոյն արքայի 'ի քաղաքն Պարտաւ՝ արարին զհրամանն արքունի. և մինչ այնպէս անարգանօք ձգէին զնա, 'ի նեղասրտութեան անկեալ Ներսէսն՝ յետ ութ աւուր վախճանեցաւ դառնապէս: Եւ մուրհակ ետուն ամենայն նախարարքն Աղուանից և ամենայն եպիսկոպոսունքն առաջի ներքինւոյն՝ հրամանաւ և մատանեաւ արքունի, զի առանց հրամանի կաթողիկոսին Հայոց ոչ ձեռնադրեսցեն կաթողիկոս Աղուանից: Եւ ձեռնադրէ Եղիա յաթոռն Աղուանից զտէր Սիմէոն, որ զպղտորումն Ներսէսի եբարձ, կացեալ ամ մի և կէս, և եդ կանոնս եօթն տուն: Տէր Միքայէլ ամս երեսուն և հինգ. սա կոչեաց զՄաքենացւոց հայրն Սողո-

մին, և անէծ զանարան Աղուանից, որ զերից ազգաց զծը-նունդսն ամուսնացուցեալ էին, որք բարձան 'ի միջոյ առ հասարակ. նզովեցին և զԹալիլէ Վրաց առաջնորդն, զի նա հրաման տայր անօրէն ամուսնութեանն: Տէր Անանիա ամս չորս: Տէր Յովսէփ ամս տասն և եօթն: Ի սորա հինգ-երորդ ամին լցաւ երկերիւր ամ Թուոյ Հայոց: Տէր Դա-ւիթ ամս չորս. սա Թափեաց զհող և զայլս սրբութեանն, և դեղակուր եղեալ մեռաւ: Տէր Դաւիթ ամս ինն. սա վաճառեաց անօրինաց զԴաստակերտն և զՍահմանախաչ: Տէր Մաթէոս ամ մի և կէս. և սա ևս դեղ մահու ար-բեալ վախճանեցաւ: Տէր Մովսէս ամ մի և կէս: Տէր Ահարոն ամս երկուս: Տէր Սողոմոն, տէր Թէոդորոս ամս չորս: Տէր Սաղոմոն ամս մետասան և կէս: Տէր Յովաննէս ամս քսան և հինգ. սա փոխեաց զկաթուղիկոսարանն 'ի Բերդակ՝ որ էր իւրեանց հովոցաց տեղի, յորժամ հանաւ 'ի Պարտաւայ: Տէր Մովսէս կէս ամ: Տէր Դաւիթ ամս քսան և ութ. սա սահմանեաց զանօրէն ամուսնութիւնն Ճաքոյ տեառն և Նորին իշխանին. եղբայրն աշխարհական հարցեալ ասէ ցնա. »ուստի՞ գաս տէր«. և նա ասէ. »'ի տանէ եղբօր քո«. և ասէ իշխանն. »լեզուդ որ օրհ-նեաց մի՛ խօսեսցի, և ա՛ջդ չորասցի«. և առժամայն եղև. և ոչ բժշկեցաւ. մինչև 'ի մահ: Տէր Յովսէփ ամս քսան և հինգ. 'ի սորա երրորդ ամին լցաւ Թիւս Հայոց Յ̃: Տէր Սամուէլ ամս հնգետասան. անձամբ առեալ սորա զպատիւն, և յետոյ լուծեալ 'ի Գէորգեայ կաթողիկոսէ Հայոց, 'ի հարկէ առնու զերկրորդ ձեռնադրութիւնն 'ի Դուին: Տէր Յունան ամս ութ և կէս. սա էր դրան եպիսկոպոս Հայոց. և մինչդեռ 'ի գերութեան էր Գէորգ, սա գայ յԱղուանս, և անդէն ձեռնադրի առանց կամաց տեառն Գէորգայ. և իբրև գնեցին զտէր Գէորգ իշխանքն Աղուանից, լուծանէ զՅունան 'ի պատուոյն. բայց աղաչեալ զնա իշխանացն Աղուանից վասն երախտեացն՝ որ առ նա, կրկին ձեռնադրէ զնա ևս: Տէր Սիմէոն ամս քսան և մի: Տէր Դաւիթ ամս հինգ: Տէր Սահակ ամս ութուտասան: Տէր Գագիկ ամս երեք-տասան. 'ի սորա չորրորդ ամին լցաւ Թուականն Հայոց Ն̃: Տէր Դաւիթ ամս վեց. սա առ զձեռնադրութիւնն յԱնա-

Նիայէ Հայոց կաթուղիկոսէ։ Տէր Պետրոս ամս վեշտասան։ Տէր Մովսէս ամս վեց, յառաջնորդութենէն փախուսոյ վանացն։ Ապա տէր Մարկոս այրն Աստուծոյ. և յետ նորա Յովսէփ. և ապա միւս տէր Մարկոս և զկնի նորա տէր Ստեփանոս. ապա տէր Յովանէս ամս յիսուն, և դէր Ստեփանոս ամ մի և կէս, 'ի տիս պատանեկութեան վախճանեալ 'ի ՇՅԸ ամի թուականին Հայոց։

Յաւուրս տեառն Գրիգորիսի մեծի Հայոց կաթուղիկոսի առաջնորդ ո՛չ գոյր տանն Աղուանից զամս քսան և հինգ։ Ապա մանուկ մի էր յազգէ կաթուղիկոսացն Գագիկ անուն, որդի Գէորգեայ, զոր սնուցին և ուսուցին, և իբրև 'ի չափ հասաւ մանուկն, ապա գրեն թուղթ մաղթանաց Գրիգոր վարդապետն՝ որդին Թոքակերի, և Գաւիթ՝ որդի Ալօկայ, և այլ աշխարհն Աղուանից, առ մեծ հայրապետն Հայոց Գրիգորիս, որ ընդ այն ժամանակս էր 'ի կողմանս Արևմտից, և այր մի ընդ թղթոյն առաքելով, զի ձեռնադրեսցէ զնա եպիսկոպոս, առաքեսցէ և ինքն եպիսկոպոս մի յիւրոցն, և տացէ հրաման ձեռնադրել զմանուկն Գագիկ յաթոռն Աղուանից. զի մի՛ անառաջնորդ կորիցէ աշխարհն։ Իսկ հայրապետն ձեռնադրեաց զառաքեալն, հրաման ետ և եպիսկոսին կարնայ՝ գնալ յաշխարհն Աղուանից, և ձեռնադրել կաթուղիկոս Աղուանից։ Ապա եկեալ եպիսկոպոսին կարնայ Սահակայ և միւս եպիսկոպոսն, ձեռնադրեն այլ ևս եպիսկոպոսս երկոտասան՝ ըստ հրամանի գրոց, և ապա ձեռնադրեցին զԳագիկն կաթուղիկոս, և անուանեցին Գրիգորէս ըստ անուան կատուղիկոսին Հայոց։

Ընդ աւուրսն ընդ այնոսիկ եղև յանկարծակի մէգ և մառախուղ, և լցաւ առ հասարակ լեառն և դաշտ, և եղև շարժ ահագին, և կործանեցաւ մայրաքաղաքն Գանձակ. և շնորհօքն Աստուծոյ ապրեալ եղև նորընծայ կաթուղիկոսն, բայց մեռաւ 'ի շարժմանէն մեծ վարդապետն Գրիգոր՝ հանդերձ այլ բազմութեամբ արանց և կանանց և մանկտոյ, որոց ո՛չ գոյ թիւ, զոր սպանին շինուածքն անկեալ 'ի վերայ։ Եւ եկն թագաւորն Վրաց Դեմետրէ, և աւար էառ զամենայն ինչսն, տարաւ և զդրունս քաղա-

քին մեր աշխարհին. փլաւ և լեառն Աչհարակ, և ծածկեաց զձորակն որ անցանէր ընդ մէջ նորա, և եղև ծով, և է մինչև ցայսօր ժամանակի։ Եւ յետ ութ ամի երևեցաւ աստղ մի գիսաւոր լի լուսով, որ նշանակ եղև սովոյ և սրոյ և գերութեան, որ կալաւ զաշխարհս։

Եւ յորժամ եղև այր կատարեալ կաթուղիկոսն Գագիկ լի իմաստիւք Աստուածայնովք. փոխեցաւ յաշխարհէս. և դարձեալ խաւար եղև այնոցիկ կողմանցն։ Եւ այսպէս տէր Բեժգեն որ եթող զկարգն և առ կին. և յետ նորա տէր Ստեփանոս ամս քառասուն. և զկնի նորա.... ամս քառասուն, որ շինեաց եկեղեցի մի հրաշալի 'ի գաւառն Միափոր 'ի վանքն` որ կոչի Խամշի. սա եհաս յաւուրս մեր. և այսպէս տէր Ներսէս եղբայր նորին. այր հեզ և բարի բնութեամբ, որ ձեռնադրեալ եղև 'ի ՉԾԵ թուականին Հայոց։

Վասն ելանելոյ Թաթարաց զօրուն և փոխարկման ամենայն զինուորացն Վրաց։

Ի ՈՂԸ թուականին, մինչդեռ հպարտացեալ էին Վիրք յաղթութեամբն` զոր յաղթեցին Տաճկաց, յինքեանս կոչեցեալ զբազում գաւառս Հայոց` 'ի Նոցանէ, յանկարծակի յեղակարծ ժամուք յոլով գունդս զօրու ծանու ամենայն կազմութեամբ ելեալ ընդ դուռն Դարբանդայ ուժգին դիմեցմամբ, և եկեալ յաշխարհն Աղուանից, գալ անցանել յաշխարհս Հայոց և Վրաց. և զոր ինչ գտանէր 'ի ճանապարհին` զամենեսեան արդ ճարակ տայր` զմարդ և զանասուն, մինչև 'ի շունս անգամ. և մեծագին հանդերձից և այլ ընչից փոյթ ինչ ոչ առնէին, բայց 'ի ձիոյ. և փոյթ ընդ փոյթ չոգան մինչև 'ի քաղաքն Տփխիս. և դարձեալ եկին իջին յաշխարհն Աղուանից. 'ի սահմանս Շամքոր քաղաքին. և համբաւ ստութեան գայր զնոցանէ թէ մոգք են և քրիստոնեայ հաւատովք, և նշանագործք. և եկեալ են 'ի վրէժխնդրութիւն քրիստոնէից որ 'ի բռնութենէն Տաճկաց. և ասէին` թէ ունին եկեղեցի վրանեայ և խաչ սքանչելագործ. և բերեալ կապիճ մի գարի` առ-

կանեն առաջի խաչին, և ամենայն զօրքն տանէին 'ի նմանէ երկիւղարաց իւրեանց, և ոչ պակասէ. այլ իբրև սպառին ամենեքեան 'ի տանելոյ, նոյնչափ կապծին անդէն մեռայ։ Նոյնպէս և կերպակուրս մարդկան. և այսպէս համբաւով սուլթեան լցաւ աշխարհս. վասն այսորիկ ոչ ամրացան բնակիչք աշխարհին, մինչև երէց մի աշխարհական, առեալ զժողովուրդ իւր, և խաչիւք վարելովք ընթացաւ ընդ առաջ նոցա. և նոցա սուր 'ի վերայ եդեալ՝ կոտորեցին առ հասարակ. և այսպէս անհոգս գտեալ զբազումս՝ կոտորեցին, և աւերեցին զյոլով տեղիս. և ինքեանք ամրացուցին զաղխս իւրեանց 'ի մօր և 'ի ողմուտ տեղիս, որ կայ 'ի մէջ երկուց քաղաքացն, Բարտաւայ և Բեղուկունայ, յամրագոյն տեղիս, զոր Բեղամէջն կոչեն. և ինքեանք յանդուգն արձակմամբ աւերէին զբազում գաւառս։

Ապա զօրաժողով լեալ Թագաւորն Վրաց՝ Շալայն, և մեծ հազարապետան Իւանէ, կալ ընդդէմ նոցա մարտիւ պատերազմի, և իջեալ 'ի դաշտավայր տեղիս, զոր Խունանն անուանեն, քանզի անդ պատահէր գունդ թշնամեացն. և մարտուցեալք ընդ միմեանս, զառաջինն 'ի փախուստ դարձուցին զթշնամիսն. բայց քանզի դարան գործեալ էր, յարեան յետուստ կողմանէ և սկսան կոտորել զզօրսն Վրաց. դարձան ընդդէմ և փախուցեալքն, և աստի և անտի 'ի մէջ առեալ՝ մեծ տագնապ հասուցին 'ի վերայ զօրուն քրիստոնէից. և փախեաւ Թագաւորն և իշխանքն ամենայն. և ժողովեալ թշնամեացն զաւար զօրուն՝ տարան 'ի բնակս իւրեանց։ Դարձեալ միւս անգամ զօր ժողովեալ Թագաւորն Վրաց ևս բազում քան զառաջինն, կամեցեալ տալ մարտ պատերազմի ընդ թշնամիսն։ Իսկ նոցա առեալ զկին և զորդիս և զամենայն ախն, կամեցան ելանել ընդ դուռն Դարպանդայ յաշխարհն իւրեանց։ Իսկ զօրն Տաճկաց որ 'ի Դարբանդ՝ ոչ ետուն նոցա մուտ անցից. և նոցա՝ հատեալ զլեառն Կաւկաս՝ ընդ անանց տեղիս 'ի վիհսն ընլով զփայտ և զքար և զախս իւրեանց և զերիվարս և զկազմած պատերազմական, անցին գնացին յաշխարհն իւրեանց։ Էր անուն գլխաւորին Սաբադա Պահատուր։

Վասն որ 'ի սահմանս Գանձակայ անկումն եղև զօրացն։

Օկնի այսորիկ իբրև ժամանակ ինչ անցին 'ի վերայ, այլ զօր եւ 'ի Հոնաց, զոր Խուչախին անուանեն. և եկեալ ընդ աշխարհն Վրաց առ Թագաւորն Լաշայ, և առ հազարապետն Իւանէ, զի տացեն նոցա տեղի բնակութեան. և նոքա ծառայեսցեն նոցա միամտութեամբ։ Իսկ նոքա ոչ առին յանձն լինել նոցա ասպնջական։ Եւ նոքա դէմ եդեալ գնացին առ բնակիչսն Գանձակ քաղաքի. և նոքա յօժարութեամբ ընկալան, քանզի էին 'ի մեծ նեղութեան 'ի զօրացն Վրաց, որք աւերէին զաշխարհս նոցա, և գերէին զմարդ և զանասուն. ետուն նոցա տեղի բնակութեան 'ի սահմանս քաղաքին. օգնէին և այլ կերակրօք և ըմպելեօք. զի նոքօք կայցեն ընդդէմ Թագաւորութեանն Վրաց։ Իսկ զօրքն Հոնաց դադարեալք անդ և զետեղեալք, զօրաժողով եղև Իւանէ և դիմեաց 'ի վերայ նոցա հպարտութեամբ. մեծամեծս փքայր բնաջինջ առնել զնոսա և զքաղաքն, 'ի բազմութիւն զօրացն յուսացեալ՝ և ոչ յԱստուած, որ տայ յաղթութիւն ում և կամի։ Իբրև հարան ընդ միմեանս, ելին խուժքն հանգստեամբ յորջից իւրեանց. և զվաստակեալ և զլքեալ զօրսն Վրաց 'ի բերան սրոյ արկեալ, և զբազումս ձերբակալ արարեալ, և ըզ մնացորդսն փախուցեալ, և մեծ բեկումն եղև յաւուր յայնմիկ զօրուն քրիստոնէից. և այնքան Թողան 'ի ձեռանէ Աստուծոյ, մինչ զի մի վատ այր զբազում քաջ արս և անուանիս եղեալ 'ի պատերազմունս, իբրև հովիւ զհօտ առաջի անցուցեալ բերէին. զի եբարձ տէր զօգնութիւն 'ի սրոյ նոցա. և ոչ ընկալաւ զնոսա 'ի պատերազմի. բերէին զարս պատուականս և վաճառէին ընդ դոյզն հանդերձից կամ ընդ կերակրոյ. և Պարսիցն գնեալ զնոսա՝ անհնարին նեղութեամբ կեղէին զկեանս նոցա. և այնքան պահանջէին 'ի նոցանէ կշիռս ոսկւոյ և արծաթոյ, մինչև անհնարին լինել հատուցանել. և բազումք մեռան անդէն 'ի բանտի։

Ընդ ըմբռնեցան ընդ այլսն և Գրիգոր որդի Հաղբակայ եղբայր Վասակայ քաջի, և Պապաքն նորամն եղբօր որդի, զի երեք որդիք էին Վասակայ՝ Պապաքն, Մկտէմ, Հասան, զոր Պռօշն կոչէին, արք քաջք և անուանիք, որ յահէ նոցա դողայր ամենայն զօրն Տաճկաց։ զՊապաքն սպանին 'ի պատերազմին։ Իսկ զԳրիգոր ձերբակալ արարեալ, նեղէին բազում խոշտանգօք, զի ուրասցի զՔրիստոս, և նա ոչ առ յանձն, այլ առաւել ես անարգէր զմոլար օրէնսդիրն նոցա զՄահմետ, և զգարշելի օրէնս նոցա. և բարկացեալ նոցա՝ քարշեցին զնա մերկ 'ի վերայ երկրի, և փշով քանցեցին զամենայն մարմինս նորա. և այնքան տանջեցին զնա, մինչև 'ի գանելն աւանդեաց զոգի իւր, և ընկալաւ 'ի Քրիստոսէ զվկայական պսակն։ Սոքա գաւառաւ խաչենեցիք էին, յերևելի ազգէ, հաւատով քրիստոնեայք ուղղափառք, և ազգաւ Հայ։

Այլ զայլ բազումս 'ի գերելոցն անօրէն Պարսիկքն զանազան տանջանօք նեղէին, քաղցիւ և ծարաւով և մերկութեամբ։ Իսկ քրիստոնեայքն որ էին 'ի քաղաքին Գանձակ, բազում բարեգործութիւնս ցուցին առ գերեալսն, զոմանս գնելով և ազատելով, և զկէսս կերակրով, և զկէսոցն հանդերձս զգեցուցանելով, և զվախճանեալսն թաղելով. և այսպէս յամենայն կողմանց զբարեգործութիւնս ցուցանելով։ Բայց յետ աւուրց ինչ անցանելոյ, դարձեալ զօր ժողովեաց մեծ հազարապետն Բուանէ երթալ առնուլ զվրէժ յայնցանէ՝ որք կոտորեցին զզօրն նորա. և դիմեալ 'ի վերայ նոցա յեղակարծում ժամու՝ եհար սատակեաց զխուժադուժն բերանով սրոյ. և զաւար նոցա և զմանկունս գերի վարեալ՝ ած յաշխարհն իւր. և Քրիստոսի Աստուծոյ մերոյ փառք յաւիտեանս։

## Վասն վարդապետին Մխիթարայ՝ Թէ ուստի՞ էր, և կամ որպիսի՞ ոք։

Հռչակաւորն այն և մեծիմաստ գիտութեամբ՝ էր 'ի քաղաքէն Գանձակայ, քրիստոնեայ ծնողաց զաւակ, որք եդուն զնա յուսումն Գրոց սրբոց. և իբրև եհաս նա յար-

բունս հասակի, ձեռնադրեցին զնա քահանայ կուսակրօն։ Եւ պաշտեալ զքահանայութիւնն յոլով ամս՝ ցանկացաւ հմուտ լինել Գրոց սրբոց, և առակաց խորոց՝ որ կան 'ի նոսա։ Եւ հանդիպեցաւ Յովհաննէս վարդապետի Տաւուշեցի անուանեալ, որ 'ի ժամանակին յայնմիկ երևելի էր նա գիտութեամբ. զառաջին յաշխարհակեաց կեանս կացեալ սակաւ ինչ, և մնացեալ յամուսնոյն, կրօնաւորութեան հետևեալ. և հասու եղեալ Աստուածային Գրոց՝ զվարդապետական պատիւ ժառանգեալ։ Առ սմա կացեալ Մխիթար ամս յոլովս, ուսման գրոց պարապեալ. և զի էր վարդապետն Յովհաննէս շրջագայ տեղւոջէ 'ի տեղի շրջելով, քարոզելով զբանն Աստուծոյ և ուսուցանելով զբարի վարս մարդկան։ Սա բազում իրս կարգաւորեաց կարգաց և կրօնից քրիստոնէից. զի դեռ ցայն ժամանակն 'ի տեղիս տեղիս լուծանէին զշաբաթ և զկիրակէ սուրբ քառասնորդաց աղուհացիցն։ Սա եդ օրէնս պահօք վճարել, որպէս զայլ աւուրս շաբաթուն. բայց միայն զի տօնեսցեն 'ի շաբաթու վկայից Աստուծոյ, և 'ի կիրակէի խորհրդոյ յարութեանն Քրիստոսի. և մատուսցեն զխորհուրդ մեղսաքաւիչ մարմնոյ և արեանն Քրիստոսի։ Եւ այսպէս հաստատութիւն կալաւ յամենայն տեղիս՝ զյիսներրեակն պահօք վճարել, զոր յառաջն կէսք պահէին, և կէսք ոչ։ Կացեալ առ սմա Մխիթարայ, և առ այլ ոմանս, էառ նա զանուն վարդապետական. և այնու ոչ շատացաւ, այլ չոգաւ նա յԱրևմուտս կոյս յաշխարհն՝ որ կոչի Սև լեառն, առ վարդապետսն՝ որք էին անդ ուսուցիչք. և զայն ինչ ոչ հանեալ 'ի վեր՝ թէ իցէ նորա առեալ զայն պատիւ, այլ բազում ինչ օգտեալ 'ի նոցանէ, եկն նա 'ի Կարնոյ քաղաք. և անդ գտանէ զբարեպաշտ իշխանն զանուանեալն Քուրթ, և հաւատովն քրիստոնեայ, որ ընդ այն ժամանակս անդ լինէր, սարտուցեալ 'ի թագաւորութենէ Վրաց. և եղեալ նմա ծանօթ, սիրեցաւ 'ի նմանէ իբրև զհայր։ Եւ յետ այսորիկ դարձաւ նա յաշխարհ իւր. և ել համբաւ իմաստութեան նորա ընդ ամենայն աշխարհս. և բազումք աշակերտէին նմա յուսումն վարդապետութեան։ Եւ ապա նեղեալ 'ի Տաճկաց, 'ի սադրելոյ կաթուղիկոսին Աղուա-

նից Սանփանոսի, և եկեալ նորա յաշխարհն Խաչենոյ առ Վաղթանգ իշխան Հաթերքոյ, և առ եղբարս նորա՝ որք բազում պատուով պատուեցին զնա, և անդ դադարեալ ամս ինչ։ Ապա դարձ եղև իշխանին Քրթին 'ի հայրենիսն իւր գալ յաշխարհն Կայենոյ և Մահկանաբերդոյ, և բազում ծախարանս եդ նմա Թադուհին Վրաց՝ որ Թամարն կոչէր, դարձուցանելով 'ի նա զհայրենի տեղիսն, և այլս յոլովս։ Սա է հայր Սադունին և Գուլթի Պապշէր Բարիոքին հօր Սադունին։ Իսկ իբրև լուաւ վարդապետն Մխիթար, թէ դարձաւ իշխանն 'ի հայրենիս իւր, եկն նա առ նա վասն առաջին սիրոյն և միաբանութեանն որ առ միմեանս. և բնակեցաւ նա 'ի վանքն՝ որ կոչիւր Գետիկ, 'ի գաւառին Կայենոյ, 'ի վերայ գետոյն մեծագունի՝ զոր անուանեն Աղստևոյ գետ, յաջմէ կողմանէ գետոյն. և էր առաջնորդ վանիցն վարդապետն՝ որ Սարկաւագ անուանիւր, աշակերտ նորին, որ բազում ուրախութեամբ ընկալաւ զնա, և ինքն սպասաւորէր նմա. և անդ դադարեալ յոլով ժամանակս։

Ապա եղև շարժ սաստիկ, որ զբազում տեղիս կործանեաց և տապալեաց զբարձրաբերձ շինուածս, ընդ որս խախտեցաւ և եկեղեցին Գետկայ սաստիկ յոյժ. մինչ զի ոչ լինէր հնար վերստին նորոգել։ Ապա երկմտեալ բնակչացն՝ կամէին ցրուել այսր և անդր, ոչ միայն վասն խախտելոյ եկեղեցւոյն, այլ զի նեղեալ էին 'ի մերձակայիցն. քանզի մի ոմն յիշխանացն, Սարգիս անուն, փոխեաց զգիւղ իւր 'ի տեղւոջէ իւրմէ, և բերեալ շինեաց մերձ 'ի վանսն. և այնուհետև բազում գժտութեամբ կային ընդ միմեանս. քանզի պարսաւադէտք էին հանապազօր։ Իսկ վարդապետն տուրբ արգել զնոսա 'ի խորհրդոյն յայնմանէ, ոչ թողուլ զմիմեանս և ցրուիլ, այլ 'ի միասին կալ, և խնդրել իւրեանց տեղի բնակութեան։ Ապա չոգան միաբան առ մեծ իշխանն Իւանէ, եղբայր զօրավարին Վրաց Զաքարէի, որդիք քեռ բարեպաշտ իշխանին Քրթին, որ ընդ այն ժամանակս իշխէր բերդին Կայենւոյ և գաւառին, և ցուցին նմա զխնդիրս իւրեանց՝ զի տացէ նոցա տեղի, ուր փոխեսցեն զվանս իւրեանց. և նա հրամայեաց նոցա տե-

տանել, թէ ո՞ր տեղի պատշած իցէ. և նոքա շրջեալ գտին տեղի մի բարեվայելուչ և գոգաձև առ ստորոտս երկուց լերանցն՝ որ կայ 'ի գլխոյ նորա, զոր անուանէին զտեղին Տանծուտայ ձոր. և էր 'ի նմա գիւղ. և ձորակ մի փոքրագոյն անցանէր ընդ մէջ նորա. և միւս ևս յորդագոյն յաջմէ կողմանէ, տեղի փայտաւէտ և ջրաւէտ. անդ համարեցան, թէ պատշած իցէ զետեղել։

## Վասն շինութեան վանացն Նորն Գետկայ։

Այսպէս այնուհետև վարդապետն սքանչելի հանդերձ միաբանօք իւրովք ձեռն 'ի գործ արկանել շինութեան վանիցն և եկեղեցւոյ 'ի վերասացեալ ձորն Տանծուտայ՝ հրամանաւ մեծ իշխանին Իւանէի. և շինեցին եկեղեցի մի գեղեցկաշէն փայտակերտ. և օծեալ կնքեցաւ յանուն սուրբ Լուսաւորչին Գրիգորի։ Էր 'ի տօնախմբութեան եկեղեցւոյն և սուրբ վարդապետն Խաչատուր Տարօնացի, առաջնորդ սուրբ ուխտին՝ որ կոչի Հաղարծին, այր սուրբ և առաքինի, և գիտութեամբ հռչակեալ, մանաւանդ երաժշտական արուեստիւ։ Սա պայծառացոյց զսուրբ ուխտն՝ որում առաջնորդ էր ինքն, որ յառաջ քան զգալն նորա՝ ամայի էր և խամրացեալ։ Զսա պատուէր մեծապէս թագաւորն Վրաց Գիորգի, հայր Թամարին։ Եւ եկեղեցւոյն ձեռնագրովն իւրով ետ զերկուս գեղսն, զԱբասաձոր և զՏանծուտն, և այգի մի 'ի միջնաշինսն. և եդ նզովս ամենայն սրբովք. զի մի՛ ոք իշխեսցէ հանել զնոսա 'ի վանացն։ Սա եբեր զխաղն 'ի կողմանս յարևելից, զանմարմին եղանակն 'ի մարմին ածել, զարարեալսն յիմաստնոց, որ ցայն ժամանակս չև էր սփռեալ ընդ աշխարհս։ Սա եկեալ գրեաց և ուսոյց բազմաց. և բազում հանգիստ եղև 'ի ծանր աշխատութեանցն, և անդ հանգեաւ 'ի Քրիստոս ինքն. և կայ թաղեալ յարևմտից կուսէ եկեղեցւոյն։

Շինեցին 'ի Նորն Գետիկ ևս փոքրագոյն եկեղեցի մի յանուն սուրբ Կարապետին Յովհաննու 'ի գլուխ վանիցն։ Եւ ապա սկսան հիմնարկել մեծափառ եկեղեցւոյն կոփածոյ վիմօք և գեղեցկաշէն արուեստիւ զմբեթայարկ

երկնանման, սխրալի տեսողաց, սկսեալ 'ի ո՜ Թուականին Հայոց, զկնի չորս ամաց առնլոյ զԵրուսաղէմ Սալահատինին, և կատարի յամս հինգ 'ի խանկար զատկին Յունաց։

Վասն այսր զատկի բազում հակառակութիւն և վէճ էր ամենայն ազգաց ընդ Հայոց, ևս առաւել Վրաց ազգին, զի լքեալ սաէին զԹիւրն՝ ուղիղ, զոր եղծեալ ապականեաց Իռիոն պիղծն՝ որ 'ի դրան ամբարշտին Յուստիանոսի, որ վասն ոչ կոչելոյ զնա 'ի ժողովն որ եղև յԱղէքսանդրիա վասն լումանցն զատկաց և այլ տօնից՝ յետ վճարելոյ երկերիւրեկին Անդրէասի՝ զինն ամ խանգար եկաց տօնքն ամենայն, զի ոչ կարացին ուղղապէս վարել զարուեստն նորա յետ վճարելոյն։ Ապա իմաստասէր ոմն, Էաս անուն, ձայն արձակեալ առ ինքն կոչել յամենայն ազգաց զիմաստունս. կփեննեհեզ Հրեայ, զգիգան յԱսորւոց, զԱդդէ 'ի Գամրաց, զԵլոգս 'ի Յունաց, և այլս յոլովս։ Եւ սկսեալ ներքուստ 'ի վեր Թուել զամսն, և գտեալ հաստատութեամբ՝ կարգեցին զհինգ հարիւրեակ բոլորն՝ անտարակուսելի օրինակ յաւիտեան. զոր տարեալ առ Յուստիանոս կայսրն, նա հրամայեալ Իռիոնի, և նա նախանձաբեկ եղեալ վասն արուեստին մեծանձնութեան, և իւրն ոչ կոչեցելոյ, կամեցաւ եղծումն ինչ առնել իրացն. փոխեաց զԱպրիլի հնգետասան 'ի վեշտասան, և զվեց 'ի հինգ, բաղբաղայս եդեալ՝ թէ այլն ամենայն ճշմարիտ է. բայց յայսմանէ ոչինչ սխալ է։ Իսկ այն հինգ 'ի յիննսունեւհինգ ամի հանապազ սխալէ զնոսա՝ ընդ Հրեայսն առնելով զզատիկն 'ի ներքոյ լումանն. քանզի շաբաթ ածէ 'ի նոցա հինգ. իսկ մեզ վեց կիրակէ, որպէս դիպեցաւ և աստ։ Եւ վասն այսպիսի վիճման Հայոց և Վրաց առաքէ Թագուհին Թամար, և սպարապետ Զաքարիայ, զմի ոմն 'ի մեծ իշխանացն Վրաց, նմանապէս և 'ի Հայոց յԵրուսաղէմ, յառաջ քան զզատիկն, տեսանել զճշմարիտն. և այսօրինակ դատավճիռ լուցումն կանթեղին՝ որ 'ի սուրբ գերեզմանին Քրիստոսի, զոր սաեն խնդրուածովք սրբոյն Գրիգորի Հայոց Լուսաւորչի՝ առանց ձեռաց մարդոյ և զգալի հրոյ՝ լուցանիլ հրամանաւ Աստուծոյ յամենայն զատկի, որ լինի մինչև ցայսօր ժամանակի։ Բայց զվերա-

կացութիւն քաղաքին Ցածիկք ունէին. հարցին զքրիստոնեայսն. թէ երբ իցէ զատիկն ձեր. պատասխանեցին որ 'ի Յունաց և յայլոց ազգաց. թէ յայսմ կիրակի: Իսկ որ 'ի Հայոց էին, ասացին. ոչ յայսմ կիրակէի, այլ 'ի միւս կիրակէի: Իսկ որ Ցածիկ վերակացուն էր քաղաքին՝ այր իմաստուն էր, հրամայեաց շիջուցանել զամենայն լոյս, որ էին 'ի տաճարի անդ. և փակեալ զդուրսն, կնքեալ մատանեաւ իւրով, և ոչ ումեք հրամայեաց մտանել 'ի ներքս տեսանել: Եւ իբրև անց օրն այն և եղև երեկոյ, և սպասէին լուցման կանթեղին, հրամայեաց իշխանն անարգանօք հանել զամենեսեան և զանիւ մեծաւ, իբրև զոգէտս և զսուտս, բա՛ց 'ի Հայոց. և իբրև՛անց շաբաթն, և եկն միւս կիրակէն, զոր ասէին Հայք զատիկ: Մինչ դեռ 'ի պաշտաման և յաղօթս էին 'ի տասներորդ ժամուն՝ աղդումն եղև ամենեցուն, և վաղվաղակի լուցաւ կանթեղն առանց ձեռաց. և եղև ուրախութիւն մեծ Հայոց: Եւ առեալ զան հարին այլոց ազգաց, և գովէին ամենեքեան զիմաստութիւն և զհաւատն Հայոց. Ես առաւել ազգն Ցածկաց, և անարգէին ձաղէին զՅոյնս յամենայն քաղաքս՝ որ ընդ իշխանութեամբ Ցածկաց. տեսին զայն և որքն առաքեալք 'ի Թագաւորէն Վրաց, և 'ի զօրավարէն, և եկեալ պատմեցին զոր տեսին. և խնդաց մեծ զօրավարն Զաքարէ, և ամենայն Հայք՝ որ էին 'ի զօրուն. և առաւել ևս հաստատէին յուղիղ հաւատս Հայոց:

Յայսմ ամի եղև աւարտ հուչակաւոր և խնդաւոր եկեղեցւոյն Գետկայ, զոր շինեաց վարդապետն Մխիթար իւր միաբանօքն՝ ձեռնտուութեամբ Վաղթանկայ Խաչենեցւոյ՝ տեառն Հաթերքոյ, և եղբարց իւրոց՝ Գրիգորոյ և Գրիգորիսի և Խոյդանայ և Վասակայ, և այլոց իշխանաց բարեպաշտաց՝ որդւոց Քրթին Դաւթի և Սադունին. Նա և քոյր նոցա Արզու խաթուն, կին Վաղթանկայ Հաթերքեցւոյ, սա բազում ինչ օժանդակ եղև. արար և վարագոյր գեղեցիկ՝ դստերօք իւրովք՝ ծածկոյթ սուրբ խորանին, զարմանալի տեսողաց, 'ի մազոյ այծից կակղագունաց, ներկեալ պէսպէս և զանազան, գործ քանդակակերպ և և նկարեալ պատկերօք, ճշգրտագոյն հանուածովք, տնօ-

ընականօք փրկչին և այլ սրբոց, որ հիացուցանէր զտեսողսն։ Եւ որք տեսանէին, օրհնութիւն տային Աստուծոյ, որ ետ կանանց իմաստութիւն ոստայնանկութեան և հանճար նկարակերտութեան, որպէս առ Յոբն ասացաւ, որ ոչինչ ընդ հատէր 'ի կազմուածոյ խորանին՝ զոր արարին Բեսելիէլ և Եղիաբ, թէ ո՛չ յանդգնութիւն է ասելս, զի նոյն հոգի էր՝ որ շարժէր զնոսա և զսոսա։ Եւ ո՛չ այս եկեղեցւոյս (միայն) արար ծածկոյթ, այլ և այլոց եկեղեցեաց. Հաղբատայ և Մակարայ վանից և Դատի վանաց. քանզի յոյժ սիրող էր եկեղեցեաց բարեպաշտ կինն. է արարին նաւակատիս եկեղեցւոյն մեծապէս խմբիւք։ Անդ էր և եպիսկոպոսն Հաղբատայ՝ Յոհանէս, առաքինի և սուրբ այր, և այլ բազմութիւն քահանայից և պաշտօնէից. և օծեալ կնքեցաւ եկեղեցին յանուն սուրբ Աստուածածնին։ Շինեցաւ և գաւիթ եկեղեցւոյն գեղազարդ և կոփածոյ վիմօք։ Յոլով ձեռնտու եղեն մեծ զօրավարքն Զաքարէ և եղբայրն իւր Իւանէ. քանզի նոքա ունէին զիշխանութիւն գաւառին, և զսուրբ վարդապետն յոյժ սիրէին. քանզի Զաքարէ խոստովանութեամբ որդի էր նորա հոգեւոր, և ընծայեցին եկեղեցւոյն սահման ջրաղարձովք լեռնէ 'ի լեառն, և բով մի յԱբասաձոր և զՁօրոձոր 'ի Նահանգին Բջնոյ, և զԱշաւա 'ի գլուխ վանացն։ Շինեցին և ինքեանք գիւղ մի մերձ 'ի ծովակն փոքրագոյն անհնարին խորութեամբ, և անուանեցին զգիւղն յանուն ծովակին Ցզրկածով, քանզի բազումք կային 'ի նա մօրասէր և տղմասէր սողուն. և այլ միւս ևս փոքրագոյն գեօղ ներքոյ վանիցն, զոր Ուռելանջ անուանեցին։ Շինեցին և այլ մատրունս յանուն սրբոց առաքելոցն, և սրբոյն Հռիփսիմեայ։ Եւ ինքն քանզի սիրէր զանապատ և զամայութիւն, արար իւր տուն բնակութեան բացագոյն 'ի վանացն. շինեաց և անդ փոքրագոյն եկեղեցի մի փայտակերտ՝ յանուն սուրբ Հոգւոյն. և 'ի ժամանակի ծերութեան, 'ի գլուխ վանիցն յաջմէ կողմանէ շինեաց եկեղեցի մի շիրիմ գերեզմանի իւրոյ, կրով և վիմօք մածուցեալ սրբագործ, յանուն համբարձմանն Քրիստոսի Աստուծոյն մերոյ, օրհնելոյն յաւիտեանս ամէն։

## Թէ ո՞յք էին որք եղեալք էին յաշակերտաց Նորա։

Բազումք էին որք աշակերտեցան 'ի Նմանէ վարդապետական բանին. քանզի համբաւ իմաստութեան Նորա հռչակեցաւ ընդ ամենայն տեղիս, և գային առ Նա յամենայն կողմանց։ Քանզի ըստ անուանն իւրոյ՝ մխիթարէր զամենեսեան։ Քանզի էր Նա մխիթարական որպէս Բառնաբաս, և Նշանաւոր 'ի մէջ ժողովրդոց որպէս զԱնտոն, և բանք Նորա արդիւնականք լի՛ շնորհօք. և ամենայն ոք փափաքէր տեսանել զՆա վասն այսպիսի համբաւոյ։ Բազումք որ էին 'ի կարգի վարդապետաց ծածկէին զինքեանս և գային, 'ի կարգի աշակերտաց կալով՝ ուսանէին 'ի Նմանէ, և առնուին վերստին հրաման. և բազումք յաշակերտաց Նորա հասին 'ի պատիւ վարդապետական։ Բայց երկու ոմանք 'ի Նոցանէ իմաստնագոյնք էին քան զայլսն, որք կարող էին և զայլս օգտեցուցանել, առաջնոյն Թորոս անուն՝ 'ի սահմանացն Մելտենւոյ Հայոց, հայր Նորա հայկազն և մայր Նորա Ասորի, այր հեզ և խոնարհ, առաքինի և աղքատասէր յոյժ, ասպնջական օտարաց և առատ 'ի տուրս, որ զժամանակս կենաց իւրոց բարիոքապէս վարեալ, 'ի ծերութիւն պարարտութեան յաւելաւ առ հարս իւր, և կայ թաղեալ 'ի հռչականուն վանքն Հաղբատ, 'ի գլուխ վանացն, 'ի գերեզմանս եպիսկոպոսացն և վարդապետացն, որոյ յիշատակն օրհնութեամբ եղիցի, և աղօթք Նորա պարիսպ հաւատացելոց։ Եւ երկրորդին Վանական անուն, այր սուրբ և պարկեշտ, և յամենայն գործս բարիս յառաջադէմ, ողջախոհ և զգաստ յամենայնի, և վարդապետական բանիւ քան զամենեսին՝ որ 'ի ժամանակին էին գերազանցեալ, ծննդական մտօք և յարմար բանիւք։ Վասն որոյ դեգերէին առ Նա ուսման աղագաւ ո՛չ միայն վարդապետական բանի, այլ ամենայն կեանք Նորա և շարժումն՝ անգիր օրէնք էին տեսողացն։ Եւ զայս ո՛չ թէ միայն ականջալուր ասեմ, այլ և ականատես իսկ եմ, զի բազում ժամանակս կացաք առ Նա 'ի վարժս կրթութեան

'ի սահմանս Տաւուշ բերդոյ, յանապատի անդ՝ զոր ստացաւ իւր բնակութիւն, և աղբիւրաբար արբուցանէր ամենեցուն զբանն վարդապետական։

## Վասն վարդապետին վախճանի Տեառն Մխիթարայ՝ որ Գոշն կոչէր։

Արանելիս այս՝ զոր վերագոյն ասացաք, զընթացսն կատարեալ, և զհաւատս պահեալ, եհաս 'ի խորին ծերութիւնն։ Եւ իբրև ետես նա եթէ տկարացաւ 'ի զօրութենէ մարմնոյ, և հանդերձեալ է յաւելուլ առ հարսն իւր, կոչեաց նա զբնակիչս ուխտի վանացն Նորն Գետկայ, որ ընդ նմա ժուժկալեալ էին յամենայն աշխատութիւնս վանիցն և եկեղեցւոյն, և օրհնեաց զնոսա և զաշակերտսն իւր յանուն Տեառն. և զմի ոմն 'ի նոցանէ ընտրեալ, Մարտիրոս անուն նորա, որ աշակերտ և ընտանի էր նմա, կացոյց զնա առաջնորդ նոցա, մանուկ տիօք, բայց կատարեալ իմաստութեամբ, այր քաղցրաձայն յերգս պաշտամանն, և առատամիտ ընթերցօղ, և երագ 'ի գրչութիւն. նմա հրամայեաց իշխել նոցա։ Եւ գրեաց կտակ առ մեծ հազարապետն Իւանէ, եղբայր Զաքարէի, և յանձնեաց 'ի նա զվանսն և զառաջնորդն. և ինքն փոխեցաւ յաստեացս առ Քրիստոս, ալևորեալ և լի աւուրբք։ Եւ վերակացու վանացն Մարտիրոս հանդերձ միաբանօքն գեղեցկապէս յարդարեաց զպատշաճս թաղմանն նորա հոգևկան և մարմնական պիտոյիւք. և տարեալ հանգուցին զնա առաջի դրան եկեղեցւոյն փոքրագունի, որ կայ 'ի գլուխ վանացն յարևմտից կողմանէ։ Եւ մինչև ցայսօր գերեզման նորա օգնէ ցաւագնելոց, որք հաւատով ապաւինին յաղօթս նորա, և զհոգ տեղւոյն հանապազ տանեն 'ի պէտս հիւանդաց մարդոյ և անասնոյ, զի Աստուած զփառաւորիչս իւր փառաւորէ կենդանութեամբ և մահուամբ։ Գէպ եղև երբեմն՝ զի պաշտօնեայք նորա գայլն գրաստօք՝ բարձեալ գինի 'ի պէտս վանիցն. Վրացի ոմն, Բասիլիա անուն, եկեալ՝ բռնութեամբ կամէր առնուլ 'ի նոցանէ 'ի գինւոյ

անտի, զի գործակալ էր նա Իւանէի 'ի վերայ մայրոյն՝ որ պահէր զտեղի իջաւանի նորա. և պաշտօնեայքն ասեն ցնա. մի՛ նեղեր զմեզ, քանզի Գօշին եմք. զի այսպէս կոչէին զնա մականուամբ. քանզի հեզգագոյն եկին ալիք նորա։ Իսկ Թշուառականն անարգեաց զնոսա և զԳօշն հայհոյութեամբ. և իբրև եկն յայն տեղի՝ որ յիշէր զանուն նորա ձաղանօք, անդէն վաղվաղակի համրացաւ, և կապեցաւ լեզու նորա. և այնպէս եկաց զբաղում աւուրս, մինչև հառաչանօք խնդրեաց թողութիւն. և ամենայն ոք որ տեսանէր զայրն, գովէին զծառայն Աստուծոյ։ Եւ եթող նա յիշատակ և արձան գերեզմանի գիրս մտախորհս յօգուտ ուսումնասիրաց՝ համառօտ մարգարէութեանն Երեմիայի գեղեցկադիր կարգօք, և սուղ ինչ կանոնս վասն սպասաւորելոյ մարմնոյ և արեան Տեառն, թէ որպէս պաշտօն իցէ, կամ որպիսի կարգօք. և գիրք մի ողբք 'ի վերայ բնութեանս՝ 'ի դիմաց Ադամայ առ որդիս նորա, և 'ի դիմաց Եւայի առ դստերս նորա. և գիրք մի՝ յայտարարութիւն ուղղափառութեան հաւատոյ ընդդէմ ամենայն հերձուածողաց, 'ի խնդրոյ մեծ զօրավարին Զաքարէի և եղբօր իւրոյ, և այլ թուղթս խրատականս. և եղև վախճան նորա 'ի ոկբ թուականին։

Վասն որոյ յետ նորա կոչման առաջնորդութեանն։

Փառաւորեցաւ վանքն և հռչակեցաւ սուրբ վարդապետին՝ իմաստութեամբ Մարտիրոսի առաջնորդի. քանզի այր շինարար էր. շինեաց և այլ ժամատուն անտաշ վիմօք մածուցեալ կրով, հաստահեղոյս որմօք, փայտակերտ վերնայարկօք, որ յետ ժամանակաց փլաւ վերնայարկն։ Շինեաց և գրատուն մի գեղեցկաշէն յարկօք, արուեստաւոր ունելով զհիւսն Մխիթար, որ 'ի բազում իրս աշխատ եղև եկեղեցեացն և վանիցն։ Եւ բազում եղբարք ժողովեցան վասն հռչականուն տեղւոյն, և բազմաց եղև տեղի սննդեան և ուսման. որ և մեք իսկ սնեալ և ուսեալ ե-

ղաք ՚ի նոյն վանս։ Սկսան շինել և այլ եկեղեցի մի հինգ-խորանօք, կոփածոյ և տաշած վիմօք, գմբեթաւոր և գեղեցիկ շինուածով. և իբրև ընդմիջեցաւ եկեղեցին՝ խափանումն եղև յոլով ժամանակս. քանզի եկն Սուլտանն Խորասանայ, Ջալալատինն կոչեցեալ, և եհար զզօրս Հայոց և Վրաց. և աւերեաց զբազում գաւառս. վասն այսր պատճառի և այլ յոլովից մնաց անաւարտ։ Յետոյ այր ոմն, Գրիգոր անուն, Կապալեցի, որ յառաջն արդիւնաւորեալ էր ՚ի շինումն եկեղեցւոյն, վերստին ՚ի ձեռն առեալ՝ աւարտեաց զնա ՚ի ոՂ թուականին։

Վախճանեցաւ և Իւանէ, եղբայր Զաքարէի, և թաղեցաւ ՚ի Պղնձահանքն ՚ի դուռն եկեղեցւոյն՝ զոր շինեաց ինքն, առեալ ՚ի Հայոց՝ Վրացի վանս արար. և մինչ մեռանէր նա, յանձնեաց զորդի իւր և զտուն յիշխան ոմն իւր սնուցած՝ Գրիգոր անուն, զոր Տղայն կոչէին։ Սա խնդրեաց յԱւագէն, յորդւոյն Իւանէի, զվանքն Գետիկ, իւր տեղի գերեզմանի. և վասն յոյժ սիրելոյ զնա՝ ետ նմա. գնեաց գիւղ մի ՚ի նմանէ, Վաշխէ անուն, մերձ յԱղբատ, ետ զայն ՚ի վանքն, և այլ բազում արդիւնս, գրեանս և խաչս և անասունս։ Շինեաց և հրաշազան եկեղեցի մի՝ երեքխորանի, մերձ ՚ի դաւիթս եկեղեցւոյն, շինուած զարմանակերտ, և անուանեցաւ եկեղեցին յանուն սրբոյն Գրիգորի։ Նա և այլ շինուածք յոլով եղեն ՚ի նմա, և բազմացան քահանայք և պաշտօնեայք և մանկունք ուսումնականք. և կալեալ Մարտիրոս զառաջնորդութիւնն ամս քառասուն՝ եթող կամաւորաբար։ Կալաւ յետ նորա Մխիթար ոմն. և այլ սա, և այլ նա, Յովասափն, և այլ սակաւօրեայ, և Աբրահամ վարդապետն։ Եւ ապա տէր Յովանէս Արմանեցին, որ և Հաղարծնին էր առաջնորդ, և ձեռնադրեցաւ եպիսկոպոս ՚ի յութհարիւր հինգ թուականին։ Սա շինեաց ՚ի Հաղարծինն զսեղանատունն երևելի՝ սրբատաշ վիմօք. և ապա գնաց ՚ի մեծ աթոռն Հաղբատ. և յութհարիւր երեք թուին Խաչատուր վարդապետն, և եղբայր իւր Բարսեղն, շինեաց եկեղեցի մի երեքխորանի, հանդէպ վանիցն, գմբէթաւոր, յանուն սըրբոյն Գէորգեայ։

## Վասն Սուլտանին Ջալալադինին և կոտորելոյն զզօրսն Վրաց 'ի ձեռն Խուազմանին։

Յառաջ ասացեալ ազգն Հիւսիսոյ արևելից, որ Թաթար անուանէր, 'ի նեղ էարկ զՍուլտանն Խորասանայ՝ զՋալալադին, և եհար զզօրս նորա, և տապալեաց զաշխարհս նորա. և հանին զնա փախստական ընդ աշխարհն Աղուանից. և եկն նա 'ի քաղաքն Գանձակ, և առ զնա. և կուտեաց իւր զօրս անթիւս 'ի Պարսից և 'ի Տաճկաց և 'ի Թուրքաց. և եկն յաշխարհս Հայոց։ Զայն տեսեալ Իւանէի, որդ առնէ թագաւորին Վրաց, և ժողովէ զօրս բազումս կա՛լ ընդդէմ Սուլտանին. և հպարտութեամբ մեծամեծս միքանային, և դաշինս եդեալ էին, թէ յաղթեսցեն նմա, զամենայն Հայ մարդ՝ 'ի կրօնս Վրաց դարձուսցեն, որք ընդ իշխանութեամբ նոցա. և զընդդիմացեալսն՝ սրով բարձցեն։ Զայս խորհուրդ խորհեցան ոչ Աստուծով, և դաշինս կռեցին, և ոչ նորա հոգւով զա՛յս խորհեցան, և ղՑէր ոչ հարցին, որ տուիչն է յաղթութեան ում և կամի։

Իսկ ապա Սուլտանն 'ի գաւառն Կոտայից. գնաց և Իւանէ զօրգքն Վրաց, և կայր հանդէպ նոցա 'ի վերոյ. և տեսեալ զնոսա զանգիտեաց, զետեղեալ 'ի տեղւոջն։ Իսկ Սուլտանն՝ յառաջ վարեալ զզօրս իւր՝ գայր հանդէպ նոցա։ Եւ իբրև զայն ետես իշխան մի յաւագացն Վրաց, Շալուէ անուն նորա, և եղբայր իւր Իւանէ, արք քաջք և անուանիք, և յաղթողք 'ի պատերազմի, ասեն ցայլ զօրսն. »դուք կացէք՝ մնացէք վայր մի, և մեք երթեալ խառնեսցուք 'ի նոսա. եթէ դարձուսցուք 'ի նոցանէ զոմանս յետս, մեր է յաղթութիւն, եկա՛յք և դուք. ապա թէ նոքա մեզ յաղթիցեն, փախերո՛ւք դուք, և ապրեցուցէք զանձինս ձեր«։ Եւ իբրև խառնեցան նոքա, սկսան կոտորելով զօրս Սուլթանին։ Իսկ զօրն Վրաց ա՛յնմ ուշ ոչ եդին, այլ փախեան 'ի տեղւոջէ անտի, մինչև այր զընկեր 'ի փախուստ ոչ գիտէր. և երթեալք առանց ուրուք հալածելոյ ամենեքեան 'ի վախից 'ի վայր մղեալք,

'ի ձոր անդր լնուին 'ի գլուխս քաղաքագեղն Գառնոյ։ Եւ իբրև տեսին զայն զօրքն Սուլտանին, զհետ մտեալ ըզ բազումս կոտորեցին, և զայլս գահավէժ առնէին։ Եւ եկեալ Սուլտանին 'ի գլուխ ձորոյն՝ ետես զայն ողորմ տեսիլն. զի իբրև զեբրդուկս քարանց կուտեալ կային անդ բազմութիւն մարդկան և երիվարաց, շարժեաց զգլուխ իւր և ասէ. »այս գործ ոչ մարդոյ է, այլ Աստուծոյ միայն, որ կարողն է ամենայնի«. և դարձաւ դիակապուտ առնել զանկեալսն, և աւերել զբազում տեղիս. գնաց 'ի քաղաքն Տփխիս, և ձեռնտու եղեն Պարսիկքն որ 'ի նմա, և առ զքաղաքն և զբազումս կոտորեաց, և զևս բազումս բռնադատէր թողուլ զքրիստոնէութիւն, և հաւանիլ խաբերայ և մոլար ուսմանն Տաճկաց։ Բազումք այնուհետև յերկիւղէ մահուանն զանգիտեալ՝ փոխանակէին զճշմարտութիւնն ընդ ստութեանն, և այլք յանձն առին զմահ քաջութեամբ քան զկեանս խղճիւ, զվկայական անուն ժառանգեալ՝ ելին յաշխարհէս բարի անուամբ։ Եւ ապա հրաման ետ, որք հաւանին և որք ոչ, ոչ հարցաքննութիւն առնել, այլ բռնութեամբ զամենեսեան թլփատել։ Եւ այսպէս բռնաբար երկուց ոմանց կալեալ զձեռանէ մարդկան 'ի հրապարակի անդ, և միւսն առեալ սուր, հատանէր զմաշկ առնացի անդամոյն, և ընդ կանայսն խառնակէին զազրալից պղծութեամբ. և ընդ ամենայն տեղիս ուր և գտանէին խաչ կամ՝ եկեղեցի՝ կործանէին և քակէին. զայս ոչ միայն 'ի Տփխիս, այլ և 'ի Գանձակ, և 'ի Նախջաւան, և յայլ տեղիս գործէին։ Մի ոմն յաւագացն, որ և մայր Սուլտանին կին էր նորա, Օրղան անուն, սա բազում չարչարանօք նեղէր զբնակիչս քաղաքին Գանձակայ՝ ոչ միայն զքրիստոնեայսն, այլ և զՊարսիկս հարկապահանջութեամբ բազմաւ. և սպանաւ ինքն 'ի նմին քաղաքի 'ի Մուլհիտացն, որք սրով նենգութեամբ սպանանեն զմարդիկ. մատեան առ նա ոմանք՝ մինչդեռ գայր ընդ փողոց քաղաքին, իբր թէ զրկանս կրեալ իցէ նոցա յումեքէ, և առ նա մատեան տալ իրաւունս. ցուցին նմա թուղթ 'ի ձեռին ունելով՝ աղաղակեցին և ասեն. »դա՛տ՝ դա՛տ«. և իբրև զտեղի առ նա՝ և կամէր հարցանել՝ թէ ո՞ իցէ նե-

տանեայքն՝ որ 'ի Հայոց և 'ի փռանգաց, խրախուսեալք յԱստուած, դիմեցին 'ի վերայ նոցա. և էին թուով սակաւք, պակաս քան զհազար մի. և զօրութեամբն Քրիստոսի հարին զզօրսն, և 'ի փախուստ դարձուցին։ Եւ զայն տեսեալ զօրացն Տաճկաց՝ յարձակեցան և նոքա. և հարին կոտորեցին զբազումս. զի 'ի մուտս արևուն էր։ Ապա հրամայեցին Սուլտանքն ոչ պնդիլ զհետ փախուցելոցն. կարայն թէ հաւատակիցք նոցա իցեն. և դադարեցին 'ի պնդելոյ զհետ նոցա։ Իսկ Սուլտանքն, զի արք բարեպաշտք էին, ոչ ապերախտ լինէին առ զօրն քրիստոնէից. զի գիտացին թէ 'ի ձեռն նոցա ետ Տէր զյաղթութիւնն։ Ապա դարձան մեծաւ ուրախութեամբ յաշխարհն իւրեանց, և ընդ որ անցանէին ընդ քաղաքս և ընդ գաւառս, ելանէին ընդ առաջ նոցա պարուք և ծնծղայիւք, և գովասանութեամբ ընդունէին։ Իսկ Ալադինն իբրև եհն 'ի Կեսարիա կապադովկացւոց, ամենայն բազմութիւն քաղաքին՝ հանդերձ քրիստոնէիւքն և քահանայիւք իւրեանց, խաչիւք և ժամահարօք, իբրև յաւուր միոյ ճանապարհ ելին ընդ առաջ նոցա։ Իբրև մօտ եղև Սուլտանն, բազմութիւն Տաճկաց ոչ տային թոյլ քրիստոնէիցն խառն ինքեանց հպել յերկրպագութիւն Սուլտանին. այլ յետս կոյս մղեցին զնոսա։ Եւ նոքա ելին 'ի բլուր մի հանդէպ բանակին. իբրև եհարց Սուլտանն՝ թէ ո՞յք են նոքա, և գիտաց՝ թէ քրիստոնեայք են, ինքն իսկ մեկնեցաւ 'ի զօրէն միայն, և գնաց 'ի մէջ նոցա. և հրամայեաց հարկանել զժամահարսն, և պաշտել բարձրաձայն. և այնպէս եմուտ 'ի քաղաքն, և ետ նոցա պարգևս, և առաքեաց յիւրաքանչիւր տեղիս։

Իսկ Ջալալատին Սուլտանն դարձաւ մեծաւ ամօթով յաշխարհն Աղուանից 'ի բերրի և յարգաւանդ դաշտն, որ կոչի Մուղան. և անդ զետեղեալ կամէր զօր ժողովել. ապա Թաթարն՝ որ եհան զնա յերկրէն իւրմէ փախստական, զհետ մտեալ նորա՝ տարեալ վարեաց զնա մինչև յԱմիթ. և անդ եհար զզօրս նորա սաստկապէս. կորեաւ և անօրէն իշխանն, թէ 'ի նմին պատերազմի, և թէ՝ որպէս ոմանք ասեն՝ երթայր հետիոտս փախստական, դիմեալ նմա առն միոջ, և գիտացեալ՝ թէ նա է, սպան զնա փոխանակ ա-

ընտան մերձաւորի իւրոյ, զոր սպանեալ էր նա յայլում ա-ւուր. և այսպէս բարձաւ չարն չարեաւ։

Թէ որպէս ել Թաթարն ապականել զաշխարհն ամենայն։

Ամենայն բանք մերոյ պատմութեանս, և նախաշաւիղ՝ որ մինչև ցայս վայր էր, վասն ազգիս այսորիկ էր, զոր շնորհօքն Աստուծոյ հանդերձեալ եմք ճառել. կարծեմ թէ և յոլովք ևս զնոյնս պատմեսցեն, և ամենեքեան նուաղեալ գտանին յարժանաւորութենէն. զի յաճախ են քան զպատմութիւնս չարիքս՝ որ եկին կալան զաշխարհս ամենայն. զի ժամանակս 'ի վերջ հասեալ է, և կարապետք նեռինն գուշակեն զգալուստ որդւոյն կորստեան. երկեղուցանեն և զմեզ յայտնութիւնք սրբոց արանց և աստուածազգեստից, զոր Հոգին սուրբ եցոյց նոցա 'ի զգուշութիւն ապագայիցն, և մանաւանդ անսուտ հրաման փրկչին մերոյ և Աստուծոյ, որ ասէ »յարիցէ ազգ յազգի վերայ, և թագաւորութիւն 'ի թագաւորութեան«։ Այլ և սրբոյն Ներսէսի հայրապետին մերոյ, զոր մարգարէաբար ազդեաց վասն կործանման աշխարհիս Հայոց յազգէն Նետողաց, զոր աչօք մերովք տեսաք զաւեր և զտառապանս, զոր անցուցին ընդ աշխարհս ամենայն. և եղև պատճառ յելից նոցա այսպէս։ Քանզի յաշխարհին հեռաւոր հիւսիսոյ յաբերելից՝ զոր կոչեն 'ի խժական լեզուն Ղարուղրում, 'ի սահմանս Ղաթայ, բարբարոս ազգացն բազմութիւն որ անդէն անպիտելիք և անթուելիք բազմաց։ Գլուխ թագաւորաց ունելով ազգն՝ որ կոչի Թաթար, որում անուն էր Չանկզ Ղան, դէպ եղև մեռանիլ նմա. և յառաջ քան ըզ վախճանն՝ կոչեաց զզօրսն 'ամենայն և զերիս որդիս իւր, զոր ունէր, և ասէ ցզօրսն. »ես ահաւասիկ մեռանիմ. զմի յորդւոց աստի իմոց՝ զոր կամիք, ընտրեցէք ձեզ թագաւոր, փոխանակ իմ«. և նոքա ետուն պատասխանի. »զոր միանգամ կամք քո ընտրեսցեն, նա լիցի մեր թագաւոր, և նմա ծառայեսցուք միամտութեամբ«։ Ցայնժամ ասէ ցնոսա. »ես ասեմ ձեզ զբարս և զգործս որդւոց իմոց երեցունց։ Այս անդրանիկ որդիս իմ Չաղատայ. սա այր

պատերազմող է և զօրաւոր, բայց հպարտ է բնութեամբ. և մեծ քան զպատահեալ բախտն. իսկ երկրորդ որդին իմ, նմանապէս յաղթող 'ի պատերազմունս, բայց ուժգ է բնութեամբ. իսկ կրսեր որդիս իմ, չնաշհաւոր է 'ի մեծա-կութենէ իւրմէ, և առատ բարոյիւք, և մեծատուր 'ի ձիրս, և յորմէ հետէ ծնեալ ես իմ, որ ըստ օրէ յաւելու փառք իմ և մեծութիւնս. արդ ահա ապացի ձեզ զամենայն առու-գութեամբ, ում՞ և կամիք պագէք երկեր յերեցունց ա-տիս. Եւ նոքա մատուցեալ երկրպագեցին կրսերոյն՝ որում անուն էր Հօգթա խաղան, և հայրն եդ զթագն 'ի գլուխ նորա. և մեռաւ. իսկ նա իբրև առ զիշխանութիւն թա-գաւորութեան, զոր գումարեալ անթիւ բազմութեամբ, իբրև զաւազ ծովու անհամար 'ի բազմութենէն. զի սեպ-հական ազգն, զոր Մուղալ Թաթարին անուանեն, և զխազ-րաց, և զՀոնաց, և զՂափճացիս, և զԱնկիտանս և զայլ բազում ազգս բարբարոսաց, ախիւք և բանակօք, կանամբք և որդւովք իւրեանց և խորանօք, և բաժանեաց զնոսա յե-րիս յառաջս. զմինն ընդ կողմն Հարաւոյ առաքեաց. զԲը-խաւոր վերակացու կարգեաց յիւրոց հաւատարմաց և 'ի սի-րելեաց. և զմիւսն ընդ Արևմուտս, և զորդի իւր ընդ նո-սա, և 'ի կողմանս Հիւսիսոյ. և զերրորդն ընդ Արևելս և 'ի Հիւսիսի, և վերակացու կարգեալ յաւագացն զայր մի՝ որում անուն էր Չարմաղան, այր խորագէտ և իմաստուն, և յաջողած 'ի գործ պատերազմի, պատուէր տուեալ նոցա, ա-ւերել քանդել զամենայն աշխարհս և զթագաւորութիւնս տիեզերաց. և ոչ ևս դառնալ առ նա՝ մինչև բովանդա-կեսցեն զամենայն աշխարհս. և նուաճել ընդ տէրութեամբ նոցա. և ինքն անդէն զետեղեալ յաշխարհին, ուտելոյ և ըմպելոյ, զբօսանս. և շինութեան պարապեալ, անհոգ յա-մենայն կողմանց. իսկ զօրացն նորա երթեալք ընդ կողմանս կողմանս աշխարհին՝ աւերեցին զաշխարհս և զգաւառս, բառ-նային զիշխանութիւնս ազգաց, առնուին զինչս և զստաց-ուածս, զկանայս նորահասակս. և զմանկունս գերի տանել 'ի ծառայութիւն ստրկութեան. էր՝ զոր առաքէին անդէն 'ի հեռաւոր յօտարութիւն յաշխարհն իւրեանց առ խա-ղանն թագաւոր իւրեանց, և էր՝ զոր առ իւրեանս կալեալ,

'ի պէտս ծառայութեան ախից իւրեանց։ Իսկ այս զօր՝ որ եւ ընդ յարեւելս, որոյ գլխաւոր էր Չարման Նուին, չոգաւ սա 'ի վերայ Ջալալադնին՝ որ իշխէր Խորասանայ և գաւառացն որ շուրջ զնովաւ, եհար վանեաց զնա և զզօրս նորա. և արար զնա փախստական, որպէս ցուցաք վերագոյն. և ինքեանք կարգ առեալ՝ աւերեցին զամենայն աշխարհս Պարսից և զԱտրպատական և զԴի՛լմաց. կարգաւ սրբեցին զամենայն, որպէս զի մի՛ ինչ մնացէ, և ոչ ընդ տուն գայթակղութիւն նոցա, առին և զմեծամեծ քաղաքսն և զհոյակապ՝ ամենայնիւ լցեալ, զՌէ և զԱսպահան, և յիւրեանց անուն վերստին շինեցին. այսպէս առնէին ամենայն երկրի ընդ որ անցանէին։ Եւ ապա եկին հասին յաշխարհն Աղուանից ամենայն ախիւք բազմութեամբ իւրեանց, և 'ի բերրի և յարգաւանդ դաշտին՝ որ կոչի Մուղան, լի՛ ամենայն բարութեամբ, ջրով և փայտիւ և մրրգով և որսով, անդ զետեղեալ՝ հարին զխորանս իւրեանց։ Այսպէս առնէին զամենայն աւուրս ձմերայնոյն, և 'ի ժամանակս գարնայինս սփռնէին ընդ կողմանս ասպատակաւ և աւերմամբ. և դարձեալ դառնային անդրէն բանակէին։

## Վասն աւերման քաղաքին Գանձակայ։

Այս քաղաք, բազում ամբոխ լցեալ Պարսկօք, այլ սակաւ և քրիստոնէիւք, յոյժ թշնամի էր և սա Քրիստոսի և երկրպագուաց նորա, անարգիչ և հայհոյիչ խաչի և եկեղեցւոյ, այպանիչ և նախատիչ քահանայից և պաշտօնէից։ Վասն որոյ իբրև լցաւ չափ մեղաց նոցա, եւ աղաղակ չարութեան նոցա առ Տէր. երևեցան յառաջագոյն նշանք աւերման նոցա երևիլ՝ որպէս 'ի վերայ Երուսաղէմի, յառաջ քան զաւեր նորա. նոյնպէս և այսմ՝ քաղաքի. քանզի յանկարծ պատառեալ երկրի, և արտաքս ելեալ ջուր սեաւ, և ծառ մի Սօսի, զոր Անդարին կոչէին, մեծ յոյժ՝ հուպ առ քաղաքն. տեսին զնա յանկարծակի շրջեալ իւրովին. և 'ի տեսիլ նորա դղրդեցաւ ամենայն քաղաքն. և դարձեալ տեսին զնա կանգնեալ՝ որպէս յա-

ռաջն։ Այս եղեալ երկիցս և երիցս, և ապա անկաւ, և
ոչ կանգնեցաւ։ Եւ սկսան իմաստունքն նոցա քննել վասն
նշանիցն՝ թէ զինչ իցէ, և իմացեալ՝ թէ պատճառ աւեր-
ման է քաղաքին, սկսան այնուհետև զխաչսն՝ որ բևե-
ռեալ էին 'ի վերայ ներքին սեմոց դրանց քաղաքին, հա-
նել յանարգանացն. քանզի վասն այպանելոյ կացուցեալ
էին. զի կոխեսցեն ամենայն անցաւորքն. և յանկարծակի
հասին զօրք Թաթարին, և պատեցին զքաղաքն յամե-
նայն կողմանց, և մարտ եդեալ մարտնչէին ընդ նմա բա-
զում մեքենայիւք, և հարին զայգեստանն՝ որ շուրջ ըզ
քաղաքաւն էին։ Ապա փլուցին և զպարիսպ քաղաքին Փի-
լիկուանօք յամենայն կողմանց. և ոչ եմուտ 'ի քաղաքն
'ի թշնամեացն, այլ վառեալք զինու՝ պահեցին զքաղաքն
շաբաթ մի. իսկ բնակիչք քաղաքին իբրև տեսին՝ թէ ա-
ռաւ քաղաքն 'ի թշնամեացն, մտեալ իւրաքանչիւր ոք 'ի
տուն իւր՝ այրեաց 'ի վերայ իւր զշինուածն. զի մի՛ անկ-
ցի 'ի ձեռս թշնամեացն, և այլք այրեցին զամենայն որ
ինչ ծախիւր 'ի հրոյ. և ինքեանք միայն մնացին. և զայն
տեսեալ թշնամեացն՝ առաւել ևս 'ի ցասումն բարկութեան
բրդեցան, և սուր 'ի գործ արկեալ՝ զամենեսեան ճարակ
սրոյ ետուն, զարս և զկանայսն և զմանկտի. և ոչ ոք
զերծաւ 'ի նոցանէ, բայց սակաւ գունդ մի զօրու վառեալք
զինու և ամենայն պատրաստութեամբ, պատառեցին զկողմն
մի գիշերի, և գնացին փախստական. և այլ սակաւ ինչ
սինլքորք, զորս պահեցին և խոշտանգեցին՝ ցուցանել ըզ
գանձսն ուր պահեալ իցեն. ապա զոմանս սպանին, և ըզ
կէսն գերի վարեցին. և ինքեանք բրեցին զայրեալ տունսն,
և հանին զորս գտին թաքուցեալ. և զայս արարեալ 'ի բա-
զում աւուրս, գնացին 'ի բաց։ Ապա յամենայն գաւառաց
շրջեցան 'ի վերայ նորա առ 'ի բրել և յորոնել զինչսն
և զանօթն, և գտանէին բազում ինչս 'ի նմա ոսկւոյ և
արծաթոյ, պղնձոյ և երկաթոյ, և այլ պէս պէս հանդեր-
ձից, որ թագուցեալ էին 'ի դարանս և 'ի գետնափորս։
Եւ այսպէս ամայի եկաց քաղաքն զչորս ամս, և ապա հրա-
ման ետուն շինութեան քաղաքին, և եկին ժողովեցան առ
սակաւ սակաւ, և սկսան շինել զնա բաց 'ի պարսպէն։

## Վասն աւերածոյ Հայոց աշխարհին և Վրաց 'ի նոյն:

Զկնի անցանելոյ ինչ աւերման քաղաքին Գանձակայ, այս զօր մոլեկան և խորամանգ, իբրև վիճակաւ բաժանեալ զամենայն աշխարհս Հայոց, Վրաց և Աղուանից՝ իւրաքանչիւր գլխաւորի, ըստ մեծութեան և փոքրկութեան զքաղաքս և զգաւառս, զաշխարհս և զբերդս, առնուլ, քանդել, աւերել. և չոգան իւրաքանչիւր մասն բաժնի կանամբք և որդւովք և ամենայն ախիւ բանակին իւրեանց. և նստեալ յանհոգութեան՝ ապականել, ուտել զամենայն բոյս դալարոյ ուղտօք և անասնօք իւրեանց: Ընդ այն ժամանակս թագաւորութիւնն Վրաց նուաղեալ էր, զի էր ընդ ձեռամբ կնոջ՝ որում անուն էր Ռուզուդան՝ դուստր Թամարին, քոյր Լաշային, թոռն Գիորգայ, վաւաշ և կաթոտ, որպէս զբոզբոզիտն Շամիրամ, որ անհաւան եղեալ արանց՝ զոր ածէին նմա, ընդ բազմօք անկեալ, և այրի մնացեալ, վարէր զիշխանութիւն թագաւորութեանն 'ի ձեռն զօրագլխացն Իւանէի, և որդւոյ իւրոյ Աւագին, և Շահնշահի որդւոյ Զաքարէի, և Վահրամայ, և այլոցն: Եւ զի յառաջ քան զսակաւ ժամանակս մեռեալ էր Իւանէ, տարան թաղեցին զնա 'ի Պղնձահանքն՝ զոր իւր շինեալ էր վասն Վրաց, առեալ 'ի Հայոց. և զիշխանութիւն նորա վարէր որդի նորա, և ոչ էին կարող զդէմ ունել անհնարին բքոյն եկելոյ. վասն այսորիկ անձնապահ եղեն ամենեքեան, գաղթեալք յամրոցս, ուր և կարացին. և նոքա սփռեալք առ հասարակ ընդ երեսս դաշտաց, լերանց և ձորոց, իբրև զմարախ բազմերամ, կամ իբրև զանձրև յորդութեամբ տեղեալ 'ի վերայ երկրի: Եւ անդ էր տեսանել այնուհետև աղէտք տրտմագինք, և աշխար արժանի ողբոց, զի ոչ երկիր թագուցանէր զմեռեալսն, և ոչ վէմք և անտառք պահէին զապաստանեալսն, և ոչ ամրագոյն շինուածք բերդից և խոխոմք ձորոց, այլ ամենեքեան արտաքս վարէին զշօղեալս. լքանէր անձն՝ արի արանց, և լուծանէր ձեռք՝ կորովի աղեղնաւորաց, թաքուցանէին

զտուրն, որք ունէին զնոսա. զի մի՛ թշնամեացն տեսեալ,
անողորմ սատակեսցեն. ձայնք թշնամեացն հալէին զնոսա,
և տոփիւնք կապարճաց նոցա ահարեկ առնէին զնոսա, ա՛չք
իւրաքանչիւր զօրհասն իւր տեսանէր եկեալ, և սիրտք
իւրեանց մեռանէին 'ի ներքուստ, մանկունք խուսափէին
առ ծնողս յահէ սրոյն, և ծնօղքն հանդերձ նոքօք ան-
կանէին 'ի վախից, նախ քան զընկենուլ թշնամեացն: Անդ
էր տեսանել զտուրս յանխնայ կոտորել զարս և զկանայս,
զերիտասարդս և զմանկունս, զծերս և զպառաւունս, զե-
պիսկոպոսս և զերիցունս, զսարկաւագունս և զդպիրս. ման-
կունք ստնդիայք զքարի հարեալք. և խայտառակեալք կու-
սանք պղծեցիկք, և գերեալք: Ահագին էր տեսիլ կերպա-
րանաց նոցա, և անգութ աղէք յորովայնի նոցա. մի՛ և
միոյ մօր արտասուաց՝ ո՛չ ողորմէին, և յալիս երբէք ո՛չ
գթային, 'ի սպանութիւնս խրախութեամբ ընթանային,
իբր 'ի հարսանիս, կամ 'ի գինարբուս: Լցաւ երկիրն
ամենայն դիակամբք մեռելոց, և ոչ ոք էր՝ որ թաղէր
զնոսա. հատեալ էր արտօսր յաչաց սիրելեաց, և ոչ ոք
էր՝ որ իշխէր լալ զանկեալսն յահէ անօրինացն: Սուգ
զգեցաւ եկեղեցի, և բարձաւ պայծառութիւն գեղեցկու-
թեան նորա, խափանեցան պաշտամունք նորա, և բարձան
պատարագք 'ի սեղանոյ նորա, և ո՛չ ևս լինէր ձայն եր-
գոց. իբրև խաւարեալ մածեալ էր ամենայն աշխարհ,
և սիրէին մարդիկ զգիշեր առաւե՛լ քան զտիւ. երկիր
թափուր մնաց 'ի բնակչաց իւրոց. և շրջէին 'ի նմա որ-
դիք օտարաց. յափշտակեցան ինչք և ստացուածք, և ժլա-
տութիւն բարուց նոցա ո՛չ երբէք յագեցաւ. խուզեցան
տունք և սենեակք ամենայն, և ո՛չ ինչ մնաց, զոր ո՛չ
առին. շրջէին այսր անդր արագութեամբ, իբրև զայծե-
մունս, և կեղեքէին՝ պատառէին իբրև զգայլս. երիվարք
նոցա ո՛չ վաստակէին յընթացս, և ո՛չ նոքա ձանձրանա-
յին 'ի ժողովել զաւարս: Եւ այսպէս առ հասարակ դառ-
նութիւն հասուցանէին բազում ազգաց և լեզուաց, զի
բաժակ բարկութեան Տեառն էր հեղեալ 'ի վերայ երկրի
'ի վրէժխնդրութիւն գործոց մեղաց չարաց՝ զոր մեղաք
առաջի նորա, և զարդար ցասումն նորա շարժեցաք. վասն

այնորիկ եղև գիւղաւ մուս նոցա յաշխարհս ամենայն, և քերև առին, ժողովեցին զանասունս ամենայն, որ 'ի գաղթի և որ ոչ, և զինչս և զստացուածս և զգերիս բազմութեամբ՝ որ յարձակ վարէր: Այսպէս այնուհետև մարտնչիլ ընդ ամրոցս ամենայն և ընդ քաղաքս բազումս, կործանեալ մեքենայս բազումս և ազգիս ազգիս. զի յոյժ խորամանք և հնարաւորք էին. և առին՝ քանդեցին զպարսպս ամրոցս և զմերձս. զի աւուրքն ամառնային էին և խարշեալ յոյժ, և ամբարտք ոչ հաւաքեալք. զի յեղանակ ... ժամու եկին 'ի վերայ. վասն այնորիկ պաղքեալ 'ի ծարաւոյ մարդ և անասուն, կամաւ և ակամայ անկանէին 'ի ձեռս թշնամեացն առ վտանգի նեղութեանն, և նոքա էր՝ զոր սպանանէին, և էր՝ զորս պահէին 'ի պէտս իւրեանց ստրկութեամբ ծառայութեան: Զնոյն անցս անցուցանէին և ընդ քաղաքս բազմամարդս, շուրջ նստեալ պատեալ պաշարէին:

## Վասն առման քաղաքին Շամքորայ:

Մի ոմն 'յաւագացն, որում անուն էր Մոլար Նուին, որոյ հասեալ էր բաժին կողմանքն այնորիկ. մինչդեռ շարժէին 'ի տեղւոջէ իւրեանց, ուր բնակեալ էին 'ի դաշտին՝ որ կոչի Մուղան. առաքեաց սակաւ զօր, իբրև արս հարիւրս. որք եկեալ նստան առ դրունս քաղաքին Շամքորոյ, և արգելին զելողս և զմտողս 'ի նմա: Իսկ քաղաքն յայնժամ էր ընդ իշխանութեամբ Վահրամայ և որդւոյ իւրոյ Աղբուղային, զոր առեալ էին յառաջագոյն 'ի Պարսկաց և առաքեցին բնակիչք քաղաքին Շամքորոյ առ Վահրամ և որդի նորա. զի օգնեսցեն նոցա. և ասացին, թէ սակաւք են: Իսկ նա ոչ օգնեաց, այլ և զորդին՝ որ կամեցաւ երթալ, խափանեաց. բանս 'ի բերանս դնելով, թէ բազումք են. այլ և ոչ քաղաքացեացն հրամայեաց մարտնչել ընդ նոսա: Իսկ զօրք այլազգեացն որ ընդ որէ առաւելութիւն 'ի թիւն, մինչև եկն գլխաւորն իւրեանց՝ զոր Մոլարն կոչէին. և եռ պատերազմ ընդ քաղաքին, և զփոսն՝ որ շուրջ զպարսպաւ քաղաքին էր, ելից փայտիւ.

և ցուցանէր, զի դիւրաւ ելցեն 'ի պարիսպն. և նոքա 'ի
ներքուստ ընկեցեալ հուր 'ի գիշերի այրեցին զնա։ Իսկ
'ի վաղիւն իբրև եհաս զայն Մօլար Նուինն, հրամայեաց
զօրացն բառնալ բեռն մի հող իւրաքանչիւր ումեք և ար-
կանել 'ի փոսն. և իբրև արկին՝ լցաւ հաւասար պարսպին,
և դիմեաց զօրն իւրաքանչիւր հանդէպ երեսաց իւրոց 'ի
քաղաքն, և առին զնա և կոտորեցին զամենեսին բերա-
նով սրոյ, և այրեցին զշինուածն որ 'ի նմա. և առին զոր
ինչ գտան 'ի նմա. և ապա յարձակեցան 'ի վերայ այլ
բերդիցն՝ որ ընդ իշխանութեամբն Վահրամայ, 'ի Տէ-
րունականն և 'ի յԵրգեվանքն և 'ի Մածնաբերդ, զոր ունէր
Կիւրիկէ Բագրատունի, որդի Աղսարթանայ, և 'ի Գարդ-
ման, և յայլ կողմանս. 'ի Չարեքն և 'ի Գետաբակս· այլ
այն գլխաւոր չոգաւ՝ որում անուն էր Ղատաղան Նուինն։
Իսկ Վահրամ՝ որ էր յայնժամ 'ի Գարդման, զաղտա-
գնաց եղեալ 'ի գիշերի փախեաւ ուր և կարաց զերծա-
նիլ. իսկ զօրքն այլազգեաց մարտ եդեալ ընդ բերդիցն,
որք 'ի ներքս էին, յակամայ ետուն զձի և զանասուն և
այլ զինչ և խնդրեցին. և հարկ եդեալ 'ի վերայ նոցա՝
զնոսա թողին իւրեանց անուն։ Բայց այնոքիկ որ առին
զՇամքոր, եկին ամենայն ախիւն իւրեանց 'ի Տաւուշ և
'ի Կածարեթ և 'ի Նոր բերդն և 'ի Գագ, և որ շուրջ
զնոքօք. և 'ի նեղ արկեալ պաշարեցին զնոսա։

## Վասն Յովհաննու վարդապետին Վանականայ և որոց ընդ նմա։

Ընդ ժամանակս ընդ այնոսիկ մեծ վարդապետն, որ
կոչէր Վանական, իւրովք աշխատութեամբ փորեալ էր
իւր քարայրս 'ի կատարս բարձրագոյն քարի միոջ, որ
կայ հանդէպ գեղջն՝ որ Ոլորուան կոչի, 'ի հարաւոյ կող-
մանէ Տաւուշ բերդի. և շինեալ էր յայրի անդ եկեղեցի
մի փոքրիկ, և անդ դադարէր գաղթութեամբ. իբրև աւե-
րեցաւ առաջին վանք նորա, որ կայ հանդէպ բերդին Երգէ-
վանից, 'ի Ջալալադին Սուլտանէն. և անդ կայր դեռե-

զեալ՝ ժողովեալ բազում գրեանս, զի յոյժ ուսումնասէր էր այրն, մանաւանդ թէ աստուածասէր. և բազումք գային առ նա, և ուսանէին զբանս վարդապետականս ՚ի նմանէ։ Եւ իբրև շատացան մարդիկն, հարկ եղև նմա իջանել յայրէ անտի, և առ ստորոտս քարին շինեաց եկեղեցի և սենեակս. և անդ դադարեալ էր։ Իբրև եղև այս կործանումն աշխարհի ՚ի Թաթարէն, և եկն Մօլար Նուինն յայն սահմանս, բնակիչք գեղջեացն այնոցիկ յայր անդ դիմեցին, և լցաւ արամբք և կանամբք և մանկովք. և եկեալ Թաթարն պաշարեաց զնոսա յայրի անդր. և նոքա համբարս ոչ ունէին և ոչ ջուր. և էր եղանակն ամառնային, և էր տօթ յոյժ. և սկսան տապիլ յարգելանի անդ՝ իբր ՚ի բանտի. և մանկունքն պապակէին ՚ի ծարաւոյ, և մերձ էին ՚ի մեռանել. և թշնամիքն ձայնէին արտաքուստ, թէ ընդ էր մեռանիք. ելէք առ մեզ, և տացուք ձեզ վերակացուս, և թողցուք զձեզ ՚ի տեղւոջս ձերում. և կրկնէին և երեքկնէին երդմամբ։ Ապա որք էին յայրի անդ, անկանէին առ ոտս վարդապետին, աղաչէին զնա և ասէին. «գնեա՛ զարիւն մեր ամենեցուն, և էջ առ նոսա, և արա՛ սէր ընդ նոսա»։ Իսկ նա ասէ ցնոսա. «ես զանձն իմ ոչ խնայեցից վասն ձեր, թէ գոյ հնար փրկութեան. զի և Քրիստոս զանձն իւր ՚ի մահ ետ վասն մեր, և փրկեաց զմեզ ՚ի բռնութենէն սատանայի. ապա պարտիմք ՚ի վերայ եղբարց մերոց զնոյն սէր ցուցանել»։

Ապա առեալ վարդապետին երկու քահանայս ՚ի մէնջ, անուն միոյն Մարկոս, և երկրորդին Սոսթենէս, որք ապա յետ այնորիկ առին զպատիւ վարդապետական ՚ի նմանէ, զի անդ էաք մեք ՚ի վարժս կրթութեան Գրոց սրբոց ընդ աւուրսն ընդ այնոսիկ, և էջ առ նոսա։ Եւ գլխաւորն կայր հանդէպ այրին ՚ի վերայ բլրակի միոջ, և հովանի ունէին ՚ի վերայ գլխոյ նորա վասն տօթոյն, զի ՚ի տօնի Վարդավառին արգելին զմեզ։ Իբրև մօտ եղեն ՚ի զօրագլուխն, որք տանէին զնոսա՝ երիցս անգամ հրամայեցին երկիր պագանել նոցա ՚ի վերայ ծնգաց իւրեանց, իբրև ուղտ ՚ի ժամ ճգելոյն. զի այնպէս էր սովորութիւն նոցա։ Եւ իբրև եկին առաջի նորա, հրամայեաց յարևելս կոյս

աղբիւր մի, որ կայր 'ի մէջ վանիցն, և ետուն մեզ ջուր, զի յոյժ ծարաւի էաք զաւուրս երիս. և ապա տարան արկին զմեզ 'ի տեղի ինչ յարգելանի և զաշխարհականս 'ի գաւիթս եկեղեցւոյն, և ինքեանք շուրջ զմեօք պահէին զմեզ զգիշերն. զի ընդ երեկս էր օրն, և 'ի վաղիւ անդր հանին զմեզ 'ի գլուխ վանիցն 'ի բարձրաւանդակ տեղի ինչ, և խուզեալ առին որ ինչ կայր առ ումեք, որ պիտոյ էր նոցա. և որ ինչ յայրի անդ էր, և որ ինչ սպասք էր եկեղեցւոյն կամ շուրջառ, կամ այլ անօթ ինչ, կամ խաչ արծաթի, և երկու աւետարանս ընդելուզեալ արծաթով, զայն ետուն ցվարդապետն, զոր յետոյ առին 'ի մէնջ: Եւ ընտրեալ 'ի մէնջ արս, որք կարող էին շրջիլ ընդ նոսա, և զայլսն հրաման ետուն տանել 'ի վանսն և 'ի գիւղ անդր, և վերակացու թողին ինքեանց, զի այլք մի խուսիցեն զնոսա: Հրամայեաց և վարդապետին կեալ 'ի վանս անդր, և եղբօր որդի մի էր նորա քահանայ, Պօղոս անուն, նմա հրամայեաց գալ ընդ մեզ զկնի նորա: Իսկ վարդապետն սուրբ խնայեաց յեղբօր որդին իւր, զի մանուկ տիօք էր, ինքն եկն զկնի նորա, յուսացեալ թէ հնարիցէ և զմեզ զերծուցանել: Եւ շրջեցուցեալ զմեզ զկնի իւր աւուրս բազումս նեղութեամբ և տառապանօք, հետի և բոկ ևս, և որք կարգեալ էին պահել զմեզ, որք Պարսիկք էին՝ ծարաւի արեան քրիստոնէից, նոքա առաւել կեղեքէին զկեանս մեր ամենայն տառապանօք յուզեգնացութեան, այնքան ստիպմամբ տանէին զմեզ՝ որպէս զերիվարս յասպատակի: Եւ թէ դէպ լինէր ումեք վասն տկարութեան մարմնոյ, կամ խեղութեան սակաւ մի կասել 'ի գնացիցն, անխնայ ջարդէին զկառափունսն, և ծեծէին զմարմինսն գանալից, մինչև զի զփուշս անգամ ոչ կարէին հանել ոտիցն՝ թէ ելանէր ընդ նա, և ոչ ջուր ըմպել ոք կարէր վասն ստիպողացն: Եւ իբրև իջանէին, տանէին՝ լնուին զմեզ 'ի տունս նեղս, և ինքեանք շուրջ նստեալ պահէին, և ոչ տային թոյլ ումեք ելանել յարտաքս 'ի պէտս կարեաց մարմնոյ, այլ 'ի նոյն տունս անցուցանէին զպէտսն, և 'ի նմին ագանէին զյոլով աւուրս: Վասն որոյ ոչ կարեմ ընդ գրով արկանել զամենայն նե-

ղութիւնսն, որ անցին ընդ մեզ, և զվարդապետն ոչ թողին առ մեզ, այլ ուրոյն հեռի 'ի մէնջ յայլս ոմանս յանձնեցին զգուշութեամբ պահել։ Ապա առին և զիս յընկերաց իմոց զկնի իւրեանց 'ի պէտս դպրութեան գրել թուղթ և ընթեռնուլ. զօրն զկնի իւրեանց շրջեցուցանէին, և երեկոյին հասելոյ բերէին՝ տային զմեզ 'ի վարդապետն երաշխաւորութեամբ. և դարձեալ գային առնուին հեռի կամ մերկ 'ի վերայ արմուղ գրաստոյ. և այսպէս առնէին զօրս բազումս։

Իսկ իբրև անցին աւուրքն ամարանի, և եկն եղանակն աշնանային, և հանդերձեալ էին հեռանալ նոքա 'ի ծանօթ յաշխարհէն մերմէ 'ի հեռաւոր օտարութիւն. ապա զանձինս 'ի մահ եդին ամենեքեան, և սկսան առ սակաւ սակաւ փախչել 'ի գիշերի՝ ուր և կարացեն զերծանիլ։ Այսպէս եղև շնորհօքն Քրիստոսի ամենեցուն զերծանիլ՝ բայց յերկուց երիցանց, որք 'ի տուընջեան կամեցան գաղտ երթալ, և ոչ կարացին զերծանիլ. զոր ըմբռնեալ ածին 'ի բանակն և սպանին առաջի մեր յերկիւղ և 'ի զարհուրումն մեզ. զի այսպէս առնէին ամենայն փախուցելոց։ Ապա յաւուր միում ասէ ցիս վարդապետն սքանչելի. Կիրակո՛ս. և ասեմ՝ զի՞նչ հրամայես վարդապետ։ Ասէ ցիս. որդեակ, գրեա՛լ է թէ յորժամ 'ի նեղութիւնս անկանիցիք, համբերեցէք. արդ պարտ է մեզ զբանս գրոյն յանձինս մեր ցուցանել. զի ո՛չ՝ լաւ եմք մեք քան զսուրբսն առաջինս զԴանիէլ և զԱնանիանսն և զԵզեկիէլ, որք 'ի գերութեանն իւրեանց զբարեպաշտութենէ բուռն հարին, մինչև Աստուած ա՛յց արարեալ, փառաւորեաց զնոսա 'ի գերութեան անդ. արդ և մեք կացցուք խնամոցն Աստուծոյ, մինչև ինքն ա՛յց արասցէ մեզ, որպէս և կամի։ Եւ ասեմ. որպէս հրամայես, հա՛յր սուրբ, այնպէս արասցուք։

Դէպ եղև ապա յաւուր միում գալ իշխանին այնմիկ, որ գերեաց զմեզ 'ի տեղին՝ ուր էաք մեք 'ի պահեստի. և տեսեալ զմեզ՝ խոստորեցաւ առ մեզ. և մեր ընթացեալ ընդ առաջ նորա, ասէ ցմեզ. զի՞նչ պիտոյ է ձեզ. մի թէ քաղցեա՞լ էք. տաց ձեզ միս ձիոյ 'ի պէտս կերակրոյ. զի ինքեանք անխտիր ուտեն զամենայն սուրբ

և անսուրբ անասունս, այլ և զմուկն և զամենայն սողունս։ Ասէ ցնա վարդապետն. մեք ձիոյ միս ոչ ուտեմք, և ոչ զայլ կերակուրս ձեր. թէ կամիս շնորհ առնել մեզ, արձակեա զմեզ 'ի տեղի մեր, որպէս խոստացար. զի այր ծեր եմ ես և հիւանդոտ, և ոչ եմ քեզ 'ի պէտս ինչ գործոյ զինուորութեան, կամ հովուութեան, կամ այլ ինչ 'ի պէտս ձեր։ Ասէ ցնա զօրագլուխն. յորժամ եկեսցէ Զուչուղայն, հոգացից վասն այդորիկ. և էր Զուչուղայն այն վերակացու տանն նորա. և էր երթեալ ընդ զօրս նորա յաւար. այսպէս կացաք առաջի նորա երկիցս և երիցս, և նա զնոյն պատասխանէր։ Ապա եկն այրն 'ի ճանապարհէն, և կոչեցին զմեզ 'ի դուռն իշխանին. և յղեաց նոյն այր առ մեզ հանդերձ թարգմանաւ, ո՞չ ապաքէն ասէք դուք, թէ ինչս տալ մեռելոցն օգուտ է հոգւոյ նորա. արդ մեռելոցն օգնէ, զկենդանիս ընդէ՞ր ոչ փրկէ. տո՛ւր զոր ինչ ունիս, և գնեա զոգի քո, և երթ՝ նիստ 'ի տան քո։ Պատասխանի ետ վարդապետն և ասէ. մեր ինչքն այն էին, զոր առէք դուք խաչքն և աւետարանքն. բայց յայնմանէ մեր այլ ոչ ինչ գոյ։ Ասէ ցնա այրն. եթէ ոչ ունիս ինչս, և ոչ է հնար քեզ երթալ աստի։ Պատասխանի ետ վարդապետն. ճշմարտութեամբ ասեմ քեզ, մեր ոչ ինչ կայ, և ոչ գին աւուր միոյ կերակրոյ. բայց թէ կամք են ձեզ՝ առաքեցէք զմեզ 'ի մի 'ի բերդից յայսցանէ, որ շուրջ կան զմեօք, և քրիստոնեայքն որք կան 'ի նոսա, գնեն զմեզ։ Իսկ նոցա հատեալ գինս ծանունս 'ի վերայ նորա. և դարձեալ թեթևացուցին յայնմանէ, և առաքեցին զնա 'ի բերդն, որ կոչի Գագ։ Իսկ նա խնդրեաց զմեզ գնոյ. զի ընդ իւրն և զմերն տացէ, և ոչ ետուն. ասեն՝ առ 'ի պէտք է մեզ թուղթ գրելոյ և ընթերցման, թէպէտ բազում գինս տայք, ոչ տամք զնա։ Եւ բազում արտասուօք բաժանեցաք 'ի միմեանց. և ասէ ցիս. որդեակ, ես երթամ անկանիմ առ ոտս Սրբոյ Նշանին, որ յանուն սրբոյն Սարգսի, խնդրել նմա 'ի Տեառնէ վասն քո, և այլ եղբարցդ՝ որ կան 'ի ձեռս անօրինացդ. զի թերևս զերծուսցէ և զձեզ Աստուած գթութեամբն իւրով։ Զի էր 'ի Գագ խաչ մի սքանչելագործ առ ամենայն նեղեալս,

և մանաւանդ առ գերիս. զի որք ապաւինէին բոլորով սրտիւ, ինքն՝ իսկ սուրբ վկայն Սարգիս բանայր զդուռն բանտից և արգելանաց, և լուծանէր զերկաթն, և առաջ-նորդէր մարմնաւոր տեսլեամբ 'ի տեղիս իւրեանց. և համ-բաւ սքանչելեացն տարածեալ էր ընդ ամենայն ազգս, զոր կանգնեալ ասէին սրբոյն Մեսրոպայ վարդապետին մերոյ:

Եւ եղև, որպէս ասաց վարդապետն. գնեցին զնա ութ-սուն դահեկանի. և իբրև տարան զնա, 'ի նմին աւուր ասէ 'ցմեզ Մոլարն. մի տրտմիր ընդ գնալ մեծ երիցուն. զքեզ վասն այնորիկ ոչ թողաք ընդ նմա, զի պիտանի ես մեզ. մեծացուցից զքեզ իբրև զմի 'ի մեծաց իմոց. և թէ կայ քո կին, բերից զնա առ քեզ. և թէ ոչ՝ 'ի մէնջ տաց քեզ: Եւ առժամայն ետ մեզ վրան մի, և երկուս պատանիս սպասաւորս մեզ, և ասէ. 'ի վաղիւն տաց քեզ ձի, և ու-րախ արարից զքեզ, միամիտ կացջիր. և գնաց 'ի մէնջ: Եւ խնամօքն Աստուծոյ պատահեաց մեզ 'ի նմին գիշերի գաղտագնաց լինել 'ի նոցանէ և զերծանիլ. և եկաք 'ի տեղի սննդեան մերոյ 'ի վանքն՝ որ կոչի Գետիկ. և նա աւարեալ էր 'ի նոցանէ, և այրեալ շինուածքն որ 'ի նմա, և անդ դադարեցաք:

## Վասն աւերման քաղաքին Լօռէոյ:

Զօրավարն գնդին հեթանոսաց, որում անուն էր Չաղատայ, լուաւ վասն ամրութեան քաղաքին Լօռէոյ և յոլովութեան գանձուցն, որ 'ի նմա էր տուն իշխանին Շահնշահի և գանձք նորա, առեալ ընդ իւր զընտիր սպա-ռազէնս յոլով մեքենայիւք և ամենայն պատրաստութեամբ չոգաւ անդ. և նստեալ շուրջ զնովաւ պաշարեաց զնա: Իսկ իշխանն Շահնշահ առեալ զկինն իւր և զմանկունս, ել գաղտագողի 'ի ձոր անդր, և ամրացաւ յայրիս ուրեք. և զվերակացութիւն քաղաքին տայ 'ի ձեռս աներաց իւրոց: Իսկ նոքա՝ քանզի արք կանացիք էին, ուտելոյ և ըմպե-լոյ և արբեցութեան պարապեալ, յուսալով յամրութիւն պարսպացն, և ոչ յԱստուած: Եկեալ թշնամեացն, փո-րեցին ներքոյ պարսպին և փլուցին զնա. և ինքեանք շուրջ

նստեալ պահէին, զի մի՛ ոք փախիցէ: Իսկ բնակիչք քաղաքին իբրև տեսին թէ առաւ քաղաքն, սկսան մղիլ 'ի վախից, և 'ի ձոր անդր լնուլին: Եւ զայն տեսեալ թշնամեացն սկսան և նոքա մտանել 'ի քաղաքն, և կոտորել յանխնայ զարս և զկանայս և զմանկունս. և աւար առեալ զինչս և զստացուածս նոցա, գտին և զգանձս իշխանին Շահնշահի, որ զրկեալ և կողոպտեալ էր զիւր հնազանդեալսն, և անդ կազմեալ տուն գանձուց ամրագոյն, զոր ո՛չ էր հնար ումեք տեսանել, զի նեղ արարեալ էր զբերան գբին, որ միայն արկելոյն էր բաւական, իսկ հանելոյ ո՛չ ևս: Սպանին և զաներսն Շահնշահին. և ինքեանք խոյզ արկեալ ամենայն ամրոցաց գաւառին, զո՛ր պատրանօք՝ և զո՛ր բռնութեամբ առին զբազումս. զի Տէր մատնէր 'ի ձեռս նոցա: Այսպէս արարեալ և ընդ այլ քաղաքսն, ընդ Դումանիս և ընդ Շամշուլդէ և ընդ մայրաքաղաքն Տփխիս, առեալ զամենայն աւար և կոտորեաց, զասպատակ իւր սփռեալ ընդ ամենայն կողմանս յանխնայ արձակմամբ և յափշտակութեամբ և կոտորմամբ, զի ոչ ոք էր, որ ընդդէմ կայր նոցա, կամ պատերազմէր ընդ նոսա: Վասն այսորիկ աներկիւղ էին յամենայն կողմանց, զի փախստեամբ փախեաւ թագուհին Վրաց, որ Ռուզուդանն կոչէր, ուր և կարաց զերծանիլ. այսպէս և ամենայն իշխանքն առանձնապահ եղեն 'ի նոցանէ:

## Վասն անկանելոյ 'ի ձեռս նոցա իշխանին Աւագին:

Իսկ իշխանն մեծ՝ որդին Իւանէի, զոր Աւագն կոչէին, իբրև ետես զամենայն բազմութիւն թշնամեացն, որք լցին զաշխարհս ամենայն, ամրացաւ և նա 'ի բերդն ամուր, որ կոչի Կայեան. եկին և ամենայն բնակիչք գաւառին, ամրացան և նոքա շուրջ զբերդաւն: Իբրև գիտացին զօրքն այլազգեաց, թէ անդ ամրացաւ իշխանն, մի ոմն 'ի նոցունց գլխաւորացն, որում անուն էր Իտուղատայ, առեալ զօրս բազումս, եկն պաշարեաց շուրջ զբերդաւն. և առհասարակ լցաւ աշխարհն 'ի զօրաց այլազգեաց. զի 'ի նմա

գաղթեալ էր յամենայն կողմանց վասն ամրութեան վայրացն։ Ածին շուրջ զատորոտով որմս յամենայն կողմանց, յղէին պատգամս առ Աւագն գալ 'ի հնազանդութիւն ծառայութեան նոցա և մի՛ երկնչիլ. և բազում անգամ յղէին. և զնոյն ասէին։ Իսկ նորա կամեցեալ շահել զմիտս նոցա, տայ զդուստր իւր նոցա և ինչս բազումս. զի թերևս թուլասցին 'ի պաշարմանէն։ Իսկ նոցա առեալ զայն՝ ևս պնդութեամբ խնդրէին զնոսա։ Իսկ շուրջ զբերդաւն և որք 'ի ներքս, սկսան նեղիլ 'ի ծարաւոյ։ Ապա տարան զձի և զամենայն անասունս իւրեանց 'ի ձեռս Թաթարին, զի թողացուսցեն 'ի նոցանէ երթալ բերել ջուր ախի իւրեանց. և նոցա յանձն առեալ. դիմեցին բազմութիւն մարդկան 'ի ջուր անդր. և նոցա արգելեալ զերթեալսն, և ոչ սպանին զոք, այլ ասէին նոցա իջուցանել զընտանիս իւրեանց. և եկեալ 'ի մէջ նոցա. և նոցա առ վշտին ակամայ իջուցեալ զնոսա, և նոցա արբուցեալ ջուր, արգելին 'ի մէջ իւրեանց և առին զկանայս՝ որոց ցանկացան, և սպանին զարս նոցա. և զկէսս թողին առ արս իւրեանց։

Իսկ Աւագն իբրև ետես թէ ոչ թուլանան նոքա 'ի պաշարմանէ և 'ի կոտորելոյ, կամեցաւ զանձն իւր տալ 'ի ձեռս նոցա, զի թերևս սակաւիկ մի դիւրութիւն լիցի մարդկան. և առաքեաց զԳրիգորն, զոր Տղայն կոչէին, գգուանօք յազատացն խաչենոյ զվերակացու տանն իւրոյ, յառաջ քան զինքն երթալ հանդիպիլ գլխաւորի նոցա, զոր Չարմա Ղանն կոչէին, որ հարեալ էր զխորանն իւր առ ափն ծովուն Գեղարքունոյ. զոր իբրև լուաւ մեծ նոյինն, ուրախ եղև յոյժ, և առաքեաց վաղվաղակի առ Խտուղատայն, որ պաշարեալ էր զնա, փութով առ ինքն հասուցանել, և այլ մի՛ նեղել զբնակիչս բերդին և գաւառացն։ Եւ նոքա առեալ զԱւագն վաղվաղակի հասուցին առ նա. և իբրև ետես զնա, ասէ ցնա. դո՞ւ ես Աւագն. նա պատասխանի ետ՝ թէ ես եմ։ Ասէ ցնա մեծ զօրապետն. և ընդ է՞ր ոչ եկիր վաղվաղակի առ իս, իբրև եկի ես 'ի սահմանս երկրի քո։ Պատասխանի ետ իշխանն և ասէ. մինչդեռ հեռին էիր, և կենդանի էր հայր իմ, նա ծառայեաց քեզ պատարագօք. և իբրև մեռաւ հայր իմ, ես

ծառայեցից քեզ ըստ իմում կարողութեան. և այժմ իբրև մտեր յաշխարհս իմ, աւասիկ եկի առաջի քո, որպէս հաճոյ է քեզ՝ արա ընդ իս: Ասէ ցնա զօրապետն. ասեն 'ի խօսս առակաց. թէ յերդն եկի՝ չեկիր, 'ի դուռն եկի՝ ապա եկիր. և հրամայեաց նմա նստիլ քան զամենայն մեծամեծացն ներքոյ, որ նստէին առաջի նորա. և հրամայեաց ճաշ մեծ առնել 'ի պատիւ նմա, և բերին յոլովութիւն մսոց 'ի սրբոց և յանսրբոց, անդամ անդամ յօշեալ և եփեալ, և խմուզս 'ի կաթանէ ձիոյ ըստ սովորութեան իւրեանց բազմապատիկս, և արկին առաջի, և սկսան ուտել և ըմպել: Իսկ Աւագն և որք ընդ նմա, ոչ ուտէին և ոչ ըմպէին: Ասէ ցնա զօրապետն. վասն որոյ ոչ ուտէք, և ոչ ըմպէք: Ասէ ցնա Աւագն. քրիստոնէից ոչ է սովորութիւն ուտել զայս կերակուր, և ըմպել զայս ըմպելիս. այլ միս 'ի սուրբ կենդանեացն մեր զենեալ, և գինի առ 'ի յըմպել. և հրամայեաց զայն տալ նոցա, զոր և խնդրեաց: Եւ 'ի վաղիւն նստոյց զնա 'ի վերոյ յոլովից մեծամեծացն. և օր ըստ օրէ յաւել 'ի պատիւ նմա, մինչև 'ի բուն մեծամեծացն կարգի նստուցանել զնա: Եւ հրամայեաց ամենայն զօրուն ոչ մերտնչիլ ընդ բերդսն և ընդ քաղաքսն, որ ընդ իշխանութեամբ նորա էին. և բազում դիւրութիւն եղև յաշխարհի նորա, և բազում գերիս ազատս արձակեցին վասն նորա. և զամենայն աշխարհ նորա ետ նմա, և այլ ևս աւելի, և անքակ սէր հաստատեաց ընդ նմա. և առեալ զնա և զամենայն զօրն՝ չոգաւ 'ի վերայ քաղաքին Անւոյ:

## Վասն քաղաքին Անւոյ, թէ որպէս մատնեաց Տէր 'ի ձեռս նոցա:

Քաղաքս այս Անի լցեալ էր բազմութեամբ մարդկան և անասնոց, և պարսպեալ ամրագոյն պարսպօք. և եկեղեցի բազում կայր 'ի նմա, մինչ 'ի կարգ խօսից երդման այսպէս երդնուին. Անւոյ հազար և մի եկեղեցին. և յոյժ փարթամ էր քաղաքն ամենայն իրօք: Վասն որոյ յըղ-

փուԹիւնն՝ յամբարտաւանուԹիւն ած զնոսա, և ամբար-
տաւանուԹիւնն՝ 'ի կորուստ, որպէս սովոր է առնել յիս-
կըզըեանց և այսր։ Առաքեաց Զարմա Ղանն դեսպանս առ նո-
սա գալ նմա 'ի հնազանդուԹիւն, և որք գլխաւորքն էին
'ի քաղաքին՝ ո՛չ իշխեցին պատասխանի առնել պատգա-
մին առանց հարցանելոյ զիշխանն Շահնշահ. քանզի ընդ
իշխանուԹեամբ նորա էր քաղաքն։ Իսկ ամբոխ քաղաքին
և ռամիկքն սպանին զպատգամաւորսն. և զայն տեսեալ զօրքն
այլազգեաց, 'ի բարկուԹիւն դրդեցան. և պաշարեալ զքա-
ղաքն յամենայն կողմանց, կանգնեցին փիլիկուանս բազում
արուեստագիտուԹեամբ, և մարտուցեալ ընդ քաղաքին զօ-
րեղապէս՝ առին զնա։ Այլ և ոմանք յիշխանաց քաղա-
քին ձեռնատու եղեն առ Թշնամիսն, զապրուստ անձանց
շահելով. և նոցա կոչեալ արտաքս 'ի քաղաքէն բազմու-
Թիւն, խոստացան ոչինչ առնել նոցա չար. և իբրև ելին
արտաքս առ նոսա ամենայն բազմուԹիւնն, բաժանեցին ըզ
նոսա յինքեանս, և սուր 'ի վերայ եդեալ կոտորեցին առ
հասարակ անողորմաբար, սակաւ կանայս և մանկունս Թո-
ղեալ, և արս արուեստաւորս, զոր վարեցին 'ի գերուԹիւն։
Եւ ապա մտեալ 'ի քաղաքն, առին զինչսն և զստացուածս
նոցա, և կողոպտեցին զամենայն եկեղեցիս, և աւերեալ
քանդեցին զամենայն քաղաքն, եղծին և ապականեցին ըզ
փառս վայելչուԹեան նորա։

Ո՜նդ էր տեսանել տեսիլ ողորմագին. առ հասարակ
կոտորեալք ծնօղքն՝ և ծնունդք ընդ նոսին դիզեալք 'ի
վերայ միմեանց՝ իբրև զբերդուկս քարանց կուտեալք. քա-
հանայք և պաշտօնեայք ցիր և ցան անկեալք ընդ երեսս
դաշտացն. արբեալ երկիրն յարենէ և 'ի ճարպոյ վիրա-
ւորելոցն. փափուկ մարմինք՝ աճառովք լուացեալք, սևա-
ցեալք և այտուցեալք. և այնոքիկ՝ որ ո՛չ ելեալ յար-
տաքս քան զդուռն քաղաքին, բոկ և հետի ընԹացեալք
'ի գերուԹիւն. և որք հաղորդէին 'ի պատուական մարմնոյ
և յարենէ որդւոյն Աստուծոյ, ուտէին զմիս անսուրբ և
հեղձուցիկ, և ըմպէին 'ի կաԹանէ ձիոց պղծոց. կանայք
պարկեշտք և ողջախոհք մատնեալք 'ի խայտառականս ճա-
կաճան և վաւաշ մարդկան. կուսանք սուրբք, որք ուխ-

տեալ էին Աստուծոյ որդւութեամբ պահել զմարմինս և անախտ զհոգիս, պղծեալք պէսպէս պոռնկութեամբք և ապականեալք անկարգութեամբ. և այսպէս եղև զրաւ գործոյն:

## Վասն աւերածին Կարոյ:

Այս քաղաք՝ իբրև ետես, զոր ինչ գործեաց Թաթարն ընդ բնակիչսն Անւոյ, փութացաւ և աճապարեալ տուրաւ զբանալի քաղաքին ընդ առաջ նոցա. զի թերևս խնայեսցեն 'ի նոսա: Իսկ նոքա՝ քանզի խանձեալ էին աւարաւ, և ոչ յուշմքէ ունէին երկիւղ, զնոյն անցս և ընդ նոսա անցուցին, որպէս ընտանի յափշտակութեամբ ընչից և ստացուածոց, և կոտորմամբ բնակչացն, և աւերմամբ քաղաքին, անզարդացուցեալ զվայելչութիւն նորա, և գերի վարեալ զբնակիչս նորա: Եւ սակաւ մինչքորս թողեալ՝ գնացին 'ի բաց, զոր յետոյ եկեալ զօրք Սուլտանին Հոռոմոց զզերծեալսն 'ի Թաթարէն վառնեցին 'ի գերութիւն և 'ի սուր անողորմաբար. ընդ գրեցելումն՝ թէ ա՛հ, գո՛ւբ և որոգայթք 'ի վերայ ձեր. բնակիչ երկրի՝ որ փախիցէ յահէն, անկցի 'ի գուբն. և որ ելանիցէ 'ի գբէն՝ ըմբռնեսցի յորոգայթն, և որ փախիցէ յայնմանէ՝ հարցէ զնա օձ. այսպէս եղև բնակչաց տառապելոց Կարուց: Նոյնպէս և զօրքն առին զքաղաքն սուրբ Մարի, զոր սակաւ ամօք յառաջ առեալ էր զնա 'ի Տաճկաց Հահնշահի և Աւագին. և դեռ ևս կարկատեալ էին, յանկարծակի եհաս 'ի վերայ նոցա մի ոմն յաւագաց զօրօք բազմօք, որում անուն էր Ղարապահատուր, և վաղվաղակի առ ըզնա. և զոր ինչ եգիտ 'ի նմա՝ յափշտակեաց: Եւ իբրև այս այսպէս գործեցաւ ընդ աշխարհս ամենայն, ապա հրաման ետուն մնացորդացն՝ որ ապրեալ էին 'ի սրոյ անտի և 'ի գերութենէ, գնալ յիւրաքանչիւր տեղիս, 'ի գեւղս և 'ի քաղաքս, և շինել յիւրեանց անուն, և ծառայել նոցա. և սկսաւ երկիրն առ սակաւ սակաւ զշինութիւն առնուլ:

Բայց Աստուած որպէս սովոր է 'ի ժամանակի բարկութեան զողորմութիւն յիշել, զոր և աստ արար, զի ոչ ըստ մեղաց մերոց արար մեզ, և ոչ ըստ անօրէն". զի ժա-

մանակս ամառնային էր, յորում՝ ասպատակեցին նոքա մեզ, վասնզի վաստակն չև ևս էր հնձեալ, կամ ժողովեալ 'ի շտեմարանս. և նոքա եկեալ ուղտօք, կերան և կոխեցին զամենեսեան: Իսկ մերձ յեղանակն ձմերային՝ իբրև գնացին նոքա 'ի դաշտն, որ կոչի Մուղան, յաշխարհն Աղուանից, քանզի անդ կային զձմերային ժամանակն, և ապա գարունն սփռէին ընդ կողմանս կողմանս. մարդիկն՝ որ մնացին 'ի սրոյ անտի, մերկք էին և առանց կերակրոյ, 'ի հասկից անտի անկելոց և կոխելոց լնուին զպէտս իւրեանց. և ձմեռն ոչ ցուրտ եղև սաստիկ, որպէս յայլ ժամանակս, այլ կակուղ. և զի ոչ ունէին եզինք՝ որ գործէին զերկիր, և ոչ սերմանք՝ զոր ցանէին, 'ի գալ գարնան 'ի հրամանէն Աստուծոյ երկիրն բուսոյց ինքն եկս, որ բաւական էր լընուլ զպէտս մարդկան. այլ և ընդ ամենայն կողմանս լիութիւն եղև հացի, որով ապրէին փախուցեալքն 'ի տեղիս. այլ և անողորմ ազգն Վրաց բազում գութս և խնամս ցուցանէին երթելոյն առ նոսա պանդխտանալ. և այսպէս ողորմածն Աստուած մխիթարեաց զվշտանգեալսն:

## Վասն յուղարկելոյ զիշխանն Սմբատ առ Խաղանն յԱրևելս:

Իբրև սակաւ ինչ ժամանակք անցին 'ի վերայ, առաքեցին զԱւագն առ արքայն իւրեանց. զոր Ղանն կոչէին, ընդ հեռաւոր ճանապարհս յարևելս հիւսիսոյ. քանզի այսպէս առնէին զամենայն մեծամեծս, զոր կամէին պատուել, առ նա առաքէին, և հրամանաւ նորա առնէին՝ զոր ինչ և գործէին. քանզի սաստիկ հրամանակատարք էին արքային իւրեանց. այլ և ինքն իշխանն յօժարեաց գնալ, զի թերևս ինչ դիւր լինի իւրն և երկրին. և ամենայն ոք աղօթս մատուցանէր նմա առ Աստուած խաղաղութեամբ դարձուցանել զնա այսրէն. զի ինքն բարի էր բնութեամբ և առաւել ևս զի յուսային, թէ գալստեամբն նորա շահեսցին ինչ: Իսկ նորա երթեալ՝ յանդիման լինէր մեծի արքային, և ցուցանէր նմա զգիրս զօրագլխաց իւրոց,

և յիշեցուցանէր զպատճառս գալոյն առ նա. թէ ՚ի ծա-
ռայութիւն եկեալ է նմա։ Իբրև լուեր զայն մեծ արքայն,
սիրով ընդունէր զնա. տայր նմա և կին ՚ի թագաւոր ազ-
գէն, և ուղարկէր զնա յիւր աշխարհն, գրէր և առ զօ-
րավարն իւր տալ ՚ի ձեռն նորա զիւր աշխարհն, և նուա-
նուաճել զամենայն ապստամբսն, որ եղև իսկ, զի իբրև եկն
նա յաշխարհն իւր, և արարին զօրագլուխքն զհրամանս
արքային իւրեանց, եկին ՚ի հնազանդութիւն ծառայու-
թեան նորա Շահնշահ՝ որդի Զաքարէի, և Վահրամ իշ-
խանն, և որդին իւր Աղպուղայն, և Հասան, որ Ջալալն
կոչէին, իշխան կողմանցն Խաչենոյ, և այլք բազումք.
և զիւրաքանչիւր երկիր տային նոցա, և առ ժամանակ մի
նորումն. և ապա սկսան հարկապահանջութեամբ և երթև-
ւեկութեամբ և զինուորութեամբ նեղել զնոսա. սակայն
թէպէտ այսու ամենայնիւ, և որ տուեալ քան զայս էր,
նեղէին զնոսա, բայց ոչ սպանանէին։ Եւ իբրև անցին
ամք ինչ, նեղացաւ ՚ի նոցանէ իշխանն Աւագ, զի կարի
ժլատք էին, և ոչ կարէր զամենեսին ընդ միւս նոցա հա-
ճել, զի ոչ միայն բաւականային ուտելով և ըմպելով,
այլ և պահանջէին երիվարս և հանդերձս մեծագինս, զի
կարի յոյժ ձիասէրք էին։ Վասն այսորիկ և քաղեցին զձի
յամենայն երկրէն, և ոչ ոք իշխէր համարձակ պահել
ձիս՝ կամ ջորիս, բայց եթէ ՚ի ծածուկ ուրեք վասն հար-
կի զինուորութեան. զի ուր և գտանէին յափշտակէին և
աւելի ևս, յորժամ գտանէին զնշանն իւրեանց. զի զա-
մենայն անասուն իւրեանց, և զոր առնուին, իւրաքանչիւր
զօրագլուխ իւրով նշանով կնքէր, խարելով ՚ի մի ան-
դամն, և թէպէտ գնէին ՚ի նոցունց, և այլ ոք հանդի-
պէր յայլմէ գնգէ, առնուին ՚ի նոցանէ, և պատժէին ըզ
նոսա, իբրև զգող։ Եւ զայս ոչ միայն մեծամեծքն առ-
նէին, այլ և փոքունքն ևս, և մանաւանդ աւելի ևս առ-
նէին զայս, յորժամ մեռաւ զօրավարն զօրուն, որում ա-
նուն էր Չաղատայ. քանզի սպանին զնա գիշերի, որ Մուլ-
հիտք անուանէին. և վասն այսորիկ կատարած սաստիկ եղև
գերոյն, որ էր ՚ի զօրսն, և այրս այս բարեկամ էր Աւա-
գին։ Իբրև մեռաւ նա, բազում թշնամիք յարեան ՚ի վե-

*րայ նորա. յաւուր միում 'ի տան Աւագին ամի 'ի նոցունց ոչ 'ի կարի աւագացն եկն 'ի խորանն, ուր նստէր Աւագն. և իբրև ոչ փաղփաղակի յարեաւ ընդ առաջ նորա, փարոցօք երիվարին՝ որ էր 'ի ձեռին նորա, ծեծեաց զգլուխ նորա։ Զայն տեսեալ սպասաւորաց իշխանին, բարկացեալ ընդ անարգանս իշխանին տեառն իւրեանց, յարեան հարկանել զայրն. և իշխանն արգել զնոսա, թէպէտ զայրացեալ էր։ Եւ գնացեալ այրն, որում անուն էր Զոջպուղա, առեալ ընդ իւր և այլ ընկերս, կամեցաւ 'ի գիշերին սպանանել զիշխանն. և նորա գիտացեալ՝ փախեաւ մազապուրծ առ թագաւորին Վրաց, զի դեռ ևս ապստամբ էր նա, գաղթեալ յամրագոյն տեղիս աշխարհին Վրաց։ Եւ առաւել ևս զայսպիսի անկարգութիւնս վասն այն գործէին, զի մեծ զօրավարն, որ գլուխն էր ամենեցուն, զոր Չարմա Ղանն կոչէին, համրացեալ էր 'ի դիւէ և 'ի ցաւոց. բայց զիշխանութիւնն ոչ էին բարձեալ 'ի տանէ նորա, զի կին նորա և որդիք՝ հանդերձ գործակալօք տանն նորա, վարէին զիշխանութիւնն. զի Խաղանն այսպէս հրամայեաց, թէ և մեռանի, զոսկերս ևս շրջեցուցանել ընդ զօրսն. զի կարի յոյժ աջողած է այրդ և շնորհաւոր։*

*Եւ իբրև փախեաւ Աւագն, տրտմեցան մեծամեծքն, և մեղադիր եղեն առն այնմիկ, և յղեցին դեսպանս զկնի նորա մի՛ ապստամբել 'ի նոցանէ, և երդնուին նմա ոչինչ առնել նմա չար, և տուեալ զաշխարհս նորա 'ի ձեռն Շահընշահի, իբր թէ եղբայր նոցա իցէ. և զայս առնէին վասն առաւել հաւատարմութեան։ Իսկ Աւագն գրեաց թուղթ առ Խաղանն, թէ 'ի ծառայութենէ քումմէ ոչ եմ ելեալ, այլ 'ի սպանմանէ փախուցեալ եմ, և անսամ քո հրամանիդ. և մինչ նա յամէր զգալն, և մնայր պատասխանւոյ մեծ թագաւորին, սոքա զգանձն նորա՝ որ թագուցեալ կայր 'ի բերդորայսն, զամենեսեան հանին՝ խոյզ արկեալ. և դարձեալ պատգամս յղէին մի զկնի միոյ առ Աւագն գալ առ նոսա, զի երկնչէին յարքայէն իւրեանց։ Եւ իբրև եկն Աւագն 'ի զօրն, իսկոյն եհաս հրաման 'ի Խաղանէն առ զօրսն իւր, զի մի ոք իշխեսցէ չար ինչ առնել Աւագին. և թուղթ առ Աւագն, և պարգևս նմա, գալ համարձակ*

և մի՛ երկնչիլ: Ապա մեծարանս արարեալ նմա, հանին տրտաքս 'ի զօրէն զարսն՝ որք կամէին սպանանել զնա, և զոմն մի գլխաւոր՝ Տօնղուս Աղա անուն՝ ընդ նմա, որ եկեալ էր հարկս պահանջել յամենեցունց հրամանաւ Ղաանին առ Թագուհին Վրաց Ռուզուդան գալ 'ի հնազանդութիւն մեծի արքային, որոց երթեալ առ նա՝ յորդորեցին զնա կալ 'ի հնազանդութեան մեծի արքային և մի՛ երկընչիլ: Եւ առեալ 'ի նմանէ զօրս՝ եկին առ առաքիչսն պայմանաւոր սիրով խաղաղութեամբ Թագուհւոյն կեալ 'ի հնազանդութեան հանդերձ որդւովն Դաւթաւ, զոր նորընծայ թագաւորեցուցեալ էր մանուկ տիօք, և նոցա ոչ տալ ուխտին:

## Վասն կոտորածին՝ որ 'ի կողմանս Խաչենոյ, և վասն բարեպաշտ իշխանին Ջալալին:

Ցուցաք սակաւիկ մի համառօտիւք, որ ինչ գրեցաւ ընդ աշխարհս 'ի մոլեկան զօրացն՝ որ Թաթարն կոչի: Ասասցուք արդ և վասն կողմանցն Խաչենոյ, և որ ինչ անդ գործեցաւ. քանզի ընդ ամենայն կողմանս սփռեալ էին զասպատակս իւրեանց, այլ և վիճակաւ ևս բաժանեալ, հասին անդ 'ի գլխաւորացն զօրու ծանու և զինու և ամենայն ահիւ բանակին, գերեցին և սպանին զբազումս՝ որ յարձակ վայրսն: Ապա մարտիւք մարտեան և ընդ դաղթականսն, և որ յամուր վայրսն, զոմանս խաբէութեամբ և զկէսս բռնութեամբ իջուցին, էր՝ զոր սպանին, և էր՝ զոր գերեցին. բայց յոլովքն այն էին, որ ամրացեալ կային յանկասկած վայրսն, զոր վասն դժուարութեան տեղւոյն Հաւախաղաց կոչէին, որք ապաստանեալ յամուրսն, անկասկած կային:

Բայց քանզի 'ի Տեառնէ էր բեկումն, յեղակարծում ժամու դաղտագողի եղեալ՝ մտին յամուրսն, և սրոյ ճարակ ետուն զբազմութիւնն, և զկէսն գահավէժ արարին. և 'ի բազմութենէ անկելոցն ծածկէր երկիրն, և արիւնն առատ եղեալ՝ իբրև զջուր երթայր, և ոչ ոք խնայեցին. և ոսկերքն յետ բազում ժամանակաց իբրև զբերդուկս քա-

րանց կուտեալ երևէին։ Զոգան և 'ի վերայ բարեպաշտ Իշխանին Հասանայ, զոր Ջալալն կոչէին. սա քուեր որդի էր մեծամեծ իշխանացն Զաքարէի և Իւանէի, այր բարեպաշտ և աստուածասէր, հեզ և հանդարտ, ողորմած և աղքատասէր, ճգնող յաղօթս և 'ի խնդրուածս իբրև զայնս՝ որ յանապատսն կային. զպաշտօն տըւընջեան և գիշերոյ անխափան կատարէր, ո՛ւր և լինէր՝ իբրև զվանորայսն, և զյիշատակ յարութեան Փրկչին յաւուր միաշաբաթւոջ յոտնաւոր տքնութեամբ անցուցանէր անքուն. և էր յոյժ քահանայասէր և ուսումնասէր և ընթերցող աստուածային կտակարանացն։ Այլ և բարեպաշտ տիրուհի մայր սորա, յետ մահուան առն իւրոյ Վախթանկայ, զոր Տանկիկն կոչէին, կարգաւորեաց զերեսին որդիսն իւր զՋալալն և ըզԶաքարէ և զԻւանէ, չոգաւ նա 'ի սուրբ քաղաքն Երուսաղէմ՝, և զամս բազումս անդ կացեալ մեծաւ ճգնութեամբ, զարմացուցանէր զամենայն տեսողսն և զլսողսն. քանզի ծախեալ զամենայն գոյս իւր՝ զոր ունէր՝ յաղքատսն և 'ի կարօտեալսն՝ նման Հեղինեայ կնոջն Աբգարու, և ինքն ձեռագործիւ իւրով կերակրէր. և անդէն մեռաւ, զոր Աստուած փառաւորեաց զփառաւորիչն իւր, լոյս կամարաձև կացեալ 'ի վերայ գերեզմանին առ 'ի յորդորել զայլս 'ի նոյն բարեգործութիւն։

Այս իմաստուն իբրև ետես զյարձակումն անօրինացն, ամրացոյց զբնակիչս իւրոյ աշխարհին 'ի բերդն, որ կոչի Խօխանաբերդ՝ ընդ բարբառոյն Պարսից։ Եւ իբրև եկին պաշարել զնա, տեսին զի ո՛չ էր հնար առնուլ զամուրսն, կոչեն զնա սիրով խաղաղութեան առ իւրեանս. և նա իմաստաբար հաճեաց զմիտս նոցա. յետոյ չոգաւ և ինքն առ նոսա բազում ընծայիւք, և մեծարանս արարեալ նմա, տան զաշխարհն իւր 'ի ձեռս նորա՝ այլ ևս յաւելուածով. և հրամայեն նմա ամի՛ ամի՛ երթալ զկնի նոցա 'ի գործ պատերազմի, և միամտութեամբ կեալ 'ի հնազանդութիւն նոցա։ Իսկ նա խոհեմաբար կարգաւորեաց զաշխարհս իւր, որ ինչ մարթ էր առնուլ 'ի պէտս երթևեկաց՝ որ գային առ նոսա, թէ կարգաւոր և թէ այլ ինչ, ինքն առնոյր և պահէր, և յիւրմէն յաւելուածով տայր նոցա, յոր-

ժամ գային առ նա՝ և ոչ նեղէին զաշխարհն, բայց թէ առ նա գային։ Իսկ յայլ աշխարհս գայս ոչ տանէին, այլ ուր և հասանէին ամենայն ուրեք նեղէին զնոսա։

## Վասն եկեղեցւոյն զոր շինեաց։

Շինեաց եկեղեցի մի գեղեցկազարդ յօրինուածով զըմբեթայարդ երկնանման տաճար փառացն Աստուծոյ, ուր հանապազ պատարագի Քրիստոս գառն Աստուծոյ, որ բառնայ զմեղս աշխարհի, 'ի վանքն՝ որ կոչի Գանձասար, հանդէպ Խօխանայ բերդոյ 'ի տեղի շիրմի իւրեանց. և յոլով ամս աշխատ եղեն 'ի նմա։ Եւ իբրև առ զաւարտումն, արար նաւակատիս մեծահանդէս առ 'ի յօրհնել զեկեղեցին. անդ էր և կաթուղիկոսն Աղուանից տէր Ներսէս բազում եպիսկոպոսօք. այլ և մեծ վարդապետն Վանական, յոլով րաբունիւք. անդ էին և սուրբ վարդապետքն Խաչենոյ Գրիգորիս և տէր Եղիայ հարազատք միմեանց, զոր զարդարեալ էր Աստուած երկուց մարդով, և փոխեցան յաստեացս առ Քրիստոս, և կան 'ի պահեստի յաստուածափառ տանն Խադայի առաջնոյն, 'ի թուիս ոձէ, և բազում քահանայիւք, որ ասէին զթիւ երիցանցն եօթն հարիւր։ Եւ իբրև կընքեցաւ օծմամբ, ճաշ մեծ յօրինեալ՝ ինքնին իսկ ձեռօք իւրովք պաշտէր զբազմեալսն, և տուրս տուեալ ըստ իւրաքանչիւր պատուոյ առատութեամբ արձակէր զամբոխն. և եղև այս 'ի ոձթ թուին Հայոց, յաւուր մեծի տօնի Վարդավառին։ Շինեաց և կին նորա Մամքան զգաւիթն հրաշալի 'ի դուռն եկեղեցւոյն, և ինքն զանձն ամենայն առաքինութեան տուեալ, ճգնէր հանապազ պահօք և աղօթիւք և ընթերցասիրութեամբ, և կայր 'ի պատուիրանս Տեառն 'ի տուէ և 'ի գիշերի ըստ գրեցելումն։

## Վասն ցուցման կերպարանաց Թագաւորին [illegible]։

Վասն զի յօժարեցաք մեք յիշատակ թողուլ յազգս՝ որ գալոց են, քանզի ակն ունիմք մեք յուսով փրկու-

թեան 'ի նեղութեանէ սատի՝ որ պաշարեալս է զմեզ, տակաւին մի ցուցցուք քննասիրաց զկերպարանս և զխօսս նոցա: Էին տեսլեամբ կերպարանաց դժոխատես և ահագնալուր, մօրուս ոչ ունելով, բայց սակաւ ոմանց թուելով մազս ունելով 'ի շուրթն կամ 'ի կլափն. ակն նեղ և արագատես, ձայն նուրբ և սուր, բազմակեացք և տեւողք: Յորժամ անկանէր յաճախ ուտէին և ըմպէին անյագ, յորժամ ոչ անկանէր, ժուժկալք էին. ուտէին զամենայն կենդանիս՝ զսուրբս և զանսուրբս, և զմիս ձիոյ առաւել մեծարէին, անգամ անգամ յօշեալ և եփեալ, կամ խորովեալ առանց աղի, և ապա մանր կտրեալ և թացեալ յաղաջուր, այնպէս ուտէին. ոմանք 'ի գուձս ըստ նմանութեան ուղտուց, և կէսք նստելով ուտէին, և յուտելն հասարակ բաշխէին տէրանց և ծառայից, և յըմպելն զղմուզ կամ զգինի, առեալ մի ոմն մեծ ամանով 'ի ձեռս իւր, և փոքր բաժակաւ առեալ 'ի նմանէ, ցանէին յերկինս, և ապա յարևմուտս, 'ի հիւսիս և 'ի հարաւ. և ապա իւր իսկ ցրուողին զայն սակաւ մի ըմպեալ 'ի նմանէ, մատուցանէր աւագագունին: Եւ թէ ոք բերէր նոցա կերակուրս ինչ կամ ըմպելիս, նախ բերողին տային ուտել և ըմպել, և ապա ինքեանք ուտէին և ըմպէին. զի մի մահացու դեղոց ինչ դժրիցին: Որչափ և կամէին՝ կանայս առնէին. բայց զպոռնիկս ամենևին ոչ ապրեցուցանէին, որ ընդ իւրեանց կանայս. բայց ինքեանք ուր և հանդիպէին այլազգեաց, անխտիր խառնակէին, և գողութեան ատելիք էին. մինչ զի չարաչար մահուամբ սպանանէին: Եւ պաշտօն ինչ ոչ գոյր առ նոսա, կամ երկրպագութիւն, բայց ստէպ զանուն Աստուծոյ յիշէին յամենայն իրս. զայս՝ թէ զէէն Աստուծոյ գոհանային, և կամ թէ զայլ ոմն Աստուած կոչէին, մեք ոչ գիտեմք. և ոչ ինքեանք ևս: Բայց սովորաբար զայս ասէին. զի զարքայն իւրեանց ազգակից Աստուծոյ. զերկինս առեալ Աստուած իւր բաժին, և զերկիրս տուեալ Խաղանին. զի ասէին զՉանկզ Ղանն, զհայր Խաղանին, ոչ ծնեալ 'ի սերմանէ առն, այլ լոյս իմն եկեալ յաներևութից, և մտեալ ընդ յերդ տանն, և ասացեալ մօրն, թէ յղացիր և ծնցիս որդի ինքնակալ երկրի. և յայնմանէ ասէին ծնեալ զնա.

Օ՚այս պատմեաց մեզ Գրիգոր իշխանն որդի մարզպանին՝ եղբայր Աւլան պէկին Սարգսի և Ամիրային, յազգէ Մամիկոնէից, զոր իւր իսկ լուեալ էր 'ի մեծ յանէ միոջէ 'ի կարի աւազացն, որում անուն էր Ղուլթու Նուրին, յաւուր միում յուսուցանել նոցա զմանկազդյնսն։ Եւ յորժամ ոք մեռանէր 'ի նոցանէ, կամ սպանանէին, էր զոր բաղում՝ աւուրս շրջեցուցանէին ընդ իւրեանս, քանզի մըտեալ դիւի՝ խօսէր անդուստ բաղում բարբառջմունս, և էր զոր այրէին. և զկէս թաղէին յերկրի խոր փոսիւք, և ընդ նմին դնէին զզէնն և զհանդերձ, և զոսկի և զարծաթ, որ ինչ բաժին իւր էր։ Եւ թէ 'ի մեծաց ոք լինէր, 'ի ծառայից և յաղախնեաց ևս դնէին ընդ նմա 'ի գերեզմանի, զի սպաս կալցի ասէին նմա. այլ և ձիս, զի ասէին անդ պատերազմ սաստիկ լինել. և զոր յիշատակ կամէին տանել մեռելոց, ճեղքէին զփոր ձիոյն, և քարշէին ընդ այն զամենայն միսն առանց ոսկեր. և ապա զփորոտին և զոսկերսն այրէին հրով, և կարէին զմորթ ձիոյն, իբրև թէ զամենայն մարմինն ունիցի։ Սրեալ փայտ մի մեծ, հարեալ ընդ որովայնն և հանեալ ընդ բերանն, այնպէս վերացուցանէին 'ի ծառ, կամ 'ի բարձրաւանդակ տեղւոջ։

Այլ և կանայք նոցա կախարդք էին, և զամենայն ինչ հմայէին. և առանց հրամանի կախարդացն և դիւթիցն ո՛չ երթային 'ի ճանապարհ ուրեք, բայց թէ նոքա հրամայէին։ Այլ և խօսք նոցա խժականք և անծանօթք 'ի մէնջ. քանզի կոչէին զանուն Աստուծոյ՝ Թանգրը, և զմարդն՝ հոչէրբէտ, և զկին՝ աֆչէ, և զանուն հօր՝ էչէմ, և զմայր՝ ատա, և զեղբայր՝ ողա, և զքոյր՝ ատամէ, և զգլուխ՝ պէ-րծն, և զաչս՝ նէփուտն, և զականջսն՝ չէփէն, և զմօրուս՝ սախալ, և զերես՝ յէօզ, և զբերան՝ ամահ, և զատամն՝ սխաւր, և զհաց՝ օճմաք, և զեղն՝ ատաբ, և զկով՝ ամնէն, և զոչխար՝ գոյնա, և զգառն՝ գուզըղան, և զայծ՝ ճման, և զձի՝ մօրէ, և զջորի՝ լօսա, և զուղտ՝ նամամն, և զշուն՝ նօխա, և զգայլ՝ չճա, և զարջ՝ այփտօ, և զաղուէս՝ հօֆան, և զնապաստակ՝ լօպշշա, և զհաւ՝ լախէա, և զաղաւնի՝ չօ-չօլա, և զարծուի՝ ղօ-ղ, և զջուր՝ սա-ան, և զգինի՝ փա-բասա, և զծով՝ փանիրը, և զգետ՝ սուլուսա, և զթուր՝

խօլրոս, և զաղեղն՝ նձու, և զնետ՝ ուճու, և զԹագաւոր՝ մըլէ+, և զմեծ պարոն՝ նուջն, և զերկիր՝ էլ, և զերկինք՝ ջօխոյ, և զարեգակն՝ նատան, և զլուսին՝ ուրա, և զաստեղս՝ սողըրս, և զլոյս՝ օրուր, և զգիշեր՝ ուձնէ, և զգրագիր՝ ջէլմէ+շէ, և զստամանայ՝ ջուուհուուե, և զայլ այսպիսի խժական անուանս, զոր 'ի բազմաց մեզ անծանօԹ. իսկ այժմ ակամայ ծանուցեալք։ Եւ գլխաւորք երևելիք՝ որք յառաջադէմք էին, այսոքիկ են. Առաջինն և մեծ և գլուխ՝ որ Հրամանատուն էր զօրուն, Չարմա Դան Նուրինն, այր իրաւարար և դատաւոր. և որք աԹոռակիցք նորա՝ Իսրար Նուրինն, ԴուԹուն Նուրինն, ՑուԹուն Նուրինն, և Չաղատայն, որ փորավարն էր զօրուն, զոր սպանին Մըհիտքն. և այլ բազում գլխաւորք էին, և անԹիւ զօրք։

## Վկայն Ուպանին Աթայոյ։

Նախախնամօղն Աստուած, որ զամենեցուն կեալն կամի, նա մարդասիրուԹեամբն իւրով երևեցոյց 'ի մէջ նոցա այր մի երկիւղած և աստուածապաշտ, Ասորի ազգաւ, որ Հայր անուանեալ էր արքային նոցա, զոր խաղանն կոչէին, անուն նորա Միքօն, զոր Ուպան ԱԹա կոչէին։ Իբրև լուաւ զանխնայ կոտորումն քրիստոնէից՝ որ 'ի զօրաց ԹաԹարին, մատուցեալ առ խաղանն՝ խնդրեաց 'ի նմանէ Թուղթ առ զօրսն իւր, զի մի՛ այնպէս առ հասարակ կոտորեսցեն զամենայն մարդիկ, որք ո՛չ պատերազմին ընդ նոսա, այլ Թողուլ զնոսա, զի ծառայեսցեն նմա։ Իսկ նա զնոյն ինքն առաքեաց մեծ և երևելի շքով, գրեալ հրովարտակ առ զօրագլուխս իւր, զի ամենեքեան անսայցեն հրամանի նորա։ Եւ նա եկեալ, բազում ինչ նպաստ եղև քրիստոնէից, Թափելով 'ի մահուանէ և 'ի գերուԹենէ. շինեաց և եկեղեցիս 'ի քաղաքս Տաճկաց, ուր ո՛չ իշխէին անուանել զՔրիստոս, և՛ս առաւել 'ի Թարվէժ և 'ի Նախճավան քաղաքի, ուր առաւել Թշնամիք էին քրիստոնէից, զի ո՛չ իշխէին յայտնի երևել կամ շրջել քրիս-

տոնեալք. Թող թէ եկեղեցի կամ խաչ կանգնել: Իսկ նորա կանգնեալ խաչ և եկեղեցի, 'և ժամահար հնչեցուցանել 'ի տուէ և 'ի գիշերի, և յայտնապէս տանել զմեռեալս 'ի թաղումն խաչիւ և աւետարանաւ և պաշտամամբ, որպէս օրէն է քրիստոնէից, և զընդդիմացեալսն մահու վախճանէր. և ոչ ոք իշխէր հակառակիլ հրամանի նորա, այլ և ամենայն զօրք Թաթարին զնա որպէս զարքայն իւրեանց ունէին, և առանց նորա ոչինչ խորհէին կամ առնէին. և մարդիկ նորա վաճառականք, որք ունէին ըզ տամղա նորա, այսինքն զնշան և զգիր, համարձակութեամբ շրջէին ընդ ամենայն աշխարհս, և ոչ ոք իշխէր մերձենալ առ այնոսիկ, որք առէին զանուն Ռապանին: Այլ և ամենայն զօրագլուխք Թաթարին ընծայս մատուցանէին նմա յաւարէ իւրեանց. և ինքն էր այր պարկեշտ վարուք, նոյնպէս 'ի կերակուրս և յըմպելիս, յաւուրն միանգամ ճաշակէր ընդ երեկս սակաւ ինչ կերակուր: Այսպէս այր արար Աստուած ժողովրդեան իւրում 'ի նեղութեան անտի 'ի ձեռն առնս այսորիկ. և զբազումն մկրտեաց նա 'ի Թաթարէ անտի, և ամենայն ոք վասն սքանչելի վարուց նորա և մեծաշուք պատուոյն զարհուրէր և դողայր 'ի նմանէ: Եւ յորժամ եղև այս գծագրութիւնն, որ յայսմ վայրի, 'ի ՈՂ թուականին, 'ի Հայոց թագաւորութեանն՝ որ 'ի կողմանս Կիլիկեցւոց, Հեթմոյ բարեպաշտի, և 'ի զօրավարութեանն եղբօր իւրոյ Սմբատայ քաջի, և իշխանաց իշխանի Կոստանդնի հօր նորա, և 'ի կաթուղիկոսութեան սուրբ աթոռոյն Գրիգորի Կոստանդնեայ ծերունւոյ և առաքինւոյ, որ նստէր 'ի Կլայն Հռոմէական, և յարքեպիսկոպոսութեան տեառն Բարսղի, եղբօր թագաւորին Հեթմոյ, զոր պահէին փոխանորդ սուրբ աթոռոյն կաթուղիկոսութեան, և յԱղուանից կաթուղիկոսութեան տեառն Ներսէսի հեզոյ և մարդասիրի, որ յաւուրս նստէր 'ի վանքն՝ որ կոչի Խամշի, 'ի գաւառն Միափորի, և յարքեպիսկոպոսութեան եղբօր որդւոյ նորա Յովաննիսի՝ նոր ձեռնադրելոյ, և 'ի բռնակալութեան հանուրցս Թաթարին, և 'ի ժամանակի կենաց մերոց ամս քառասուն պակաս կամ աւելի:

## Վասն առերման Թէոդուպօլսոյ:

Արդ 'ի սկսանել ոճ Թուականին Հայոց, գայր Համանէր Հրովարտակ 'ի Խաղանէն առ զօրս և զօրագլուխս, որ յարևելս, զօրավար և առաջնորդ կացուցանել փոխանակ Չարմաղունին՝ որ Համրացեալ էր, զոմն մի 'ի զօրացն Բաչուղուրչի անուն Նմա, անկեալ վիճակն առաջնորդութեան. քանզի Հմայիւք վարէին. Արդ իբրև առ Նա զիշխանութիւնն, իսկոյն զօր գումարեաց յամենայն ազգաց՝ որ ընդ ձեռամբ Նորա, և գնաց յաշխարհն Հայոց, որ ընդ իշխանութեամբ Սուլտանին Հոռոմոց. և Հասեալ 'ի Կարին գաւառ, պաշարեաց զԹէոդուպօլիս, որ այժմ կոչի Կարնոյ քաղաք, և Նստեալ շուրջ զնովաւ, առաքեաց առ Նոսա դեսպանս գալ Նոցա 'ի Հնազանդութիւն. և Նոքա ոչ կամեցան գալ, այլ անարգանօք դարձուցին զպատգամաւորսն, և ինքեանք ելեալք 'ի պարիսպն, Նախատէին զՆոսա: Իսկ Նոքա իբրև տեսին եթէ ոչ ողջունեցին զխաղաղութիւն, յամենայն կողմանց բաժանեալ զպարիսպ քաղաքին գլխաւորացն, զի փլուսցեն առ Հասարակ. և Նոցա փոյթ յանձինս կալեալ, կանգնեցին Փիլիկուանս բազումս, և կործանեցին զպարիսպն, և մտեալ 'ի Ներքս, սրոյ ճարակ զամենեսին տուեալ անողորմաբար, և յափշտակեալ զինչսն և զստացուածսն, Հրով այրեցին զքաղաքն: Եւ զի յոյժ բազում ամբոխ էր 'ի ժամանակին յայնմիկ, քաղաքն, լցեալ քրիստոնէիւք և Տաճկօք, այլ և ամենայն գաւառն անդր Հաւաքեալ էր, անթիւ գոյին անդ կտակարանք աստուածային գրոց՝ մեծամեծաց և փոքունց. զայն առեալ այլազգեացն, ծախէին քրիստոնէիցն՝ որ 'ի զօրուն էին, զյաճախագիրն ընդ դոյզն գնոց. և Նոցա խնդութեամբ առեալ, տանէին յիւրաքանչիւր գաւառ, բաշխելով յեկեղեցիս և 'ի վանորայս: Այլ և 'ի գերելոց անտի զբազումս գնեցին զարս և զկանայս և զմանկտի, զեպիսկոպոսս և զքահանայս և զսարկաւագունս՝ որքան Հնար էր գնեցին իշխանքն քրիստոնեայք՝ Աւագն և Շահնշահն և Աղուպղան որդին Վահրամայ, և Գրիգոր Խաչենեցի Դօ-

փին որդի, որ էր մյր երկիւղած. և զօրք նոցին, որոց վարձահատոյց Քրիստոս եղիցի, և զամենեսեան ազատ արձակեցին, թողլով 'ի կամս անձանց ուր և կայցեն։ Եւ ո՛չ միայն թէ զքաղաքն կարնայ աւերեցին, այլ և բազում գաւառս յիշխանութենէ Սուլտանին Հոռոմոց. և Սուլտանն ոչինչ կարաց օգնել. քանզի զօղեալ թագուցեալ էր յերկիւղէ նոցա. այլ և վախճանեալ ևս ասէին զնա։ Իսկ զօրքն Թաթարին, իբրև գործեցին նա զայս իր, դարձաւ բազում աւարաւ և խնդութեամբ յաշխարհն Աղուանից 'ի կայս ձմերոցի իւրոյ, յարգաւանդ և 'ի բերրի դաշտն, որ կոչի Մուղան, և անդ ձմերեաց։

Վասն պատերազմին՝ որ եղև ընդ Սուլտանն և ընդ Թաթարն։

Մինչդեռ զետեղեալ յապահովս նստեալ կայր զօրն Թաթար ընդ դաշտս ամենայն Հայոց և Աղուանից, գայր դեսպանս 'ի Ղիազատին Սուլտանէն խրոխտ և սպառնական բանիւք, որպէս սովորութիւն է Տաճկաց. եթէ այսպէս համարեցիք դուք աւերմամբ քաղաքի իմոյ, եթէ յաղթեցաք նմա և զօրութեան նորա. քաղաքք իմ անթիւ են 'ի բազմութենէ, և զօրաց իմոց չիք համար. արդ կա՛ց՝ մնա՛ դու, ուր ես. և ես ինքնին եկեալ տեսից զձեզ մարտիւք պատերազմաց. և այլ բազում բանիւք՝ որ նման է սոցին, մեծամեծս փքայր. և զայս ևս ասէր պատգամաւորն եթէ հանդերձեալ է Սուլտանն զձմեռն, որ գալոց է զկնի ամարանս, 'ի դաշտի աստ ձմերիլ կանամբք և զօրօք։ Իսկ նոցա լուեալ, ոչ ինչ ըմբոստացան, կամ խրոխտս ինչ խօսեցան ընդդէմ նոցա, այլ միայն զայս պատասխանի ետ գլխաւորն նոցա Բաչու Նուինն. եթէ մեծամեծս բարբառեցայք. սակայն եթէ ո՛ւմ Աստուած տացէ, նորա լիցի յաղթութիւն. և այսպէս մի զկնի միոյ գային դեսպանքն փութացուցանել զնոսա 'ի մարտ։ Իսկ նոցա ոչինչ շտապեալ, այլ մեղմով գումարեալ զզօրս իւրեանց, և որք ընդ ձեռամբ նոցա, եկեալ յաշխարհս Հայոց 'ի խասա-

ւէտ վայրս ամենայն ախիւ, գիրացուցեալ զերիվարս, և
ապա մեզմով մօտ հասեալ, ուր էր բանակ Սուլտանին.
քանզի և նա 'ի վեր էր ելեալ 'ի տեղւոջէ իւրմէ յաշ-
խարհն Հայոց, որ ընդ իւրով իշխանութեամբ, հուպ 'ի
քաղաքագեղ մի՝ զոր, ասի, Ջմանն կատուկ անուանեն, ան-
թիւ բազմութեամբ կանամբք և հարճիւք, ոսկւով և ար-
ծաթով, և որ ինչ սպասք էին նորա մեծութեանն, զամե-
նեսեան ընդ իւր բարձեալ բերէր. այլ և զբօսանաց աղա-
գաւ սնուցեալ էրէս վայրի և յայլոց սողնոց բազումս,
մինչև 'ի մկունս և 'ի կատուս, զի այնպէս աներկիւղ կա-
մէր զինքն ցուցանել զօրացն։ Իսկ զօրավարն Բաչու՝ ըստ
խորագէտ իմաստութեանն իւրեանց. բաժանեալ զզօրս իւր
բազում յառաջս 'ի ձեռս գլխաւորաց քաջաց, և զեկա-
մուտ զօրսն՝ որ յազգաց ազգաց, 'ի նոսա ցրուեալ, զի
մի՛ նենգ ինչ գործեսցեն, և ընտրեալ յամենեցունց զա-
րիսն և զքաջսն, յառաջապահս կարգեալ ինքեանց, որք
երթեալք հանդիպեցան զօրաց Սուլտանին, և մարտու-
ցեալք 'ի փախուստ դարձուցին զնոսա։ Փախեաւ և Սուլ-
տանն մազապուրծ, թողեալ զկահ և զկարասի անդէն 'ի
տեղւոջն. և սոցա զհետ մտեալ, կոտորեցին անխնայ զզօրսն,
որոյ ճարակ տուեալ. և ապա դարձան 'ի կապուտ անկե-
լոցն։ Իբրև եկն 'ի բուն բանակն, տեսին զի փախուցեալ
էր Սուլտանն, և հարեալ զօրք նորա. ապա սկսան ասպա-
տակ սփռել ընդ կողմանս, յաւարի առնուլ 'ի քանդել
զբազում գաւառս, և ժողովել ոսկի և արծաթ, և հան-
դերձս մեծագինս, և ուղտս և ձիս, և ջորիս, և անթիւ
անասունս։ Եկին պատեցին զքաղաքն Կեսարիա Կապպա-
դովկացւոց, և պատեալ պաշարեցին զնա. զի ո՛չ եղեն ձեռ-
նատու բնակիչքն, առեալ բռնութեամբ. 'ի սուր սուսերի
մաշեցին զբնակիչսն, և յափշտակեալ որ 'ի նմա, և թո-
ղեալ ամայի զքաղաքն եկին 'ի Սեբաստիա. զի յառաջա-
գոյն ձեռնտու էին լեալք բնակիչք քաղաքին առ նոսա,
և ընդ առաջ երթեալ ընծայիւք և պատարագօք, մարդոյ
ինչ ո՛չ մեղան, այլ յափշտակեալ յաւարէ քաղաքն ինչ,
յիւրեանց անուն գրաւեալ զքաղաքն, վերակացուս դար-
ձուցեալ զքաղաքն դարձան։ Եւ եկին պաշարեցին զե-

զընկայն՝, և բազում մարտիւք մարտեան ընդ նմա. և բնակիչք քաղաքին բազում հարուածս հասուցեալ՝ 'ի վերայ զօրացն Թաթարին։ Ապա սկսան խաբէութեամբ արտաքս կոչել սիրոյ աղագաւ, և նոցա հաւանեալ ելին. քանզի ոչ ունէին ուստեք օգնական. որոց առեր 'ի վերայ եդեալ, կոտորեցին առ հասարակ զարս և զկանայս, և սակաւ մանկունս և աղջկունս ապրեցուցեալ՝ վարեցին 'ի գերութիւն. և այսպէս բազում գաւառս և զաշխարհս աւերեալ և գերեալ, եկին 'ի քաղաքն՝ որ կոչի Տփղիս։ Իբրև գիտացին բնակիչքն, եթէ անհնար է զդէմ ունել նոցա պատերազմաւ, կամաւ ձեռնտու եղեն նոցա. յորոց առեալ ինչս բազումս, թողին զքաղաքն առանց վնասու, և դարձան բազում աւարաւ և մեծաւ խնդութեամբ 'ի կայս ձմերոց իւրեանց, որ 'ի Հայս և որ յԱղուանս, ողջանդամ և առանց վնասու. զի 'ի Տեառնէ էր խորտակումն ամենայն ազգաց, և կործանումն նոցա։ Բայց քրիստոնեայքն՝ որք էին ընդ նոսա զինուորեալք, զբազումս ազատեցին 'ի գերելոցն՝ որ յայտնի, և որ 'ի ծածուկ, զքահանայս և զկրօնաւորս, մանաւանդ մեծամեծ իշխանքն՝ Աւագն և Շահնշահն, Վահրամ և որդի իւր Աղբուղէն, և Խաչենեցիքն, Ջալալն Հասան, և զօրք իւր, և ազգականքն, և Գրիգոր Դոփին որդի, մօրաքուեր որդի Ջալալին, և այլ իշխանքն և զօրք նոցին ըստ կարի իւրեանց. և այս եղև 'ի ոՁԵ թուականիս Հայոց։

## Վասն Թագաւորին Հայոց Հեթմոյ և զոր ինչ գործեցաւ։

Իբրև այս գործեցաւ Հեթում արքայ՝ որ աշխարհին Կիւլիկեցւոց և այնոցիկ նահանգաց իշխէր, յորժամ ետես՝ եթէ պարտեցաւ Սուլտանն առաջի նոցա, առաքեաց առ նոսա դեսպանս և պատարագս արժանաւորս դնել նոցա ընդ նմա ուխտ խաղաղութեան, և նմա կալ նոցա 'ի հնազանդութեան. որք եկեալ 'ի մեծ դուռն, յանդիման եղեն Բաչու Նուինին, և Ելթինա Խաթունին կնոջ Չարմաղունին, և այլ մեծամեծ աւագանւոյն միջնորդութեամբ իշխանին Ջա-

չալին։ Եւ իբրեւ լուան զպատգամս արքային, տեսին և զընծայսն, խնդրեցին 'ի Նմանէ տալ 'ի ձեռս Նոցա զմայր Սուլթանին զկին և զդուստր, որք գաղթականութեան աղագաւ անդ փախուցեալ էին։ Եւ իբրեւ լուաւ արքայ Հեթում, յոյժ տրտմեցաւ և ասէ. «լաւ էր ինձ եթէ զորդի իմ զԼեւոն խնդրեալ էին յինէն, քան թէ զնոսա»։ Այլ քանզի երկնչէր 'ի Նոցանէ, զի մի մեծ չարեաց պատճառ լիցի այն, յակամայ կամաց ետ 'ի ձեռս Նոցա. այլ և ընծայս բազումս այնոցիկ' որ եկեալ էին տանել զնոսա, որք եկեալ ցուցին Թաչաւին և այլոց գլխաւորացն։ Որք իբրև տեսին' ուրախ եղեն, և մեծարանօք յարգեցին զդեսպանսն արքայի, և կարգեցին Նոցա ռոճիկս և երիվարաց Նոցա զժամանակս ձմերանն, զի 'ի լինել գարնան ընդ Նոսին երթիցեն յաշխարհն իւրեանց։ Հաստատեցին և ուխտ ընդ արքայի, ետուն և գիր ընդ դեհին իւրեանց' զոր Ելտամղայն կոչէին. և այսպէս սպասէին, մնալով եղանակին գարնան, որ միասանգամ երթիցեն 'ի վերայ Սուլտանին և աշխարհի Նորա։

## Վասն Ապստամբելոյ իշխանին Լամբրոնի, և զոր ինչ գործեաց նա ընդ աշխարհն Կիլիկեցւոց։

Արքայն Լեւոն մինչ կենդանի էր, բերդ մի 'ի Նորա աշխարհին յոյժ անառիկ, որում անուն էր Լամբրոն, և իշխանն' որ տիրէր բերդոյն, ապստամբեաց 'ի Նմանէ, որում անուն էր Հեթում, և Նա բազում անգամ ջաՆացեալ, ոչ կարէր Նուաճել զապստամբն. ապա յետոյ խորամանկութեամբ խաբեալ զնա խնամութեան աղագաւ. որպէս թէ տացէ զդուստր եղբօր իւրոյ' որդւոյ Նորա Օշնի 'ի կնութիւն, ըմբռնեալ զնա և զորդիս Նորա չարչարեալ, ետուն 'ի Նա զամրոցն. և Նորա առեալ ետ զնա ցմայր իւր տիկնոց տիկինն, և գրեաց Նզովս ոչ ևս այլ տալ զնա ումեք իշխանի, բայց միայն արքունի լիցի. զի ՀաՆապազ առէ տեարքն Նորա ապստամբ են լեալ վասն ամրութեանն։ Իբրեւ վախճանեցաւ Լեւոն, և թագաւորու-

թեանն իշխէր դուստրն նորա Զապէլ, Կոստանդին իշխանաց իշխանն ընդ իւր միաբանեալ զկաթուղիկոսն Յոհաննէս և զայլ իշխանսն, թագաւորեցոյց զորդին իւր զՀեթում մանուկ տիոյ, ածեալ զնա այր դստերն Լևոնի փոխանակ որդւոյ Փրնձին, զոր ըմբռնեալ եդին 'ի բանտի։ Կամեցաւ թիկունս օգնութեան իւր առնել զորդին Հեթմոյ՝ զԿոստանդին համանուն իւր, զորդին Հեթմոյ զաներ իւր, և տայ 'ի նա զԼամբրոն զսեպհական իւրեանց, և եդ զնա թագադիր որդւոյ իւրոյ։ Իսկ նա յետ աւուրց ըստ հայրենի սովորութեանն իւրեանց ապստամբեաց 'ի քուեր որդւոյ իւրոյ յարքայէն Հեթմոյ. և թէպէտ շատ ջանաց Կոստանդին հայրն արքայի, և ինքն իսկ արքայ, ոչ կարաց ածել զնա 'ի հաւանութիւն հնազանդութեան. զի ձեռն ետ նա 'ի Սուլտանն Հոռոմոց. և այսպէս կայր ապստամբ։ Իբրև փախեաւ Սուլտանն Հոռոմոց 'ի Թաթարէն, արքայն զամենայն գիւղս և զանդաստանս Լամբրոնի աւար 'ի ներքոյ հրամանաց իւրոց, և միայն մնաց նա 'ի բերդն. յոր ապստամբեալ էր։ Ապա յղեաց Կոստանդին դեսպանս առ արքայ խնդրել զհաշտութիւն, և տալ զորդիս իւր 'ի ծառայութիւն, և ինքն մնալ 'ի բերդին. և արքայ ոչ կամեցաւ. երկիցս և երիցս յղեաց, և արքայ և հայր իւր նմանապէս ոչ կամեցան։ Ապա գնացեալ Կոստանդին 'ի Կոնն, առեալ զօրս Սուլտանին Հոռոմոց, որք յայնժամ թշնամիք էին արքայի, զի ետ զմայր Սուլտանին Հոռոմոց 'ի Թաթարն, զայս յեղակարծ ժամու, մինչ ցրուեալ էին զօրքն արքունի յիւրաքանչիւր տեղիս, և մտեալ յաշխարհն՝ աւարեաց զբազում աւանս և գաւառակս այրմամբ և սպանմամբ և գերութեամբ, բազում քրիստոնեայս կոտորեալ և կողոպտեալ. և այսպէս բազում չարիս անցուցեալ ընդ աշխարհն քինահանութեամբ։ Իսկ արքայ իբրև ետես զայն չարիս, ժողովեալ զզօրս իւր, արիութեամբ հասեալ 'ի վերայ բազմութեանն, սրոյ ճարակ ետ զամենեսին. և փախեաւ միայն ապստամբ իշխանն, և սակաւք ընդ նմա։ Այսպէս եօթն անգամ հարաւ 'ի նմանէ, ապա եմուտ յամրոց իւր, և ոչ իշխէր համարձակիլ յաջ կամ յահեակ։

## Վասն Թագաւորութեանն Դաւթի:

Բազմահնար և խորամանգ ազգն Նետողաց յոլով անգամ յղեցին առ Թագուհին Վրաց Ռուզուդան գալ առ ինքեանս, կամ տալ զորդի իւր զԴաւիթ մանուկ զօրօք առ նոսա: Իսկ նա զայս ոչ արարեալ՝ տայ սակաւ զօրս, և 'ի ձեռն աւագ որդւոյն Իւանէի՝ որ էր ընդ Թաթար զօրուն, յղէ առ նոսա ասելով. «Մինչ չև է եկեալ դեսպանն իմ՝ զոր յղեցի առ Խաղան արքայն ձեր, ոչ կարեմ գալ առ ձեզ: Իսկ նոքա իբրև հարին զՍուլտանն Հոռոմոց՝ զփեսայ նորին, և առին զյոլովս 'ի քաղաքաց նորա, առաքեցին առ նա պատգամաւորս զիշխանն Վահրամ գալ նոցա 'ի հնազանդութիւն: Եւ նա 'ի գալն եբեր ընդ իւր զորդի Գիորգեայ Շալւայի Թագաւորին Վրաց, զեղբօր որդի Ռուզուդանայ Թագուհւոյ, զոր յղեալ էր զհետ դստերն իւրոյ առ Սուլտանն Հոռոմոց պահել, զի կորուսցէ զնա. զի մի նենգ ինչ գործեսցէ Թագաւորութեանն. և էր առ Սուլտանին յարգելս. և բերեալ Վահրամայ, ծանոյց Թաթար զօրուն, թէ որդի արքայի մերոյ է, և տարապարտ զրկեալ է 'ի տէրութենէ իւրմէ: Իսկ նոքա հակառակ հօրաքեռ իւրոյ Թագաւորեցուցեալ զնա՝ հրամայեցին ըստ օրինի քրիստոնէից օծանել զնա, և կալ ամենայն իշխանաց հօր նորա նմա 'ի հնազանդութեան. և նստեալ 'ի Տփխիս քաղաքի: Եւ առեալ զնա մեծամեծ իշխանացն, որք էին հնազանդ Թաթարին, Աւագին՝ որ զօրավարն էր, և Շահնշահի՝ որդւոյ Զաքարիայի. և Վահրամայ և որդւոյ իւրոյ Աղբուղէն, տարեալ 'ի Մեծխիթա, կոչեցին և զկաթուղիկոսն Վրաց, և օծին զնա Թագաւոր. և էր անուն նորա Դաւիթ: Իսկ հօրաքոյր նորա Ռուզուդան՝ իբրև լուաւ զայն, փախեաւ յԱփխազէթ և 'ի Սոնէթ որդւովն իւրով միւս Դաւթաւ. և յղեաց դեսպանս առ միւս զօրագլուխ Թաթարին, որում անուն էր Բաթու, ազգական Ղանին, որ իշխէր 'ի վերայ այնց զօրաց, որք էին 'ի Ռուզք, և յՕսեթք, և 'ի Դարբանդ, քանզի նա էր յետ

Դանիին, կալ նմա հնազանդ։ Եւ նա հրամայեաց նմա նստել 'ի Տփխիս. և սորա ոչ ընդդիմացաւ, քանզի ընդ աւուրս ընդ այս մեռեալ էր Դանն։

## Վասն չոգելոյն 'ի մեծ դուռն զկաթողիկոսն Աղուանից տեառն Ներսէսի։

Մինչդեռ զետեղեալ նստեալ կայր զօրն Թաթար 'ի ձմերոցս 'ի դաշտս Հայոց և Աղուանից, Ռուքանն Ասորի, զոր վերագոյն յիշեցաք, լուաւ վասն կաթողիկոսին Աղուանից, և ծանոյց Ելթինա խաթունին՝ կնոջ Չարմաղունին, որ վարէր զիշխանութիւնն նորա յետ համրանալոյն, եթէ գլխաւոր քրիստոնէից կողմանցս այսոցիկ գաղթութեամբ նստեալ կայ, և ոչ տեսանէ զմեզ. յղեցին առ նա, եթէ ընդ էր դու միայն ոչ տեսանես զմեզ, եկ վաղվաղակի առ մեզ. եթէ կամաւ զայց ոչ առնես, յակամայ ածցուք զքեզ նախատանօք։ Իսկ նա, քանզի նստէր 'ի գաւառին 'ի Ծիափորի վանքն՝ որ կոչի Խամշի, և էր ընդ իշխանութեամբ Աւագին, առանց զնա հարցանելոյ ոչ իշխեաց երթալ, զի մի՛ ծանր թուեսցի երթն նորա։ Թաքեաւ 'ի նոցանէ, և ասաց պաշտօնէիցն պատճառել թէ ոչ է 'ի տան, այլ երթեալ է առ Աւագն. և նոքա երկիցս և երիցս յղեցին պատանալեօք գալ առ նոսա։ Ապա հրաման առեալ յԱւագէն, չոգաւ առ նոսա 'ի դաշտն Մուղան ընծայիւք ըստ կարին, բայց ոչ հանդիպեցաւ անդ Ռուքանն. զի գնացեալ էր նա 'ի Թաւրէժ. այլ գնացեալ 'ի մեծ դուռն, յանդիման լինի Ելթինա խաթունի. և նորա սիրով ընկալեալ զնա, մեծաւ մեծարանօք պատուեաց, 'ի վերոյ նստուցեալ ամենայն մեծամեծացն, որք հաւաքեալ էին առ նա յաղագս հարսանեաց որդւոյ նորա Բաւրա Նուինի. քանզի առեալ էր նորա զդուստր աւրուամ մեծի, Դուլթան Նուին կոչեցելոյ. կին որդւոյ իւրոյ. և զդուստր իւր տուեալ էր միւս աւագագունի, Ուսուռ Նուին կոչեցելոյ. և տօն մեծ էին առ նոսա աւուրքն այնոքիկ ուրախութեամբ հարսանեացն։ Վասն որոյ առէ

ցիաթուղկիոսն. «'ի շնաշխար մեռար եկիր». Եւ նա իմաստաբար պատասխանեաց. «Թէ և ես խնկ ընտրեցի զաւուրս զայսոսիկ ուրախութեան ձեր, և աստ եկի»։ Իսկ նա յանձնեաց զնա և զպաշտօնեայս իւր յեղբարս իւր 'ի Սաղեղ Աղայն և 'ի Գորգոզն, որք էին քրիստոնեայք հաւատով, նորոգ եկեալ յաշխարհէն իւրեանց. մինչ ինքն հոգասցէ զհոգս հարսանեացն զաւուրս ուրախութեան. որք առեալ մեծաւ պատուով պատուէին զնա։ Եւ իբրև սակաւ մի պարապեցաւ 'ի հոգոցն, ետուն նմա պարգևս և էլամնղայս, զի մի' ոք նեղեսցէ զնոսա. ետուն նմա Մողալ Թաթար առաջնորդ, որ տարեալ շրջեցոյց զնա յաշխարհն Աղուանից 'ի վիճակ իւր. զի յոլով ժամանակք էին, որ ո՛չ նա, և ո՛չ որք յառաջ քան զնա, ո՛չ իշխէին շրջել ընդ վիճակեալս իւրեանց յաղագս արիւնարբու և կատաղի ազգին Տաճկաց։ Իսկ նորա շրջեալ ընդ վիճակեալսն, դարձաւ անդրէն խաղաղութեամբ 'ի տեղի իւր 'ի վանս Խամշի։

## Վասն առաջադրելոյ նորա ընդ կողմանս Վասպուրականի 'ի վերայ բազում գաւառաց։

Դարձեալ 'ի մտանել ամին երկրորդի փախուցանելոյ զԼ,իաղատինն Սուլտան, խաղացին գնացին ընդ կողմանս Բզնունեաց 'ի քաղաքն Խլաթ, և առեալ զնա՝ տան 'ի ձեռս Թամթեայ քուեր Աւագին, որ էր յառաջ տէր լեալ քաղաքին, մինչ կին էր նա Աշրափ Մելիքին, և գերեցաւ 'ի Խորազմեցի Սուլտանէն Ջալալադինէն. և 'ի նոցունց դարձեալ առաւ գերի և առաքեցաւ առ Ղանն. և եկաց անդ զյոլով ամս։ Եւ իբրև առաքեաց Թագուհին Վրաց Ռուզուդան զիշխանն Համադոլեայ դեսպան առ Ղանն, և 'ի դարձին իւրում Համադոլեայն խնդրեաց 'ի Ղանէն զԹամթի, և եբեր ընդ իւր հրովարտակօք 'ի Ղանէն. զի՝ զոր ինչ լեալ իցէ նորա, մինչ կին էր Մելիք Աշրափին, տայցեն 'ի նա. և նոքա տարեալ զհրամանս արքային իւրեանց, տան 'ի ձեռս նորա զԽլաթ և զգաւառսն՝ որ շուրջ զնովաւ. և ինքեանք ապաստանք սփռեալ ընդ

կողմանս կողմանս 'ի Միջագետս Ասորոց, յԱմիթ և յՈւր-հայ և 'ի Մծբին և 'ի Ղամբին երկիրն, և յայլ բազում գաւառս, դարձան յունայն. զի թէպէտ ոչ ոք ել ընդ նմա պատերազմաւ, սակայն վասն տօթոյն ամարայնոյ բազումք 'ի նոցանէ խորշակահար լեալ մեռան՝ մարդ և երիվար. և եկեալ 'ի տեղի իջաւանի իւրեանց, դադա-րեցին զաւուրս ձմերայնոյն. և առն հրաման վասն շի-նութեան քաղաքին Կարնոյ, Թէոդուպօլեայ։ Եւ ժողո-վեցան ցրուեալքն և զողեալքն և զերծեալքն 'ի գերու-թենէ, կոչեցին զեպիսկոպոս քաղաքին զտէր Սարգիս, զոր եբեր իշխանն Շահնշահ՝ որդին Զաքարէի, և չոգաւ. և սկսան վերստին շինել զաւերեալ և զկործանեալ քաղաքն։

## Վասն կանոնական հրամանաց կաթողիկոսին Հայոց Կոստանդնի։

Իսկ առաքինի կաթուղիկոսն Հայոց Կոստանդին իբրև ետես զաւեր աշխարհիս Հայոց և զտառապանսն, զոր կրէին 'ի հարկահանացն և 'ի զօրաց Թաթարին, և մտախոհ եղեալ իմացաւ՝ եթէ մեղքն են այսմ ամենայնի պատճառ, զի ամենայն մարդ խնամով 'ի չարիս խոկայր գործել զհա-ճոյս կամաց իւրոց։ Զի կարգ ամուսնութեան սուրբ օրէ-նացն բարձաւ, և հեթանոսօրէն արիւն ընդ արիւն խառ-նէին, զազգականսն առնելով. և զոր կամէին թողուին, և զոր կամէին առնուին. և պարկեշտութեան պահոց փոյթ ինչ ոչ առնէին. ընդ հեթանոսս խառնակէին անխտիր. նա և որ մեծն է քան զամենայն չարիս, զի եպիսկոպոսք արծաթով առնէին ձեռնադրութիւն, զպարգևսն Աստու-ծոյ անարժանից ծախելով. և զմանկունսն և զտղայսն՝ որ ոչ մարթէին ուղղակի խօսել առաջի մարդկան, միջ-նորդ ընդ Աստուած և ընդ մարդիկ կացուցանէին. և անար-ժան քահանայք և պոռնկեալք և յայտնի բոզս նստու-ցեալք, առնէին քահանայագործութիւն և այլ բազում չա-րիս, զոր գործէին 'ի մեծամեծաց մինչև ցփոքունս. ըստ այսմ թէ քահանայքն և ժողովուրդքն 'ի միասին յիմա-

րեցան, և կշտամբիչ ո՛չ ոք։ Վասն այսր պատճառանաց փութացաւ գրել Թուղթս շրջաբերականս և կանոնս համաշխարհականս։ Առաքեաց ընդ Թղթոյն և զիմաստուն և զհանճարեղ վարդապետն զՎարդան՝, որ աղօթականութեան աղագաւ երթեալ էր յԵրուսաղէմ երկրպագել սուրբ տեղեացն. և եկեալ յաշխարհն Կիւլիկեցւոց առ քրիստոսապսակ արքայն Հեթում, և առ Նորին եղբարս, չոգաւ և առ կաթուղիկոսն. զոր տեսեալ ուրախացաւ յոյժ, և առ իւր պահեալ յոլով ժամանակս, սիրով կապեալ ընդ նմա, և զոր ո՛չ կամէր երբէք մեկնիլ 'ի նմանէ։ Վասն այնր պիտոյից արձակեաց զնա, և յիւրոց սպասաւորացն ընդ նմա, գրեալ յամենայն քաղաքս և յաւանս և 'ի վանորայս երևելիս և յիշխանս փառաւորս, զի մի անփոյթ առնիցեն զսահմանացն եդելոց, որ վասն հոգւոց նոցա փրկութեան. և զի ծերացեալ էր նա, զվարդապետն փոխանակ ընդ իւր ընդունեցին։ և գրեալքն 'ի նմանէ էին այսոքիկ։

## Թուղթ տեառն Կոստանդեայ շրջաբերական։

Ողորմամբ խնամոց ամենակալ Հոգւոյն Աստուծոյ այս գիր ձեռին իմոյ Կոստանդեայ ծառայի Քրիստոսի և շնորհօք նորին կաթուղիկոսի ամենայն Հայոց, զոր գրեցի յուսով հոգւոյ իմոյ առ Հայաստանեայսդ ընդհանուր լրման կողմանցդ արևելից։ Նախ առ սրբազան եպիսկոպոսունսդ, և ապա առ երկնագումար վանորայսդ, և առ մենաստանսդ ճգնաւորացն քրիստոսազգեցից՝ առ Բանին սպասաւորսդ, և զգուշակենցաղ առաջնորդսդ, և միայար եղբայրութիւնսդ այլ և քրիստոսասէր իշխանսդ, և ազնուական ազատսդ, և որ ընդ ձեռամբ ձեր են պատուական քահանայսդ, և քրիստոսազարդ ժողովրդականսդ, արս և կանայս, ծերս և տղայս, և առ ամենեսեան հասարակ հօտդ Աստուծոյ, որ էք ընդ իշխանութեամբ գաւազանի սրբոց առաքելոցն Թադէոսի և Բարդողոմէոսի, և մեծավաստակ նահատակին Լուսաւորչին մերոյ Գրիգորի, զորս ես ինձ ողորմութիւն Աստուծոյ յորդեգրութիւն հոգւոր և պար-

գնական զաւակս, զորս և ողջունեմ երկնաւոր պարգևօք; եռափափաք կարօտիւ և ծնօղական սիրով 'ի հովանիս խնամոց ամրապահ սրբոյ Երրորդութեանն, և զօրութեամբ աստուածընկալ օրհնութեանցս և շնորհաց հայրապետական աթոռոյս, այլ ընդ իս առաւել զամենայն սուրբս 'ի բարեխօսութիւն աղօթեմ առ Աստուած արտաքոյ լինել ձեզ ամենայն անախորժելի պատահարաց կրկին տեսակօք: Գիտութիւն լիցի ձեզ, զի պարտական գթովք հոգամք զձեզ զտէ և զգիշեր, և հաղորդիմք կրից ձերոց խնդականացս ըստ հայրենի օրինաց և հրամանաց սրբոց պատուիրանաց, որ և ըստ յաճախելոյ յանցանաց մերոց 'ի վաղ ժամանակաց, յաճախեաց տրտմականն մասն 'ի հարուածս գաւազանի ցասմանն Աստուծոյ, և արբոյց մեզ Տէր մրուր ուշաբարձ. և արտասուս չափով 'ի վիշտն, զոր կրեաց աշխարհդ այդ կոտորումն, կողոպուտ եկեղեցեաց հոգևոր գանձուց, մարմնական տանց և գիւղից, մանաւանդ 'ի գերութիւն գառանցն Քրիստոսի, մերոց աղեաց և անդամոց, յորոց վերայ կարօտացաք գտաբուղխ արտասուաց և խաւարատան սենեկաց, թափել զդառն կսկիծ վիրին մեր 'ի խորոց ժողովեալ: Եւ քանզի Տէառն էր պատուհասն, որոյ բազում են գթութիւնք նորա, ոչ ըստ մեղաց մերոց արար մեզ Տէր; և ոչ ըստ"., այլ պահեաց զմեզ գիտութիւն նորա՝ զմնացորդ աշխարհ յիշատակի և սերմն զաւակի աճման Հայկական զարմից, և ծիր օրհնութեան ողկուզաց հայրատունկ որթոյն՝ քրիստոսարկու ուռոցն. որոց համբաւ աճման և զարգացման որդեկաց մեր մնացելոց, և կարկատման և վերստին շինուածոյ աւերեալ տեղեացդ առ սակաւ սակաւ թափէ զտրտմութիւն մեր, և փարատէ զմութ ոգւոյն ձեր 'ի դիմաց մերոց. և կազդուրեալ մխիթարիմք, և կանգնեալ գոհանամք զԱստուծոյ, հարկանողի և բժշկողի ձեռին նորա տալով օրհնութիւն յաւիտեանս:

Բայց և երկիւղ կասկածանաց առաջիկայ ժամանակին ոչ թողու զիս. քանզի նոյն նիւթ բարկութեանն Աստուծոյ մեղքն մեր 'ի մեզ հաստատեալ է յեկամուտ չարեաց որոմանցն ցանողի, գտանելով առ մեզ, յեկեղեցի,

և յիշխանս, և յիշխեցեալսն. և զատանիմք արտաքոյ կանոնաց՝ սահմանաց հարցն մեր առաքելոց և հայրապետաց, և վասն այս հարկի մեծագունի ցանկացեալս խնդրել ճանապարհ, և անձամբ գալ, և զգուշութիւն առնել հօտից իմոյ, Քրիստոսի Աստուծոյ յիս վստահացեալ ժողովրդեանդ աղաչանօք և բանադրութեամբ և սպառնալեօք և ամենայն հնարիւք հանել 'ի ձէնջ զտեսակ ատելի դիմաց չարին, որ են մեղք. և երկնեալ զձեզ վերստին ցաւօք, մինչև նկարեսցի Քրիստոս 'ի ձեզ։ Ունէի և այլ պատճառս հարկաւոր գալստեան իմոյ, զի այր ծեր եմ ես, և հասեալ 'ի դուռն գերեզմանի, և կարօտիմ 'ի կատարածի կենաց իմոց տեսանել զորդեակս իմ 'ի Տէր, տալ ձեզ զյետին օրհնութիւն, և պահանջել 'ի ձենջ աղօթս և պատարագս թոշակ ճանապարհի իմոյ առ Քրիստոս, և լինել ձեզ ինձ յիշատակ բարի, անուանի վարուք և անխախտ կրօնիւք առաջի Աստուծոյ. և քանզի ժամանակս այս կասկածոտ և սխալական, այժմ ինչ ոչ ներեաց անձամբ գալ և կատարել զբաղձանս իմ։ Ապա այլովք հնարիւք հաստատեաց Աստուած զսիրտ իմ զարհուրիլ, և առաքեցի զարդիւնական վարդապետդ զՎարդան փոխանակ անձին իմոյ, զոր ետ ինձ նախախնամութիւնն Աստուծոյ, ձգելով առ իս 'ի կողմանց ձերոց 'ի հինգ ամաց հետէ. զոր իբրև տեսի և ճանաչեցի ըստ կարի, կարծեցի զդա միջնորդութեամբն Աստուծոյ ընդ անձին իմոյ կենօք և մահու, մեծաւ հարկիւ և սիրով բևեռեալ ընդ իս յաւիտեան։ Իսկ վասն մեծ և հարկաւոր կարեաց երկոցունց՝ զոր գրեցի վերագոյնն, առաքեցի զդա առ ձեզ յուսովն Աստուծոյ լինել զտեղի իմ ոչ 'ի դորա կամաց և խնդրոյ, այլ յիմմէ սրտէ և 'ի կամաց յօժարեցուցեալ և 'ի հրամանէ հարկեալ. և որպէս անդամ 'ի մարմնոյ կենդանւոյն հատեալ ցաւօք, որ ունի զիմ սիրտ և զբան յամենայն իրս 'ի պատեհ պատուիրանացն Աստուծոյ, և դայ՝ բերէ առ ձեզ սահման չափաւոր և դիւրագործ, քաղեալ 'ի կանոնաց և 'ի հրամանաց հարցն սրբոց 'ի պէտս եկեղեցականաց և աշխարհականաց, զոր աղաչեմ բարեխօսութեամբ սրբոց, և փոխանակ ասեմ զանձն իմ, զի ըն-

դաւանիցիք զդա սիրով, զհրամայեալսն գրոց սրբոց, և կատարիցէք 'ի փրկութիւն ձեր և յանդատապարտութիւն ատենին Աստուծոյ. Իսկ եթէ ստուգանիցէ ոք և ոչ ընկալցի, և կատարեսցէ մեղս, է աններելի. և արիւն իւր և կործանումն աշխարհի պահանջեսցի 'ի նմանէ առաջի ատենին ահաւորին և մեծի.

Բայց մեծ յուսով եմ յԱստուած ընդդիմանալ ումեք իւրում կենաց և փրկութեան, և 'ի հաւանելացդ պահանջեմ աղաչանօք փոխել իւրաքանչիւր ումեք զթուղթ կանոնական, և պահել զգուշութեամբ յաւիտեան, և ամենայն ումեք գիտելի առնել. և զիմ առաքեալ թուղթ ձեռնադրել ամենայն եպիսկոպոսացդ և առ իս առաքել ձեռօք իմոյ վարդապետիդ. Այլ և ամենայն պաշտելի և երկրպագելի սրբութիւնդ իմովս երեսօք ընկալցին զերկրպագութիւն և աղօթս գիմօք Վարդան վարդապետիդ իմ, և ձեռովդ. Նոյնպէս ընկալարուք և դուք՝ որպէս յիմմէ սրտէ և 'ի հաւատոց, բերանով դորա զհայցուածս աղօթից և պատարագաց, զոր մաղթեմ յուսալով 'ի մեծէ և 'ի փոքուէ 'ի քաւութիւն պարտեաց յանցանաց իմոց. քանզի որպէս հարք պարտին որդւոց գութ և օրհնութիւն, նոյնպէս և որդիք օրէնս ունին զպարտս հօրն վճարել. և ես յի՛ հաւատով, տարածմամբ ձեռաց իմոց խնդրեմ յԱստուծոյ միջնորդութեամբ կենսակիր սրբոցն և աղօթիւք երանուհւոյ Աստուածածնին և ամենայն սրբոց, զի ամենայն աստուածաշարժ պարգևք և օրհնութիւնք և շնորհք, զոր ետ Հայրն երկնաւոր Որդւով և սուրբ Հոգւովն աշխարհի և եկեղեցւոյ, և եկն 'ի հարց յորդիս, և այն ամենայն եկեսցէ և հանգիցէ յոգիս ձեր, և յեկեղեցիս ձեր, և յաշխարհս և յիշխանութիւնդ, և 'ի հոգիս ննջեցելոց ձերոց 'ի հանգիստ նոցա, և կենդանեաց 'ի փրկութիւն հոգւոյ և մարմնոյ, յաճումն և 'ի բազմանալ նորոյս Իսրայէլի քրիստոսական հօտիդ առաւել քան զբազմութիւն և զպայծառութիւն աստեղաց օրհնեսցին երկիր շնորհօք ամենայն ինչք ձեր կայուն և գնայուն, և պարարտասցին և պտղաբերեսցին անդաստանք ձեր, և այգեստանք ձեր և ամենայն պտղաբերք երկնաւոր ցօղովն և շնորհօք Աստուծոյ

լցելովք, յորոյ վերայ առատացեն ամենայն մերձաւորք Աստուծոյ երկնաւորք և երկրաւորք՝ եղիցի, եղիցի. ողջ լերուք, և անյարմար գրոյս անմեղադիր. զի փափաքեցի իմով ձեռամբ գրել առ ձեզ: Գրեցաւ և միւս թուղթ կանոնական եկեղեցականաց, և առաքեցաւ ընդ շրջաբերականին 'ի ձեռս նոցունց՝ այսպէս:

## Սահմանք կանոնականք Տեառն Աղեքսանդրեայ Հայոց կաթողիկոսի:

Աղեքսանդրին ծառայ Քրիստոսի, և շնորհօք նորին կաթուղիկոս ամենայն Հայոց, օրհնութեամբ և ողջունիւ և սիրով Աստուծոյ ծանուցանեմ լոման եկեղեցւոյդ Հայաստանեայց, վիճակելոյ ընդ իշխանութեամբ գաւազանի սըրբոց առաքելոցն Թադէոսի և Բարդուղիմէոսի, և մեծավաստակ նահատակին Գրիգորի, և մերում կրսերութեանս: Հրաման է այս առաքելադիր, որ 'ի տարւոջն երիցս անգամ առաջնորդք եկեղեցւոյ ժողովով տեսանեն զկարգս եկեղեցւոյ, թէ որպէս ունիցին զպահմանս եկեղեցւոյ յաւիտենականս՝ զոր Հոգին սուրբ հաստատեաց, զպահպանեալ լինել, և զեկամուտ որոմն խլել. և այս պատուիրան 'ի բազում ժամանակաց խափանեալ եղև յաղագս ազգիս ցիր և ցան լինելոյն, և հեռաւորութեան, և մուխտարայ ճանապարհաց: Այլ զի իրաւունք արդար դատաստանին Աստուծոյ յիշատակ արար անկարգութեան և անիրաւութեան աշխարհի, յետ բազում երկայնմտութեան և ներողութեան արբոյց զբաժակ բարկութեան իւրոյ յոլովից ազգաց և ժողովրդոց, ընդ որս և մեք գտաք դատապարտք, և տուաք տոկոսիս ազգակցօքն մերովք և հոգևոր ուսուցչօք և դասերովք: Քանզի աշխարհ, որ լի էր մեղօք և անիրաւութեամբ և արատաւոր և դիակոյտ ոսկերօք կոտորուածոց՝ գազանակուր եղելոց, և մնացեալքն 'ի սրոյ անընդել ճանապարհաւ փախստականք եղեն յազգս հեռաւորս, և փափուկքն մեր և աղատք որդիք Սիոնի, և գաւիթքն Քրիստոսի, զուգակշիռքն ոսկւոյ և արծաթոյ և ա-

կանից պատուականաց, խրթնի զաղբ անպիտան և ընկեցիկս և արհամարհեք և անծանօթք եղեն։ Այլ և երկրպագելի նշանք և սպասք անարգայն և անարժանից ձեռաց յանարժան պէտս վարելով՝ հանդերձ սպասալիմամբք քաղաքաց և ամայութեամբ գաւառաց, զորս ոչ ոք կարէ զբովանդակն պատմել, և արժանապէս ողբալ։ Բայց քանզի ողորմութիւնն Աստուծոյ եթող մեզ սակաւուին սերմն կենաց, և զաւակ յուսոյ յաշխարհիդ Արևելից 'ի յիշատակ առ մեզ երախտեացն Աստուծոյ, որ վասն աղօթից նախնեացն մերոց սրբոց 'ի մխիթարութիւն մեզ վասն բազում գթութեան իւրոյ, և էք դուք ժողովրդապետք այսօր և ժողովուրդք, վանորայք և քաղաքք և գաւառք, յետ բազմագիւղի վշտացն՝ զոր կրեցէք, և գայ 'ի ձեզ օրհնութիւն և յոյս անձման և վերացման 'ի փառսն աստուածինն. և էք Քրիստոսի և մեր սեպհական ժառանգութիւն և պարծանաց զաւակք, և յանձնեալ էք մեզ 'ի պէտս հոգևորս։ Վասն որոյ 'ի վերայ բազում արտասուացն՝ զոր հեղաք վասն ձեր 'ի բեկման աւուրն և յաւերման և կոտորման մեզաւորեր որդյն, և այսօր մխիթարիմք ձեօք մնացելովք, և գոհանամք զԱստուծոյ, այլ և միշտ զարհուրիմք և դողամք յերկիւղ կատականաց նոյն անցիցն զոր կրեցաք. քանզի և նոյն պատճառք բարկութեան Աստուծոյ գտանին այսօր առ բազումս, որ է կեանք, և վարք արտաքոյ կամացն Աստուծոյ, և կանոնաց հրամանաց։ Վասն որոյ յառաջ քան զերթս առ ձեզ գնացաք մեք դրան սպասաւորացս լրմամբ հանդերձ ամենայն մերձակայ գաւառաց եպիսկոպոսօք յաշխարհին Կիւլիկեցւոց առ քրիստոսապսակ Թագաւորն մեր Հեթում, և մերով հրամանաւ և Նորին ձեռնտուութեամբ ժողովեցաք զեպիսկոպոսունս և զվարդապետս և զքահանայս և վանաց առաջնորդս, և զիշխանս և զիշխեցողս, որս երևելիս, և արարաք հանդէս մեծ, քննեցաք զպատուէր և զհրամանն Աստուծոյ, և Աստուծոյ մերձակայից առաքելոց և հայրապետաց, և գտաք զմեզ բազում մասամբք մոլորեալք և դատապարտք և անպատասխանիք. և որքան կարացաք՝ ուղղեցաք զմեզ և ողջացաք. Զկնի յորով քննութեանն՝ ամենայն կամակցութեամբ և ձեռնագրով,

մերձակայից։ Է. Աւազանն հաստատուն լիցի և անշարժ, և փարագուրաւ ծածկած. զի մեծ է խորհուրդն։ Ը. Զպսակն ընտրութեամբ արասցեն՝ վեց ծննդովք հեռացեալ յազգակցութենէ արեան. փեսայն մի՛ պակաս քան զչորեքտասան ամի, և հարսն քան զերկոտասան։ Թ. Օտար յաշխարհէ եպիսկոպոս կամ վարդապետ կամ երէց, կամ զերդ տէր առանց թղթոյ եպիսկոպոսին մի՛ շրջեսցին, կամ շինեսցեն. այլ նորա հրամանաւ ըստ պատշաճի։ Ժ. Գրոց դատաստանացն բազմաց վկայութեամբ լիցի, որ գիտունք լինին, և ամենայն գրոց վարժ և տեղեակ, և փորձ ամենայնիւ. Նմանապէս և գրոց աշակերտ ընտրութեամբ նորին և առնել փորձիւ և վկայութեամբ կատարելոց։ ԺԱ. Եւ հրամայէ եպիսկոպոսն զսուրբ գիրս եկեղեցւոյ գրել արուեստաւորաց և ուղղափառաց և գիտնոց։ ԺԲ. Երկիցս անգամ շրջեսցի եպիսկոպոսն ՚ի տարւոջն յիւր թեմն, և հանդէս արասցէ իւր հօտին, և սուրբ գիտուն քորեպիսկոպոս դիցէ, որ զեկեղեցւոյ դատաստանն ըստ կանոնաց առնել մարթասցէ, երկիւղած և անաչառ։ ԺԳ. Ծեր և գիտուն խոստովանահայրս կարգեսցեն, որ յամենայն կիրակէի առանց դրամի ՚ի խոստովանութիւն կոչեսցէ շաբաթուն յանցանաց. և քահանայքն խոստովանահարցն հրամանաւ զիւրեանց ժողովուրդքն զարժանաւորսն հաղորդեսցեն առանց դրամի։ ԺԴ. Ըզ հաղորդն առանց բուրվառի և մոմեղինի մի՛ տարցին առ հիւանդն, այլ մեծաւ երկիւղիւ. իսկ ժողովուրդքն չեն յիւրեանց հրամանքն, ո՛ւմ կամին ծուլս լինել. այլ որպէս եպիսկոպոսն հրամայեսցէ։ ԺԵ. Առնել ջան տարցեն եպիսկոպոսք և քորեպիսկոպոսք դպրոնիկսն և զշնացողսն, ըզ հմայս և զամենայն յանցաւորսն գեհենին երկիւղիւ ՚ի դարձ ածել։ Իսկ զանդարձսն մարմնաւոր պատուհասիւ և հոգեւորաւ խրատել և տուգանել. մանաւանդ զայնպիսիսն, որ այր և կնոջ մէջ մտցեն, կամ բոզ ունիցին կին, կամ ըզ կին թողուն զօրինաւոր և առ բոզս երթան, կամ առելութեան պատճառաւ թողուն զկանայսն առանց բանի պոռնկութեան. զայսպիսիս անողորմ տուգանօք խրատեսցեն. և թէ պատուաւոր մարդ է, և ընդդէմ առէ եկեղեցւոյ օրինաց, թագաւորն խրատեսցէ յատենի զմեղքն. և

իշխանք մեղադրանօք, եթէ ոչ առնեն զայս, և նզովք.
և թէ կին լքի և մարդ խաբէ կանամբի կամ՝ ազապ, խրատ
տացէ յերեսն։ ԺԵ. Ամենայն պահք ըստ կանոնաց առանց
ձկան և ձիթոյ և գինոյ, բայց 'ի հարկէ՝ հիւանդութեան,
առաւել աղուհացիցն, և ուրբաթին և չորեքշաբաթին, որ
Քրիստոսի չարչարանաց աւուրքն են, որ զայս լուծանէ,
տուգանեսցեն և յաղքատս տայցեն, և պահօք վճարեսցին
յԱստուծոյ։ Նախ քան զայս և յառաջ քան զամէնն զայս
եմք հոգացեալ առաջի արքային Հեթմոյ և հօր իւրոյ կոս-
տանդեայ և ամենայն իշխանայն, և բանադրանօք բանա-
դրեալ յամենոյ վերայ, որոյ օգնական լինին եկեղեցւոյ, և
յամենայն տեղիս 'ի մեծ և 'ի փոքր յիշոց, աւագ դնեն
'ի գարպաս, 'ի քաղաք, 'ի գիւղս և յագարակս, և զա-
նօրէն յիշոցաստացսն, զբարկութիւն Աստուծոյ շարժողսն,
և զաններելի անօրէնսն, որ անարգեն զհաւատսն, զատեղ-
ծօղ, զկնունք, զհրեշտակ, զքահանայ, զբերան, զերես,
զգերեզման, և զայլ այսպիսիս զնոր բուսեալ չարիսդ,
զայնպիսիսացն զլեզուսն հատցեն, և կամ ծակեսցեն, և լաք
'ի ներս ածցեն, և նախատանօք 'ի շուրջ ածցեն օր մի,
և ըստ գոյին տուգանս առցեն, և յաղքատս տայցեն։
ԺԶ. Թէ քահանայ գտանի 'ի վերոգրեալ մեղսդ, կրկին պա-
տիժ ընկալցի և տանջեսցի կարգաւն հանդերձ։ ԺԷ. Քահանայ
որ զատ յեկեղեցւոյ գործոյ, այլ գործս առնէ՝ նոտարու-
թիւն կամ որսորդութիւն, զժողովուրդսն 'ի բաց առցեն
'ի նմանէ. նմանապէս զանուսումն երիցանց, մինչ լաւ ուս-
ցին, և զանարժանիցն ևս առցեն։ ԺԸ. Քահանայն 'ի տար-
ւոջն յեկեղեցին ժողովեսցէ զարսն առանձինն, և զկանայսն
առանձինն, և որիշ զկուսան աղջկունսն, և որիշ զտղայսն,
զմանրէրսն և ըստ իւրաքանչիւր պատշաճի խրատեսցէ. ա-
ղաչանօք և սաստիւ. և իմացի իւրաքանչիւրոցն զվարքն,
և դիտեսցէ հանապազ. և թէ ինքն չէ՝ բաւական, 'ի ձեռն
այլ կատարելոյ արասցէ, որպէս ասէ սուրբն Աթանաս
յիւր կանոնքն։ ԺԹ. Ժողովրդականքն յօժարութեամբ և
աղաչանօք տացեն զհաս քահանայիցն յամենայն արմա-
տոց պտուղս, և զկարգեալ բաժին մատաղին, և պսակին
ընծայիւք, և թաղմանն հանդերձ, և ժամու դրամ՝ ոչ

գին պատարագին, այլ երիցուն հանդերձի և կերակուրի. որ աղօթից և պատարագի պարապի յեկեղեցին: ԺԷ. Երիցունք ըստ ժողովրդեանն ծառայեսցեն եպիսկոպոսին, սահմանեալ հասիւն, և ընծայիւք ըստ պատշաճին: ԺԸ. Եպիսկոպոսունք ծառայեսցեն զհայրապետական աթոռն կարգեալ հասիւն և ընծայիւք արժանաւորիւ ըստ կանոնաց. զի սուրբ Լուսաւորիչն գրեալ է թէ քահանայքն զժողովուրդն տասանորդեսցեն, և եպիսկոպոսք զքահանայս, և հայրապետք զեպիսկոպոսունս. արդ եթէ զայն չառնէք, ապա զչափաւորն և զպակասն՝ զոր գրեցաք, խնդութեամբ տուք, իբրև զօրհնութիւն և մի՛ իբրև զագահութիւն. այլ աթոռքըն հաստատ և անկարիք մնայ, և եկեղեցիքն պայծառ, և Աստուծոյ օրհնութիւնն խառնի յարդիւնս արդարութեան ձերոյ. զի զայն Աստուծոյ կուտայք, և ոչ մարդոյ: ԺԹ. Զայն երկու աղօթքն, յորոյ վերայ սուրբ Աստուած ասեմք՝ զփառք 'ի Հայր և յՈրդի և 'ի սուրբ Հոգին, մի՛ աւարտէք. զի մի՛ յԵրրորդութեան վերայ թուեսցի խաչն. զկատարած լուր ձայնիցն ասել պիտի, զոր միշտ 'ի բարձունս առաքեսցուք ամենազօր տէրութեանդ՝ Քրիստոս Աստուած. այժմ և": Զգոհանամքին վերջքն՝ լիցուք տաճար և բնակարան աստուածային շնորհացդ, և գոհութեամբ փառաւորեսցուք զքեզ Քրիստոս. այժմ": Ի. Ի Փռանգաց գրեալ են առ մեզ, թէ զտեառն եղբօր հրամանն ընդէ՞ր ոչ առնէք. զհիւանդն 'ի ժամուն մահու օրհնել, ձիթով օծանել, որ թէ մեռանի՝ օծումն լինի թաղմանն, և թէ ապրի՝ լինի 'ի քաւութիւն մեղացն և պատճառ առողջութեանն. և գիտէք, որ Օձնեցին Յոհան՝ որ զանեալ է զմեզ յազգացդ, գրեալ է՝ որ առնէք. և պարտ է առնել, և արարէք ստուգիւ. միայն զգուշասցի քահանայն, և զձէթն սակաւ օրհնեսցէ, որ աւելի չգայ, և նզովք առցէ յԱստուծոյ և 'ի մէնջ. և լինի պատճառ գայթակղութեան. զայս պատեհ տեսաք, և գրեցաք յետոյ, և հարկաւոր. ողջ լիջիք տէրամբ:— Որ զայս չափաւոր բանքս գրէ և պահէ և հասկացնէ և գործովք կատարէ, պահեսցէ նմա տէր Աստուած զգութ և զողորմութիւն իւր. և որ անգոսնեսցէ և արհամարհէ, յանցաւոր լիցի առ մեզ

և առ արքայ, և Աստուծոյ ամենին պատասխանի տացէ ամենայնի։ Եւ եկեալ վարդապետն Վարդան, և որք ընդ նմա առաքեալքն 'ի կաթուղիկոսէն յԱրևելս, և շրջեալ ընդ գաւառս Հայոց, յեպիսկոպոսս և 'ի վանորայս և յիշխանս, և տուեալ ամենեցուն զհրամանս կանոնականս, և պահանջեալ յամենեցունց ձեռագիր հաւանութեան սահմանին եդելոյ։ Եւ զի ամենայն ոք խոտորեալ էր 'ի ճշմարտութենէն, ըմբռնեալք ախտիւ ագահութեան և արծաթսիրութեան, ծանր թուեցաւ հրամանն. բայց սակայն ոչ իշխեցին արհամարհել, այլ 'ի վերին երեսս մեծարեցին, և ետուն ձեռագիր երդմամբ և նզովիւք առնել զհրամանն— Եպիսկոպոսն Կարնոյ քաղաքի Սարգիս, և եպիսկոպոսն Կարուց Յակոբ, և եպիսկոպոսքն Բջնոյ՝ Վանականն և Գրիգոր, և եպիսկոպոսն Անբերդոյ Մկրտիչ, և եպիսկոպոսն Հաղբատայ Համազասպ, և այլ եպիսկոպոսքն, որ 'ի կողմանս կողմանս, և գլխաւոր վանորայքն՝ Սանահինն, և Գետիկ, և Հաւարծինն, և Կեչառուս, և Հաւուց Թառ. և Այրի վանք, և Յոհաննու վանք, և Հոռոմոսի վանք, և որ շուրջ զնոքօք։ Նա և կաթուղիկոսն Աղուանից տէր Ներսէս, և եպիսկոպոսն Յոհաննէս, զոր Տուեցին կոչէին, և մեծ հռչակաւոր վարդապետն Վանական, և իշխանաց իշխանն Աւագն, և այլ իշխանքն։ Եւ առեալ զայս գիր հաւանութեան իմաստնոյ վարդապետին Վարդանայ, առաքէ առ կաթուղիկոսն Կոստանդին 'ի Կլայն Հռոմէական, և ինքն եկեալ 'ի Կայանոյ 'ի միայնարանն իւր, զոր սուրբ Անդրէ կոչէին, հանդէպ անառիկ բերդին Կայանոյ, և անդ դադարեալ յուսուցանել զբազումս, որք աշակերտէին նմա, վարդապետական բանին։ Եւ 'ի գալ ամին երկրորդի, յորժամ ՈՂԸ էր թուականս Հայոց, առաքինի կաթուղիկոսն Կոստանդին առաքէ եկեղեցեաց արևելից ընծայս՝ մետաքս առէջս 'ի կերպասուց, պէսպէս գունով մեծագինս, նշխարս 'ի սպաս պատարագին սրբոյ 'ի ձեռն Թէոդոսի սպասաւորին իւրոյ 'ի պատուաւոր վանորայս, և շրջաբերական նամակ շիրմի առաքելոյն Թադէոսի տալ նմա զքաղաքս և զվիճակն, շրջակայ գաւառսն և յոլովս 'ի շէնութիւն գաւթին, զոր շինէր վարդապետն Յոհանէս, յետ

աւերածոյն՝ որ 'ի Թուրքաց, և 'ի Հենիցն Վրաց. քանզի յոլով ժամանակս անբնակ էր 'ի մարդոյ և ամայի: Եւ Յովսէփայ երթեալ առ զօրագլուխ մի Թաթարին, որոյ անուն էր Անագուրակ նուին, որոյ իշխանքն իւր յաւուրսն ամարայնոյ հուպ էր 'ի գերեզմանն սուրբ առաքելոյն Թադէոսի, և նորա հրամանաւ սրբեալ զեկեղեցին և նորակառոյց կատարեալ, շինեաց զվանսն, և ժողովեաց 'ի նա կրօնաւորս բազումս: Եւ այլն Թաթարն ընդարձակեաց զճանապարհն յամենայն կողմանց աներկիւղ գալ ուխտականացն ընդ մէջ զօրաց նորա, պատուէր հրամանի տուեալ ստուգութեամբ՝ մի՛ զոք զրկել և նեղել, որ կամիցին գալ, և ինքն սիրով խոնարհէր առ նոսա. և բազումք 'ի նոցունց գային և մկրտէին զուստերս և զդստերս իւրեանց. և բազում պատահարք և հիւանդք բժշկէին. և փառաւոր լինէր անուն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Այլ և ամենայն զօրքն Թաթար ո՛չ էին Թշնամի խաչի և եկեղեցւոյ, այլ և յոյժ պատուէին, և ընծայս մատուցանէին. քանզի նախանձ հակառակութեան առ նոսա ո՛չ գտանիւր:

## Վասն Կաթողիկոսացն՝ որք եկին 'ի Պոլիսն:

Իբրև առ զմեծ Թագաւորութիւնն Թաթար զօրուն՝ որ յաշխարհն իւրեանց Ղանն Գիւուգ, իսկոյն առաքեաց առս հարկապահանջս 'ի զօրս իւր, որ 'ի կողմանս և յաշխարհս՝ զոր հնազանդեցին նոցա, առնուլ տասանորդս յամենայն ստացուածոց զօրուն, և հարկս 'ի գաւառաց և 'ի Թագաւորացն՝ որք նուաճեալ էին նոցա, 'ի Պարսից և 'ի Տաճկաց և 'ի Թուրքաց, 'ի Հայոց և 'ի Վրաց և յԱղուանից և յամենայն ազգացն՝ որ ընդ նոքօք, որոց գլխաւորք էին հարկահանացն արք Խիտայք և յափշտակողք, անուն միոյն Արղուն, որ ամենիցն իշխէր, և երկրորդին Բուղա, որ չարագոյն ևս էր քան զայլն Բուղայն, որ յաւուրս Չաւրղի խամայէլականին եղ 'ի Հայս և աւերեաց բազում աշխարհս: Նմանապէս և այս Բուղա եկեալ 'ի զօրսն Թաթար, մտանէր 'ի տունն աւագանւոյն, և զոր ինչ ախորժ Թուէր իւրն՝ առնոյր անխնայ. և ո՛չ ոք իշխէր ասել ինչ նմա.

զի ժողովեալ էր իւր առս սրիկայս 'ի Պարսից և 'ի Տաճ-կաց, որք անխնայ գործէին զգործ խակութեան, և թըշ-նամիք էին առաւել քրիստոնէից։ Վասն որոյ չարայուցին զնա 'ի վերայ բարեպաշտ իշխանին Հայաստանեայ, զոր Ջա-լալն ասէին, որ ըմբռնեաց զնա 'ի մեծ դրանն առաջի ա-մենայն աւագանւոյն; և ընդ բազում պատժօք զնա արկեալ, քակեաց զանմատչելի բերդս նորա, զոր խոյականայ բերդ կոչէին, ըստ Պարսկական բարբառոյն, և զգեղն և զծի-րանաքարն, և զայլ ամրոցս նորին. և այնպէս յատակեաց զնոսա, մինչև հեաք անգամ ոչ երևէին, թէ բնաւ չէին լեալ իցէ. և բազում ոսկի և արծաթ առեալ 'ի նմանէ, հազիւ զերծաւ 'ի նմանէ. և մեծամեծ աւագանին ոչինչ կարաց օգնել նմա. այսպէս աՀարկու ամենայն տեսողացն։ կամեցաւ և զիշխանաց իշխանն Աւագն նոյնպէս ըմբռնել 'ի տանջանս և 'ի ձաղանս, և ազդեցուցին նմա մեծամեծ աւագանին, թէ մի՛ երկնչիր, այլ զամենայն զօրս քո ժո-ղովեա և այնպէս երթ 'ի տեսութիւն նմա. և թէ դէպ լիցի ըմբռնել զքեզ, կալջիր դու և զնա. և այնպէս ա-րարեալ՝ չոգաւ առ նա բազում զօրօք։ Զոր տեսեալ Բուղայն՝ երկեաւ, և ասէ ցնա. զի՞նչ է այդ բազմութիւն զօրաց. մի՞թէ ապստամբ իցես 'ի Ղանէն, և եկիր սպանա-նել զմեզ։ Եւ ասէ ցնա Աւագն. և դու ընդէ՞ր ժողովե-ցեր զբազմութիւն արանց չարագործաց Պարսից, և եկիր նենգիւ ըմբռնել զմեզ։ Եւ իբրև գիտաց Բուղայն՝ թէ յայտնի է նմա նենգութիւն նորա, խօսեցաւ ընդ նմա 'ի խաղաղութիւն. բայց հանապազ 'ի միտ իւրում խորհէր նմա 'ի չարութիւն գտանել 'ի դիպող ժամանակի կատա-րել զկամս չարութեան. և մինչդեռ զայսպիսի չարիս խոր-հէր, ժամանեցին նմա արդար դատաստանքն Աստուծոյ, եւ վէրս 'ի փորս նորա յանկարծակի և հեղձամղձուկ սա-տակեցաւ չարն չարեաւ. և այսպէս վերացաւ ամբարիշտն և ոչ եսես զփառսն Աստուծոյ։

## Վասն Խնդրուածոյն Վրաց եկեղեցւոյ առ Վահանն։

Թագաւորութիւնն Վրաց յայսմ ժամանակի նուաղեալ էր, որ յառաջ քան զաւերս մի ձոր էր, եմուտ ընդ լը-

ծով ծառայութեան Թաթար զօրուն, որ յարևելս, որոց գլխաւոր Բաչու Նուինն՝ յետ մահու Չարմաղունին։ Իսկ էր 'ի ժամանակս յայսմիկ Թագաւոր Վրաց կին մի՝ Ռուզուդան անուն, որ ղօղեալ ամրացաւ յանառիկ վայրս Սուանեթոյ։ Եւ դարձին առ նա դեսպանք յերկուց կողմանց՝ 'ի զօրաց Թաթարին 'ի մեծ զօրավարէն՝ որ 'ի կողմանս հիւսիսոյ, որում անուն էր Բաթու, մեծաւոր ազգականն Ղանին, որ ամենից իշխէր, այլ և Ղանն առանց նորա հրամանի ոչ նստէր յաթոռն. և 'ի միւս զօրավարէն՝ որ 'ի կողմանս Հայոց, որ Բաչուն կոչէր, գալ առ նոսա սիրով խաղաղութեամբ, և իշխել տէրութեան իւրոյ՝ նոցուն հրամանաւ։ Իսկ նա քանզի կին գեղեցիկ էր, ոչ իշխեաց առ մի ոք 'ի նոցանէ գնալ. զի մի՛ խայտառակեսցի 'ի նոցունց, այլ զորդի իւր մանուկ տիովք թագաւորեցուցեալ, որում անուն էր Դաւիթ, առաքեաց առ Բաթոյն զօրավար։ Իսկ այս գլխաւորքս՝ որ ընդ Բաչու Նուինն էին 'ի կողմանս արևելից, որ ըմբռնեալ էին զամենայն աշխարհ իշխանութեան նորա, և իշխանքն նորա առ նոսա կային, իբրև տեսին՝ թէ ոչ եկն առ նոսա թագուհին և զորդին իւր առաքեաց առ Բաթոյն, դժկամակ եղեալ ընդ իրսն, առաքեն առ Ղիաթատին Սուլտանն Հոռոմոց և բերեն անտի զեղբօրորդին Ռուզուդանայ՝ զորդին Լաշայ Գիորգեայ Վրաց Թագաւորին, զոր նոյն Ռուզուդան առաքեաց զհետ դստերն իւրոյ, որ էր կին Ղիաթատին Սուլտանին, և նա եդ զնա յարգելս, զի մի՛ դաւ լիցի զզքանչին իւրոյ վասն թագաւորութեան։ Եւ սոցա ածեալ զնա անդուստ, տան զիշխանութիւն նորա 'ի ձեռս նորա, և առաքեն զնա առ արքայն իւրեանց Ղանն հաստատել զնա յիշխանութեանն. և ինքեանք դեսպանս առաքեն ստիպով մի զմիոյ կնի առ Թագուհին Ռուզուդան գալ առ նոսա կամաւ և ակամայ։ Նոյնպէս և Բաթոյն առաքեաց զորդի նորա առ Ղանն, և յինքն կոչէր զՌուզուդան երթալ առ նա։ Եւ նորա նեղեալ յերկոցունց կողմանց, իւրովի դեղ մահացու էառ և վճարեցաւ 'ի կենացս. և գրեաց գիր կտակի առ իշխանն Աւագ, և յանձնեաց 'ի նա զորդին իւր, եթէ դարձցի 'ի Ղանէն։ Իսկ նոցա գնա-

ցեալ առ Ղանն Գիւուգ, և նա սիրով ընկալաւ զնոսա։ Եւ սահմանեաց նոցա ըստ կարգի ունել զթագաւորութիւնն. նախ որ աւագն էր 'ի նոցունց Դաւիթ, որդի Լաշային Գիորգեայ. և յետ վախճանի նորա, թէ կենդանի իցէ միւս Դաւիթ, որդին Ռուզուդանայ՝ նորին հօրաքեռ որդին։ Եւ զգանձս թագաւորութեան յերկս բաժանել, ըզ թաղթն պատուական և զանգին, և զթագն հրաշալի, զոր ոչ ունէին այլ թագաւորք, զոր ասեն Խոսրովու լեալ հօրն Տրդատայ մեծի, Հայոց արքայի, և անդ մնացեալ զաղթականութեամբ վասն ամրութեան տեղւոյն, և 'ի թագաւորսն վրաց անկեալ, և մնացեալ մինչև ցայսօր. զայն և զայլ պատուականս 'ի գանձուցն առաքել Ղանին, և զայլսն բաժանել 'ի վերայ իւրեանց. զոր եկեալ արարին այնպէս միաբանութեամբ Աւագին՝ որդւոյն Իւանէի։ Եւ նստէր Դաւիթ որդի Լաշային 'ի Տփխիս քաղաքի, և միւս Դաւիթն 'ի Սուանեթ։

Վասն երթալոյ առ Ղանն Սմբատայ զօրավարին Հայոց և որդւոյ Ղիաթադնի Սուլտանին։

Արքայն Հայոց Հեթում, որ 'ի Կիլիկիա, առաքեաց զեղբայր իւր Սմբատ զօրավարն առ Ղանն երևելի պատարագօք. և նորա երթեալ խաղաղութեամբ զերկայնութիւն ճանապարհին, և յոյժ մեծարեալ 'ի նմանէ, դարձաւ երևելի փառօք, և հաստատութեան հրովարտակօք առեալ նմա զաւառս բազումս և բերդս յոլովս, զոր յառաջ լեալ էր Լևոնի արքայի, և զկնի մահուանն առ 'ի նոցունց Ալադին Սուլտանն Հոռոմոց։ Մեռաւ Ղիաթադին Սուլտանն, և մնացին նորա որդիք երկու մանուկ տիօք. և ընդ հակառակս լեալ նոցա, չոգաւ միոյն 'ի նոցանէ առ Ղանն, և առ 'ի նմանէ զիշխանութիւն հօր իւրոյ, և դարձաւ ընդ Սմբատայ զօրավարին Հայոց. և եկին առ Բաչու Նուին և առ այլ աւագանին. և նոցա հաստատեալ զհրամանս արքային իւրեանց, տան զօրս զկնի նոցա տանել զնոսա յերկիր իշխանութեան իւրեանց։ Եւ իբրև հասին 'ի քա-

հեռաղ 'ի տեղւոջն՝ լուան զայն. և ազդեցուցին գլխաւորացն. և իբրև ցրուեցան զօրք իշխանացն յիւրաքանչիւր տեղիս, ապա նոցա այսպէս զինեալ կամէին առ հասարակ կոտորել զամենեսին. և յիշխանացն՝ զորս գտան առ իւրեանս, 'ի կալանս արարին. և որք ո՛չ էին անդ, հրաւիրակս առաքեցին փութով առ իւրեանս կոչելով։ Իսկ ողորմածն Աստուած ո՛չ ետ թոյլ կատար լինիլ իրին, խափանեաց այսպիսի պատճառաւ. մի ոմն յաւագ գլխաւորացն, որ զօրավար էր ամենայն զօրուն, Չաղաթա անուն նորա, որ բարեկամն էր Աւագին, եկաց 'ի մէջ վառեալ զօրացն, և ասէ ցնոսա. մեք ո՛չ ունիմք հրաման 'ի Ղանէն կոտորել զայնոսիկ, որ հնազանդեալ են մեզ, և կան մեզ 'ի ծառայութիւն, և հարկատուք են Ղանին. և իբր ապստամբութեան նոցա ճշմարտեալ. արդ եթէ կոտորէք զնոսա առանց պատճառի, դուք տայք պատասխանի Ղանին. և լուեալ զայս, դադարեցին ստուգել զիրն։ Եւ գնացեալ առ նոսա մայրն Աւագին, որում անուն էր Խոշաք, երաշխաւոր լինէր վասն որդւոյն իւրոյ միամտութեան առ նոսա. և թէ ինքն իսկ ընդ հուպ գալոց է առ նոսա, որ եղեն իսկ. զի եկն վաղվաղակի իշխանն Աւագ, և եցոյց զիւր մտերմութիւնն առ նոսա բազում վկայիւք։ Եկն և Թագաւորն Դաւիթ, և այլ իշխանքն, և կապեալ զամենեսեան ուժգին ըստ օրինի իւրեանց զձեռս և զոտս բարակ չուանօք, և թողեալ այնպէս աւուրս կապեալ՝ ծաղէին և անարգէին զնոսա վասն հպարտութեանն և ապստամբ խորհրդոյն. և ապա առեալ զամենայն երիվարս և զզէնս գլխոց նոցա, թողին զնոսա. և ինքեանք յարձակեցան 'ի կողմանս Վրաց 'ի վերայ բազում գաւառաց, ո՛րք ապստամբք, և ո՛րք ոչ, և զբազումս կոտորեցին, և զեւս բազմագոյնս գերի վարեցին, զարս և զկանայս և զմանկունսն զեստամոյն ամենեցին անթիւ 'ի բազմութենէ. և այս գործեցաւ 'ի ոՂԸ թուականին Հայոց։ Յետ սակաւիկ ժամանակի իշխանաց իշխանն Աւագ, և թաղեցաւ 'ի Պղնձահանքն 'ի գերեզմանի հօր իւրոյ Իւանէի։ Եւ ետուն զիշխանութիւն նորա Զաքարէի որդւոյն Շահնշահի, հօր եղբօր որդւոյ Աւագին. զի Աւագն որդի ո՛չ ունէր. բայց

միայն դուստր մի երախայ, և 'ի պատանեկութենէ որդի մի երախայ, զոր յետ մահու նորա ասացին թէ 'ի նմանէ է. զոր առեալ քոյր նորա սնուցանէր. և ապա հանեալ 'ի Զաքարէէ եառուն կնոջ Աւագին, որում անուն էր Գոնցա։

## Վասն Դաւթի Մոլեգնոյն։

Կատարած աշխարհիս մօտեալ է, և վասն այնորիկ կարապետք նշանին բազմացան, որպէս յառաջագոյն ասաց կենարարն. «մերձ 'ի կատարածն յարիցեն սուտ քրիստոսք և սուտ մարգարէք տալ նշանս և արուեստս դիւականս, մինչև մոլորեցուցանել, թէ հնար ինչ իցէ և զընտրեալսն»։ Արդ 'ի ՈՂԸ թուականիս Հայոց եղև այսպիսի ինչ. համբաւ հանին թէ 'ի սահմանս խաչենոյ կարկուտ եկն, և խառն ընդ կարկտին ձկունք բազումք անկան յերկիր, չափ թզոյ միոյ։ Աչօք մեր ոչ տեսաք, բայց բազումք էին՝ որ հաւատարմացուցանէին, թէ ականատես լեալ եմք։ Ընդ այնոսիկ և միւս ևս յօդուած բանի հանգոյն առասպելեաց առէին՝ թէ յեզր ծովուն Գեղամայ աւան մի է, Կոթ անուն. 'ի սահմանս այնր գեղջ հուպ 'ի լեառն գտին մարդ մի հսկայաձև՝ մեռեալ և կիսաթաղ, նոր հանդերձ ունելով, և կօշիկս նորս, և հանդերձ սրածին ծակ, որպէս թէ խոցած աշտէիւ, և 'ի վերայ սակաւ մի բամբակ. և յորժամ առնուին զբամբակն, սաստիկ արիւն փիժէր 'ի նմանէ. և իբրև դնէին դարձեալ 'ի վերայ զբամբակն, արգելոյր զարիւնն. և թէ այլ նոր բամբակ դնէին՝ և ոչ զհինն, նոյնպէս հոսէր արիւնն, մինչև դնէին զառաջինն. զայսոսիկ յոլովք շաղակրատէին, թէ ճշմարիտ է և թէ սուտ, մեք ոչ գիտեմք։

Բայց այս եղև ստուգութեամբ, զի 'ի սոյն ամի յարեաւ մոլար ոմն, Դաւիթ անուն, դիւական հոգւով շարժեցեալ՝ հանգոյն Յուդայի և Դևթային մոլորեցուցչաց. Գիւղ մի է 'ի սահմանս Գեղարքունեաց ծովուն, 'ի կողմ խաչենոյ հուպ 'ի բերդն, որ Ջերմուկն է, Դպար անուն, 'ի նմա էր այս չար 'ի չքաւորաց և 'ի անանկաց, պահէր զխաշինս նոցա, և յայնմանէ կերակրէր ինքն և կինն իւր.

վարդապետաց երկրպագումնք նոյնիւք և ուղղակի զհաւատացեալ-ւոց խոստովանութիւնն. և լի են ամենայն Աստուածաշունչ գիրք այնպիսի նոյնիւք: Որպէս գրեաց վէմն հաւատոյ երանելին առաքելոյն Պետրոս, որ վասն Ճշմարիտ հաւատոյն երանեցաւ 'ի Տեառնէ, թէ յորում և յորպիսի ժամանակի գուշակէր 'ի նոսա Հոգին Քրիստոսի: Եւ Յոհաննէս աւետարանիչ. «Որ զՀոգին Քրիստոսի ոչ ունի, նա չէ նորա»: Եւ մեծն Պօղոս. «Առաքեաց Աստուած զՀոգի որդւոյ իւրոյ 'ի սիրտս մեր, որ աղաղակէ Աբբա Հայր». և այլ բազում այսպիսիս 'ի գիրս առաքելոցն: Իսկ սուրբ Լուսաւորիչն Գրիգորիոս, որ ուսոյց մեզ զհաւատոյ խոստովանութիւնն, այսպէս ասէ. «Հայր յիշեսցուք, Որդի 'ի Հօրէ, սուրբ Հոգին 'ի նոցունց էութենէ»: Իսկ յաղթող ախոյեանն Քրիստոսի Աթանաս ընդդէմ Արիանոսացն այսպէս քարոզէր և ուսուցանէր. »Անսկիզբն Հայր ոչ յումեքէ, Որդի 'ի Հօրէ, և Հոգին սուրբ 'ի նոցունց էութենէ«, զոր երկրորդէ Սոկրատ պատմագիր: Եւ Գրիգոր Աստուածաբանն 'ի Ճառսն, որոյ սկիզբն է՝ »Երէկ զպայծառ լուսաւորութեանցն՝ զօր տօնեցաք«, ասէ՝ զաղմուկ առնել »'ի քէնէ Տէր աղբիւր կենաց, և լուսով քո տեսանեմք զԼՅս», այս է՝ Հոգւով զՈրդի«: Եւ դարձեալ՝ »Որ 'ի Հօրէ ելանէ, որ ըստ որում անտի առաքի, ոչ է ստացուած. ըստ որում ոչ ծնեալ՝ ոչ է որդի, և ըստ որում յոչ ծնիցելոյ և 'ի ծնիցելոյ 'ի մէջ՝ Աստուած է«: Եւ Գրիգոր Նիւսացի, և մեծն Բասիլիոս, և Աբբայ Եփրեմ, և Յոհան Ոսկեբերան՝ 'ի բազում տեղիս յիւրեանց գիրսն, զոր թէ աշխատասիրութեամբ ոք խնդրէ, յօլովս գտանէ: Եւ Սեբերիանոս՝ Եմեսու եպիսկոպոսն 'ի Ճառսն, որոյ սկիզբն է »'ի մէջ քրիստոսասիրաց զՔրիստոսէ խօսսցուց Ճառել« 'ի կատարածին ասէ. »Անծնին Աստուծոյ Հօր, և ծնիցելոյն 'ի նմանէ Որդւոյն միածնի, և սուրբ Հոգւոյն ելողի 'ի նոցունց յէութենէ, երիցն 'ի միում Աստուածութեան, ամենայն փառք յաւիտեանս ամէն«: Եւ Մովսէս Խորենացի 'ի մեկնութեան քերականին ասէ. »Սուրբ Հոգին առ ինչունակ է. զի որումն Հոգի է զի 'ի դէմ Հօր, Հօր և Որդւոյ ասի Հոգի«: Եւ Սիւնեաց եպիսկոպոսն

Ցանկիանոս. «Քանզի բղխէ 'ի Հօրէ՝ իբր՝ յակղանէ, անհատաբար դադարէ յաղբեր. 'ի յՈրդւոյ ելանէ անմեկնելի խոհականագոյն գետ արփիապաշխ լուսապայծառ ապընջական զծով ունելով, զհրեշտակաց և զմարդկան զիտութիւն. որ Նա զի հարուստ Որդի՝ որպէս զՀայր, զի Թէպէտ սուղ Որդի՝ զի սկիզբն նոյն փարթամ, զի պատճառ Հոգւոյ ելողութեան. Հոգին սուրբ հարուստ, զի պատճառ է մարգարէական տաճից«. Եւ սքանչելին Նիլփիան 'ի գիրս մեկնութեան սաղմոսաց և 'ի գլուխ բանիցս. «անենասրբուհի Աստուածածինն Մարիամ, 'ի բանն հաւատոյ, զոր հրամայեաց աւետարանչին Յոհաննու ուսուցանել քաքանչելւոյն Գրիգորի, ասէ. «Մի Աստուած Հայր Բանին կենդանւոյ, իմաստութեանն անձնաւորի, և զօրութեանն, և կերպարան էութեան, կատարեալ կատարելոյ, ծնող, Հայր Որդւոյ միածնի, Տէր միայնոյ, Աստուած յԱստուծոյ, կերպարան և պատկեր աստուածութեանն. Բանն Աստուած ներգործական ամենայնի, և եղելոցս ամենայնի բովանդակիչ, և զօրութիւն անստահմանելի, և ամենայն ստացականացս արարիչ. Որդի ճշմարիտ Հօր, անտեսանելի անտեսանելւոյն, անապականին անապական, անմահ անմահի. մի Հոգի սուրբ առ 'ի յԱստուծոյ գէութիւն ունելով, և 'ի ձեռն Որդւոյ երևեալ և յայտնեալ մարդկան, պատկեր Որդւոյ, կատարեալ կատարելոյ. կեանք և կենդանեաց պատճառ, սրբութիւն և սրբութեան պարգևիչ. Որով յայտնի Աստուած Հայր՝ որ 'ի վերայ ամենեցուն և յամենեսին, և Աստուծոյ Որդին՝ որ 'ի ձեռն որոյ և ամենեքեան. Երրորդութիւն կատարեալ փառօք և մշտնջենաւորութեամբ, և անբաժանելիք Թագաւորութեամբ, և անորոշելիք. Ո՛չ ապա ստացական ինչ, և ո՛չ ծառայ Երրորդութեան, և ո՛չ 'ի ներքս ածական, որպէս թէ յառաջագոյն ո՛չ գոլով, և յետոյ 'ի ներքս մտեալ. Ո՛չ նուազ Որդի 'ի Հօրէ, և յՈրդւոյ՝ Հոգի, այլ անայլայլ և անփոփոխելի նոյն ինքն Երրորդութիւնն միշտ. Այսպիսի խոստովանութիւնս ընդունելի է յեկեղեցիս Հայաստանեայց, և յոգիս Կիրակոսի, և համարձակ արժան է քարոզել զՀոգի 'ի Հօրէ ելեալ, և յՈրդւոյ երևեալ. Զայս պատասխանեցաք. Թըղ-

Թոյն Արևմտից, և մեք 'ի սոյն հաւատացեալ կամք շնորհօք Երրորդութեանն սրբոյ, որում փառք յաւիտեանս ամէն։

## Խոստովանութիւն ճշմարիտ ուղղափառաց։

Հաւատամք 'ի Հայր և յՈրդի և 'ի Հոգի սուրբ, յերիս անձինս կատարեալ, և 'ի մի աստուածութիւն փառաւորեալ, սուրբ և զուգափառ Երրորդութիւն, անսկիզբն և անվախճան, աներբ և անուր, միշտ անկարօտ և բերկրեալ, յամենայն կատարեալ բարւոյ իմացեալ, զոր բնաբար ունի, և անխնայապէս տայ կարօտիցն. Երրորդութիւն կատարեալ, անաճելի և աննուազ, անձամբ բաժանեալ, և է. զի և անուամբ և միութիւն կացեալ և կայ փառաւորեալ և փառաւորի 'ի բնութեան աստուածութեան, 'ի զօրութեանն, 'ի կամսն, յիմաստութեանն, 'ի գործն; 'ի մեծութեան, և մանաւանդ յանհասութեան, և յանհատելի ողորմութեան։ Հայր անծին, Որդի ծնեալ 'ի Հօրէ, անախտ և անմարմին, բնութենակից Հօր նախ քան զըժամանակս։ Հոգին սուրբ բղխումն 'ի Հօրէ, և երևումն յՈրդւոյ, ոչ ըստ Որդւոյ ծննդեամբ, այլ յառաջ եկեալ աղբիւրաբար, ինքեան միայնոյ քննելի օրինակն, և յարարածոց անգիտելի. միշտ ընդ Հօր Որդի և Հոգի, Հոգի որպէս Հօր, նմանապէս և Որդւոյ. ոչ փոխեալ Հայր յՈրդի, կամ Որդի 'ի Հոգի, կամ Հոգի յՈրդի և 'ի Հայր։ Հայր ունելով զանձն և զանուն հայրական, և Որդի ունելով զանձն և զանուն որդիական, և Հոգի ունելով զանձն և զանուն հոգիական. անդրադարձութիւն ոչ ունելով կամ փոփոխումն անուանցն և անձանցն. այլ Հայր՝ միշտ Հայր, Որդի՝ միշտ Որդի, Հոգի՝ միշտ Հոգի, յոր հաւատամ։ Ցայսմանէ և 'ի սիրոյ եկեալ Որդւոյն անձամբ չափ աւետեօք հրեշտակապետին Գաբրիէլի 'ի կոյսն Մարիամ՝ որ սուրբ էր հոգւով և մարմնով, 'ի պատճառս փրկութեան մերոյ մարդացեալ 'ի նմանէ, սահմանաւ բնութեանս մերոյ՝ հոգի, միտք, շունչ, մարմին, որ ինչ և է կատարեալ մարդ. մեղուցեալ բնութեանս Ադամայ, ուստի Մարիամն էր; զոր առեալ աստուածագործեաց առանց շփոթ-

մին և այլայլման. անքննելի և անճառելի խառնմամբ երկ-յերկուց կատարեալ բնութեանց՝ աստուածայնոյն և 'ի մարդկայնոյ. մի անձնաւորութիւն կատարեալ, անայլայլելի, և անբաժանելի բնութեամբ, ոչ փոփոխելով մարդկային թանձր և յօդական բնութիւնն յանյօդ և պարզական բնութիւն Աստուածութեանն, զիւրն կորուսանելով. և ոչ պարզ և անմարմնական բնութիւն Աստուծոյ խառնելովն ընդ բնութեան մարմնոյ, վրիպեաց յիւրն յաւէտ պարզութենէ, թէպէտ և առ յաղագս անքակ միութեանն՝ անմարմնոյն մարմնանալ, և բանին թանձրանալ. Յորոց միածին մի Որդի, մի անձն, մի Քրիստոս, և ճշմարտապէս յերկուց միացեալ բնութիւն, մի կամք, մի ախորժակք, մի գործ, մի ծնունդ կուսութեամբ, մի մայր առանց հօր, որ և նախ քան զյաւիտեանս առանց մօր ծնեալ. և խոստովանիմ զմայրն Էմմանուէլի՝ Աստուածածին մինչև յաւիտեան, և զԷմմանուէլն Աստուած մինչև յաւիտեան. Նովին մարմնովն, և որ զհետ ծննդեանն, զամենայն անօրինականսն խոստովանիմ գործ Աստուծոյ, զխոնարհագոյնսն, զբարձրագոյնսն, և զկիրսն անբամբասելի, զոր վասն մեր կրեաց, ոչ բաժանումն, այլ մի յատուկ ասեմ 'ի Տէրն իմ. և ոչ խառնեմ շփոթումն, և նզովեմ զխառնացօղն և զատօղն շփոթումն. Եւ նոյնպէս զկիրս խաչին՝ խոստովանիմ Աստուծոյ խաչ և մահ, ոչ էական բնութեան ասեմ մահ, կամ 'ի մարմնոյն բաժանումն, այլ ըստ բնութեամբ միացեալ յաստուածութիւն և աստուածացեալ, Աստուած խոստովանիմ, որով մեռաւ անմահն, զպանդխտական հոգին աւանդելով 'ի ձեռս Հօր։ Աստուածութիւն ոչ բաժանեալ 'ի հոգւոյն և 'ի մարմնոյն, միաւորեալ անքակելի, ըստ որում և զգժոխս աւերէր հոգւովն, և զմահ սպանանէր, և մարմինն լուծանէր զապականութիւն որպէս զԱստուած և զԱստուծոյ մարմին, ընդ ամենայն գերեզմանս. արձակելով ճառագայթս, յարուցանելով զբազումս, զիտելով զսահմանեալ ժամանակն 'ի լինելն երկրի՝ Շաբաթոյն, թուովն յանէր, ոչ միայնաբար ըստ Յունանու 'ի ձկանէն, այլ լրմամբ հոգւոցն մահակուլ, որ յԱդամայ 'ի գժոխոց, և յոլովիւք մարմնովք հողացելովք՝ 'ի գերեզ-

Որդւոյ, այլ զիւր Հոգիական անձն։ Այս երեք անուանք հաւասար նշան երից անձանցն, ոչ միոյ միոյ 'ի վերոյ, և ոչ միոյ միոյ 'ի ներքոյ. այլ հաւասար միմեանց ամենայնիւ։ Ո՛չ բնաւ նշան երիցութեան մի լիցի ումեք իմանալ այնպէս. այլ նշան երից անձանց և միոյ բնութեան։ Ոմն Հայր. զի ոչ յայլմէ է. ոմն Որդի, զի 'ի Հօրէ է. և ոմն Հոգի, զի 'ի Հօրէ և յՈրդւոյ։ Հայր անծին ասի, զի ոչ յումեքէ է. և Որդի ծնեալ, զի 'ի Հօրէ է. Հոգի ոչ ասի ծնեալ, զի մի երկու եղբարք թուեսցին. և ոչ երկուորի ընդ որդւոյ, զի մի դուստր կարծիցի. և ոչ յՈրդւոյ միայն, զի մի թոռն համարիցի։ Դու ընդէր ծանրանաս, ով իմաստուն և ճշմարիտ հաւատացեալ, երկու պատճառ իմանալ։ Բարսեղ հարցանէր զեղբայր իւր զԳրիգոր. զի՞նչ է սկիզբն սկզբանն. և նա ասէ, առաջին պատճառն երկրորդ պատճառին։ Ո՛վ սիրելի, ում այլ ումեք իցէ պատճառ Հայր և Որդի, եթէ ոչ Հոգւոյ իւրոյ։ Գրիգոր Աստուածաբանն զՊղատոնի բանն առնու, որ գրեալ է, որպէս խառնարան յեղեալ, զեղեալ, զխառն և զեղեալն ասել՝ խոռէ. բայց զառաջինն և զերկրորդ պատճառն ասել՝ հաւանի. դու ընդէր ըմբոստանաս խոստովանողդ 'ի յերկու պատճառն. զի ոչ եթէ անուանքս և կարգս զանազանէ զմի բնութիւն յայլ և այլ. այլ նշան է անձանց երից 'ի մի բնութիւն, զի սահման և կարգ խոստովանութեան հաւատոյ՝ անխառնակ և անշփոթ մնասցէ, միաստուածութիւն, որ զամենայն ըստ կարգի և սահմանաւ յօրինեալ է. զի մի 'ի միտս խոստովանողին խառնակութիւն և շփոթումն անկցի։ Քեզ ասեմ, որ լսողդ ես, զիա՞րդ քո միտքդ 'ի քեզ կայ, և այլում միտք ծնանի. եթէ զայս ոչ իմանաս, ընդէր քննես վասն Աստուծոյ, և ընդդիմանաս գրոց. եթէ զլոյսդ՝ որ 'ի խելս քո ծագէ, և զհանճար՝ որ յերի կայ բանիդ, և զբղխումն արտիդ ոչ կարես տեսանել՝ զոլորեալն 'ի ձայնդ, Աստուծոյ հակառակ և գրոց մի՛ ջանար իմանալ ինչ։ Եւ դարձեալ ասեմ. բանդ քո 'ի մտա՞ցդ է, թէ 'ի հոգւոյդ. թէ 'ի մտացդ է առանց հոգւոյդ՝ անհոգի է քո բանդ. և թէ 'ի հոգւոյդ է առանց մտացդ՝ անմիտ է քո բանդ. ապա թէ 'ի հոգւոյդ է և 'ի մտացդ, հոգևոր և մտաւոր

է քո բանդ, որպէս և է. ապա թէ ընչաւոր իմացիւք է քո բանդ, վայրապար է։ Աստուծոյ բնութեանն միութիւն, և զանձին բաժանումն, մարմնական օրինակաւ մի մի՛ տեսաներ. զի մի՛ գայթագղեցիս։ զՀոգին եթէ 'ի Հօրէ միայն առիցես ել և բղխումն, անբան է Հոգին. և թէ յՈրդւոյ միայն առիցես, օտար սկիզբն է. իսկ եթէ 'ի Հօրէ և յՈրդւոյ առիցես, ճշմարիտ է, որպէս և է։ Եւ զօրօրինակ Հայրութիւնն Աստուծոյ ո՛չ է մարմնական, և ո՛չ որդիութիւնն, նոյնպէս և ո՛չ ելողութիւնն։ Բայց է, գաւառի սովորութեամբ ասեն. այս անուն յայս բանէ 'ի դուրս ելն ողջ, 'ի յայս իրացս բաժանեցաւ ողջ, ո՛չ յիւրմէն 'ի տեղն մնաց, և ո՛չ յայլոց 'ի Հետ եբեր, և ո՛չ յայլոց կորեաց, և ո՛չ յայլոց Հասաւ. թէպէտ ողջ ասա՛, թէպէտ յատակ ասա՛, թէպէտ պարզ ասա՛։ Այսպէս Հոգի 'ի Հօրէ և յՈրդւոյ, ո՛չ ինքն պակասէ ինչ, և ո՛չ 'ի Նոցանէ Հատանի։ Լի՛ կատարեալ Աստուած Հայր, լի՛ կատարեալ Աստուած Որդի, լի՛ կատարեալ Աստուած Հոգի սուրբ. մի աստուածութիւն, յերիս անձինս Հաւասար ամենայնիւ։ — Այս է խոստովանութիւն ուղղափառ եկեղեցւոյ։ Սուրբն Դիոնեսիոս զելողական անունն 'ի վերայ Երրորդութեանն Հաւասար դնէ՝ Հօր և Որդւոյ և Հոգւոյ, այսպէս ասելով. «Ելողական անուն, իմաստնացուցիչ, զօրացուցիչ, կենդանացուցիչ», և որ յայս ոճիս է. և դարձեալ՝ իմաստնացուցչութիւն, զօրացուցչութիւն, կենդանացուցչութիւն, և որ այլ ըստ այսմ։ Դարձեալ պատշաճ զքեզ մի՛ կարծեր Աստուծոյ անուն ըստ բնութեան, այլ ըստ խնամոցն՝ որ առ մեզ։ Ապա թէ ո՛չ՝ լոյս ասի Աստուած և կեանք, որպէս մե՛րս՝ զի տեսանեմք և կեամք. ո՛չ, զի ո՛չ զքո Հոգւոյդ անունն և զէութիւնն կարես գիտել. այս խոստումն Հանգերձելոցն է, յորժամ յայտնի այն՝ զոր ակն ո՛չ ետես, և ունկն ո՛չ լուաւ, և 'ի սիրտ մարդոյ ո՛չ անկաւ, զոր պատրաստեաց Աստուած սիրելեացն. ապա մի՛ խնդրեր աւելի, զի մի՛ յամենայնէն անկանիցիս։

Վասն վախճանին սուրբ վարդապետին Վանականայ:

Նուաստահաճոյ և մեծ վարդապետն Վանական, համեալ 'ի բարւոք ծերութիւնն, ալևորեալ և լի աւուրբք ըստ օրինակի նահապետին Աբրահամու, առ Տէր փոխեցաւ, զընթացս կատարեալ, և զհաւատս պահեալ ուղղափառ խոստովանութեամբ, որ 'ի սուրբ Երրորդութիւն և 'ի տնօրէնութիւնն Քրիստոսի: Ի տղայական տիոցն աստուածագործ ծառայութեամբ կացեալ, բազում քրտունս և աշխատութիւնս ցուցեալ 'ի բանն վարդապետական, բազում՝ որդիս 'ի փառս ածեալ, և ազգի ազգի ճգնութիւնս կրեալ, և սպանեալ զանդամս երկրաւորս, ըստ խրատու առաքելոյն զմարմինն 'ի խաչ հանեալ՝ կարեօք և ցանկութեամբքն հանդերձ. զի նման էր այրն Աստուծոյ անօսրաթև թռչնոցն մեղուի, որ թռչելով 'ի վերայ բազում և ազգի ազգի ծաղկանց ժողովէ 'ի նոցանէն զպիտանին և զօգտակարն 'ի պէտս ինքեանց, և 'ի կերակուր, և 'ի բժշկութիւն թագաւորաց և ռամկաց: Նոյնպէս և սա յանձն իւր հաւաքեալ զամենայն սրբոցն զվարս և զառաքինութիւնս, անկանէր զգործ խորհրդին 'ի պէտս անձին իւրոյ և յայլոց օգուտ. քանզի ստացեալ ունէր զարդարութիւնն Աբելի, և զգեղեցկութիւն Սեթայ, և զյոյսն Ենովսայ, և զհաւատսն Ենովքայ, և զկատարելութիւնն Նոյի, և զհաւատն և զգործն Աբրահամու, և զհնազանդութիւնն Իսահակայ, և զաստուածասիրութիւնն Իսրայէլի, և զողջախոհութիւնն Յովսեփայ, և զհամբերութիւնն Յոբայ, և զհեզութիւնն Մովսիսի, և զնախանձն Փենեհեսի, և զկուսութիւնն սրբութեան Յեսուայ, և զանմեղութիւն յստակամտութեանն Սամուէլի, և զհեզութիւն սրբութեան սրտին Դաւթի, և զիմաստութիւնն Սողոմոնի, և զհամարձակութիւնն Եսայեայ, և զվրէժխնդրութիւն Եղիայի, և զախտակցութիւնն Երեմիայի, ըստ Դանիէլի և Եզեկիէլի 'ի գերութիւն երթեալ ընդ ժողովրդեանն Աստուծոյ, ըստ Զօրաբաբելի և Յեսուայ նորոգօղ լեալ տաճարի Աստուծոյ, ըստ Պտղոմեայ բազում գրեանս հաւաքեալ յաղ-

գաց և 'ի լեզուաց։ Յովաննէս նման յանապատի բնա-
կեալ, և Տեառն հրամանաւ զապաշխարութիւն քարո-
զեալ, 'ի հին և 'ի նոր կտակարանս փայլեալ։ Պետրո-
սի հանգոյն զտէրն որդի Աստուծոյ դաւանեալ, և գլուխ
եկեղեցւոյ լեալ։ Ընդ որդւոցն որոտման զհոգևորն որ
ստացեալ և աստուածաբանեալ։ Ընդ Պօղոսի և ընդ հա-
նուրս սերմանեալ զկենաց բանն, և գրով հաստատեալ։
Ընդ վարդապետս եկեղեցւոյ հանդիսացեալ, և զգայլսն
վանեալ. կիսոց կաթն ջամբեալ, և կատարելոցն զհաս-
տատուն կերակուրն։ Արդ նա որ զայս ամենայն բարիս
ստացեալ ունէր յանձին իւրում, ինքն առնէր և այլոց
զնոյն վարդապետէր, առ Տէր փոխեցաւ, զբնութեանս
պարտն հատուցեալ. և եղև փոխման նորա այսպիսի օրի-
նակաւ։ Ի վանսն՝ զոր իւր շինեալ էր, որ կոչի Խորա-
նաշատ վանք յոլով եկեղեցեացն՝ որ 'ի նմա, ընկալաւ
զանուննն, որ կայ հանդէպ Երգևվանից բերդին և 'ի Թի-
կանց Գարդմանայ, առնէր նա շինուածս երևելիս, զա-
ւիթ շինելով 'ի կոփածոյ վիմաց 'ի դուռն մեծ եկե-
ղեցւոյն, զոր իւր իսկ շինեալ էր, և զբան վարդապե-
տութեանն ուսուցանէր այնոցիկ, որ ժողովէին առ նա
յամենայն գաւառաց։ Յաւուրս սուրբ Աղուհացիցն հի-
ւանդացաւ հիւանդութիւն, որ և մեռաւ իսկ. և նախ քան
զաւանդել սուրբ հոգւոյն իւրոյ 'ի ձեռս Աստուծոյ ըստ
գրեցելոյն կոչեցեալ զեղբարսն, քաղցր և ախորժ բանիւ
մխիթարէր զնոսա, և աղաչէր կեալ հաստատուն 'ի կարգս
և 'ի կրօնս ուղղափառութեան և աստուածպաշտութեան։
Եւ ապա քաղցր ընչմամբ մաքուր հոգւոյն արձակեցաւ 'ի
կապանաց մարմնոյն, Արեգի ամսոյ 'ի տասն՝ ըստ նոր յե-
ղանակի ճշմարտութեան, և Մարտի 'ի տասն և ութ, ութ
օրով յառաջ քան զգարնանամուտն, յաւուր շաբաթու,
յորում աւուր յիշատակ էր Կիւրղի Երուսաղէմի հայրա-
պետին, որ զընթերցուածն կարգեաց, և զկոչման գիրսն
գրեաց և զվկայութիւն սրբոյն Օրէնդի և վեց եղբարցն
իւրոց, որք նահատակեցան 'ի Մաքսիմիանոսէ թագաւորէ։
Նոցին վարուց լեալ հետևող, վասն այնորիկ և յիշատակի
նոցին արժանացաւ. և ժողովեցան անթիւ բազմութիւնք

'ի թաղումն նորա, և մնձաւ սգով և արտմութեամբ ողբային յոյժ. զի զրկեցան 'ի լուսաւոր վարդապետութենէն երանելւոյն և 'ի հոգեշահ բանիցն, և տարեալ թաղեցին զնա 'ի գլուխ վանիցն յարևելից կուսէ, մօտ 'ի փոքրագոյն եկեղեցին, ուր էին գերեզմանք ազգատոացն. զի ինքն այսպէս հրամայեաց: Անդ էր և եպիսկոպոս գաւառին տէր Սարգիս բազում վարդապետօք և երիցամբք: Զօգաւ և կաթուղիկոսն Աղուանից տէր Ներսէս, և եպիսկոպոսն տէր Յոհաննէս յետ միոյ աւուր յիշատակի նորա, և ողբացեալ և լացեալ յոյժ 'ի վերայ գերեզմանի նորա, և մխիթարեալ զեղբարսն՝ որ անդ, դարձան յիւրաքանչիւր տեղիս: Եւ կալաւ զառաջնորդութիւն վանիցն եղբօրորդի նորա Պօղոս քահանայ, և զվարդապետական ուսումն Գրիգորիս վարդապետն՝ նորին աշակերտ և ազգական: Եւ այս եղև յՆ թուին: Արդ աղօթիւք նորա տացէ Աստուած խաղաղութիւն ամենայն աշխարհի և մեզ մասն 'ի յարութեան նորա և 'ի պսակին:

## Վասն Յովհաննիսի Գառնեցւոյ:

Այր ոմն առաքինի, զարմանալի վարուք, գործօղ պատուիրանացն Աստուծոյ և լծաբարձ 'ի մանկութենէ, արժանացեալ քահանայական պատուոյ, կուսակրօն Յովհաննէս անուն, 'ի քաղաքագիւղէն Գառնոյ, ուր զարմանալի սարաւոյթն է Տրդատայ, 'ի սուրբ ուխտէն Այրի վանաց: Սա 'ի մանկական տիոցն արհամարհեալ զամենայն ինչ կենցաղոյս, լքեալ զազգ և զտուն, յանապատ տեղիս բնակէր. սիրէր առանձին լինել և անդադարապէս խօսել ընդ Աստուծոյ, տուեալ զինքն ազգի ազգի ճգնութեան, պահոց և աղօթից գետնատարած անկողնօք և անհանգիստ աշխատութեամբ. շրջելով 'ի տեղւոջէ 'ի տեղիս, և լուսաւորելով զպատահեալսն: Տուաւ նմա և շնորհք բժշկութեանց, զի ձեռն դնելով և աղօթելով, բժշկէր զբազում ախտաժէտս: Խնդրէին 'ի նմանէ և գիր պահապան անձանց իւրեանց, և նա անյապաղ տայր ամենայն խնդրողացն. և զայս ոչ միայն հաւատացեալքն առնէին, այլ և

թաղումն յանհաւատից։ Նաև գրելով զանուն սրբոյ Երրորդութեանն և խորհրդական բանս աղօթից՝ տայր նոցա. և նոցա առեալ հաւատով, կապէին յանձինս իւրեանց։ Վասն որոյ բազումք բազում ինչ պատմէին, բայց առաւել սուրբ հարազատն մեր և սքանչելի վարդապետն Վարդան, որոյ բանքն արժանի էին հաւատարմութեան, զի նոքա սիրով կապեալ էին ընդ միմեանս. և մեք մարմնով զնա ոչ տեսաք վասն հեռաւորութեան. նա 'ի մխիթարութիւն մեզ պատմեաց ինչ 'ի վարուց նորա մանաւանդ, և ասաց՝ թէ ինքն իսկ Յովհաննէս ասաց մեզ. «Թէ չոգայ ես 'ի սուրբ քաղաքն Երուսաղէմ երկրպագել տնօրինականացն Քրիստոսի Աստուծոյ մերոյ, և յամեցի անդ աւուրս ինչս, իջեալ կալեալ 'ի սուրբն Յակոբ։ Եւ 'ի գիշերի միում կանխեալ յառաջ քան զհարկանել ժամուն ազդարարի, որ յաղօթս զարթուցանէր զամենեսեան, և մինչ դեռ աղօթէի 'ի սուրբ եկեղեցին, վարդապետն՝ որ իշխանն էր սրբոյն Յակոբայ, կոչեաց զիս և ասէ. Ե՛կ, լո՛ւր զարմանալի իրս, զոր պատմէ քահանայս իմ մանկագոյն։ Եւ իբրև չոգայ առ նա, կոչեաց զերէցն, որ ետես զտեսիլն զարմանալի, և ասէ։ արդ ասա, զոր յառաջագոյն պատմեցեր ինձ, զի լուիցէ և սա։ Եւ երէցն սկսաւ պատմել, թէ նախ քան զգալդ ձեր յեկեղեցիս էի ես յաղօթս 'ի վերնատան սուրբ եկեղեցւոյն, և յանկարծակի նկարեալ պատկերն Գաբրիէլի հրեշտակապետի, որ կայ հանդէպ պատկերի ամենասրբուհւոյ Աստուածածնին, բարբառեցաւ և ասէ. ուրախ լե՛ր բերկրեալդ Տէր ընդ քեզ, օրհնեալ ես դու 'ի կանայս, և օրհնեալ է պտուղ յորովայնի քո։ Սկսան և ամենայն սրբոց նկարեալ պատկերքն զնոյն բարբառել ցմեծ ժամս. ուրախ լե՛ր բերկրեալդ Տէր ընդ քեզ"…. և իմ զարմացեալ՝ փառս ետու Աստուծոյ, և քննեալ գտի տօմարական արուեստիւ, զի երեսուն էր այն օր Արեգ ամսոյ, և եօթն Ապրիլ ամսոյ, և հնգետասան Նիսանայ։ Վկայէ այս տեսիլս հրաշից Հայոց անսուտ տօնին, որ ասեմք զօր աւետեաց սուրբ կուսին յերեսուն Արեգի, և Ապրիլի եօթն, և ոչ որպէս հակառակին այլ ազգք, և մանաւանդ Յոյնք, առնելով 'ի քսան և հինգն Մարտի ամսոյ։

Զայս պատմեաց ճշմարտախօսն այրն 'ի հաստատութիւն ուղղափառ հաւատոյս։ Դարձեալ միւս ևս ոմն հանգոյն, զոր պատմեալ էր սուրբ այրն այն Յովանէս։ Էի ես, ասէ, 'ի կողմանս Յորդանան գետոյ, աղօթելով 'ի տեղւոջ մկրտութեան Տեառն, և սրբոյն Յովաննու կարապետի, եկին առ իս արք երեք, Տաճիկ տոհմաւ, և խնդրէին զկնիք սուրբ մկրտութեանն. և ես յապաղէի յայլում աւուր տալ, և կամ՝ առցեն յայլոց, զի տեսանէի զնոսա արս խուժադուժս, և համարէի կեղծաւորիլ։ Եւ որ աւագն էր 'ի նոցանէ, պատմեաց ինձ և ասէ. մեք 'ի Զանկիանայ եմք, 'ի քաղաքէ Պարսից, և եմք Մուղրի դենիւ. շինեցաք մեզ մինարայ մեծ և գեղեցիկ, և պատրաստեցաք որ ինչ պէտք են նաւակատեացն. և ելի ես 'ի ծայր գմբեթին ըստ դենին Տաճկաց տալ զանարժան ձայնն, և ահա տեսի յարևելից կուսէ զերկինս պատառեալ, և ըղվայրն լի՛ անբաւ լուսով. և թագաւոր մի ահեղ և զարմանալի յաթոռ փառաց նստեալ, և շուրջ զնովաւ բազմութիւն լուսեղինաց՝ որք օրհնէին զնա անճառելի ձայնիւ։ Գային նմա յերկրպագութիւն ամենայն ազգք քրիստոնէից իւրաքանչիւր առաջնորդօք, որք զարդարեալ էին երևելի փառօք. և յորժամ երկրպագէին նմա, ընդունէր զողջոյն նոցա։ Ի վերջոյ եկին այլ ազգ մի, որ կարի առաւել էին փառօք քան զառաջինսն, և առաջնորդքն նոցա կարի զարմանալիք. և յորժամ եկին և երկրպագին թագաւորին, և նա յարեաւ ընդ առաջ նոցա, և համբուրեաց զնոսա առաջնորդօքն իւրեանց, և մեծարեաց քան զամենայն ազգսն. և մինչ ես հիացեալ կայի զարմացմամբ և ափշեալ, եկն առ իս 'ի վեր այս աւագ որդի իմ, և ասէ. ընդէ՞ր յամեցեր, զի քեզ մնան ամենայն ժողովուրդըն. հայեցաւ և սա յարևելս, և ետես զնոյն տեսիլ, և եկաց յիմարեալ։ Այսպէս իբրև կարի յամեցաք, նեղացեա ամբոխն ընդ յամելն մեր, եկն՝ ել այս կրսեր որդի իմ և մեղադրէր մեզ վասն յամելոյն մերոյ. և քանզի անցեալ էր տեսիլն 'ի գալ սորա, պատմեցաք սմա զպատճառն յամելոյն և զիրս տեսլեանն. Եւ իսկոյն կամեցաք 'ի բարձանց անտի քարոզել զքրիստոնէութիւն ճշմարիտ Աստուած,

բազմաց պատահեալ է։ Իսկ նոքա ելին համարձակութեամբ, ոչ ինչ կերակուրս բարձեալ ընդ իւրեանս, և յամեցին անդ աւուրս ինչ, և զարմացեալ էին բնակիչք վանացն, թէ զի՞նչ եղեն. զի ընդ այլ անց ոչ կայր. և համարէին եթէ կորեան յարհաւրաց անտի։ Իսկ նոքա յետ կատարելոյ զպաշտօնն իւրեանց իջին ՚ի լեռնէ անտի, փառաւորեալ և հրաշալի երեսօք. և էին քառասուն երկու։ Եւ զարմացեալք բնակիչք վանացն, ելին ընդ առաջ նոցա ջահիւ և լապտերօք. և մեծաւ պատուով տարեալ հանգուցին. և զարմանային, զի յորժամ ելին ՚ի լեառն քառասուն էին, և իբրև իջին՝ քառասուն երկու. զի գիտէին թէ այլ ոք ոչ չոգաւ ՚ի վեր, բայց ՚ի նոցունց։ Եւ եդին սեղան առ ՚ի կերակուրս. յարեան երկու արքն փառաւորք, որք աւելի էին քան զքառասունսն, պաշտել զնոսա ՚ի սեղանն և ոչ տային թոյլ արանց վանիցն ծառայել նոցա, այլ ասէին. «Մեր սովորութիւն է զեղբարս մեր մեզ պաշտել»։ Եւ իբրև կերան՝ որ ինչ պատշաճն էր, ողջունեալ զնոսա, եղեն աներեւոյթ, որք էին Մովսէս և Եղիա. և ահիւ մեծաւ ըմբռնեալք բնակիչք վանացն, պատուէին զնոսա իբրև զհրեշտակս. և յուղարկեցին մեծաւ պատուով։ Զայս պատմէր սրբասէրն Յովանէս ՚ի դէմս այլոց վասն անձին խոնարհութեան, զի մի՛ փառացեն և ինքն ընդ նոսա էր։ Յետ այսորիկ շրջեալ նորա ընդ բազում գաւառս և ընդ քաղաքս, եհաս ՚ի քաղաքն Կողոնիա. և բազումք ՚ի Թուրքացն և ՚ի Տաճկացն գային առ նա և մկրտէին վասն սքանչելի վարուց նորա և բժշկութեանցն, զոր առնէր։ Ապա նախանձեցան ընդ նա Պարսիկքն, և իշխան քաղաքին Կողոնիոյ ըմբռնեաց զնա և զերէց մի, և կուտեալ փայտս չոր, եդեալ զնոսա ՚ի միջի՝ վառեաց հրով. և լայր երէցն, որ ընդ նմա. և նա քաջալերէր զնա և ասէր. «մի՛ երկնչիր, կարող է Աստուած ապրեցուցանել զմեզ ՚ի հրոյս, որպէս զերիս մանկունսն»։ և մինչ բորբոքէր բոցն, մանուկ իշխանին անկաւ ընդ պարիսպ բերդին, և յարեաւ անվնաս. և ՚ի հարցանելն, թէ որպէս կեաս կենդանի, պատասխանի ետ. Թէ այրն այն՝ զոր ընկեցիք ՚ի հուրն, նա եբարձ զիս

ձեռօք խոյոյք և ոչ ետ ինձ անկանիլ յերկիր։ Եւ առ ժամայն առաքեաց իշխանն և հրամայեաց հանել զնոսա 'ի հրոյն, և թոյլ ետ երթալ, ուր և կամեցին։ Եւ նորա շրջեալ ընդ բազում գաւառս, գնաց 'ի Հռովմկլայն առ մեծ կաթողիկոսն Հայոց Կոստանդին. և նա ուրախութեամբ ընկալաւ զնա մեծաւ պատուով, և ոչ ետ թոյլ երթալ յայլ ուրեք։ Եւ անդ եկաց մինչև փոխեցաւ առ Քրիստոս և թաղեցաւ 'ի նմին. զընթացս իւր կատարեալ և զհաւատս պահեալ, եհաս անթառամ պսակին և անվախճան կենացն։ Աղօթք նորա մեզ 'ի սատարութիւն և 'ի թողութիւն մեղաց, և յիշատակ նորա ընդ սուրբս ամենայն 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր, որում փառք յաւիտեանս։

## Վասն Մարտիրոսի որդւոյ Բաղդասարի։

Մեծ զօրավարն Բաթու, որ 'ի կողմանս հիւսիսոյ առեալ իւր բնակութիւն առ ափն Կասբից ծովուն և Ատիլ գետոյն մեծի, որ ոչ գտանի հանգոյն նմա 'ի վերայ երկրի, քանզի ծովօրէն ընթանայ վասն հարթայատակութեան երկրին, 'ի մեծ և 'ի լայնանիստ դաշտին Խօշախաց զետեղէր նա բազում և անթուելի զօրքն, որ ընդ նմա, քանզի խորանօք բնակէին, և 'ի շուրջն զխորանն սայլիւք տանէին, բազում եզինս և ձիս լծեալ 'ի սայլսն։ Սա զօրացաւ յոյժ և մեծացաւ քան զամենեսին, և հնազանդեաց զամիրայս, և 'ի հարկի կացոյց զաշխարհս ամենայն, այլ իւր և ազգայինքն զնա քան զամենեսին մեծ ունէին. և որ թագաւորէր 'ի նոցունց, զոր Ղանն կոչէին, հրամանաւ նորա նստէր յաթոռն. զի եղև մեռանել Գիուգ Ղանին, և ընդ միմեանս անկեալ ազգատոհմն նորին' թէ ով ոք նստցի յաթոռն, և ամենեքեան զնա արժանացուցին նստել և կամ զով կամեսցի և նա, այն լիցի թագաւոր։ Եւ կոչեցին զնա 'ի կողմանցն հիւսիսոյ գալ յաշխարհն իւրեանց և թագաւորել 'ի վերայ ամենից. և չոգաւ նա հաստատել զթագաւորութիւնն, և եթող գլուխ զօրացն զորդին իւր, որում անուն էր Սարթախ, և ինքն երթեալ ոչ նստաւ յաթոռ թագաւորութեանն,

այլ զայլ ոմն կարգեաց յազգայնոցն, որում անուն էր Մանգու, և ինքն դարձաւ առ զօրս իւր։ Իսկ յազգականացն ոմանք ոչ հաճ եղեն ընդ գործն, զի ակն ունէին, կամ ինքեանք թագաւորել և կամ թագաւորեցուցանել զորդին Գիուգ Ղանին, որում անուն էր Խօճա Ղան. բայց յերես ոչ իշխեցին բերել զիրս անհաճութեան. իսկ յորժամ դարձաւ նա առ զօրս իւր, նոքա սկսան ցուցանել իւրս ապստամբութեան առ Մանգու Ղանն. և լուեալ Բաթույի, հրամայեաց կոտորել զբազումս յազգականացն և 'ի մեծամեծացն. ընդ որս և զմեծ ոմն գլխաւոր, որում անուն էր Էլչի Գաղա, որ հրաման առեալ էր 'ի Գիուգ Ղանէն զօրավար լինել Թաթար զօրուն՝ որ յարևելս և յաշխարհս Հայոց, փոխանակ Բաչու Նուինն. և մինչդեռ 'ի ճանապարհի էր, յաշխարհին Պարսից եհաս նմա համբաւ մահու Գիուգ Ղանին. և անդէն զետեղեալ մնայր, թէ ով առնու զաթոռ թագաւորութեան. Զոմանս ամբաստան եղեն առ Բաթույն գլխաւորք զօրուն՝ որ յարևելս, զի ոչ կամէին իշխել 'ի վերայ նոցեանց, զի այր մեծամիտ էր, և ասեն. «Թէ և սա ևս յանհնազանդիցն է Մանգու Ղանին». և հրամայեաց առ ինքն ածել, զոր ըմբռնեալ տարան կապանօք, զոր եսպան չարաչար։

Ապա սկսան երթալ առ նա թագաւորք և թագաւորազունք, և իշխանք և վաճառականք և ամենայն վշտառեալք, որք զրկեալ էին 'ի հայրենեաց իւրեանց. և նա արդար դատաստանաւ տայ զիւրաքանչիւր զասս և զհայրենիս և զիշխանութիւնս ամենայն ումեք երթողացն առ նա, և գիրս նշանաւորս, և ոչ ոք իշխէր ընդդէմ դառնալ հրամայելոցն 'ի նմանէ։ Սորա էր որդի մի, որում անուն էր Սարթախ, զոր վերագոյնն յիշեցաք, որ սնաւ քրիստոնէայ դայեկօք. և 'ի չափ հասեալ, հաւատաց 'ի Քրիստոս և մկրտեցաւ յՌուսացն, որք սնուցին զնա։ Սա բազում դիւրութիւն արար եկեղեցւոյ և քրիստոնէից, և կամաւ հօր իւրոյ գրեաց գիր ազատութեան քահանայից և եկեղեցւոյ, և առաքեաց յամենայն կողմանս սպանալիս և մահ, և թէ ոք հարկ առնու յեկեղեցւոյ, կամ 'ի նորին պաշտօնէից, զինչ ազգ և իցեն, այլ և զՑաճկաց

մզկիթն և զնորին սպասաւորսն։ Այսպիսով տայր՝ համարձակութիւն ամենայն չողալ առ նա վարդապետք և եպիսկոպոսունք և երիցունք. և նա սիրով ընդունէր զամենեսին, և կատարէր զխնդրուածս նոցա։ Եւ ինքն երկիւղածութեամբ և աստուածպաշտութեամբ կեայր հանապազ, եկեղեցի խորանեայ ընդ իւր շրջեցուցանելով, և զաստուածային խորհուրդն անպակաս կատարելով։ Ընդ որս չոգաւ և առ նա մեծ իշխանն Խաչենոյ և կողմանցն Արցախու Հասան, զոր Ջալալն կոչէին զգուշինք, այր աստուածապաշտ և երկիւղած. և մեծարանօք ընկալաւ զնա, և զոր ինչ խնդրէր իշխանն Գրիգոր, զոր սովորութեամբ Ցղային կոչէին, և էր ծեր յայնժամ, և զԳեսում իշխան տարկեշտ պատանի, և զվարդապետն Մարկոս, և զեպիսկոպոսն Գրիգոր. և տարեալ առ հայր իւր մեծապատիւ և ետ 'ի նա զհայրենիքն իւր զՉարաբերդ և զԱկանայ և զԿառկառն, զոր հանեալ էին յառաջագոյն 'ի նմանէ ազգն Թուրքաց և Վրաց։ Այս և զգիր ազատութեան կաթուղիկոսին Աղուանից տէր Ներսիսի, և ամենայն գոյից նորա և ստացուածոց, զի ազատ և անհարկ լիցի և համարձակ շրջեսցի 'ի վիճակս իշխանութեան իւրոյ ամենայն ուրեք. և մի՛ ոք դիմադարձ լիցի ասացելոցն 'ի նմանէ։ Եւ եկն Ջալալն 'ի տուն իւր ուրախութեամբ. բայց զկնի աւուրց ննջեալ 'ի հարկապահանջացն և յԱրղունեն, գնաց առ Մանկու Ղանն։ Եւ թագաւորեաց Մանկու Ղանն յեօթն հարիւր թուականին։

## Վասն մարախին, որ եկեր զաշխարհս։

Ի յեօթն հարիւր և մի թուականին Հայոց եկն մարախ սաստիկ, այնքան՝ մինչ զի 'ի վերանալն ստուեր գործէր, և նուազ երևէր լոյս արեգականն. և եկեալ 'ի կողմանցն Պարսից, եկեր զաշխարհս Հայոց. ոչ միայն զբոյսս դալարոյ, այլ և զհող երկրի և զաղբս լափէր, և մտանէր 'ի տունս ընդ երդս և ընդ դրունս, թէ պատահէր ի բաց. և զահի հարաւ երկիր։ Եւ եղև սղութիւն հացի, և հասեալ 'ի ձմերան եղանակին, արկ ձիւն յերկիր և մե-

տաւ. և նեխեցաւ երկիր 'ի հոտոյն: Եւ 'ի գալ գարնանն յեօթն հարիւր երկու թուականին բուսոյց երկիր զձագս մարախոյն յոյժ թանձրութեամբ, մինչ զի ծածկեցաւ հող և քարինք երկրի, և 'ի ժամ երեկոյին կուտէին 'ի վերայ միմեանց բլրաձև. և սկսաւ ուտել զդալարի և զհող Եւ խորշեցան մարդիկ թողուլ զբնակութիւնս իւրեանց և երթալ յօտարութիւն, ուր և գտցեն կերակուր. և զի յառաջագոյն կերեալ էր զշրջակայ գաւառն՝ սկսեալ 'ի Սպանիայ և 'ի Պարսից և 'ի Միջագետաց, վասն այնորիկ տարակուսեալք ոչ գիտէին զինչ գործեսցեն: Սկսան այնուհետև ապաւինել յամենակարող ձեռն և 'ի բազուկն Հզօր, որ յոչընչէ գոյացոյց զարարածս, և ողորմութեամբ իւրով խնամէ զնա միշտ; որ և անհնարինքն հնարաւորք են նմա, և արտասուօք և ուխտիւք հայցէին 'ի նմանէ բառնալ զպատուհասն յաշխարհէ: Իսկ ողորմածն Աստուած խիստ վիրացն ետ սպեղանիս, և որ եհարն, նոյն և բըժըշկեաց: Քանզի եկն բազմութիւն մանր հաւուցն պիտակաց, զոր վասն բազմութեանն Ցար անուանեն, և կարգկալեալ յեզերացն, առ հասարակ ապառեալ եկեր զամենայն բազմութիւն մարախոյն այնքան, զի և ոչ մի գտանիւր. և անդ էր տեսանել զամենայն բերան 'ի գովութիւն Աստուծոյ, և ամենայն միտք կային 'ի զարմացման: Բայց ջրոյն՝ որ վասն հաւուցս այսոցիկ է, սքանչացման արժանի է.. Ասեն թէ 'ի կողմանս Պարսից աշխարհին, որ կոչի Քիրման, է ջուր ինչ, յոր երթեալ առնուն 'ի ջրոյն 'ի շիշս ապակիս և բերեն անյետս դառնալի, և զջուրն յերկիր ոչ դնեն, այլ կապեն 'ի ձողս և ցցեն. և անդ է դադարք հաւուցն. զհետ ջրոյն՝ որ տանին, ելանեն հաւքն ըստ թուոյ խնդրողին. և այսպէս գան հաւքն զկնի մարախոյն: Մեք հաւատամք զամենայն գործ լեալ 'ի խնամոցն Աստուծոյ, որ ըստ մեղաց աշխարհի թոյլ տայ գալ պատուհասին, և դարձեալ բժշկէ ողորմութեամբն իւրով որպէս և կամի. որ և յայս պատուհաս մարախոյս զայս ետ դեղ և սպեղանի զբազմութիւն ձագուցս ծախողի:

## Վասն աշխարհագրին, որ եղև հրամանաւ Մանգու Ղանին:

Արդ յեօթն հարիւր և երեք թուականին Հայոց առաքեաց Մանգու Ղանն, և մեծ զօրավարն Բաթու, զայր մի ոստիկան, Արղուն անուն, որ 'ի Դիւանն Ղանին առեալ էր հրաման վերակացութեանն հարկացն արքունի 'ի հնազանդեալ աշխարհացն, և զմիւս ևս 'ի գլխաւորաց 'ի տանէ Բաթուին, որում անուն էր Բօրա Աղա, հանդերձ այլովք բազմօք, որ ընդ նոսա, աշխարհագիր առնել յամենայն ազգս, որ ընդ ձեռամբ նոցա էին հնազանդեալ: Եւ նոցա առեալ զայս հրաման, ելին ընդ աշխարհս ամենայն կատարել զգործն. հասին և յաշխարհս Հայոց և Վրաց և Աղուանից, և որ շուրջ զնոքօք գաւառք, բովանդակեալք 'ի տասնամենից և 'ի վեր ընդ գրով համարոյ արկանել զամենեսին, բայց 'ի կանանց: Եւ յամենեցունց պահանջեալ խստագոյն հարկս, աւելի քան զկար մարդոյն, և սկսան չքաւորիլ. և նեղէին անհնարին կտտանօք և չարչարանօք և գելլոցօք. և որ թագչէր՝ ըմբռնեալ սպանանէին, և որ ոչ կարէր հատուցանել զհարկն՝ զմանկունս նոցա առնուին ընդ պարտուցն, քանզի Պարսիկ Տաճկահաւատք ստատաւորք շրջէին: Այլ և իշխանքն տեարք գաւառացն նոցուն գործակից լեալ 'ի նեղելոյն և 'ի պահանջելն վասն իւրեանց շահելոյ. և այսու ոչ բաւականացան, այլ և զամենայն արուեստագէտս, ենթէ 'ի քաղաքս և ենթէ 'ի գիւղս, զամենայն 'ի հարկի կացուցին: Այլ և ըզ ծովակս, և զլիճս ձկնորսաց, և զերկաթահանս, և զդարբինս, և զշապարարս, և զի՞ պիտոյ է մանրամասնաբար ասել, զամենայն դուռն շահից հատին 'ի մարդկանէ, և իւրեանք միայն շահէին. և զամենայն աղահանսն առին, որ 'ի Կողբ, և որ յայլ կողմանս: Նա և 'ի վաճառականաց բազում ինչս շահեալ, կուտեցին գանձս ստատիկս ոսկւոյ և արծաթոյ և ականց պատուականաց. և այսպէս զամենեսին աղացուցեալ, և վայիւ և աշխարով լցեալ զաշխար-

հրա, Թողին չար ոստիկանս 'ի վերայ աշխարհացս զնոյն պահանջել յամենայն ամի, նովին համարով և գրով։ Բայց մեծարեցաւ 'ի նոցանէ այր մի մեծատուն վաճառականն, Ումեկ անուն, զոր ինքեանք Ասիլ կոչէին. այր բարեգործ, զոր երբեմն յիշատակեցաք, որ ապրեցաւ յաւերելն Կարնոյ քաղաքի 'ի Թաթարոյն հանդերձ որդւովքն՝ Յովհաննաւ և Ստեփաննոսիւ, և եղբարբք իւրովք. և էր յայնժամ 'ի Տփխիս քաղաքի բնակութիւն կալեալ, և հայր անուանեալ Թագաւորին Վրաց Դաւթի, և մեծարեալ 'ի Ղանէն գրով, և յամենայն աւագանւոյն։ Սա առաւ առ իւր եւ Արղունին, և որ ընդ նմա, և մեծարեցաւ յոյժ 'ի նոցունց։ Բայց յեկեղեցականացն ոչինչ առին հարկս, զի չունէին հրաման 'ի Ղանէն։ Նոյնպէս և որդիքն Սարաւանին՝ Շնորհաւորն և Մկրտիչն, ընչաւէտք և մեծատունք։

## Վասն երթալոյն բարեպաշտ Թագաւորին Հայոց Հեթմոյ առ Բաթոյն և Մանգու Ղանն։

Մեծահաւատ և քրիստոսասէր արքայն Հայոց Հեթում, որ 'ի կողմանս Կիլիկեցւոց նստէր 'ի քաղաքն Սիս, յառաջագոյն առաքեաց զեղբայր իւր զՍմբատ, որ զօրավարն էր նորին, առ Ղանն Գիւուգ ընծայիւք և պատարագօք, և դարձաւ 'ի նմանէ պատուով և հրովարտակօք ընդունելութեան։ Իսկ յորժամ Թագաւորեաց Մանգու Ղանն, առաքեաց մեծ Թագաւորահայրն և զօրապետն Բաթու, որ 'ի կողմանս հիւսիսոյ զերդ առեալ կայր անթիւ բազմութեամբն որ ընդ նմա առ ափին մեծ և անհուն գետոյն, զոր Էթիլ կոչեն, որ մտանէ 'ի ծովն Կասբից, առ Թագաւորն Հեթում գալ տեսանել զնա և զՄանգու Ղանն։ Եւ նա երկուցեալ 'ի նմանէ՝ գայ գաղտագողի, այլակերպեալ զինքն վասն ահին Թուրքաց, որք սահմանակիցք նորա էին, զոր Հոռոմոց Սուլտանն անուանեն, որում անուն էր Ալադին, զի ոխս մթերեալ ունէին ընդ նմա վասն ձեան տալոյ նորա 'ի Թաթարն. և փութով անցեալ ընդ երկիր նորա յաւուրս երկուտասան, եկն 'ի Կարս քաղաք.

և անկեալ զհաւչու Դուքինն, որ զօրապետ էր Թաթար զօրուն՝ որ յարևելս, և զայլ մեծամեծսն, և պատուեալ 'ի նոցունց, դարձի առ յոտն Արագածու՝ հանդէպ լերինն Արայի 'ի գիւղն, որ կոչի Վարդենիս, 'ի տանն իշխանին, զոր Քուրդ անուանէին, Հայ ազգաւ, կրօնիւք քրիստոնեայ, և որդիք իւր Վաչէ և Հասան, և կին նորա Խորիշահ՝ յազգէ Մամիկոնեից, դուստր մարզպանայ՝ քոյր Ասլան Պեկին և Գրիգորոյ. մինչև բերաւ նմա ինչք 'ի տանէ իւրմէ 'ի պէտս ընծայից և պատարագաց, զոր առաքեաց հայր նորա իշխանաց իշխանին Կոստանդին, յաղաժամ ձեր գոլով. և որդիք նորա Լևոն և Թորոս, զոր եթող փախանորդ իւր, զի փոխեալ էր առ Քրիստոս բարեպաշտ թագուհի նորա, Զապէլ անուն, որ թարգմանի Եղիսաբէթ, բարեգործ և ողորմած և աղքատասէր, դուստրն մեծ թագաւորին Լևոնի՝ առաջին պսակաւորին։ Եւ իբրև գնաց մեծ կաթուղիկոսն Կոստանդին, եթէ գնաց նա խաղաղութեամբ և դարձաւ է 'ի Մեծն Հայք, առաքեաց զմեծ վարդապետն Յակոբ՝ զայր բանաւոր և իմաստուն, զոր յառաջագոյն առաքեալ էին վասն սիրոյ և միաբանութեան առ թագաւորն Յունաց Յովհաննէս, որ ունէր զկողմանս Ասիոյ և մեծացեալ էր յաւուրսն, և առ պատրիարգն նոցուն։ Եւ երթեալ իմաստախօս բանիւք Աստուածային գրոց ընդդիմայաւ հարցաքննութեան ժողովոյն Յունաց, որ յաղագս մի բնութիւն ասելոյ 'ի Քրիստոս բամբասէին զմեզ Եւտիքեանս լինել. և նա խօսեալ բանիւք եցոյց գրով յերկուց միացեալ զՔրիստոս՝ Աստուած և մարդ կատարեալ, երկոքումք անձամբ միաւորութեամբ զաստուածութիւնն ոչ կորուսեալ, և զմարդկութիւնն ոչ շփոթեալ. 'ի մի բնութիւն փառաւորեալ, գործով Աստուածաբար և մարդկաբար։ Նոյնպէս և վասն Սուրբ Աստուածին էին բանք, զոր մեք ասեմք 'ի դէմս Արդեայ՝ ըստ Յոհաննու աւետարանչին վկայութեան. և որ այլ գայթակղութիւնք կային առ նոսա սակս զանազանութեան մերոյ, զամենայնն աստուածիմաստ բանիւք և գրոց վկայութեամբ հաստատեալ՝ շինեաց զնոսա նոցա 'ի սէր և 'ի միաբանութիւն ընդ ազգս մեր, և դարձաւ 'ի նոցանէն պատուով։

*Եւ եպիսկոպոսն տէր Ստեփաննոս եկն, և Մխիթար վարդապետն, որ լինէր 'ի Սկևռայն, գնացեալ անդ 'ի կողմանս արևելից, և Բարսեղ քահանայ, որ դեսպանն էր Բաթուին, ընդ նմա իսկ եկեալ էր և Թորոս քահանայ կուսակրօն, և Կարապետն, որ դրան երէց էր արքային, հեզ բարուք և գիտնական, և այլ իշխանք յոլովք, զորս ընդ իւր առեալ արքայի, չոգաւ ընդ աշխարհն Աղուանից և ընդ դուռն Դարբանդայ, որ է պահակն Ճորայ, առ Բաթուն և առ Սարթախ որդի նորա, որ էր քրիստոնեայ հաւատով. և մեծարեալ 'ի նոցունց բազում պատուասիրութեամբ։ Ապա առաքեցին զնա առ Ղանն Մանկու ընդ երկարաձիգ ճանապարհն յայնկոյս ծովուն Կասբից. և ելեալք 'ի նմանէ 'ի վեցն Մարերի ամսոյ, և յերեքտասանն Մայիս, անցեալ ընդ Այեխ գետ, եկին յՈրն՝ որ է մէջ հանապարհին ընդ Բաթուն և ընդ Մանկու Ղանն. և անցեալ ընդ Երթիճ գետ, մտին յաշխարհն Նայիմանին. և եկեալ 'ի Խարախորայն, և անցեալ 'ի Թարաստայն 'ի չորսն Հոռի ամսոյ, 'ի Սեպտեմբերի երեքտասանն, 'ի տօնի Նաւակատեաց խաչին՝ տեսին զՄանկու Ղանն երևելի փառօք նստեալ։ Եւ մատուցեալ զընծայսն, մեծարեցաւ 'ի նմանէ ըստ արժանւոյն. և կացեալ ընդ նմա աւուրս յիսուն, և տուեալ նմա հրովարտակ նշանաւոր՝ զի մի՛ ոք իշխեսցէ նեղել զնա և զաշխարհս նորա, ետ և գիր ազատութեան եկեղեցեաց ընդ ամենայն տեղիս։ Եւ ել 'ի նմանէ յաւուրն յիններորդի 'ի քսաներեքն Սահմի ամսոյ, և 'ի մէկն Նոյեմբերի, և յերեսուն օրն հասին 'ի Ղումաղուրն։ Եւ եկեալ 'ի Պերպալեխ և 'ի Պեշպալեխն և յաւազուտ երկիրն, յորում կային մարդիկ վայրենիք մերկ, մազ ունելով միայն 'ի գլուխն, և ստինք կանանցն մեծ յոյժ և երկայն, և էին անբանք. յորում կանցև ձիք վայրիք դեղին և սեաւ գունով, և ջորիք սպիտակ և սեաւ գունով և մեծ քան զձի, և քան զէշ. և ուղտք ունին երկու կուտկենս։ Եւ անտի եկին առ Լեխն, և 'ի Քուլբուկն և յԸնկախն, 'ի Ճանպալեխն և 'ի Խութափայն և յԱնկիպալեխն։ Եւ ապա մտին 'ի Թուրքաստան. և անտի յԵկոփրուկն և 'ի Դինկապալեխն և 'ի Փուլատն. և ան-*

ցեալ ընդ Սուտկօլն և ընդ կամթն ծով, եկին յԱլուալեխ և յԻշանպալեխն. և անցեալ ընդ գետն՝ որ կոչի Իլան-սու, և անցեալ ընդ բազում լերինն Տորոսի և եկեալ 'ի Դալաս, և եկեալ առ Հուլաւուն, որ էր եղբայր Մանգու Ղանին, և առեալ իւր բաժին զկողմանս արևելից։ Եւ ապա դարձեալք յարևմտից Հիւսիս, եկն 'ի Խուէթուխ-չինն, և 'ի Պերքանէթն, և 'ի Սուղուլղանն, և յԽւրասոյ-ղանն, և 'ի Քայիքանէթն, և 'ի Խուզախն, որ է Քամից, և 'ի Խնդախոյրն, և 'ի Սնղախն, որ է Խարչուխ լեառն, յորմէ Սալչուքիքն են, որոյ ակիզըն 'ի Տօրոս լեռնէ, և երթայ մինչ 'ի Փարչինն և 'ի Հատանի։ Եւ անտի եկին առ Սարթախն որդի Բաթուին, որ երթայր առ Մանգու Ղանն. և անտի յՈնղանն և 'ի Սօրանն, որ է սատրիկ մեծ, և 'ի Խարաչուխն, և յԱռն, և 'ի Սօրի, և յՕթրարն, և 'ի Ջուռնուխն, և 'ի Դիզակն. և անտի երեսուն օր 'ի Սամարղանդն, և 'ի Սարիփուլն, և 'ի Քրման, և 'ի Բու-խարայ։ Եւ ապա անցին ընդ գետն մեծ Ճեհուն և եկին 'ի Մրմն և 'ի Սարասխ. և ապա 'ի Տուս, որ կայ ընդդէմ Խորասանայ, որ կոչի Ռօղաստան. և մտեալ 'ի Մազան-տարանն, անտի 'ի Պատան, և ապա յաշխարհն Իրաղոյ 'ի սահմանս Մուլհետին, 'ի Տամղայն, և 'ի Ռէ մեծ քաղաք, և 'ի Խզուինն. և անտի յԱւահր, և 'ի Ջանգիան, և 'ի Միանա, յերկոտասան օրն Թաւրէժ։ Եւ յետ քսան և վեց աւուր անցեալ ընդ գետն Երասխ առ Բաչու Նուինն, որ գլխաւոր էր Թաթար զօրուն. և նա յուղարկեաց զնա առ Խօճա Նուինն, զոր թողեալ էր փոխանակ իւր գլխաւոր զօրուն, և ինքն առեալ զգլխաւորս զօրուն, գնաց ընդ առաջ Հուլաւուին՝ եղբօր Մանգու Ղանին, որ գայր յարևելս։

Իսկ թագաւորն բարեպաշտ Հեթում, եկեալ 'ի տուն իշխանին Քրթին 'ի գիւղն Վարդենիս, ուր թողեալ էր զախ իւր և զկարասի, և մնայր գալստեան Բարսղի քահա-նայի, զոր յուղարկեալ էր առ Բաթույն վերստին, զի ցուցցէ նմա զգիրս և զհրաման Մանկու Ղանին. զի և նա ընդ նմին օրինակի գրեսցէ հրամանս։ Ապա եկին առ նա վարդապետքն իւր՝ Յակոբ, զոր տանէն եթող 'ի պէտս գործոյ եկեղեցւոյ, և Մխիթար, զոր դարձոյց 'ի Բա-

Թուէն, մինչև երթեալ էր առ Մանգու Ղանն։ Այլ և եպիսկոպոսք և վարդապետք և քահանայք և իշխանք քրիստոնէից, որ գային առ նա, սիրով ընդունէր զնոսա. զի այր քաղցր էր և իմաստուն և գիտնաւոր գրովք. և տայր պարգևս ըստ կարին, և ուրախ արձակէր զամենեսին. տայր և հանդերձս քահանայական 'ի զարդ եկեղեցեացն, զի յոյժ սիրող էր պատարագի և եկեղեցւոյ։ Ընդունէր զամենայն ազգաց քրիստոնեայս և աղաչէր սիրով կալ ընդ միմեանս, իբրև զեղբարս և զանդամս Քրիստոսի, որպէս պատուիրեաց տէր. »Թէ յայսմ ծանիցեն՝ թէ իմ աշակերտք էք, թէ զմիմեանս սիրիցէք«։ Բազում իրս զարմանալիս և անծանօթս պատմէր մեզ զբարբարոս ազգացն, զոր տեսեալ էր և լուեալ։ Ասէր թէ կայ աշխարհ մի անդր քան զԴատայիքն, ուր կանայք են 'ի ձև մարդոյ բանականաց, և արքն 'ի կերպարանս շանց, և են անբանք, մեծք և մազեղք. և ոչ ումեք թողուն մտանել յաշխարհն իւրեանց շունքն, և որսան որսս շունքն, և այնու կերակրին շունքն և կանայքն. և 'ի խառնակիլ շանցն ընդ կանանցն, արուքըն շանց կերպիւ ծնանին, և էգքն կանանց։ Կայ և կըղզի մի աւազուտ, յորում բուսանի ծառօրէն ոսկր ինչ պատուական, զոր ձկնատամն կոչեն. և 'ի հատանելն այլ բուսանի 'ի տեղին ըստ նմանութեան եղջերուաց։ Կայ և աշխարհ, յորում բազում կռապաշտք. և պաշտեն կուռս կաւեղէնս մեծ յոյժ, անուն Շակմոնիա. և ասեն Աստուած երեք հազար և քառասուն ամաց. և կայ այլ ևս երեսուն եօթն թուման ամս, որ է մին թումանն տասն հազար, և ապա հանէ զնա յաստուածութենէն. այլ միւս ևս, որում անուն էր Մադրին, արարեալ են և նմա պատկերս կաւեղէնս անհնարին մեծութեամբ 'ի գեղեցիկ տաճարի։ Եւ են ազգն ամենայն հանդերձ կանամբք և մանկտովք քուրմք, և անուանին Տոյինք, գերծանք հերօք և մօրուօք. ունին և փիլոն դեղին ըստ նմանութեան քրիստոնէից, բայց գլանջօքն և ոչ զթիկամբքն. և են պարկեշտք 'ի կերակուրս և յամուսնութիւնս. առնեն կին 'ի քսան ամին, և մինչև յերեսուն ամն՝ 'ի շաբաթն երեք անգամ մերձենան։ և մինչև 'ի քառասուն՝ յամսեան երեք հեռ.

և մինչև յիսուն ամն՝ 'ի տարւոջն երեք հետ. և յորժամ անցանի ընդ յիսուն ամն, այլ ոչ մօտին 'ի նա։ Բազում և այլ ինչ պատմէր Թագաւորն իմաստասէր 'ի խժականացն, զոր Թողաք մեք. զի մի՛ աւելորդ ումեք Թուեսցի։ Յուլթ ամիսն առաջ եհաս յերկիրս Հայոց՝ յետ ելանելոյ 'ի Մանկու Ղանէն. և էր Թուականս Հայոց չդ։

## Վասն կոտորածի երկրին Հոռոմոց։

Արդ 'ի սկսանել Թուականին Հայոց չե մեռաւ Բաթոյն՝ զօրապետն հիւսիսոյ, և որդի նորա Սարթախն 'ի ճանապարհի էր, զի երթայր առ Մանկու Ղանն. և ոչ դարձաւ 'ի տուն իւր Թաղել զհայրն իւր, այլ գնաց զառաջի եղեալ ճանապարհն. ընդ որ յոյժ ուրախացեալ Մանկու Ղանն, ել ընդ առաջ նորա, և մեծարեաց զնա 'ի պատիւ մեծ յոյժ, և ետ նմա զիշխանութիւն հօրն իւրոյ իշխել ամենայն զօրացն, այլ և ամենայն զօրացն հնազանդելոց իշխանութեան նորա, և երկրորդ իւր կոչել և տալ հրաման տիրաբար. և յուղարկեաց զնա 'ի տուն իւր։ Ընդ նմա էր և բարեպաշտ իշխանն Խաչենոյ Ջալալն, որ երթեալ էր ցուցանել զաղէտս իւր, զոր կրեաց նա յԱրղուն Ոստիկանէն, որ հազիւ զերծաւ 'ի մահուանէն 'ի սադրելոյ Տաճկացն։ Եւ ետ նմա գիր իշխանութեան իւրոյ տիրել սեպհականաբար, և ոչ երկնչել յումեքէ. զի սիրէր զնա Սարթախն վասն քրիստոնէութեան, զի և նա քրիստոնեայ էր։ Եւ եհաս յիշխանութիւն իւր Սարթախն երևելի փառօք. ազգականքն իւր Տաճկահաւատ՝ Բարաքայն և Բարքաչայն, ետուն նմա դեղ մահու և լուծին 'ի կենացս. և մեծ տրտմութիւն եղև քրիստոնէից ամենայն, այլ և գլխովին իսկ Մանկու Ղանին և եղբօր իւրոյ Հուլաւուին, որ տիրէր ամենայն կողմանց արևելից։ Բայց մինչև եղեալ էին այս իրք, մեծն 'ի զօրավարս Ղանաձեն Հուլաւու հրաման ետ ամենայն Թաթար զօրուն՝ որ յարևելս, որոց գլխաւոր էր Բաչու Նուինն, ամենայն ախիւք իւրեանց և ընչիւք Թողուլ զերկիր կալուածոյ բնակութեան իւրեանց զՄուղան և զաշխարհն Աղուանից և զՀայոց և

փոքրկանս կողմանս։ Գնաց ընդ նոսա և Թագաւորն Հայոց Հեթում, որ եկեալ էր 'ի Մանկու Ղանէն, 'ի Բաթոյէն, և 'ի Սարթախէն, և 'ի Հուլաւէն, և էր առ Բաչու Նուինին, որ յաղթում զօրօք առաքեաց զնա յերկիրն Կիլիկիա 'ի քաղաքն Սիս. որ և յաղթում ընծայիւք և զօրօք սպասաւորութիւն կատարէր Բաչու Նուինին և զօրացն՝ որ ընդ նմա, մինչև թուղթ գոհութեան և գովութեան գրեաց վասն նորա առ Հուլաւուն։ Իսկ մեծն Հուլաւու, զի այր պատերազմող էր, ժողովեաց զամենայն բազմութիւն զօրացն և գնաց յերկիրն Մուլհետաց յԱլամութ, և կալաւ զնա. զի 'ի յաղթում ամրոց պաշարեալ էր զնա զօրն արքունի, զի որդիք Ալաձնին սպանեին զհայրն իւրեանց և եկին իւրեանք առ Հուլաւուն. և նա հրամայեաց եւս քակել զամենայն ամուր բերդս, որ կային յԱլամութ։ Իսկ ինքն պատուէր հրամանի եւ ամենայն զօրացն և ամենայն հնազանդելոցն ընդ ձեռամբ նորա գումարել 'ի միասին 'ի մերձոյ մեծ քաղաքին իշխանութեան Տաճկաց, որ կոչի Պաղտատ. այս է միջոց Պարսից և Ասորոց, զի չև եւս էին առեալ զնա։ Իսկ խալիֆայն՝ որ նստէր 'ի նմա, էր ազգականն Մահմետի. զի խալիֆայն յետնաբնակաց ասի, որում հնազանդեալ էին ամենայն Տաճկահաւատ Սուլտանքն, որ յազգէն Թուրքաց և Քուրթաց և Պարսից և Իլամացւոց, և յայլոց ազգաց։ Իսկ նա էր գլխաւոր հրամանատար իշխանութեան նոցա. և նոքա դաշամբք հնազանդեցին և պատուէին զնա; որպէս զազգականն և զհամազգի օրէնսդրին իւրեանց՝ առաջին մոլորեցուցչին իւրեանց։ Գնացին յայս զաւրն և մեծամեծ գլխաւորք կողմանցն Բաթուի՝ Ղուլին և Բալաղայն և Տուտահարն և Ղատա Ղանն; զի ամենեքին պատուէին զՀուլաւուն, որպէս զՂանն, և հնազանդեցին նմա, և երկնչէին 'ի նմանէ։

## Վասն աւերածոյն Բաղդադու։

Մեծն 'ի Թագաւորս երկրի և աշխարհակալն Մանգու Ղանն յՉԵ թուականին Հայոց զօրս գումարեաց անթիւ և անհամարս, և գնաց 'ի հեռաւոր աշխարհս ընդ կողմանս

զօրացն. և յետ եօթն աւուր սկսան քաղաքացիքն խնդրել զխաղաղութիւն, և ելանել առ նա սիրով և հնազանդութեամբ։ Եւ հրամայեաց Հուլաւուն այնպէս առնել. և ելանէին ընդ դրունս քաղաքին անթիւ բազմութիւնք՝ ըղձմիմեամբք ելևելս առնելով, թէ ո՛ յառաջ հասցէ առ նա. և նա զեկեալսն բաժանէր զօրացն, և հրամայէր հեռացուցանել 'ի քաղաքէն և կոտորել 'ի ծածուկ, զի մի՛ գիտասցեն այլքն. և կոտորէին զամենեսին։ Եւ յետ չորս աւուրն ել և խալիֆայն Մուսթասար երկու որդւովք և ամենայն մեծամեծօքն, բազում ոսկի և արծաթ և ականս պատուականս և մեծագին հանդերձս բարձեալ ընդ իւր 'ի պէտս պարգևաց Հուլաւույին և մեծամեծացն։ Եւ նա զառաջինն մեծարեաց զնա՝ մեղադրելով ընդ յամելն և ո՛չ գալ առ նա վաղվաղակի, ապա եհարց զնա. »զի՞նչ ես դու, աստուած ես՝ թէ մարդ«. և նա ասաց. »մարդ եմ և ծառայ Աստուծոյ«։ Ապա ասէ Հուլաւուն. »ասա՞ց Աստուած քեզ անարգել զիս և շուն կոչել, և ո՛չ տալ շանս Աստուծոյ կերակուր և ըմպելի. արդ 'ի քաղցնալս շունս Աստուծոյ կերիցէ զքեզ«. և սպան զնա ձեռօք իւրովք. »այդ, ասէ, պատիւ քեզ, զի սպանի զքեզ, և ո՛չ ետու այլոյ ումեք սպանանել«. և զմի յորդւոցն խալիֆային հրամայեաց որդւոյ իւրում սպանանել, և զմիւս որդին տալ գետոյն Տիգրիսի սաղաւաթ, զի ո՛չ մեղաւ մեզ, ասէ, այլ գործակից մեզ եղև 'ի կոտորել զանզգամս, և ասաց. »այս այր բազում արիւն ետ հեղուլ հպարտութեամբն, երթիցէ՝ տացէ պատասխանի Աստուծոյ, և մեք անպարտ լիցուք«. կոտորեաց և զայլ մեծամեծսն։ Եւ ապա հրաման ետ զօրացն՝ որ պահէին զպարիսպն, իջանել կոտորել զբնակիչսն քաղաքին 'ի մեծամեծացն մինչև ցփոքունսն. և նոցա կարգ առեալ ըստ օրինակի ոճոյ արտոյ, կոտորեցին անթիւ և անհամար բազմութիւն արանց և կանանց և տղայոց. և զաւուրս քառասուն ո՛չ դադարեաց սուրն 'ի գործոյ, և նեղացեալ լքան սպանողքն, և վաստակեցան ձեռք իւրեանց, և զայլսն 'ի վաճառ ունէին, և կոտորէին անողորմաբար։ Բայց կինն Հուլաւույին՝ աւագ խաթունն քրիստոնեայ էր, որում անունն էր Տօղուս խաթուն. սա խնա-

յեաց 'ի քրիստոնեայսն, որք էին 'ի Բաղդատ, Նեստորական աղանդով, և թէ այլ ազգաց քրիստոնեայք, և խնդրեաց յաւնէ իւրմէ ոչ սպանանել զքրիստոնեայսն. և եթող զնոսա ընչիւք և ստացուածովք. և հրաման ետ ամենայն զօրուն առնուլ զինչս և զստացուածս քաղաքին, և լցան ամենեքեան ոսկւով և արծաթով, և ակամբք պատուականօք և մարգարտով, և մեծագին հանդերձիւք. զի էր քաղաքն փարթամ յոյժ, որ ոչ գտանի իւր նման նմա 'ի վերայ երկրի: Եւ ինքն Հուլաւու կալաւ իւր բաժին զգանձս խալիֆային, և եբարձ 'ի նմանէ երեք հազար և վեց հարիւր բեռինս ուղտու. և ձիոյ և ջորւոյ և իշոյ ոչ գոյր թիւ. և զայլ տունսն լի գանձիւք կնքեաց մատանեօք իւրովք, և եթող պահապանս, զի ոչ կարաց բառնալ զամենայն, զի անչափ էր շատութեամբ. զի հինգ հարիւր և հնգետասան ամ էր, յորմէ հետէ շինեցաւ քաղաքն 'ի Ջափրէ Իսմայէլականէ 'ի ճղը թուականին Հայոց 'ի վերայ Տիգրիս գետոյ, 'ի վեր քան զկատիսքոն, հեռի 'ի Բաբելոնէ իբր հինգ աւուր ճանապարհ 'ի վեր, և զամենայնն կացեալ էր 'ի թագաւորութեանն, իբր անյագ տզրուկ կալեալ զամենայն տիեզերս: Եւ այժմ 'ի բաց փոխեաց յչէ թուականիս Հայոց, տալով վրէժս արեանցն՝ զոր եհեղ, և չարեացն՝ զոր գործեաց: Ցորժամ լցաւ չափ մեղացն իւրոց առաջի ամենագիտին Աստուծոյ, որ հատուցանէ արդար իրաւամբք՝ անաչառ և ստուգութեամբ, և դադարեաց գոռ և մոլեկան թագաւորութիւնն Տաճկաց, որ տևեաց ամս վեց հարիւր քառասուն ինն. և առաւ Բաղդատ յառաջնում աւուր աղուհացից, 'ի շաբաթ օրն յամսեանն Նաւասարդի, որ օր քսան էր ամսոյն ըստ շրջագայութեանս: Եւ զայս ամենայն պատմեաց մեզ իշխանն Հասան, զոր Պռօշն անուանէին, որդին Վասակայ բարեպաշտի, որդւոյ Հասբակայ, եղբայր Պապաքին և Մկդեմայ, հայր Մըկդեմայ և Պապաքին և Հասանայ և Վասակայ, որ ականատես և ականջալուր էր իրացս, մեծ պատուով պատուեալ յաչս Ղանին:

## Վասն առման Մուֆարղին քաղաքին։

Արդ 'ի նոյն ամի աւերելոյն Բաղդատայ մեծն Հուլաւու 'ի գալ գարնան ժամանակին զօր գումարեաց և ետ 'ի ձեռն որդւոյ իւրոյ կրսերոյ, որում անունն էր Չիասմութ, և զմեծ վերակացու տանն իւրոյ զԻլկղիա Նուինն առաքեաց ընդ նմա գնալ 'ի կողմանս Եփրատ գետոյ զբօսանաց աղագաւ յառ, յաւար և 'ի հնազանդեցուցանել զկողմանն զայնոսիկ. և մինչդեռ անցանէին ընդ քաղաքն Մարտիրոսաց, որ կոչի Մուֆարղին, կոչեցին զնոսա 'ի հնազանդութիւն տալ զօրս և հարկս, և կեալ անհոգութեամբ։ Եւ Սուլտանն, որ 'ի նմա էր յազգէն Եդլեանց, ո՛չ ետ յանձն. այլ զօրս ժողովեալ, ել զկնի նոցա, և սպան զոմանս 'ի նոցանէ, և եմուտ ինքն 'ի քաղաքն, և ամրացաւ յերեսաց Թաթար զօրուն։ Եւ նոցա թողեալ զօրս 'ի վերայ քաղաքին, ինքեանք չոգան մինչ 'ի գետն մեծ Եփրատ և 'ի կողմանս Միջագետաց, առին աւար՝ զոր ինչ գտին, և դարձան յաւելին 'ի զօրսն, որ պահէին զքաղաքն Մարտիրոսաց։ Եւ եկեալ առ Հուլաւուն, պատմեցին՝ զոր ինչ արարին, և զապստամբութիւն քաղաքին. և նա յղեաց զօր բազում 'ի վերայ քաղաքին, և գլխաւորս կացոյց 'ի վերայ զօրացն զՉաղատայ ոմն, որ զօրավար էր յառաջ եկեալ Թաթար զօրուն, և 'ի քրիստոնէից զիշխանն Պռօշ, զոր Հասան կոչէին, արք քաջք և անուանիք երթալ պաշարել զքաղաքն յամենայն կողմանց, և ո՛չ տալ թոյլ մտողի և ելողի։ Եւ եկեալ նոցա հզօրապէս մարտնչէին, եդեալ բաբանս և փիլիկուանս. հատին և զջուրն, որ մտանէր 'ի քաղաքն։ Նոյնպէս և քաղաքացիքն կռուէին ընդ նոսա զօրեղապէս, և զբազումս սպանին 'ի Թաթարէն և 'ի քրիստոնէիցն, որ ընդ նոսա։ Եւ այսպէս զամս երկու և աւելի կրեալ պաշարումն, սաստկացաւ սովն 'ի քաղաքին. կերան զսուրբ և զանսուրբ կենդանիս, և ապա սկսան զմարդիկ ուտել առ 'ի չգոյէ կերակրոյն, զի զօրաւորքն զտկարսն ուտէին. և յորժամ սպառեցան աղքատքն, դարձան 'ի միմեանս և

ուտէին հարք զորդիս, և կանայք զդստերս. և ոչ գթային 'ի ծնունդս որովայնի իւրեանց. և ուրացան սիրելիք զսիրելիս, և բարեկամք զծանօթս. և այնպէս պակասեաց կերակուրն, զի մին լիտր մորթոյ միոյ վաճառէին ընդ եօթանասուն դահեկանի. և ամենևին սպառեցաւ մարդ և կերակուր. ոչ միայն սոցա, այլ և բազմաց այլոց գաւառաց եհաս վտանգ, զի աշխարհ, որ հնազանդեալ էին Թաթարին, նեղացան 'ի հարկապահանջութեանց և 'ի բռնանակրութեանց, որք տանէին զկերակուրս և զըմպելիս պաշարողաց քաղաքին. և յոլովք մեռանէին 'ի սաստիկ ցրտոյ ձեանն, որ ունէին զլերինս յեղանակս ձմերնային։ Այլ և ամրագոյն երկիրն Սասնոյ եկին 'ի հնազանդութիւն ծառայութեան Թաթարին, ապաւինեալք յիշխանն Սադուն՝ յորդի Շէրբարորքին, 'ի Թոռն Սադունին, քրիստոնեայ հաւատով և բարի գործով, և մեծ պատուով առ Հուլաւուն. զի այր անձնեայ և քաջամարտիկ էր, մինչ զի ընդ առաջին ախոյանիցն կարգեալ էր զնա Հուլաւուն. սմա ետ զգաւառն Սասնոյ, զոր յետոյ առեցին երդմանն, և կոտորեցին զբազումս 'ի նոցանէ։ Իսկ յորժամ Թափուր եղև քաղաքն 'ի մարդկանէ 'ի սաստիկ սովոյն, առին զքաղաքն և կոտորեցին՝ զորս գտին 'ի նմա ներգևեալս 'ի սաստիկ սովոյն. այլ և զՍուլտանն և զեղբայր իւր ածին կենդանի առ Հուլաւուն. և հրամայեաց սպանանել զնոսա սրով, իբրև զչարժանիս կենաց և զարեան պարտս աննոյն բազմութեան, որք կոտորեցան 'ի պատճառս նոցա։ Բայց զեկեղեցիսն ոչ քակեցին, և ոչ զանթիւ նշխարս սրբոցն, զոր ժողովեալ սուրբն Մարութայ յամենայն ազգաց և եդ անդ, զի քրիստոնեայքն, որ 'ի զօրուն, ծանուցին Թաթարին զպատիւ նոցա. այլ և ինքեանք իսկ բազում տեսիլս պատմէին զսրբոցն. 'ի վերայ պարսպին լոյս սաստիկ ծագեալ, և արս լուսաւորեալս երևեալ։ Եւ առաւ քաղաքն յչթ Թուականին Հայոց, 'ի մեծ պահս քառասնորդաց ազուհացից։

## Վասն որ ինչ գործեցաւ 'ի կողմանս Միջագետաց և խորին Ասորւոց:

Դարձեալ մեծն Հուլաւու ժողովեաց զբազմութիւն զօրաց իւրոց և չոգաւ յԱսորիս, 'ի Հալապ, 'ի Տըմըշղ, և 'ի Խառան, և յՈւրհա, և յԱմիթ, և յայլ գաւառսն, ապատակ սփռեալ 'ի կողմանս կողմանս, և ինքն նստաւ 'ի վերայ Հալպայ պատերազմել ընդ նմա: Եւ Սուլտանն՝ որ 'ի նմա, էր յազգէ Յուսուֆ Սալահատինին՝ որ աւերեաց զԵրուսաղէմ, դիմեցաւ նմա, և ոչ եկն 'ի հնազանդութիւն, այլ փակեաց զդրունս քաղաքին ընդդէմ նորա, և կռուէր զօրութեամբ: Եւ մեծն Հուլաւու պաշարեաց զքաղաքն յամենայն կողմանց, և յետ յոլով աւուրց կալաւ զնա բռնութեամբ. և սկսան կոտորել զքաղաքն: Ապա Սուլտանն և որք ընդ նմա մեծամեծքն, որ ամրացեալ էին 'ի բերդն, սկսան աղաչել զնա և գալ 'ի հնազանդութիւն նմա. և յանձն առ, և հրամայեաց դադարել 'ի կոտորելոյ զքաղաքն, և կալ նմա 'ի հնազանդութեան, և հարկիլ: Գնաց և 'ի Տմըշկ. և նոքա բազում պատարագօք և մեծամեծ ծախիւք ելին ընդ առաջ նորա. և սիրով ընկալաւ զնոսա; յիւր անուն գրաւեալ կալաւ զՀէմս և զՀամա, և զայլ քաղաքս բազումս: Առաքեաց զօրս 'ի վերայ ամուր քաղաքին Մերտընայ, որ հազիւ կարացին առնուլ զնա յետ բազում աւուրց. կոտորեցին և զբազում յեղուղակս՝ վնասիչս. ամենայն ազգաց և ճանապարհորդաց, զորս Ղաճարիս անուանէին, Թուրք ազգաւ, ամրացեալք 'ի թաւ մայրիս, և 'ի դժուարին վայրս ամրոցաց, անթիւ բազմութիւնք ոչ ունէր հնազանդ, ժողովածու յամենայն կողմանց, արք սրիկայք և ապականիչք, և մանաւանդ քրիստոնէից. զբազումս կոտորեցին 'ի նոցունց, և զևս բազմագոյնս գերեցին. և թողեալ 'ի զօրացն իբրև քսան հազարս կողմնապահս, և ինքն դարձաւ ձմերել 'ի դաշտն Հիմիանայ: Իսկ Սուլտանն Մսրայ ժողովեալ զօրս բազումս, եկն 'ի վերայ կողմնապահաց թա-

թար զօրուն, որոց գլխաւոր էր այր մի, Քիթբուղա անուն, հաւատով քրիստոնեայ, Նայիման ազգաւ, այր մեծճպատուով, որ եւ պատերազմաւ ընդդէմ Սուլտանին, և քաջապէս մարտուցեալ՝ կոտորեցաւ ամենայն զօրքն, որ ընդ իւր. զի յոյժ բազումք էին Եգիպտացիքն, և կռուեցան 'ի դաշտն Թաբորական լերինն։ Կային ընդ Քիթբուղային 'ի պատերազմի անդ յոլովք 'ի Հայոց և 'ի Վրաց, որք ընդ նմա կոտորեցան. և եղև այս յՉԹ թուականին Հայոց։

## Վասն մահուան Բաւչէնդաղար իշխանին Ջալալին։

Իսկ թագաւորն Վրաց Դաւիթ՝ որդի Ղալային, որ կայր 'ի հնազանդութեան Թաթարին նեղացաւ՝ ձանձրացաւ 'ի բազում հարկապահանջութեանն՝ որ նեղէին զնա և զամենայն իշխանան և զամենայն աշխարհս անհնարին ծանրութեամբ, զոր ոչ կարէին բառնալ։ Եթող նա զքաղաք իւր զՏփխիս, և զաթոռ, և զամենայն ինչ՝ զոր ունէր, և փախեաւ 'ի խորին Ափխազք, և յամուրսն Սուանեթոյ. ընդ նմա և այլ մեծամեծ իշխանք գաւառաց, նեղեալք և տառապեալք, ծախեալք և գրաւ եդեալք զքաղաքս և զգաւառս, և ոչ կարացեալք յագեցուցանել զանյագն ըստ նմանութեան չար ազգաց։ Եւ այնպէս տագնապաւ փախեաւ, զի զկինն իւր՝ զԳոնցա թագուհի, և զնոր ծնեալ որդի իւր՝ զԴեմետրէ, ոչ կարաց ընդ իւր տանել, բայց միայն զԳիորգի զանդրանիկ իւր։ Իսկ մեծ Պատիկանն Արղունն զօր բազում գումարեալ, գնաց զհետ փախուցեալ թագաւորին Դաւթի, զի ըմբռնեսցէ զնա. և իբրև ոչ կարաց ժամանել նմա, զբազում գաւառս Վրաց կոտորեաց և գերեաց անխնայաբար. այլ և զգերեզմանատունն թագաւորացն Վրաց՝ զԳելաթ, սաստկապէս կոտորեաց և քանդեաց. և զկաթուղիկոսարանն՝ զԱծղոր, նոյնպէս կոտորեաց անողորմաբար։ Բայց յանկարծակի եկին գունդ մի հեծելոց 'ի Վրաց և ցուցին մեծ քաջութիւնս, զի զբազումս կոտորեցին 'ի զօրաց Արղունին՝ իբրև հուր ընդ եղէգն ընթացեալ, և ինքեանք գնացին ողջանդամ. և էին արք իբրև չորս հարիւր։ Եւ երկուցեալ

Արղունին, ոչ իշխէր այնպէս համարձակ մտանել խուզել զվայրսն։ Ապա դարձաւ առ Հուլաւուն, և Նիւթեաց 'ի սրտի իւրում չարութիւն, և 'ի կալանս արար զԹագուհին Վրաց՝ զԳոնցայն, և զդուստր իւր զԽոշաքն, և զիշխանն մեծ զՇահնշահ, և զՋալալն Հասան՝ զտէրն Խաչենոյ, և զայլս բազումս պատճառանօք պարտուց և հարկի, յորոց բազում գանձս առեալ, հազիւ զերծան 'ի մահուանէ։ Իսկ զբարեպաշտ և զառաքինին իշխանն Ջալալ Նեղէր անհնարին կտտանօք, բազում հարկս պահանջելով 'ի նմանէ՝ առաւել քան զկարն. եդեալ փայտ 'ի պարանոց նորա, և երկաթ յոտս նորա։ Եւ զայս առնէր ընդ նմա վասն առաւել քրիստոնէութեան նորա, զի Թշնամիք էին ամենայն Տաճկահաւատքն, որք յորդորէին զԱրղունն 'ի սպանութիւն նորա, զի ասէին՝ թէ սա առաւել Թըշնամի է դենիս մերոյ և օրինաց. զի և Արղունն ևս Տաճկակրօն էր. և առեալ տարաւ զնա 'ի Ղազուինն։ Իսկ նա գոհութեամբ տանէր ամենայնի, զի յոյժ տեղեակ էր աստուածային գրոց, և պահող, և աղօթական, և պարկեշտ 'ի կերակուր և յըմպելի, և ցանկայր մարտիրոսական մահուան։ Իսկ դուստր Ջալալին, Ռուզուքան անուն, որ կին լեալ էր Պօրա Նուինին՝ որդւոյ Չարմաղունին, առաջին գլխաւորի Թաթարին, գնաց առ Տօղուս խաթունն՝ կին Հուլաւուին, զի Թափեսցէ զհայր իւր 'ի ձեռաց Արղունին։ Եւ գիտացեալ անօրէն Ոստիկանին, առաքեաց վաղվաղակի դահիճս և 'ի գիշերի ետ սպանանել զսուրբ և զարդար այրն. և երթեալ անօրէն դահճացն՝ անգամ անգամ յօշեցին զնա ըստ նմանութեան սուրբ վկային Յակոբկայ. Նորին չարչարանացն հաղորդեալ, և պսակի նորուն արժանացեալ լիցի 'ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ։ Այսպէս կատարեցաւ այրն անարատ և աստուածապաշտ, զընթացսն կատարելով, և զհաւատս պահեալ, յՉԼԵ Թուականին Հայոց։ Եւ առաքեաց որդի նորա Աթապակն առ հաւատարիմս և ետ գողանալ զնշխարս հօր իւրոյ, զի ընկեցեալ կայր 'ի ջրհոր մի ցամաք, զի Պարսիկն՝ որ 'ի տան իւրում ունէր զնա 'ի կապանս, տեսեալ աստուածայինս 'ի վերայ նորա, զի իբրև սպան զնա, իջեալ լոյս սաստիկ 'ի վերայ, խնամար-

կեալ ընկէց զնա 'ի ջրհորն, զի յետ աւուրց Թաղեսցէ զնա պատուով։ Նա եցոյց խնդրողացն զմարմինն նորա, և պատմեաց զաքանչելիս երևումն. և նոցա ժողովեալ խնդութեամբ, և բարձեալ տարան զնա 'ի տուն իւր, և Թաղեցին 'ի վանքն Գանձասար 'ի գերեզմանս հարց իւրոց։ Այլ և բերողք նշխարացն տեսին 'ի ճանապարհի զնոյն տեսիլ լուսոյն 'ի վերայ նշխարացն։ Եւ կալաւ զիշխանութիւն նորա որդի նորա Աթապակն հրամանաւ Հուլաւուին և Արղունին, այր սրբասնունդ, պարկեշտ և խոնարհամիտ և աղօթական, որպէս զմի 'ի սուրբ միայնակեցաց, զի ծնողքն նորա այսպէս սնուցին զնա։ Սպան Հուլաւուն զիշխանն Զաքարէ՝ զորդին Շահնշահի, բարուրս եդեալ 'ի վերայ նորայ։ Յայսմ ամի փոխեցաւ առ Քրիստոս մարդասէր և հեզ կաթուղիկոսն Աղուանից՝ տէր Ներսէս, կալեալ զկաթուղիկոսութիւնն ամս քսան և եօթն. և յաջորդեաց զաթոռն տէր Ստեփանոս՝ մանուկ տիօք։

Վասն մահուան իշխանին Շահնշահի, և որդւոյ նորա Զաքարէի։

Մեծ իշխանն Շահնշահ՝ որդին Զաքարէի, ետ զիշխանութիւնն յաւագ որդին Զաքարէ, զի որդիք բազումք էին նորա. Զաքարէ և Աւագ, Սարգիս և Արտաշիրն և Իւանէ։ Եւ ինքն խնամէր զտուն իւր, և Զաքարէ ընդ Թաթար զօրուն երթայր 'ի գործ պատերազմի, և արիութեամբ քաջութեամբ ցուցեալ, մեծարեալ լինէր 'ի մեծէն Հուլաւուէ և յԱրղուն Ոստիկանէն։ Դէպ եղև՝ զի Արղունն զօրօք բազմօք էր 'ի կողմանս Վրաց, ընդ նմա էր և Զաքարէ. և գաղտ յԱրղունէն և յայլ զօրացն գնաց Զաքարէ 'ի տեսութիւն կնոջ իւրոյ, որ էր առ հօր իւրոյ Սարգսի՝ իշխանին Ուխտեաց, որ ապստամբ էր ընդ Թագաւորին Վրաց Դաւթի։ Եւ իմացեալ Արղունին, ազդ առնէ Հուլաւուին. և նա առ ինքն հրամայեաց տանել կապանօք, և այլ բարուրս կուտեաց 'ի վերայ նորա, և հրամայեաց սպանանել զնա և անդամ անդամ յօշել, և

արկանել շանց։ Եւ յորժամ լուաւ զգոյժն հօր իւրոյ Շահնշահ 'ի գիւղն Օձուն, 'ի նեղաստրութիւն անկեալ՝ 'ի տրտմութենէն մեռաւ. և տարեալ թաղեցին զնա 'ի Քոբայրն, զոր առ կինն նորա 'ի Հայոց։

## Վասն մեծ պատերազմին՝ որ եղև ընդ միմեանս Հուլաւոյին և Բերքային։

Աշխարհակալք և մեծ զօրավարքն, որ կային յարևելս և 'ի հիւսիս, ազգականք էին Ղանին Մանգուի, որ մեռաւ յետ պատերազմին Նենգրանայ. և երկու եղբարքն նորա հակառակէին ընդ միմեանս վասն թագաւորութեանն՝ Արիքբողայն և Ղուպիլայն։ Եւ յաղթեաց Ղուպիլայն, կոտորելով և սպանելով զզօրս Արիքբողային, և փախստական հանելով զնա յաշխարհէն, և ինքն թագաւորելով։ Եւ Հուլաւուն եղբայր էր նոցունց և Մանգու Ղանին. օգնէր նա Ղուպիլային։ Եւ Բերքայն, որ 'ի կողմանս հիւսիսոյ, օգնէր Արիքբողային. և միւս ևս ազգական նոցին, այլ զօրագլուխ որդի Շան Զաղաթային՝ անդրանիկ որդւոյն Չանկզ Ղանին, Ալղու անուն. նա պատերազմէր ընդ Բերքային, թէ նոցունց խրատովն կոտորեաց Մանգու Ղանին զազգս նորա, և տարեալ առ Հուլաւուն օգնել նմա յայսմ կողմանէ ընդ դուռն Դարբանդայ։ Իսկ մեծն Հուլաւու եւ մեծամեծ և փառաւորագոյն իշխանսն՝ հանդերձ ինքեան, որ կային առ նմա, 'ի կողմանց Բաթույին և Բերքային, զՂուլն, զԲալախայն, զՏութարն, զՄեղանն՝ զորդի Ղուլին, զՂատա Ղանն, և այլս բազումս հանդերձ զօրօք իւրեանց, կոտորեցին յանխնայ անողորմաբար զծերս և զտղայս, և սպառնեաց զնոսա կոտորմամբ որոց, զի առ նմա կային, և խառնէին ընդ միմեանս իշխանութեամբ. և տակաւ 'ի նոցանէ մազապուրծ զերծեալ 'ի նոցանէ առանց կանանց և մանկանց և ընչից, գնացին փախստական առ Բերքայն, և առ այլ ազգականսն։ Եւ լուեալ զայն Բերքային, ժողովեաց զօրս անթիւս և անհամարս գալ առնուլ զվրէժ արեան ազգականացն 'ի Հուլաւուէն. իսկ մեծն

Հաւլաւու՝ ժողովեաց նոյնպէս զզօրս իւր բազմաձեռն, և արար երիս յառաջս. զմինն եւ 'ի ձեռս որդւոյն Ապաղանին, գումարեաց ընդ նմա և զոստիկանն Արղունն, և առաքեաց ընդ Խորասան օգնել Ալղուին յայնմ կողմանէ, և զմի բաժինն գումարեաց 'ի դուռն Ալանաց, և զայլ զօրսըն ընդ իւր առեալ՝ գնաց եմուտ 'ի ներքս քան զդուռն Դարբանդայ, զի այս երկու մուտք են՝ որ յԱլանս և 'ի Դարբանդ: Եւ աւերելով զմասն բաժնի Բերքային, և եհաս մինչ 'ի գետն մեծ և անհուն՝ ասպնջական հոլովից գետոց, զոր կոչեն Թուրքն Եթիլ, որ ծովորէն ընթանայ և մտանէ 'ի ծովն Կասբից: Եւ ել ընդդէմ նորա Բերքայն հզօր ձեռամբ, և եղև խառնուրդ պատերազմին առ մեծի գետոյն, և բազումք անկան յերկոցունց կողմանցն: Եւս առաւել 'ի կողմանէ Հուլաւուին, զի պաղեցան 'ի սաստկութենէ ձեանն և ցրտին. և բազումք գետամոյն եղեն, և ապա դարձաւ Հուլաւուն, և եկն ել 'ի դուրս քան զդուռն Դարբանդին. և մի ոմն 'ի զօրագլխաց Հուլաւուին այր քաջ և պատերազմող զօրօքն իւրովք, Սիրամոն անուն, որդի Ջարմաղունին, առաջի գլխաւորի Թաթարին, ընդդէմ կացեալ զօրացն Բերքային, յետս նահանջեաց. և 'ի նա պատըսպարեցան փախուցեալքն և ապրեցան. և մեղմով ընդդէմ կալով, ել և նա 'ի դուրս քան զԴարբանդն, և կացուցին պահակս 'ի դրանն Դարբանդայ, և ինքեանք եկին 'ի դաշտն Մուղան 'ի ձմերոց: Եւ այսպէս ղամս հինգ պատերազմեալք ընդ միմեանս, սկսեալք յչ̄ժ̄ թուականէն, մինչ յչ̄ժ̄ե̄ թուականն Հայոց. յամենայն ամի զօր ժողովելով և ընդ միմեանս բախելով 'ի յեղանակս ձմերնային, զի յամարայնի ոչ կարէին վասն տօթոյն և գետայարոյց վխճելոյն: Ցաւուրս յայսոսիկ սկսաւ մեծն Հուլաւու շինել քաղաք բազմատար և բազմամարդ 'ի դաշտին Դառնոյ. և եդ հարկս 'ի վերայ ամենայն հնազանդելոցն բազմութիւն փայտից բերել յամենայն կողմանց 'ի պէտս շինուածոյ տանց և ապարանից քաղաքին, զոր շինէր 'ի տեղի հովացաց իւրոց յաւուրս ամարայնւոյ. և տառապէին մարդ և անասուն 'ի խիստ և 'ի դառն վերակացուացն, որ դառնագոյնք էին քան զփարաւոնին 'ի վերայ որդւոցն Իս-

բայելի։ Քանզի լուծս հարիւր եզանց լծէին 'ի փայտ մի յամենայն կողմանց, և ոչ կարէին շարժել վասն մեծութեան և հաստութեան փայտին, և հեռաւորութեան և դժուար ճանապարհացն ընդ գետս և ընդ լերինս, և յանխնայ հարկանելով, մեռանէին մարդիկ և անասունք։ Այլ և տունս մեծամեծս կռոց շինեաց, անդր գումարեալ զամենայն արուեստաւորս՝ քարանց և փայտից և նկարուց. զի ազգ մի, զոր Ցղինք ասեն, և են դիւթք և կախարդք, որ տան խօսել ձիոց և ուղտուց, և մեռելոց, և բաղքեայ պատկերաց, դիւթական արուեստիւ։ Եւ են ամենեքին քուրմք, գերծեալք գլխօք և մօրուօք, և ունին միլոն դեղին զկրծօքն. և պաշտէին զամենայն ինչ, և առաւել զՇակմոնիա և զՄադրին. Նոքա խաբեցին զնա, և ասէին պահել զնա անմահ. և բանիւ նոցա կայր և շարժէր, և հեծնոյր, տուեալ զինքն ամենևին կամաց նոցա. և խոնարհեալ երկիր պագանէր գլխաւորի նոցա յոլով անգամ յաւուրն, և ուտէր 'ի նուիրական սեղանոյն 'ի տան կռոցն, և առաւել մեծարէր քան զամենեսին զնոսա։ Վասն որոյ տաճար կռոց նոցա առաւել մեծարգի յարդարէր։ Իսկ աւագ կանանց նորա քրիստոնեայ էր, որում անուն էր Տօղուս խաթուն, թէպէտ բազում անգամ յանդիմանէր ըզնա, ոչ կարաց դերծուցանել զնա 'ի դիւթացն. այլ ինքն աստուածպաշտութեամբ կացեալ, ձեռնատու և օգնական էր քրիստոնէից։ Իսկ յչժդ թուականին նշան մեծ երևեցաւ յերկինս. աստղ մի երևեցաւ՝ գալով 'ի կողմանց հիւսիսոյ յարևելս և 'ի հարաւ. և երկայն ճառագայթք լուսոյ սիւնաձև երևէին առաջի նորա. բայց աստղն նուազ երևէր և երագ ընթանայր, և էր իբրև աւուրք ամսոյ միոյ. և ոչ այլ ևս, ոչ իբրև զաստղ գիսաւոր՝ որ ընդ ժամանակս ժամանակս երևի ընթանալով յարևմտից 'ի հիւսիս, այլ սա երկայնաձիգ շառաւիղօք, և օր քան զօր աճէին շառաւիղքըն, մինչև կորեաւ։ Եւ 'ի սոյն ամի վախճանեցաւ Հուլաւուն, և կինն իւր Տօղուս խաթունն։ Եւ կալաւ զտեղի իւր Աբա Ղանն յչժդ թուականին, և առ կին զդուստրն Հոռոմոց թագաւորին, որում անուն էր Դեսպինա խաթուն, որ եկն երևելի փառօք. և պատրիարքն Անտիո-

քու, և այլ եպիսկոպոսք ընդ նմա, զոր եբեր տէր Յարդիս Եղենկային եպիսկոպոսն, և Բենեբ վարդապետն. և մկրտեալ զԱպա Դանն ետուն զաղջիկն նմա կին. և նորա զօր գումարեալ բազում յոյժ, գնաց ընդդէմ կալ պատերազմաւ զօրաց Թերքային, որք ելին ընդ դուռն Դարբանդայ, և Հարին զբանակս իւրեանց առ ափն Կուր գետոյ. և կալան սոքա աստի և նոքա անտի, ամրացուցեալ զեզր գետոյն ցանկով և փոսիւք խորագունիւք: Եւ Քրիստոսի յուսոյն մերոյ փառք անլռելի ձայնիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ՎԵՐՋԵՆ

# ՑԱՆԿ ԳԼԽՈՑ

—

Երես․


1. Յառաջաբան Հեղինակին . . . . . . . . . ա̅.
2. Համառօտ պատմութիւն և ցոյցք անուանց Սրբոյն Գրիգորի և որք յետ նորա յաջորդեցին զաթոռ նորա. . . . . . . . . . . . . . . . 7.
3. Գիր հաւատոյ խոստովանութեան Հայաստանեայց եկեղեցւոյ . . . . . . . . . . . . . . 68.
4. Վասն թագաւորութեանն Լևոնի, որ 'ի կողմանս յԱրևմտից . . . . . . . . . . . . 90.
5. Վասն իշխանացն որ յԱրևելս Հայաստանեայց Զաքարէին և Իւանէի եղբօր նորին . . . . 94.
6. Վասն ժողովոյն, զոր արար Զաքարիայ վասն խնդրոյ ինչ իրաց . . . . . . . . . . 97.
7. Վասն կաթուղիկոսին Աղուանից գալոյ առ մեծ իշխանսն . . . . . . . . . . . . . 103.
8. Վասն վարդապետացն երևելեաց՝ որք էին 'ի կողմանս Վասպուրականի . . . . . . . 106.
9. Վասն մահուանն Զաքարէի Զօրավարի . . . 107.
10. Վասն Լևոնի արքային և վախճանի նորին . . 108.
11. Համառօտ հիւսուածք պատմութեանց կազմանցն Աղուանից, ընդ Ներգոյս զրուցատրական . . 111.
12. Վասն ելանելոյ Թաթար զօրուն և փախստական առնելոյ զթագաւորն Վրաց. . . . . 117.
13. Վասն որ 'ի սահմանս Գանձակայ անկումն եղև զօրացն. . . . . . . . . . . . . 119.

Երես.

14. Վասն շինութեան վանացն Նորն Գետկայ. . . 123.
15. Թէ ո՛յք էին, որք երևելիք էին յաշակերտսն նորա. . . . 127.
16. Վասն վարդապետին վախճանի մեծին Մխիթարայ՝ որ Գոշն կոչի . . . 128.
17. Վասն որք յետ նորա կալան առաջնորդութիւն 129.
18. Վասն Սուլտանին Ջալալադնին և կոտորելոյն զզօրսն Վրաց 'ի ձ̃ռ Թուականին . . . 131.
19. Վասն կորստեան Սուլտանին Ջալալադնի և բառնալոյ ............ . . . 133.
20. Թէ ո՛րպէս եկ Թաթարն ապականել զաշխարհս ամենայն. . . . 135.
21. Վասն աւերման քաղաքին Գանձակայ. . . . 137.
22. Վասն աւերածոյ Հայոց աշխարհիս և Վրաց 'ի նոյն. . . . 139.
23. Վասն առման քաղաքին Շամքորոյ. . . . 141.
24. Վասն գերութեան վարդապետին Վանականայ և որոց ընդ նմա . . . 142.
25. Վասն աւերման քաղաքին Լօռէոյ. . . . 148.
26. Վասն անկանելոյ 'ի ձեռս նոցա իշխանին Աւագին 149.
27. Վասն քաղաքին Անւոյ, թէ ո՛րպէս մատնեաց Տէր 'ի ձեռս նորա . . . 151.
28. Վասն աւերածին Կարուց. . . . 153.
29. Վասն յուղարկելոյ զիշխանն Աւագ առ Խաղանն յԱրևելս . . . 154.
30. Վասն կոտորածին՝ որ 'ի կողմանս Խաչենոյ, և վասն բարեպաշտի իշխանին Ջալալին . . . 157.
31. Վասն եկեղեցւոյն զոր շինեաց. . . . 159.
32. Վասն ցուցման կերպարանաց Թաթարին բացայայտութիւն սակաւուք. . . . 159.
33. Վասն Ռոպանին Ասորւոյ. . . . 162.
34. Վասն աւերման Թէոդուպօլեայ. . . . 164.
35. Վասն պատերազմին, որ եղև ընդ Սուլտանն և ընդ Թաթարն . . . 165.
36. Վասն թագաւորին Հայոց Հեթմոյ և զոր ինչ գործեցաւ. . . . 167.

Երես։

37. Վասն կոստանդեայ իշխանի Լամբրոնին, և զոր ինչ գործեաց նա ընդ աշխարհն կիլիկեցւոց 168.
38. Վասն թագաւորութեանն Դաւթի . . . . 170.
39. Վասն կոչելոյն 'ի մեծ դուռն զկաթուղիկոսն Աղուանից զտէր Ներսէս . . . . . . . 171.
40. Վասն ասպատակելոյ Նորա ընդ կողմանս Վասպուրականի 'ի վերայ բաղում՝ գաւառաց . . 172.
41. Վասն կանոնական հրամանաց կաթուղիկոսին Հայոց կոստանդնի . . . . . . . . . 173.
42. Թուղթ տեառն կոստանդեայ շրջաբերական . . 174.
43. Յահմանք կանոնականք Տեառն կոստանդեայ Հայոց կաթուղիկոսի . . . . . . . . 178.
44. Վասն հարկահանացն՝ որք եկին 'ի Ղանէն. 185.
45. Վասն թագաւորին Վրաց երթալոյ առ Ղանն 186.
46. Վասն երթալոյ առ Ղանն Սմբատայ զօրավարին Հայոց [illegible] Կոստանդնի. 188.
47. Վասն կոտորածին զոր [illegible] զօրն թաթար յաշխարհին Վրաց. . . . . . . . . . 189.
48. Վասն Դաւթի Մոլեցուցչի . . . . . . . 191.
49. Վասն դիւին՝ որ 'ի կերպարանս կնոջ լեալ, խառնակէր ընդ այր մի . . . . . . . . 195.
50. Վասն խնդրոյն՝ որ եղև 'ի մէջ քրիստոնէից վասն Հոգւոյն Աստուծոյ, թէ 'ի Հօրէ միայն պարտ է ասել, թէ 'ի Հօրէ և յՈրդւոյ . . 196.
51. Խոստովանութիւն ճշմարիտ ուղղափառաց . . 199.
52. Վանական վարդապետին . . . . . . . 202.
53. Վն վախճանի սուրբ վարդապետին Վանականայ 207.
54. Վասն Յովանիսի Գառնեցւոյ . . . . . . 209.
55. Վասն Սարթախին որդւոյ Բաթուին . . . 214.
56. Վասն մարախին, որ եկեր զաշխարհս. . . 216.
57. Վասն աշխարհագրին, որ եղև հրամանաւ Մանգու Ղանին . . . . . . . . . . . . 218.
58. Վասն երթալոյն բարեպաշտ թագաւորին Հայոց Հեթմոյ առ Բաթոյն և Մանգու Ղանն . . 219.
59. Վասն կոտորածի երկրին Հոռոմոց. . . . 224.
60. Վասն աւերածոյն Բաղդատայ . . . . . . 226.

Երես։

61. Վասն աւերածի Մուֆարղին քաղաքին . . . 231.
62. Վասն որ ինչ գործեցաւ 'ի կողմանս Միջագետաց և խորին Ասորւոց . . . . . . . . 233.
63. Վասն մահուան բարեպաշտ իշխանին Ջալալին 234.
64. Վասն մահուան իշխանին Հանհնշահի, և որդւոյ նորա Զաքարէի . . . . . . . . . 236.
65. Վասն մեծ պատերազմին՝ որ եղև ընդ միմեանս Հուլաւոյին և Բերքային . . . . . . . . 237.





Խալխաթեանց՝ Տ. Յարութիւն Պօղոսեան, վաճառական, 'ի Նոր-Նախիջևան:
Խալաթեանց՝ Տ. Բաշխի Կիրակոսեան, վաճառական, 'ի Մոսկուա:
Հէչուբեանց՝ Տ. Գաբրիէլ Յովհաննիսեան, Ուսանող, 'ի Մոսկուա:
Հախվերդեանց՝ Տ. Նիկողայոս Աւետիքեան, աստիճանաւոր, 'ի Շուշի:
Մսերեանց՝ Տ. Զարմայր Մսերեան, աստիճանաւոր, 'ի Մոսկուա:
Մաղաթեանց՝ Տ. Գէորգ-Բէկ Տէր-Յովսէփեան, աստիճանաւոր և Ազգային Երգիչ, յԵրևան:
Մելիք-Յօհաննէս, Տանուտէր, 'ի Փաշալու է:
Յարութիւնեանց՝ Տ. Մովսէս Մահտեսի-Մարկոսեան, վաճառական, 'ի Տփխիս:
Յօնանեանց՝ Տ. Յովհաննէս Ստեփանոսեան, վաճառական, 'ի Մոսկուա:
Յովհաննիսեանց՝ Տ. Ներսէս Տէր-Գէորգեան, աստիճանաւոր, յԵրևան:
—— Տ. Սարգիս Ղահրամանեան, Ուսանող, 'ի Փարիզ:
Յարութիւնեանց՝ Տ. Մելիք-Բաբայ, 'ի Բաշքեանդ է:
Ներսէսեանց՝ Տ. Մովսէս Ղազարոսեան, վաճառական, 'ի Շամախի:
Շանշիեանց՝ Տ. Նիկողայոս Սամուէլեան, աստիճանաւոր, 'ի Ս. Պ. Բուրգ:
Շիրեանց՝ Տ. Յարութիւն Յօհանջանեան, վաճառական, 'ի Շուշի:
—— . Տ. Ղուկաս ——, վաճառական, 'ի Կ. Պօլիս:
Շահնազարեանց՝ Տ. Գէորգ-Բէկ Ներսէս-Բէկեան, վաճառական, 'ի Թէհրան
Շահպարոնեանց՝ Տ. Միքայէլ Սարգսեան, Ուսանող, 'ի Մոսկուա:
Սուլթան-Շահեանց՝ Տ. Սիմէօն Գրիգորեան, աստիճանաւոր, 'ի Ս. Պ. Բուրգ:
Սամուէլեանց՝ Տ. Ստեփանոս Սամուէլեան, աստիճանաւոր, 'ի Վաղարշապատ:
Սէյիդ Նաջաֆ-Ալի-Բէկ՝ Սէյիդ Հասան-Բէկ Օղլու, 'ի Հասանքեանդ է:
Սէյիդ Կուրբան-Ալի-Բէկ՝ Սէյիդ Հասան-Բէկ Օղլու, 'ի Հասանքեանդ է:
Սէյիդ Մամեդ-Ալի՝ Նովրուզ Օղլու, 'ի Հասանքեանդ է:
Վարդանեանց՝ Տ. Սողոմոն Յարութիւնեան, աստիճանաւոր, 'ի Տփխիս:
Վասակեանց՝ Տ. Կարապետ Յովսէփեան, բժիշկ, 'ի Տփխիս:
Տէր-Մկրտչեանց՝ Տ. Գրիգոր Մկրտչեան, Ուսանող, 'ի Մոսկուա:
Տէր-Յովսէփեանց՝ Տ. Յովհաննէս Ստեփանոսեան, Ուսուցիչ և Վերակացու, 'ի Տփխիս:
Տէր-Աստուածատուրեանց՝ Տ. Բաղդասար Պապանեան, վաճառական, յԵրևան:
Տէր-Մարտիրոսեանց՝ Տ. Մարտիրոս Տէր-Կարապետեան, աստիճանաւոր, 'ի Դարալագեազ:
Տէր-Մինասեանց՝ Տ. Մելիք-Հախվերդի, 'ի Փաշալու է:
Փուզինեանց՝ Տ. Գրիգոր Արսէնեան, վաճառական, 'ի Դաւրէժ:
Քաթանեանց՝ Տ. Յովհաննէս Բաբայեան, փորագիր, 'ի Տփխիս:
Քանանեանց՝ Տ. Գէորգ Եղիեան, Ուսանող, 'ի Մոսկուա:
Օրբէլեանց՝ Տ. Անդրէաս Պետրոսեան, աստիճանաւոր, 'ի Դարալագեազ:
—— Տ. Գէորգ Պետրոսեան, աստիճանաւոր, 'ի Հին-Ջուղայ:
Օհաննէսեան՝ Տ. Աղէքսանդր, 'ի Կնիշիկ է:
Ֆանդուլեանց՝ Տ. Սահակ Գրիգորեան, վաճառական, յԵրևան.

